

# ԱՂԲԱՐ ԹՈՎՄԱՍԻ ՏՆԱԿԸ

ՎԻՊԱՍԱՆՈՒԹԻՒՆ

ՀԱՐՐԻԸԴ ՊԻՋԸՐ ՍԴՈՑ

ՏԻԿՆՈՋՆ ԱՄԵՐԻԿԱՑԻՈՅ

ՀԱՏՈՐ ԵՐԿՐՈՐԴ

---

ԵՐԿՐՈՐԴ ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ

---


ՎԵՆԵՏԻԿ

Ի ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆԻ

1906

# ԱՂԲԱՐ
# ԹՈՎՄԱՍԻ
# ՏՆԱԿԸ

## ԳԼՈՒԽ ԺԸ.

*Օֆէլիայի՛ն փորձառութիւններն ու կարծիքներր.*

Թովմաս իր ամէն օրուան մտածականներուն մէջ շատ անգամ իր գերութիւնը Յովսէփ նահապետին Եգիպտոսի գերութեան կը նմանցրնէր. և իրաւցրնէ՝ որ օրուան վրայ իր տիրոջ աչքը կը մտնէր, որով իր վիճակն ալ երթալով կը լաւնար։

Սէն–Քլէր անփոյթ էր տանը մատակարարութեան, և օրական ծախքերուն հաշիւն անգամ չէր գիտեր։ Ադոլփոս էր մինչև այն ժամանակ տանը մատակարարն, ու տիրոջը պէս ալ մսխող ըլլալով՝ ստակը ջուրի պէս կ'երթար։ Իսկ Թովմաս իր խնայող բնա-

ւորութեամբ տեսնելով այս կարգէ դուրս ծախքերը՝ ինքզինքը չէր կրնար բռնել, ու երբեմն երբեմն տիրոջը ձեռքի տակէ խօսքեր նետելով՝ անուղղակի կերպերով անդրադարձընել կու տար։

Սկզբան Սէն-Քլէր քիչ անգամ Թովմասին բան կը յանձնէր, բայց շուտ մը իր բարակամտութիւնն ու յաջողակութիւնը տեսնելով՝ սկսաւ առաջ քաշել զինքը, ու քիչ ատենէն Թովմասին ձեռքը յանձնեց բոլորովին մատակարարութեան հոգը։

Աստոլփոս այս բանիս նեղանալով՝ գանգատեցաւ քանի մ'անգամ, բայց Սէն-Քլէր — Թող տուր, ըսաւ օր մը, որ ամէն բան Թովմասն հոգայ. դուն առանց մտածելու հարկաւոր կարծածդ կը գնես, բայց Թովմաս անոնց գինը կը նայի. իսկ թէ որ քու ձեռքդ մնար՝ քիչ ատենէն կարծեմ բացը պիտի ելլէր։

Իրաւցընէ Թովմասին վրայ այն աստիճանի վստահութիւն ունէր տէրը, որ առած ու բերած ստակներն և ոչ իսկ կը համրէր, և հաշիւը կը նայէր։ Թովմաս կըրնար այն ստակներէն իրեն մաս հանել, բայց քրիստոնէական սկզբամբք զարդարուած ըլլալով՝ տէրը իր վրայ վստահութիւն ունե-

նալուն համար՝ ա՛լ աւելի զգուշութիւն ու ճշտութիւն կը պահէր, ու ամէն ըրած առուտուրներուն ճիշտ հաշիւը կու տար։

Իսկ ընդհակառակն Ատոլփոս բոլորովին տարբեր բնաւորութեամբ մարդ մ՚էր, հանգըստութիւն սիրող, երես ելած, ամէն ուզածը կ՚ընէր. տէրն ալ փոխանակ վրան աչք ունենալու՝ ձգեր էր զինքն իր կամքին. և այն աստիճանի հասեր էր՝ որ կարծես թէ իր տիրոջ հաւասարեր էր, անոր բաները գործածելով. անոր համար շատ անգամ Սէն–Քլէր իրեն կը նեղանար, մանաւանդ վերջերը, վասն զի ա՛լ չափէն դուրս ելեր էր։ Սկսաւ ինքն ալ իմանալ՝ որ գէշ բան է եղեր ծառաներն այնպէս անհոգ ձըգելը. խիղճը կը զարնէր, բայց իր կակուղ բնութեամբ չէր կրնար բան մը գլուխ հանել։ Կը տեսնէր գերիներուն մեծամեծ պակասութիւնները, բայց բան չէր կրնար ըսել. մտածելով որ եթէ նախ ինքն իր պարտքն ըրած ըլլար՝ գերիներն ալ իրենց պարտքը աւելի աղէկ կ՚ընէին։

Թովմաս իր տիրոջը վրայ կարգէ դուրս սէր, հոգ ու յարգանք ունէր. կը տեսնէր որ տէրը հոգեւոր բաներու ամենևին սէր չէր ցուցըներ, մանաւանդ թէ կը ծաղրէր. կի-

րակի գիշերները բոլոր թէատրոնները կ'անցընէր, և խառնակ ընկերութեանց մէջ շատ կը մտնէր կ'ելլէր։ Այս բաներէս Թովմաս տեսաւ որ իր տէրը քրիստոնէավայել վարք մը չունի, բայց այս բանս մէկու մ'ալ չհաղորդեց. այլ առանձին աղօթք կ'ընէր Աստուծոյ որ իր տիրոջը դարձ տայ. և վարպետութեամբ երբեմն նաև իրեն պզտի ազդարարութիւններ ալ կ'ընէր։

Կիրակի իրիկուն մ'ալ Սէն—Քլէր քանի մը բարեկամներէ հրաւիրուելով՝ սեղանի մը գնացած էր. կէս գիշերուան՝ երկուքին ժամանակները տուն դարձաւ, բայց գինովութենէն խելքը կորսնցուցած։ Թովմաս ու Ադոլփոս զինքն առին խուցը տարին անկողինը դրին։ Ադոլփոս ծիծաղը չէր կրնար բռնել. և տեսնելով մանաւանդ Թովմասին պարզմտութիւնը՝ որ խեղճին ողորմելի վիճակին վրայ կը ցաւէր՝ ինքը խնդալէն կը ճաթէր։

Երկրորդ առաւօտ Սէն—Քլէր անկողնէն նոր ելած՝ դեռ գիշերուան հագուստներով՝ Թովմասին քանի մը յանձնարարութիւններ ըրաւ, ու օրական ծախքին հարկաւոր եղած դրամն ալ տուաւ, և տեսնելով որ դեռ Թովմաս անշարժ կեցեր է՝ ըսաւ.

— Ի՞նչ կայ, արդեօք ուրիշ բան մ'ալ կա՞յ ընելիք. կարծեմ ամէն բան կարգի է։

— Կը վախեմ թէ չէ, տէր իմ, ըսաւ Թուլմաս ծանր կերպով մը։

Սէն-Քլէր ձեռքի լրագիրը ձգեց ու խահուէին գաւաթը վար դրաւ, և գերիին երեսը նայեցաւ։

— Ի՞նչ կայ Թուլմաս, ըսաւ. այսօր ծանր ու լուրջ կերպ մ'ունիս։

— Սիրտս շատ վշտացած է, տէր իմ, ըսաւ Թուլմաս. ես կը կարծէի թէ տէրս ամենուն հետ ալ աղէկ կը վարուի։

— Ի՛նչ, մինչև հիմայ այնպէս չէի՞. նայինք ի՞նչ կ'ուզես ըսել, կ'երևնայ թէ բանի մը կարօտութիւն ունիս ու այս ոճով խընդրելու եկեր ես։

— Տէրս ինծի հետ միշտ աղէկ վարուած է, ըսաւ Թուլմաս. ամենևին գա՛նգատ մը չունիմ, մէկը կայ որուն հետ աղէկ չի վարուիր։

— Ի՞նչ կ'ուզես ըսել Թուլմաս, յայտնի խօսէ, ի՞նչ է միտքդ։

— Այս բանս երէկ գիշեր ժամը կէս գիշերուան մէկին ու երկուքին ատենները գիտեցի, և մտածեցի տեսայ՝ որ իմ տէրս ինքզինքին հետ աղէկ չի վարուիր։

Թովմաս այս խօսքս ըսաւ ու դարձաւ դուռը բանալու։ Սէն-Բլէր քիչ մ'ամըչցաւ ու կարմրեցաւ, բայց շուտ մը խօսքը ծիծաղի դարձընելով

— Ա՛յս է, ըսաւ, բոլոր ըսելիքդ։

— Հրամեր ես, ըսաւ Թովմաս, ու շուտ մը տիրոջը դիմաց ծունր դնելով, տէր իմ, ըսաւ, կը վախեմ որ այս կերպով թէ՛ հոգւոյդ ու թէ մարմնոյդ միանգամայն կորըստեան վտանգին մէջ իյնաս։ Սուրբ Գիրքը կ'ըսէ. Մեղքը օձի պէս կը խածնէ ու իժի պէս կը խայթէ։

Սրտին այլայլութենէն Թովմասին ձայնը կը մարէր, և յորդ արցունքները սև երեսներէն վար կը վազէին ու գետինը կը թրջէին։

— Խեղճ սևուկ, ըսաւ Սէն-Բլէր աչուըները լեցուելով, ոտք ելիր, Թովմաս. կ'արժէ՞ որ ինծի համար այդպէս լաս։

Բայց Թովմաս իր տիրոջ ոտքն ինկած՝ ողոքանօք դէպ իրեն կը նայէր։

— Շատ աղէկ, ըսաւ Սէն-Բլէր, ա՛լ մէյմ'ալ այնպիսի տեղուանք ոտք պիտի չկոխեմ։ Իմ պատուոյս վրայ կը խոստանամ քեզի՝ որ ա՛լ այնպիսի ընկերութեանց մէջ պիտի չմտնեմ։ Ես ալ չեմ գիտեր թէ ինչպէս մինչև հիմայ ետ չկեցայ այն տե-

ղուանքէն, եւ՛ որ բնութեամբ կը զզուիմ այնպիսի զեղխութենէ, ինքզինքս ալ կը մեղադրեմ մինչև հիմայ ետ չկենալուս համար։ Ելիր ուրեմն Թովմաս, արցունքդ սրբէ ու բանէդ գործէդ ետ մի մնար։ Տես, իմ վրաս ալ այնչափ օրհնէնք չ՚արժեր որ կարդաս, վասն զի ես կարծածիդ չափ աղէկ մարդ չեմ։

Թովմասին դռնէն դուրս ելլելու ժամանակ, — Կը կրկնեմ նորէն քեզի, Թովմաս, իմ պատուոյս վրայ տուած խոստամունքս, ըսաւ, որ զիս մէյմ՚ալ այնպիսի վիճակի մէջ չես գտներ. իմացա՞ր։

Եւ իրաւցընէ խոստմունքը կատարեց. վասն զի ի բնէ այնպիսի զգայական զեղխութեանց ամենևին հակումն ալ չունէր, ու բնութեամբ քաշուող էր այնպիսի ընկերութիւններէ։

Բայց հիմայ մենք Օֆելիային վշտերուն դառնանք, որ տանը բոլոր հոգը վրան առեր էր։

Հարաւային երկիրներու գերիներն իրենց տիրոջը տուած կրթութեան համեմատ՝ մէկ մէկէ շատ կը տարբերին բնութեամբ։

Թէ՛ հարաւային կողմերը և թէ հիւսիսային մասին մէջ այնպիսի կանայք կան՝

որ բնական ձիրք մ'ունին գերիներուն հրամայելու, և առանց խստութիւն բանեցընելու՝ զանոնք կը հնազանդեցընեն, և ուզածնուն պէս առանց դժուարութեանց իրենց այս պզտի տէրութեան հպատակները կարգի կանոնի տակ կը պահեն։

Շէլլի խաթունն ալ, որ մեր ընթերցողներն աղէկ կը ճանչնան՝ այսպիսի կնիկներէն մէկն էր։ Բայց իմացընէ այսպիսի կանայք չէ թէ միայն այն կողմերը՝ այլ բոլոր աշխարհքիս մէջ ալ սակաւագիւտ են, բայց այս կողմերն աւելի յաճախ կը գտնուին։

Մարիամ Սէն-Քլէր և իրմէ առաջ ալ իր մայրն՝ այսպիսի բնութեան տէր չէին։ Մարիամ անհոգ ու աղայամիտ էր, ամենևին հաստատութիւն մտաց ու նախատեսութիւն չունէր, բնականապէս իրեն գերիներն ալ նոյն պակասութեանց տէր էին։ Մարիամ շատ անգամ Օֆէլիային գանգատելով կը պատմէր իր գերեաց անկարգութիւնները, և տանը տակնուվրայութիւնը, բայց բուն պատճառն ինքն ըլլալը չէր մտածեր։

Օֆէլիա իր տնտեսութեան առջի առաւօտը ժամը չորսին ելաւ, ու իր խուցն այնպէս աղէկ կարգի դրաւ, ինչպէս որ իրեն սովորութիւնն էր միշտ, որ իր գերի աղա-

խինն ալ զարմացաւ ։ Վերջը մանրամասն քննելու եւ բոլոր դարանները, մառանը, սեղանատունն ու խոհանոցը։ Շատ մը ծառայէն անհաւատարմութեամբ՝ ծածուկ ծախ-ցած բաներ երևան ելլելով՝ բոլոր ծառա-ներն ու խոհանոցի մարդիկ դուրս ելան, և հիւսիսային կողմի կանանց բռնած ճամբուն վրայ գանգատիլ սկսան։

Խոհարարը՝ որ Դինա անունով պառաւ մ'էր, մինչև այն ատեն իբրև տանտիկին՝ ամէն բան իր ուզածին պէս կը մատակա-րարէր, այս խիստ քննութիւնը տեսածին պէս շատ կատղեցաւ։ Այս կնիկը բոլոր այն կողմի ափրիկեցի կանանց նման՝ շատ յար-մար էր կերակուր եփելու, բայց կարգէ դուրս անկիրթ ու պնդագլուխ էր։ Մէկու մ'ալ պատճառաբանութեամբ չէր համոզուիր, ինչ զօրաւոր փաստեր ալ ըսէին՝ ինքը դարձեալ իր մտքին դրածէն չէր հեռանար։ Դինայի առջի տիրուհին՝ Մարիամին մայրը՝ կը զի-ջանէր իր աղախնոյն կամքին. Մարիամն ալ աւելի յանձն կ'առնուր լռել՝ քան թէ անոր հետ կռուիլ։

Ամէն բանի մէջ ալ ինքզինքն արդարա-ցնելու պատճառանք մը կը գտնէր։ Երբոր կերակուր մը գէշ ըլլար՝ մէկէն խոհանոցի

մարդիկներէն մէկուն կամ մէկալին վրայ կը ձգէր, հազար ու մէկ պատճառներ առաջ կը բերէր, ու խեղճ մարդկանց վրայ տիրոջը վստահութիւնը կորսնցընել կու տար։

Բայց շիտակն ըսելով՝ մէկալ կողմանէ ալ շատ ճիշտ ու մտադիր էր. քիչ անգամ կ'ըլլար որ ձեռքի բանը չյաջողցընէ. իրաւ խոհանոցը թէպէտ խառնափնդոր ու աղտոտ կը պահէր և ամէն բան տակն ու վրայ, բայց եփած կերակուրներն ամէնքն ալ աղէկ համով էին։ Երբոր սեղան մը մէկուն պիտի տրուէր՝ Դինա խոհանոցին մէկ անկիւնը նստած ու կարճկեկ ծխելին ալ բերանը՝ կը մտածէր, կարծես թէ այն մուխին մէջէն տնական մուսաներն իրեն օգնութեան կը կանչէր։ Սեւուկները իրեն չորս կողմն առած՝ ամէնքը մէյմէկ բան կ'ընէին. ոմանք գետնախնձոր կը կեղւէին, ոմանք մորթած հաւերուն փետուրները կը մաքրէին, և այլն. ինքն ալ փայտէ գդալով մը անոնց գլուխներուն զարնելով կը կառավարէր. ասոնք՝ կ'ըսէր՝ անոր համար աշխարհք եկած են որ իմ հրամաններս կատարեն, որպէս զի ես չհոգնիմ։

Այսպիսի վիճակի մէջ էր՝ երբոր Օֆէլիա տանը ուրիշ տեղուանքը պտըտելէն քննե-

լէն վերջը՝ խոհանոցը մտաւ։ Դինա իմացեր էր առաջուց իր նոր խաթունին այցելութիւնը, ու միտքը դրաւ որ ձեռքէն եկածին չափ իր իրաւունքը պաշտպանէ ու նոր կարգաւորութեանց չհնազանդի։

Խոհանոցը լաւ դիրքի մը վրայ էր. գետինն աղիւսով յատակած, և հին ոճով շինած վառարան մ'ալ ունէր։ Մէն–Քլէր շատ ջանացեր էր Դինան համոզելու որ նոր ոճով վառարան մը շինել տայ, բայց ճար չէր եղած։

Երբոր Մէն–Քլէր հիւսիսային նահանգներէն դարձաւ՝ իր հօրեղբօրը խոհանոցին կարգին ու կանոնին զմայլելով՝ ամէն կերպով ջանացեր էր որ պէտք եղածն իր խոհակերոցին համար ալ առնու, կարծելով որ Դինան ալ աղէկ կը պահէ։ Բայց դժբախտութեամբ նոր գնուած դարաններուն մէջ խոհանոցի հարկաւոր բաները պահելու տեղ՝ խել մը հին սանտրեր, հին կօշիկներ, աղտոտ լաթեր, կանանց հին գլխարկի սուտ ծաղիկներ մէջը լեցուեր էին։

Օֆէլիա երբոր խոհանոց մտաւ, Դինա ոտք ալ չելաւ, հանդարտութեամբ մը իր ծխելն առաջ տարաւ, և ինքզինքն ուրիշ բանի զբաղած ձևացընելով աչքին ծայրով

սակայն բոլոր Օֆէլիային շարժմունքները կը դիտէր։

— Դինա՛, այս պարանին մէջ ի՞նչ կը դնես, հարցուց Օֆէլիա։

— Ամէն բան, խաթուն, պատասխանեց Դինա։

Եւ իրաւցընէ խառնափնդորից ամբարանոց մը պարձեր էր։ Օֆէլիա մէջէն սեղանի գեղեցիկ փռոց մը հանեց արիւնոտ, վասն զի քիչ մ'առաջ հում միս պլլեր էր մէջը։

— Դինա՛, այս ի՞նչ բան է. ի՞նչ, հում միսը սեղանին գեղեցիկ փռոցներուն մէ՞ջ կը պլլես։

— Տէ՛ր ողորմեա, չէ խաթուն չէ. ձեռքս մէկէն ուրիշ լաթ մը չհանդիպելով անիկայ գործածեցի, ու վերջէն լուալու համար հոն դրեր էի։

— Այս ի՞նչ անհոգութիւն է, ըսաւ Օ-ֆէլիա ինքիրեն, ու սկսաւ բոլոր պարանը քննել. մէկ մ'ալ նայիս մէջէն սկսան ելլել խարսուց մը, քանի մը հնդկաց ընկոյզ, երգերու տետրակ մը, խել մը աղտոտ լաչակներ, կծիկ մը բուրդ, կիսկատար գործուած գուլպայ մը, կտրտած ծխախոտ մը, պզտի տփով քթախոտ, երկու ոսկեզօծ յախճապակէ ամաններով օծանելի իւղ, մէկ

երկու զոյգ հին կօշիկներ, քանի մը՝ կտոր
փլանէլ՝ որոնց մէջ ճերմակ սոխեր պլլուած
էին. Ընջոցներ, ասեղ, թել, մատնոց մը,
քանի մը թղթէ քսակներով անուշահոտ խո-
տեր։

— Աս հնդկաց ընկոյզներն, ո՞ւր կը դնես,
ըսաւ Օֆէլիա։

— Ո՛ւր որ գայ, խաթուն. այս ճաթած
ամաններին մէջն ալ կայ։

— Հոս ուրիշ ալ կայ։

— Հրամեր ես, ըսաւ Դինա, այս ա-
ռաւօտ ես դրի. կ'ուզեմ որ ամէն ինչ ձեռքիս
տակն ըլլայ. ու դառնալով, Ցակո՛բ, ի՞նչ
պարապ կեցեր ես, առջևի գործդ առաջ տար,
ըսաւ, ու զգալով մը գլխուն զարկաւ։

— Այս ի՞նչ բան է, ըսաւ Օֆէլիա՝ օ-
ծանելի եղին ամանները ցուցընելով։

— Մազերուս եղն է, որ շուտ գտնելու
համար հոտ դրեր եմ։

— Ի՞նչ, այնպէս բաներու համար սանը
ամենէն աղուոր ամանները՞ կը գործածես։

— Վասն զի դրած օրս շատ զբաղած
ըլլալով՝ ուրիշ մը շուտով չգտայ, բայց հի-
մայ կը պարպեմ։

— Հապա այս աղնիւ անձեռոցներն ի՞նչ
պիտի ըլլան։

— Անոնք ալ այս օրերս լուալ տալու համար հոն դրեր եմ։

— Մասնաւոր տեղ մը չունի՞ս որ աղտոտ լաթերը մէջը դնես։

— Ունիմ. պարոնը սա սնտուկը դնեց որ աղտոտները մէջը դնեմ, բայց վրան խմոր կը բանամ, անոր համար դժուար կ՚ըլլայ ամէն անգամ բանալ գոցելը։

— Խմորին իր մասնաւոր սեղանին վրայ ինչո՞ւ չես բանար։

— Միշտ պնակներ, ուրիշ բաներ ալ անոր վրայէն պակաս չեն, անոր համար ուրիշ տեղ չեմ գտներ։

— Քեզի կ՚իյնայ պնակները լուալ ու իրենց տեղը շարել։

— Ի՞նչ, պնակները ես պիտի լուամ, ըսաւ Գինա, որուն սկսեր էր համբերութիւնը կամաց կամաց հատնիլ. այսպէս կը հասկընան ուրեմն խաթուններն այս տեսակ գործերէն։ Թէ որ ամէն անգամ պնակներն ես լուայի ու տեղերնին ես դնէի՝ հապա կերակուրն ո՞վ պիտի եփէր։ Մարիամ խաթունն ինծի ոչ երբեք այսպէս բանի խօսք ըրեր է։

— Շատ աղէկ. հապա այս սոխերն ի՞նչ պիտի ըլլան։

— Միտքս չի գար, բայց կարծեմ թէ այսօրուան կերակուրին համար գրած պիտի ըլլամ... մոռցեր էի որ աս ֆլանէլին մէջ դրի։

Օֆէլիա թղթերով պլլած խոտերը խառնելու ատեն,

— Խաթո՛ւն, աղէկ կ'ըլլար, ըսաւ Դինա խիստ կերպով մը, որ ամէն բան իրենց տեղը ձգէիր, ես իմ ուզածիս պէս կը գըտնեմ ամէն բան՝ որ դիւրութեամբ ալ կարենամ նորէն գտնել։

— Բայց նայէ, թուղթը բոլոր ծակծըկեր է ու խոտերը դուրս ինկեր են։

— Մանաւանդ թէ այս կերպով շուտ մը մէջի խոտը դուրս կը քաշուի։

— Չե՞ս տեսներ որ այս ծակերէն բոլոր դուրս կը թափին։

— Ի հարկէ, երբոր հրամանքդ այսպէս ամէն բան խառնելու ըլլաս՝ ան ատեն կը թափի։ Նայէ՛, տե՛ս, ամէն բան խառնափընդոր եղաւ. երբոր հրամես քիչ մը հըրամանքիդ խուցը քաշուիս, տեսնես թէ ինչպէս քիչ ատենուան մէջ ամէն բան իր կարգին կը դրուի. բայց քանի որ գլխուս վրայ կը կենաս՝ բան մ'ալ առաջ չերթար։ Է՛յ, Սամուէլ, ինչո՞ւ շաքարամանը տղուն ձեռքը կու տաս. աղէկ նայէ, թէ չէ...։

— Դինա, ես կարգ պիտի դնեմ այս խոհանոցին, և յուսամ թէ կը պահես։

— Տէր Աստուած.... տանը խաթուններն այս՝ բաներուս չեն խառնուիր. ոչ իմ առջի խաթունս և ոչ Մարիամ այսպիսի բան ըրած են, և չեմ գիտեր թէ ի՞նչ հարկաւորութիւն կայ այս բանս ընելու։

Եւ երբ Օֆէլիա բոլոր խոհանոցին ամէն կահ կարասիքը կարգի կը դնէր, Դինա նեղացած՝ խոհանոցին մէջ վեր վար կը պըտըտէր. և տեսնելով որ զարմանալի արագութեամբ աղտոտ անձեռոցները բոլոր մէկտեղ դրաւ, անօթներն իւրաքանչիւր իր տեղը շարեց, աղտոտ պնակները լուաց, սրբեց ու տեղերնին դրաւ, այլ և այլ ամաններու մէջ ցրուած շաքարն իրեն յատուկ ամանին մէջ լեցուց՝ ապշեցաւ մնաց. ու դարձաւ իր արբանեակներէն մէկուն

— Թէ որ բոլոր հիւսիսային կողմի խաթուններն, ըսաւ կամացուկ մը, այսպէս կ՚ընեն, անոնց խաթուն պէտք չէ ըսել։ Ես ալ երբոր մաքրելու օրը գայ՝ ուրիշներուն պէս շուտ մ՚ամէն բան կարգի կը դնեմ։ Բայց անտանելի բան է այս խաթուններուն ըրածը. կու գան արգելք կ՚ըլլան, և ամէն բան այնպիսի տեղուանք կը դնեն՝ որ ա՛լ գանելը դժուարին կ՚ըլլայ։

Եւ իրաւցընէ, Դինան ալ շըջան մ'ունէր և ամէն բան մաքրելու օրն է ըսելով՝ սեղանները, դարանները բոլոր կը պարպէր գետինը կամ թէ սեղանին վրայ, բայց մաքրելու ու շտկրտելու տեղ՝ ամէն բան նոյնպէս խառնափնդոր կը թողուր, ու երբոր մանչերը պղնձեղէնները կը մաքրէին՝ ինքն իր ծուխը վառած՝ մէկ մը մէկուն, մէկ մը մէկալին ըրածներուն պակասութիւն կը գտնէր ու կը նեղանար : Ժամերով խոհանոցը խառնափնդորից աղաղակու կը հընչէր . թէ որ մէկն հարցընէր՝ թէ այս ի՞նչ աղաղակ է, մէկէն Դինա կ'ըսէր, այսօր ընդհանուր կարգաւորութեան օր է : Միտքը դրած էր որ ինքը մաքրութեան ու կարգաւորութեան նախատիպ մ'է, ուստի բոլոր այս խառնափնդոր աղտոտութիւնն այլոց անհոգութենէն առաջ կու գայ, կ'ըսէր :

Քանի մ'օրուան մէջ Օֆէլիա բոլոր տանը կարգ կանոն մը դրաւ, բայց դժբախտաբար ցերեաց անհոգութենէն քանի մ'ալ չեկաւ իր այնչափ աշխատութեամբ դրած կարգը : Ուստի օր մը համբերութիւնն հատնելով՝ ըսաւ Սէն-Քլէրին.

— Անկարելի բան է՝ այս տանս կարգ մը դնելը :

— Իրաւ է, ըսաւ Սէն–Փիէր։

— Այսպիսի անհոգութիւն մը, շռայլութիւն մը ու անկարգութիւն մը ես տեղ մ'ալ չեմ տեսած։

— Կը հաւտամ։

— Ան ատեն այդպէս անհոգութիւն մի ըներ, թէ որ կ'ուզես որ ամէն բան կարգի մտնէ։

— Սիրելի՛, քեզի բան մ'ըսեմ. գերեաց տէրերը երկու կարգ կը բաժնուին, մէյմը անոնք՝ որ կը բռնանան իրենց գերեաց վրայ, մէյմ'ալ անոնք՝ որ իրենք գերիներուն գերի եղած՝ անոնց ըրածին աչք կը գոցեն։ Անոնք որ խստութիւն չեն սիրեր ու գթասիրտ են, շատ անպատշաճութեանց մէջ կ'իյնան. վասն զի երբոր մօտերնիս դրեր ենք որ խել մ'այնպիսի անկիրթ ու տգէտ մարդիկներ քովերնիս շատցընենք՝ հարկաւ հետեւանքն ալ քաշելու պատրաստ պէտի ըլլանք։ Ես մարդիկ տեսեր եմ, թէպէտ քիչ անգամ, որ մասնաւոր ձիրք մ'ունին տունը կարգի կանոնի տակ պահել տալու՝ առանց բռնութիւն մ'ընելու։ Ես այն կարողութիւնը չունիմ, անոր համար խել մ'ատեն է միտքս դրեր եմ որ ամէն բանի աչք գոցեմ։ Ես չեմ ուզեր որ խեղճերը ծեծ ուտեն, կտոր

կտոր ըլլան. այս բանս իրենք ալ գիտեն, անոր համար երբեմն իրենց պարտքին մէջ կը զեղծանին։

— Բայց այս ի՞նչ բան է, ոչ բանի գործքի որոշ իր ժամանակը կայ, ոչ կարգ կայ և ոչ կանոն։

— Դուք հիւսիսաբնակքդ ժամանակին կարգէ դուրս յարգ կու տաք։ Ժամանակն այնպիսի մարդուն ի՞նչ բանի կրնայ գալ, երբոր անիկայ գործածելը չի գիտեր։ Իրեն ի՜նչ փոյթն է՝ թէ ժամ մ'առաջ կամ ժամ մը վերջը կերակուրը կերեր է. իրեն համար թէ՛ հիմայ եղեր է և թէ՛ վերջը նոյն բանն է։ Նայէ, Դինան մեզի ի՞նչ աղէկ կերակուրներ կ'եփէ, ապուրը, խաշածը, խորովածը, և ամէն համով կերակուրները բոլոր այն իր խառնափնդոր խոհանոցին մէջէն կը հանէ. ըստ իմ կարծեացս՝ այս իր յաջողակութիւնը կարգէ դուրս բան մ'է։ Բայց թէ որ մէյմը վար իջնենք այն կերակուրները պատրաստելու կերպը տեսնենք՝ զզուելնէս ախորժակնիս կը փախչի։ Ջուր առեղը այդ նեղութեան մէջ ինքզինքդ մի՛ ձգեր, որ ապաշխարանքէ ալ ծանր է, ու օգուտ մ'ալ չես տեսներ. մանաւանդ թէ այն կերպով համբերութիւնդ կը հատնի, Դինան ալ

գլխէ կ՚ելլէ. ինծի մտիկ ըրէ, ու թող տուր որ ուզածին պէս ընէ։

— Բայց, Օգոստինոս, դու չես գիտեր թէ ամէն բան ի՜նչ խեղճ վիճակի մէջ գը-տայ ես։

— Ի՞նչ, չե՞մ գիտեր՝ որ խմորեղէն բա-նալու գլանները իր անկողնոյն տակը կը պահէ, և բոլոր համեմները քթախոտին ան-փին հետ գրպանը կը պտըտցընէ։ Միթէ չե՞մ տեսներ տանը յիտուն անկիւնը՝ յի-տուն շաքարամանը քարշ կու գայ, ամէնքն ալ աղտոտ և աւրուած։ Չե՞մ գիտեր որ պնակները օր մը սեղանի փոցով կը սրբէ, օր մ՚ալ աղտոտ հագուստով մը։ Բայց ա-սով հանդերձ՝ սքանչելի կերակուրներ կ՚ե-փէ, համով համով խահուէներ կը շինէ. այսպիսիներուն՝ զինուորաց վրայ ինչ կեր-պով որ դատաստան կ՚ընեն՝ նոյնպէս դա-տաստան ընելու է. այսինքն պէտք է հե-տեւանքը նայիլ։

— Իսկ ծախքն ու վատնումը...

— Այդ կողմանէ խօսք չունիմ. ինչ որ կրնաս՝ բանալիքի տակ դիր, ու բանալիները քովդ պահէ. պէտք եղածը միայն տուր, բայց աւելցածին վրայ նայէ որ խօսք չը-նես։

— Ես ի՞նչպէս կրնամ այդ ծառայից հաւատարմութեան վստահիլ։

Օգոստինոս տեսնելով Օֆէլիայի անհանգիստ ու ծանր կերպով խօսիլը՝ ծիծաղը չկրցաւ բռնել։

— Օ՛, աս աղէկ բան հարցուցիր, ի հարկէ չենք կրնար վստահիլ. ո՞վ կրնայ զիրենք հաւատարիմ ընել։

— Ո՞վ... դաստիարակութիւնը, սիրելի. ա՛յն միայն կրնայ հաւատարիմ ընել զանոնք։

— Դաստիարակութի՜ւնը, կատա՜կ կ'ընես։ Իրենց ես ի՞նչ դաստիարակութիւն կրնամ տալ, միթէ ես մանկածո՞ւ եմ։ Թէ որ Մարիամին ձգէի՝ բոլոր գերիները դաստիարակեմ ըսելով կրնար զանոնք սպաննել, բայց դարձեալ չէր կրնար անոնց անհաւատարմութեան դէմն առնուլ։

— Ուրեմն ասոնց մէջ հաւատարիմ մարդ չի՞ գտնուիր։

— Հազիւ. երբեք. ատեն ատեն ասոնց մէջէն այնպիսի մարդիկ կ'ելլեն՝ որ բնութիւնը զիրենք պարզ ու հաւատարիմ ծներ է, որոնք ո՛ր և իցէ չար օրինակներէ ալ չեն աւրուիր։ Սևերուն պզտիկուց խելքերնին կը պառկի որ միայն կեղծաւորութեամբ

բան կրնան յաջողցընել. տղայութիւնէն կը սկսին իրենց ծնողքը, տէրերնին և անոնց տղաքը՝ որ հետերնին կը խաղան՝ խաբել, և այսպէս ի հարկէ խաբէութեան ու ստու-թեան կը վարժին։ Իրենցմէ ուրիշ բան չի յուսացուիր, և ասոր համար ալ անօգուտ է անոնց ետևէն ինկնալն ու զանոնք պատ-ժելն։ Հաւատարմութեան կողմանէ ալ՝ պըզ-տիկուց ի վեր ան աստիճանի ցածութեան ու հպատակութեան սովրած են՝ որ և ոչ գաղափար ունին թէ ի՞նչ է ստացուածքը, և չեն կրնար ըմբռնել ալ թէ իրենց տիրոջ ստացուածքէն ալ գողնան՝ ան ալ դարձեալ իրենցը չէ։ Ուստի չեմ կրնար հասկընալ թէ սևերն ի՞նչպէս հաւատարիմ կրնան ըլ-լալ. իսկ Թօմասին պէս մարդը բարոյա-կան հրաշք մ'է։

— Հապա հոգինին ի՞նչ կ'ըլլայ։

— Ասիկայ իմ խառնուելու բանս չէ, ըսաւ Սէն-Քլէր, ապագային հետ բան չու-նիմ. այսչափ միայն գիտեմ որ բոլոր սևերն այս աշխարհիս մէջ սատանայի նուիրուած են՝ ճերմակներուն շահերուն համար. կա-րելի է որ անդիի աշխարհքը վիճակներուն փոփոխութիւն մ'ըլլուի։

— Այս ի՛նչ սարսափելի բան է, ըսաւ

Օֆէլիա, դու պիտի ամըչնաս քու աս բըռ-նած ճամբուդ վրայ։

— Մենք ինքզինքնիս ընդհանուր սկըզ-բանց յարմարցուցած ենք։ Նայէ երկրիս վրայ ինչե՛ր կը հանդիպին. ամէն տեղ վա-րի աստիճան մարդիկ՝ վերի աստիճանի մարդկանց զոհ եղած են թէ՛ խելքով, թէ հոգւով և թէ մարմնով։ Գնա Անգլիա, ու-րիշ ուր կ՚ուզես գնա, ամէն տեղ նոյն բա-նը կը տեսնես. բայց Հարաւային Ամերի-կայի բնակչաց բռնած կերպը բոլոր աշխարհ-քիս զզուելի եղած է, վասն զի մեր բռնա-նալու կերպը ուրիշներէ քիչ մը տարբեր է։

— Ուէրմընդի[1] երկիրը ամէնքն ազատ են։

— Կը հաւատամ. Նոր–Անգլիոյ և ա-զատ երկիրներու մէջ ձեր վիճակն աւելի աղէկ կարգի եկած է...։ Բայց, կը լսե՞ս, սեղանի զանգակը զարկաւ, հիմայ մէկդի դնենք իւրաքանչիւր մեր մտածմունքներն ու կերակուրի երթանք։

Իրիկուան դէմ Օֆէլիա երբոր խոհանոցն էր, սևուկներէն մէկը պոռաց.

— Նայեցէք, նայեցէք, Բրիւ ապլան ա-

1. Ուէրմընդ՝ Հիւսիսային Ամերիկայի Միացեալ–Նա-հանգաց մէկն է։

մէն անգամուան պէս ինչպէս մրմռալով ե-լեր հոս կու գայ։

Մէյմ'ալ նայիս՝ սև ու բարձրահասակ ու նիհար կնիկ մը, տաք հացով ու պաքսի-մատներով լեցուն կողով մը գլխուն վրայ՝ ներս մտաւ։

— Բարի եկար, Բրիւ, ըսաւ Դինա՝ գի-մացը վազելով ու օգնելով՝ որ կողովը վար դնէ։

Բրիւ տխուր կերպարանք մ'ունէր, ձայնն ալ խժռուած. կողովը վար դրաւ, գետինը նստաւ ու արմուկները ծնկուըներուն կռթըն-ցուցած

— Ո՜հ տէր Աստուած, ըսաւ, երանի՛ թէ մեռած ըլլայի։

— Ինչո՞ւ կ'ուզէիր մեռնիլ, ըսաւ Օֆէ-լիա։

— Անով իմ թշուառութենէս կ'ազատէի, պատասխանեց Բրիւ՝ առանց աչքը վեր վեր-ցնելու։

— Ինչո՞ւ այդչափ կը գինովնաս որ ին-չուան կը ծեծեն զքեզ, ըսաւ Յովհաննա՝ մանկահասակ խառնածին աղախինոյն մէկը, որ խօսելու ատեն ականջին օղերը կը շար-ժէր։ Բրիւ կատաղի նայուածքով մ'անոր երեսը նայեցաւ, գլուխը շարժելով ու

— Օր մը քեզի ալ նոյն բանը պիտի հանդիպի, ըսաւ, և շատ կը փափաքէի որ ես ալ կարենայի տեսնել։ Ան ատեն դու ալ խմելով միայն հնարք մը պիտի գտնես քու թշուառութիւնդ մոռնալու։

— Շատ մի՛ երկընցըներ, Բրիւ, ըսաւ Դինա, բերած հացերդ դուրս հանէ նայինք, այս խաթունը պիտի վճարէ։

Օֆէլիա խել մը հաց առաւ։

— Սա դարանին վրայ՝ կոտրած ամանի մը մէջ՝ քանի մ'ընդունելութեան տոմսակ պիտի ըլլան, ըսաւ Դինա. Յակոբ ելիր ինծի տուր։

— Այդ տոմսակներն ի՞նչ բանի կու գան, ըսաւ Օֆէլիա։

— Բրիւ ապլային տէրն ասոնք դրամի տեղ կու տայ, հիմայ մենք ալ հացի հետ փոխնոց կ'ընենք։

— Երբոր տուն դառնամ, ըսաւ Բրիւ, տէրս այս տոմսակներն ու դրամը կը համրէ, թէ որ ճիշտ չըլլան՝ գիս կը ծեծէ։

— Արժանի ես, ըսաւ Յովհաննա, վասն զի դրամը կ'առնես ու կ'երթաս կը գինովնաս։ Իրաւ է ըսածս, խաթո՛ւն, դարձաւ ու կրկնեց Օֆէլիային, սա կնկան ամէն օրուան ըրածն այս է։

— Միշտ ալ այնպէս պիտի ընեմ, ուրիշ կերպով չեմ կրնար ապրիլ՝ որ իմ թըշուառութիւններս մոռնամ։

— Գէշ բան է ըրածդ, ըսաւ Օֆէլիա, որ տիրոջդ ստակը գինովնալու համար կը գողնաս։

— Իրաւունք ունիս, խաթուն, բայց միշտ այսպէս պիտի ընեմ...։ Ահ, ո՜ւր էր թէ օր մ'առաջ մեռնէի ու այս իմ թշուառութեններէս ազատէի. իրաւցընէ, մեռնելէն զատ ուրիշ բանի չեմ փափագիր։ Այս ըսաւ պառաւն ու ոտք ելաւ, և կողովը նորէն գլուխը դըրաւ, ու դուրսել լելու ժամանակ՝ տեսնելով որ Ցոլհաննան միակերպ իր օղերը շարժելով կը զուարճանար.

— Այդ մանկական բաներովդ ինքզինքդ գեղեցիկ կ'ուզես ցուցընել. գլուխդ կը շարժես ու զամէնքը կը ծաղրես. բայց հոգ չէ, թէ որ մէյմը դու ալ պառուիս ու տգեղնաս և ամենքէն նախատուիս, ան ատեն դու ալ կը տեսնես որ գինովնալով միայն կրնաս եղեր մխիթարուիլ։

Երբոր Բրիւ դուրս ելաւ,

— Այս ի՜նչ անպիտան կնիկ է, ըսաւ Ատոլփոս, որ Սէն–Բլէրի ածիլուելու համար տաք ջուր կը պատրաստէր. թէ որ ես

տէրն ըլլայի՝ անանկ ծեծ մը կու տայի իրեն որ կեանքին մէջ կերած չըլլայ։

— Ասկէ աւելի մեծ կարելի բան չէ, ըսաւ Դինա, վասն զի կռնակը վէրքերով լեցուն է, այնպէս որ շապիկն անգամ չի կրնար հագնիլ։

— Այսպիսի զզուելիները պէտք չէ թողուլ որ մաքուր տներ մտնեն ելլեն, ըսաւ Յովհաննա. ի՞նչ կ'ըսես պարոն Սէն-Բլէր։

Հոս գիտնալու է որ Ատոլփոս ոչ միայն իր տիրոջը Սէն-Բլէրին հին հագուստները կը հագնէր՝ այլ նաև տիրոջը անունով կ'ուզէր կոչուիլ, անոր համար Նոր-Օռլէանի սևերն իրեն Պարոն Սէն-Բլէր կը կանչէին։

— Ես ալ քու մտքիդ վրայ եմ, ազնիւ Պէ՛նիըր, պատասխանեց Ատոլփոս։

Պէնիըր՝ Մարիամ Սէն-Բլէրին ընտանիաց մականունն էր, ու Յովհաննան ալ անոնց գերիներէն մէկն ըլլալով՝ նոյն անուամբ կը կոչուէր։

— Պէ՛նիըր, ըսաւ Ատոլփոս, թողութիւն կ'ընես հարցմունքիս, արդեօք այդ օղերդ վաղը իրիկուան պարին ալ պիտի կախե՞ս։ Շատ աղուոր կ'երևան ինծի, ինչպէս աղուոր կը փայլին։

— Յիրաւի, ըսաւ Յովհաննա՝ նորէն օ-

դերը շարժելով, Հիմակուան էրիկ մարդիկ քիչ մը շատ յանդուգն հարցմունքներ կ'ընեն. թէ որ մէյմ'ալ այսպիսի հարցմունք մ'ընես՝ վաղը իրիկուն ամենևին քեզի հետ պիտի չպարեմ։

— Ո՜հ, յուսամ որ այդ անգթութիւնը ինծի չես ըներ. կը փափաքէի իմանալու թէ արդեօք վարդագոյն զգեստը ալ պիտի հագնի՞ս։

— Ի՞նչ բանի վրայ կը խօսիք, ըսաւ Սրբուհին, որ փոքրահասակ, արթուն և եռանդուն աղախին մ'էր, ու նոյն ատեն սանդուղէն կ'իջնէր։

— Պարոն Ատոլփոս Սէն–Քլէր քիչ մը շատ համարձակ է, ըսաւ Պէ՛նիրը։

— Իրա՞ւ կ'ըսես. պատասխանեց Ատոլփոս. տեսնենք Սրբուհին ի՞նչ կ'ըսէ։

— Ես ան գիտեմ որ ինքը միշտ համարձակ է, ըսաւ Սրբուհին՝ ոտքի մատուըներուն վրայ ցատքըտելով. և միշտ իրեն կը նեղանամ։

— Ո՛հ, ազնիւ օրիորդներ, ըսաւ Ատոլփոս, սիրտս կտոր կտոր կ'ընէք, օր մը զիս մեռած պիտի գտնէք անկողնոյս մէջ և պատճառը դուք պիտի ըլլաք։

— Կը լսէք սա թշուառականին, ըսին աղջիկները՝ կուշտ մը ծիծաղելով։

— Բաւական է, ելէք դուրս գնացէք աս- կէց, պոռաց անդիէն Դինա. չեմ ուզեր որ հոս ժողովէք և շաղակրատութիւն ընէք իմ խոհանոցիս մէջ։

— Դինա ապլային սիրտը կը նեղի, ը- սաւ Սրբուհին, վասն զի պարի պիտի չեր- թայ։

— Ես այդպիսի հանդէսներուն վրայ կը ծիծաղիմ. դուք հոն ուրիշ բան չէք ըներ՝ բայց եթէ կը ջանաք կապկի պէս ճերմակ- ներուն նմանիլ։ Վերջը վերջը՝ դուք ալ ին- ծի պէս սեւ չէ՞ք։

— Բայց և այնպէս Դինան, վրայ բերաւ Ցոլհաննա, իր խառնափնդոր մազերը եղո- տելէն ետ չի կենար, որպէս զի շիտակ կե- նան։

— Մազերն ալ բուրդի կը նմանին, ըսաւ անդիէն Սրբուհին, չարամտութեամբ մը ճակ- տին մազերը շակելով։

— Ի՞նչ կ՚ըսէք, ըսաւ Դինա. Աստուծոյ առջեւ բուրդն ալ մազն ալ նոյն յարգը չու- նի՞ն։ Շատ կ՚ուզէի որ խաթունը հարցընէր թէ ո՞վ աւելի բանի կու գայ, դուք երկուք- նի՞դ թէ ես մինակ։ Ձեզ տեսնեմ, հիմայ դուրս ելէք։ Նոյն միջոցին տէրը վերէն վար եկաւ ու իր անուանակցին ըսաւ թէ — Ցու-

սամ ինչուան իրիկուն ջուրը կը տաքնայ ։ Օֆէլիան ալ սեղանատունէն դուրս ելլելով — Յովհաննա՛, Արթուհի՛, պոռաց, ինչո՞ւ պարապ կեցեր էք, գնացէք նստէք, կարերնիդ առաջ տարէք ։

Իսկ Թովմաս՝ որ հաց ծախող կնոջ խահանոցին մէջէն ըրած խօսակցութիւնը մտիկ ըրեր էր, ելաւ անոր ետեւէն գնաց ։ Կնիկը ճամբան երթալու ատեն՝ երբեմն երբեմն կը հառաչէր, և խիլ մը քալելէն վերջը՝ տան մը դիմաց կողովը վար դրաւ, ու սկսաւ ուսի լաթը շտկել ։

— Կ'ուզե՞ս որ քիչ մ'ալ ես տանիմ կողովդ, ըսաւ անոր Թովմաս կարեկցութեան հարցմունքով մը ։

— Ինչո՞ւ ... ես օգնականի կարօտութիւն չունիմ ։

— Ինծի հիւանդ և կամ ցաւագար կ'երեւաս ։

— Ես հիւանդ չեմ, ըսաւ հեզնական ոճով Բրիւ տպլան ։

— Ես քեզի խորհուրդ կու տամ որ ա՛լ ինքզինքդ խումի չտաս. գիտե՞ս վերջը ո՛ւր կ'երթայ ։

— Ո՞ւր պիտի երթայ, դէպ ի մահ ու դժոխք, ըսաւ կնիկը դառնացեալ կերպով մը.

քու ըսելուդ կարօտութիւն չունիմ, աղէկ գիտեմ ու կը փափագիմ ալ։

— Աստուած քեզի ողորմի, ըսաւ Թովմաս մազերը տնկուելով. Յիսուսի անունը չե՞ս լսած։

— Յիսո՞ւս ... ո՞վ է ատ Յիսուսը։

— Մեր Աստուածն է, ըսաւ Թովմաս, մեր Արարիչը։

— Միտքս կու գայ որ բան մը լսած եմ Աստուծոյ, վերջին դատաստանին ու դժոխքի վրայ ...

— Չե՞ս լսած որ Յիսուս զմեզ սիրեց և թէ մեզի համար մեռաւ։

— Այդ բաներն ամենեւին լսած չեմ. իմ երիկս մեռնելէն վերջը՝ գիս ոչ ոք սիրեր է։

— Դու ո՞ւր սներ ես։

— Քէնդըրքիի մէջ. իմ առջի տէրս պզտի տղաք կը պահէր կը մեծցընէր որ վերջը ծախէ, ես տղոց հոգը ունեցողն էի։ Բայց գիս ալ օր մը վաճառականի մը ծախեց, ան ալ հիմակուան տիրոջս։

— Ինչո՞ւ ինքզինքդ խաւմի տուիր։

— Իմ թշուառութենէս. ինքզինքս ազատելու համար։ Նոր-Օռլէան հասնելուս պէս՝ տղայ մ'ունեցայ. կը յուսայի որ տղաս քովս կը մնայ, որովհետեւ տէրս գերեաց

վաճառական չէր։ Տղաս շատ գեղեցիկ էր, խաթունս ալ շատ կը սիրէր զինքը։ Բայց խաթունս հիւանդացաւ, և անոր հոգ տանելուս ժամանակ՝ ես ալ հիւանդացայ ու կաթս փախաւ, տղան ոսկոր ու կաշի դարձաւ, ու խաթունս չուզեց քիչ մը կաթ գնել որ խեղճ տղան ուտէ։ Զէր հաւտար թէ կաթս քաշուեր է, ու պատճառ կը բերէր որ ուրիշներուն կերածը կրնայի տղուն ալ կերցընել։ Տղան օր օրուան վրայ հիւանդացաւ ու գիշեր ցորեկ կու լար. խաթունս ալ՝ այս ի՞նչ անտանելի բան է ըսելով՝ սկսաւ նեղանալ. երանի՜ թէ մեռնի կ'ըսէր. ու զքեզ քնանալու թող չի տար ըսելով, զիս իր խուցը պառկեցընել տուաւ, ու տղան ցորեննոցի մը մէջ ձգեց, մինչեւ որ գիշեր մը խեղճը մեռաւ։ Ես ալ անկէ վերջը ինքզինքս խումի տուի ... Խմեցի ու պիտի խմեմ ալ, թէպէտ ատով դժոխք ալ երթամ։

— Խե՜ղճ կնիկ, ըսաւ Թումաս ... Զըսի՞ թէ մեր Տէրը մեզի համար մեռաւ ... որ ինքը քու առողջութեանդ ալ հոգ կ'ընէ. և դու ալ վերջապէս• կրնաս երկինք երթալ ու յաւիտենական հանգիստդ գտնել։

— Երկի՜նք, ըսաւ պառաւը, հոն չէ՞ ուր ճերմակները կ'երթան ...։ Մ՛, զանոնք տես-

նել ալ չիմ ուզեր . . . ։ Լաւ է որ դժոխք երթամ, ու իմ տիրոջմէս ու խաթունէս հեռու ըլլամ։

Այս ըսաւ հառաչելով, ու նորէն կողովը գլուխը դնելով՝ կամաց կամաց ճամբան առաջ տարաւ։

Թովմաս շուտ մը տուն ՚դարձաւ. Ներս մտածին պէս դիմացն ելաւ Վարդուհին՝ գըլուխը ծաղկէ պսակով զարդարուած։

— Ոհ, Թովմաս, հո՞ս ես, ըսաւ. աղէկ որ եկար։ Հայրս հրաման տուաւ որ իմ պզտի կառքիս ձիերը լծես, ու զի՛ս պտըտցընելու տանիս … Բայց ի՞նչ է, ի՞նչ ունիս, քիչ մը տխուր կ՚երեւաս աչքիս։

— Տկար եմ, խաթունիկ, պատասխանեց Թովմաս, բայց հիմայ կ՚երթամ ձիերը պատրաստելու։

— Ի՞նչ ունիս, ըսէ … Տեսայ որ Բրիւապլային հետ կը խօսէիր։

Թովմաս պարզ կերպով պատմեց հաց ծախող կնոջ գլխէն անցածը։ Վարդուհի ուրիշ պզտի տղոց պէս ոչ լացաւ, ոչ ալ զարմանք ցըցուց. բայց մէկէն երեսին գոյնը նետեց, աչուըները մթնցան, ու ձեռուըները կուրծքին վրայ ծալլած՝ խորին հառաչանք մ՚արձակեց։

## ԳԼՈՒԽ ԺԹ.

*Շարունակութիւն Օֆէլիայի տնակին խնամոցը.*

— Թովմաս, ձիերը մի՛ լծեր, կամք չունիմ դուրս երթալու, ըսաւ Վարդուհին։

— Ինչո՞ւ, խաթունիկ։

— Այդ թշուառութիւններն երբոր կը լսեմ՝ սիրտս կտոր կտոր կ'ըլլայ. չեմ ուզեր դուրս ելլել։

Այս խօսքերս ըսաւ ու վազեց ներս մըտաւ։

Քանի մը օր վերջը Բրիւ ապլային տեղ ուրիշ կնիկ մը հաց բերաւ. Օֆէլիան ալ խոհանոցն էր։

— Տէ՛ր Աստուած, հառաչեց Դինա. ի՞նչ եղաւ Բրիւ ապլան։

— Ա՛լ ինքը հոս չի գար, ըսաւ կնիկը նշանաւոր կերպով մը։

— Ի՞նչ կ'ուզես ըսել, մեռա՞ւ արդեօք։

— Բան մը չինք գիտեր. ինքը գինետան մէջն է, ըսաւ կնիկը՝ Օֆէլիային երեսը նայելով։

Երբոր Օֆէլիա հարկաւոր հացը գնեց, Դինա մինչեւ դուռը հաց բերող կնկան հետը գնաց։

— Ի՞նչ բան ունի Բրիւ ապլան, պատմէ նայիմ, ըսաւ կնոջը։

Կնիկը կ'ուզէր պատմել, բայց միանգամայն կը վախէր։

— Կը խոստանա՞ս որ մարդու մը չըսես, ըսաւ ցած ձայնով։ Բրիւ ապլան նորէն գինովցաւ, անոր համար զինքը բոլոր օրը գինետան մէջ կապեցին։ Կ'ըսեն ալ որ ճանճերը շատ նեղացուցեր են զինքը ու հոն մեռեր է։

Դինա սրտին ցաւէն ձեռուըներն երկինք վերցուց. մէյմ'ալ ետեւ դարձաւ՝ տեսաւ որ Վարդուհին այլայլութենէն երեսը մոխիր դարձած՝ արձանի մը պէս հոն կեցեր էր։

— Տէ՛ր Աստուած, աղաղակեց Դինա, հիմայ խաթունիկս կը մեռի. ինչո՞ւ այսպիսի սոսկալի բան մը իրեն դիմացը պատմեցիր. հայրն հիմայ ինծի պիտի բարկանայ։

— Ես չեմ մեռնիր Դինա, ըսաւ աղջիկը հաստատ ձայնով մը. ինչո՞ւ այդ բաները պիտի չլսէի. ինչպէս որ խեղճ Բրիւ կրցեր է այնչափ սարսափելի նեղութիւն քաշել, ես ալ կրնայի լսել։

— Հրամանքիդ պէս փափուկ ու ազնուասիրտ օրիորդիկներուն համար չէ այսպիսի պատմութիւններ լսելը։

Վարդիկ նորէն հառաչեց ու կամաց կամաց սանդուղէն վեր ելաւ՝ երեսը տրտմութենէն կախած։

Օֆէլիա անհամբերութեամբ հարցուց այն խեղճին թշուառ պատմութիւնը։ Դինա երկայն բարակ պատմեց, Թոմմասն ալ գիտցածը վրան աւելցուց։

— Այս ի՜նչ սարսափելի, այս ի՜նչ պղծգալի բան է, ըսաւ Օֆէլիա՝ Սէն-Քլէրին խուցը վազելով, ուր նստեր լրագիր կը կարդար. ի՜նչ անգթութիւն է։

— Ի՞նչ նոր անգթութիւն է ըսածդ, հարցուց Սէն-Քլէր։

— Խեղճ Բրիւը այնչափ ծեծեր են՝ որ մեռեր է, ըսաւ Օֆէլիա. ու տեղն ի տեղը լսածները պատմեց, և գլխաւորապէս այս եղած անգթութեան վրայ տաք տաք խօսեցաւ։

— Մտքէս կ'անցնէր որ վերջապէս այս վախճանը պիտի ունենայ, ըսաւ պաղութեամբ Սէն-Քլէր, ու լրագիրը նորէն ձեռք առաւ։

— Երբոր գիտէիր՝ ինչո՞ւ չջանացիր ար-

գիլելու։ Ի՞նչ. հոս պատաւոր չկա՛յ, պատասխան չունի՞ք որ այս անօրէնութիւններուն դէմ ատուի։

— Ընդհանրապէս այստեղի սովորութիւնն է որ մէկմէկու բանին գործին չենք խառնուիր։ Երբոր մէկն ինքզինք փասել կ'ուզէ, անոր ի՞նչ կրնանք ընել, վասն զի անիկայ իրեն ստացուածքն էր։ Խեղճ պառաւն, ինչպէս որ պատմեցին, գողնալն ու գինովնալն արհեստ ըրեր է եղեր իրեն, անով հարկաւ քիչ մարդ կը ցաւի վրան։

— Սակայն այդ շատ պժգալի բան է, Օգոստինոս։ Իրաւցընէ Աստուած այս բաներուս համար գձեզ օր մը պիտի պատժէ։

— Ես յանցանք չունիմ, սիրելի, բայց արգիլել ալ չէի կրնար։ Երբոր մէկը բնութեամբ անգութ է, ես ի՞նչ կրնամ ընել անոր։ Իրենք բացարձակ իշխանութիւն ունին, և ամենեւին բանի մ'ալ պատասխան տալու պարտք չունին. ի՞նչ անօգուտ բան է մէջ մտնելը. երբոր որոշ օրէնք մը չկայ։ Ամենէն աղէկը այն է՝ որ աչուընիս ալ գոցենք, ականջնիս ալ, ու թողունք որ ամէն մէկն իր ուզածն ընէ։

— Բայց ի՞նչպէս կրնաս աչքդ ու ականջդ ալ գոցել։

— Մեզմէ ի՞նչ կը սպասես։ Մարդկութեան մէկ խեղճ, անզգայ ու անկիրթ մաս մը՝ ճերմակներուն բացարձակ իշխանութեան տակ ինկեր են. անոնք ալ շատ անգամ ինքզինքնին չեն կրնար չափի մէջ պահել, և ոչ ալ իրենց ճշմարիտ շահը կը ճանչնան։ Մարդկային ընկերութեան այս տեսակ կարգաւորութեանց մէջ՝ պատուաւոր մարդ մը ի՞նչ կրնայ ընել, բայց եթէ աչք գոցել, ու ջանալ որ սրտին զգացմունքն ալ մարէ։ Ես ամէն իմ դիմացս ելած խեղճերը չեմ կրնար գնել. Թափառական ասպետի մը պէս ալ չեմ կրնար ասդին անդին վազել ու այլոց հասցուցած վնասները ծածկելու ջանալ. միայն կը ջանամ որ գոնէ ինծմէ հեռու բռնեմ։

Սէն-Փիէրի դէմքը քիչ մը կոընճմտեցաւ, վերջը նորէն իր առջի զուարթ կերպն առնելով,

— Ա՛լ բաւական է, ըսաւ, այդ բարկացած երեսդ ինծի մի՛ ցուցըներ. աշխարհիս թատրին դեռ դու վարագուրին մէկ ծայրը քիչ մը վեր վերուցիր, բայց թէ որ ուզես այս աշխարհիս մէջ հանդիպածներուն խորը մտնել, վրադ սիրտ չի մնար. բոլորովին Դինայի խոհանոցը քննելուդ կը նմանի։

Սէն-Փլէր բազմոցի մը վրան երկնցաւ ու նորէն լրագիրը ձեռք առաւ. Օֆէլիան ալ նստաւ ու սիրտը նեղացած՝ գուրպայ հիւսել սկսաւ. քիչ մը լուռ կենալէն վերջը՝ դարձաւ զայրացմամբ մ'ըսաւ.

— Նորէն կ'ըսեմ, Օգոստինոս. շատ դէշ բան է այսպիսի ոճ մը պաշտպանելդ. իմ կարծիքս այս է, դու ի՛նչ կ'ուզես ըսէ։

— Ի՞նչ, նորէ՞ն սկսար։

— Նորէն կ'ըսեմ, քու կողմանէդ շատ դէշ բան կ'ընես, որ այսպիսի սոսկալի ոճ մը կը պաշտպանես։

— Ես կը պաշտպանե՞մ.... ո՛վ ըսաւ թէ կը պաշտպանեմ։

— Բոլոր Հարաւային կողմի բնակիչքը չե՞ն պաշտպաներ. թէ չէ՝ ինչո՞ւ ի գործ կը դնեն նոյն բանը։

— Այնչափ միամի՞տ ես՝ որ միտքդ դրեր ես թէ աշխարհիս մէջ արդար բան միայն ի գործ կը դրուի։ Կենացդ մէջ բան մը չե՞ս ըրած որ խիղճդ քեզի դէշ է ըսէ...

— Թէ որ այնպիսի բան մ'ալ ըրած ըլլամ՝ կը զղջամ։

— Ես ալ, պատասխանեց Սէն-Փլէր։

— Ան ատենը ինչո՞ւ նորէն կ'ընես։

— Ի հարկէ քեզի ալ հանդիպած է, սի-

րելի, որ երբեմն բանի մը վրայ զղջալէդ վերջը՝ նորէն նոյն բանն ըրեր ես։

— Հրամեր ես, բայց ան ատեն ըսել է թէ սաստիկ փորձութեան մէջ ինկած եմ եղեր։

— Շատ աղէկ, ես ալ ահա սաստիկ փորձութեանց մէջ ինկած եմ։

— Բայց միշտ առաջադրութիւն դրեր եմ, որ նոյն մեղաց մէջ չիյնամ նորէն։

Տարը տարուընէ ի վեր ես ալ նոյն առաջադրութիւնը կը դնեմ, բայց անօգուտ։ Դուն այն վիճակն հասեր ես որ ա՛լ մեղք չըներ։

— Օգոստինոս, կրկնեց Օֆէլիա ծանր կերպով մը, արժանի եմ որ դուն իմ պակասութիւններս յանդիմանես, ես ալ չեմ նեղանար. բայց իմ ու քու մէջ մեծ տարբերութիւն մը կայ։ Իրաւ, իմ վարքս իմ սկըզբանցս համեմատ չէ, բայց ինծի կ'երեւնայ որ աւելի ող ձեռքս կը կարէի՝ քան թէ այնպիսի ճամբայ մը բռնէի որ ինծի բոլորովին գէշ երեւնար։

Սէն-Քլէր ելաւ ու Օֆէլիայի քով եկաւ նստաւ, ու

— Այդ ծանր կերպդ մէկդի դիր, ըսաւ. գիտես որ ես ի՛նչ կարգէ զուրս ու անկա-

տար մարդ մ՚եմ։ Ծաղրածութիւն ընել կը սիրեմ. կ՚ընդունիմ՝ որ դու խելացի կնիկ մ՚ես, և ես քու դիմացդ բան մ՚ըսել չեմ։

— Դու ծիծաղ կ՚ընես, Օգոստինոս, բայց գիտնաս որ խօսածնիս շատ ծանր բան է, ըսաւ Օֆէլիա՝ ձեռքը Օգոստինոսին ճակտին վրայ դնելով։

— Իրաւցընէ այնչափ ծանր է՝ որ օդին տաքութեան ատեն վրան խօսիլ չըլլար։ Երբոր արեւէն ու մժեղներէն նեղութիւն կը քաշենք՝ կրնա՞նք խորին մտածութեանց մէջ մտնել։ Այս ի՞նչ տեսակ երեւակայութիւն է. հիմայ կ՚իմանամ թէ հիւսիսայինք հարաւայիններէն ո՛րչափ աւելի առաքինի են եղեր։

— Դու շատ թեթեւամիտ մարդ ես։

— Կրնայ ըլլալ. բայց գոնէ մէկ անգամ կենացս մէջ ծանր կ՚ուզեմ ըլլալ։ — Կեցիր հիմայ սա նարընջի կողովը ինծի տուր որ եթէ տաքնալու ըլլամ՝ ինքզինքս զովացընեմ։ — Երբոր պէտք ըլլայ որ մարդ իր եղբարցմէ քանի մը հոգի գերութեան բանտին մէջ փակէ, ան ատեն պէտք է հասարակաց կարծեաց նայիլ թէ ինչպէս կը դատէ, և ...

— Միտքս այն չէր որ դու նեղանաս։

— Աւասիկ եմ ուրեմն, ըսաւ Սէն-Քլէր ծանր կերպով մը. գերութեան այս վերացեալ խնդրոյն մէկ տեսակ կարծիք միայն կայ։ Երկրատէրները՝ որոնք գերիներէն օգուտ կը քաղեն, եկեղեցականներն ալ երկրատեարց հաճոյ ըլլալու համար, քաղաքական մարդիկ տիրելու մտքով՝ կրնան բարոյական սկզբունքներն ապականել և մոռնալ նաեւ բնութեան զգացմունքը, Աւետարանին միտքն ալ ծուռ մեկնել, բայց ոչ ոք կրնան խաբել։ Գերութիւնը սատանայէն ելաւ, որ իր կարողութիւնը ցուցընելու համար հաստատեց։

Օֆէլիա զարմանքէն ձեռքի գործը մէկ դի դրաւ ու Սէն-Քլէրին երեսը սկսաւ ապշած նայիլ։

— Չէ՞ր կարծեր որ ես այսպէս խօսիմ. բայց թէ որ կ'ուզես ինծի մտիկ ընել, ես իմ մտքէս անցածը յայտնեմ քեզի։ Աստուծմէ և մարդկանցմէ ալ անիծուած այս կարգադրութեան սկիզբն ի՞նչ է, քննենք մէյմը ի հիմանց. մէկդի դնելով անոր վրայի արտաքին կեղեւներն՝ ինչուան խորն իջնենք. ի՞նչ կը տեսնենք . . . ուրիշ բան չէ՝ բայց եթէ՝ վասն զի իմ սեւ եղբայրս տգէտ ու տկար է, և ես բանէ հասկցող և ուժով եմ,

անոր համար խեղճին ունեցածը չունեցածը կ'առնեմ, ու երբոր ուզեմ՝ ան ատեն կու տամ։ Ինչ որ ինծի խիստ, նուաստացուցիչ ու տհաճելի բան կ'երեւայ՝ ուրիշն ընել կու տամ, վասն զի ես աշխատիլ չեմ սիրեր ; Թող ուրիշն աշխատի. վասն զի ես արեւէն կ'երկիմ՝ իմ տեղս ուրիշը արեւուն տակը կը ձգեմ որ աշխատի. ուրիշը դրամ վաստըկի՝ որ ես մսխեմ. ուրիշը ցեխերուն մէջ կը խոթեմ, որպէս զի ես անոր ուսին վրայ առանց աղտոտելու անցնիմ. ուրիշը քանի որ կեանք ունի այս աշխարհիս վրայ՝ իմ կամքս միշտ պիտի ընէ, ինքը կամք չունի, և երկինք երթալու շնորհքն ալ որչափ ուզեմ՝ այնչափ իրեն կը շնորհեմ։ Ահաւասիկ գերութիւնն իմ աչքիս դիմաց այս կերպարանքն ունի։ Այս ամէն բան մեր անիրաւ օրէնսդրութենէն առաջ կու գայ։ Գերեվաճառման մէջ զեղծումն կը մանէ կ'ըսեն, ի՛նչ անիմաստ խօսք է, բուն իսկ գերեվաճառումը զեղծումն չէ՝ ի՞նչ է։ Եւ թէ որ մեր հայրենիքը Սոդոմ Գոմորայ պէս երկրիս տակը չ'անցնիր, պատճառն այն է՝ որ կարգէ դուրս խստութիւն ի գործ չի դրուիր, ինչպէս որ օրէնքը կը շնորհէ։ Բնական գութը, ամօթը, (վասն զի մարդ ենք ի կանանց ծնեալք և ոչ

վայրի անասուններ), թող չի տար օրինաց տուած բացարձակ իշխանութիւնն ի գործ դնել։ Անգութներն անգամ՝ իրենց բարբարոսութեան չափ մ'ունին, օրինաց սահմանէն դուրս չեն ելլեր։

Սէն-Քլէր ոտք ելաւ, և սիրտը նեղացած վեր վար խուցին մէջ կը քալէր. դէմքը սըրտին զգացումներէն այլայլած՝ աչուըներէն կրակ կը ցատքէր. Օֆէլիա որ զինքն այն վիճակին մէջ ամենեւին չէր տեսած՝ լուռ մնջիկ անկիւն մը քաշուեր կեցեր էր։

— Յայտնի կ'ըսեմ քեզի, ըսաւ Սէն-Քլէր, թէպէտ պարապ բան ալ ըլլայ այս նիւթիս վրայ խօսիլն ու մտածելը, բայց յայտնի կ'ըսեմ, որ շատ անգամ մտքէս անցած է, թէ որ կարելի ըլլար որ աշխարհքս այս իր անօրէնութիւններով գետնին տակն անցնէր ծածկուէր, ես ալ ան տեղն ուրախութեամբ անոնց հետ կը կորսուէի։ Երբոր իմ՝ ճամբորդութեանցս ժամանակ կը տեսնէի որ ամէն անպիտան, անգութ ու անկրօն մարդիկ, իրաւունք կրնան ունենալ ըստ մեր օրինաց՝ բացարձակ իշխանութիւն ստանալու տրանց, կանանց ու տղայոց վրայ, և իրենց գողցած ու խաբէութեամբ վաստըկած ստակով գնելու զանոնք. երբոր կը

տեսնէի այս հրէշներուն բացարձակ իշխանութիւն բանեցնելնին այնչափ տղայոց, կանանց ու աղջըկանց վրայ, անիծեր եմ իմ Հայրենիքս, անիծած եմ նաեւ բոլոր մարդկութիւնը։

— Ո՛հ Օգոստինոս, ըսաւ Օֆէլիա, շատ բան ըսիր· ես կենացս մէջ և ոչ իսկ հիւսիսային կողմերն այսպիսի բան լսած էի։

— Հիւսիսային կողմե՞րը . . . պատասխանեց Սէն-Քլէր՝ բնական անտարբեր ոճով. դուք հիւսիսայինքդ պաղարիւն մարդիկ էք, ամէն բանի մէջ պաղ կը մտածէք։

— Բայց մեր խնդրոյն դառնալով ...

— Ո՛հ, ի հարկէ պէտք է որ նորէն մեր խնդրոյն դառնանք։ Կ'ուզես գիտնալ թէ ինչպէս այս անօրէնութիւնս ստացած եմ . . . դիւրին բան մ'է, այսինքն՝ ժառանգութեամբ ինծի ինկած է։ Ատենն մը գերիներն իմ հօրս ու մօրս էին, հիմայ իմս են՝ իրենց որդիքներով, որ բաւական բազմութիւն են։ Հայրս Նոր-Անգղիա ծնած էր, և հօրմէդ շատ տարբեր մարդ էր, խիստ ու երկաթի պէս պինդ էր։ Քու հայրդ Նոր-Անգղիա հաստատուեցաւ՝ որպէս զի քարերուն ու ժայռերուն վըրայ թագաւորէ· իմս՝ Լուիզիանա հաստատուեցաւ՝ որպէս զի մարդիկ ու կանայք կա-

ռավարէ։ Իսկ մայրս կարգէ դուրս կնիկ մ'էր. մարդկային բնութիւն ունէր ինքն ալ, բայց վրան մարդկային տկարամտութիւն մը կամ սխալմունք մը չէ երեւցած, և ով որ դեռ զինքը կը յիշէ, գերիները, բարեկամները, ազգականք, ամէնքն ալ իմ խօսքիս կը վըկայեն։ Մայրս շատ տարիներ անգթութենէ զիս պահեց, Աւետարանի խրատներն ինքիր վրայ կենդանացուցեր էր. Աւետարանի ճըշմարտութեանց կենդանի պատկեր մ'էր։ Ո՜հ մայր իմ, մայր իմ, ըսաւ Սէն-Քլէր՝ ձեռուըները երկինք վերցընելով, ու ելաւ անկին աթոռի մը վրայ նստաւ, ու կրկնեց.

— Եղբայրս ու ես երկուորեակք էինք, և թէպէտ կ'ըսեն՝ երկուորեակները մէկմէկու շատ կը նմանին, բայց մենք բոլորովին ընդհակառակն էինք. ինքը սեւ ու կրակոտ աչուըներ ունէր, սեւ մազեր, դէմքը կանոնաւոր ու քիչ մը թուխ. իսկ ես կապուտ աչուըներով, դեղին մազերով և աւելի փափուկ գոյն մ'ունէի։

Ինքը գործունեայ ու դիտող էր, իսկ ես երազուն և անհոգ. բարեկամաց ու հաւատարակցաց հետ առատաձեռն էր, իսկ ստորնագունից վրայ տիրող, և անհնազանդից վրայ կարգէ դուրս անգութ։ Մէկզմէկ իբրեւ

եղբայր՝ քիչ շատ կը սիրէինք. ինքը հօրս սիրելի էր, ես ալ մօրս։

Ես բնութեամբ աւելի հիւանդոտ էի, ու որ և իցէ բանէ շուտ մը կը զգացուէի, զոր հայրս ու եղբայրս չէին կրնար ըմբռնել. անով մայրս աւելի կը խնամէր զիս։ Երբոր Ալփրետին հետ կը վիճէի և հայրս ծուռ ծուռ երեսս կը նայէր՝ շուտ մը կը փախչէի մօրս խուցը, ու քովը կը նստէի։ Աչքիս դիմացն է դեռ իր գեղնած ու քաղցր կերպարանքն, անուշ ու ծանր նայուածքն. ճերմակ հագուստ մը կը հագնէր. անոր համար քանի որ զինքը կը տեսնէի՝ Յայտնութեան գրքին խօսքը միտքս կու գար՝ որ Սուրբերը ճերմակ երկայն զգեստ հագած էին, կ'ըսէ։

Ամէն բանէ աւելի երաժշտութենէ շատ համ կ'առնէր, անոր համար ժամերով երգեհոնին դիմացը նստած՝ հին եկեղեցական երգեր կ'երգէր. ես ալ գլուխս ծնկանը վրայ դրած՝ երբեմն կու լայի, երբեմն կը մտածէի, երբեմն ալ նուագարանին ձայնին մըտիկ կ'ընէի. ո՜հ, ի՜նչ մտածութիւններ կ'անցնէին մտքէս՝ որ բերնով չէի կրնար պատմել։ Ան ատեն դեռ հիմակուան պէս գերութեան գէշութեան վրայ ոչ ոք խօսք կ'ընէր։

Հայրս ազնուապետական էր. Թերեւս առաջնուց բարձր աստիճան մ'ունեցած ըլլայ, Թէպէտ խեղճ ու աղքատ ընտանիքէ առաջ եկած էր. բոլոր հին արքունեաց կերպեր ունէր. եղբայրս ալ բոլորովին անոր ելեր էր։

Ազնուապետական մը, ինչպէս որ գիտես, կարգ մը մարդիկներէ զատ՝ ուրիշ աստիճանի մարդկանց վրայ համակրութիւն չ'ունենար։ Հօրս դիմացն ալ՝ ճերմակները միայն յարգ մ'ունէին։ Եւ իրաւցընէ, չեմ տեսած իրեն պէս իր հաւասարակցաց հետ արդարութեամբ վարուող մարդ մը. իսկ սեւերն և խառնածիններն՝ անասնոց և մարդկանց մէջ տարբեր աստիճան մը կը համարէր։ Թէ որ հարցընէր մէկն իրեն թէ արդեօք սեւերն անմահ հոգի ունի՞ն, կարելի է որ տարակուսական կերպով պատասխան տար. վասն զի ինքը հոգւոյ անմահութեան վրրայ շատ չէր մտածեր։ Կրօնական զգացմունք չունէր. զԱստուած կը յարգէր՝ իբրեւ բանական էակներուն գերագոյն գլուխը։ Ձեռքին տակը գրեթէ հինգ հարիւր սեւ կ'աշխատցընէր։ Իւր բանին գործին մէջ կարգէ դուրս անողոքելի ու ճիշտ էր, և իր ամէն հրամաններուն անվրէպ կատարումը կը պա-

հանջէր։ Իսկ իր հրամանները կատարողներն էին ստասաց, աշխատութենէ փախչող ու գող գերիներ. ա՛լ մտածէ թէ ատոնցմէ ճշտութիւն պահանջելու համար ի՛նչ աստիճանի անգութ ու խիստ կերպեր ի գործ կը դնէր, որ ինծի պէս զգայուն բնութեամբ տղայ մը չէր կրնար տեսնել։

Հայրս իրեն օգնական մ՚ունէր՝ բարձրահասակ և ուժով մարդ մը, Ուէյմլընդ գաւառը ծնած, և իր անգութ արուեստին մէջ շատ վարպետ. մայրս ասոր երեսն անգամ չէր ուզեր նայիլ, ես ալ նոյնպէս. բայց ինքը հօրս սիրտը վաստըկած էր, ու գրեթէ բոլոր մեր երկիրներուն բացարձակ հրամանատարն եղեր էր. այս մարդս Սղուպս կ՚ըսուէր։

Ես դեռ այն ժամանակ տղայ էի, բայց ան ատենէն սիրտս մարդասիրական գութ մը կը զգայի։ Բոլոր օրը անտառներուն ու դաշտերուն մէջ սեւերուն հետ ատենս կ՚անցընէի, անով շատ սիրելի եղայ անոնց. իրենց ամէն նեղութիւններն ինծի կը պատմէին. ես ալ մօրս հետ մէկ եղած՝ կը ջանայինք կերպով մը անոնց եղած անիրաւութեան դարման մ՚ընել։ Կամաց կամաց շատ անգթութիւններ պակսեցուցինք, և սըր-

տանց կ՚ուրախանայինք մեր ըրած բարիքնե֊րուն վրայ. բայց ինչպէս շատ անգամ կը հանդիպի՝ ունեցած սաստիկ եռանդէս՝ քիչ մը չափէն դուրս ելայ։ Սղուպս սկսաւ հօրս գանգատ ընել՝ թէ ա՛լ իշխանութիւն չմնաց իր ձեռքը, և թէ՝ ինքը ա՛լ չի կրնար գե֊րիները կառավարել, որով և սպառնացաւ նաեւ թողուլ երթալ։

Հայրս՝ թէպէտ մօրս հետ շատ բանի աչք գոցելով կը վարուէր, բայց մտքին դրածէն ալ ետ չկենալով մեր ու գերիներուն մէջ պատուար կանգնեցաւ։ Օր մը յայտնապէս մօրս գրուցեց թէ տանը մէջի գերիներուն ինչ կ՚ուզես ըրէ, դու տէր ես. բայց դուր֊սը աշխատողներուն չեմ ուզեր որ խառ֊նուիս։ Զինքը իրաւ շատ կը սիրէր հայրս, և իր խօսքը ամենէն վեր կը համարէր, բայց թէ որ մօրս տեղ երկինքէն իջած մէկն ալ ըլլար՝ նոյն բանն անոր ալ պիտի գրուցէր, թէ որ տեսնէր թէ իր մտքին դրածին դէմ կը կենայ։

Շատ անգամ կը տեսնէի որ մայրս հօրս հետ այս գերիներուն խեղճ վիճակին վրայ սրտաշարժ կերպով կը խօսէր. հայրս ալ քաղաքավարութեամբ՝ բայց պաղ արեամբ՝ իրեն մտիկ ընելէն վերջը, այնչափ խօսելուդ

հետեւանքն այն է, կ՚ըսէր, որ Սղուպը ճամբայ դնեմ. ես ի՞նչպէս անկէ բաժնուիմ, որ ճիշտ, գործունեայ, փորձ ու մարդասէր մէկն է, և իր վիճակին ամէն կատարելութիւնները վրան ունի։

Հայրս՝ ամէն անգթութեանց մէջ՝ մէկ պատճառանք միայն գտեր էր ինքզինքն արդարացընելու. բոլորովին կատարեալ մարդ չենք կրնար ըլլալ, կ՚ըսէր. եթէ Սղուպս քիչ մը պախարակելու կերպեր ալ ունենայ՝ պէտք է իր կատարելութեանց հետ բաղդատել։ Ամէն կառավարութիւն իրեն խստութիւնն ալ ունի. մասնաւոր դիպուածներու համար՝ ընդհանուր կանոններն ոտքի տակ չենք կրնար առնել։ Բոլորովին տէրութեան պաշտօնէի մը կերպ ունէր Հայրս. և իր այս անտարբեր կերպերով կարող էր բոլոր ազգ մ՚ընկճել ու ջախջախել՝ առանց ամենեւին այլայլելու։ Մայրս վերջապէս յուսահատելով՝ իր դիտաւորութիւնները մէկդի դրաւ ու լռեց։ Չես կրնար ըմբռնել թէ ի՞նչպէս սրտէն արիւն կ՚անցնէր՝ երբոր անտանելի անգթութիւններ ու անիրաւութիւններ կը տեսնէր. ուստի ուրիշ հնարք չգտնելով՝ սկսաւ իր տղոց հաղորդել իր սկզբունքները։ Բայց տղաք որչափ ալ դաստիարակուէին՝ երբոր

մէյմ'աչուըննին բացուի և ազատութիւն ունենան՝ բնութեամբ ինչ որ են՝ գրեթէ ան կը մնան։ Ալփրետ ազնուապետ էր բնութեամբ, այնպէս ալ մեծցաւ, և մօրս ամէն ջանքին ու խրատուց հակառակ՝ խօսքով ալ, մտքով ալ բոլորովին ազնուապետական մնաց։

Գալով ինծի՝ մօրս խրատները մինչև արիւնս թափանցած էին. Հօրս կարծեաց յայտնապէս հակառակ ոչ երբեք կը խօսէր, ամենևին իրեն դէմ չէր դներ. բայց իր ծանր կերպովը տարբեր տպաւորութիւն մը կը ձգէր իմ սրտիս մէջ, տարբեր զգացում մը կու տար՝ ուրիշ աչքով նայելու մարդկեղէն ամենախեղճ արարածոց վրայ ալ։ Դեռ մըտքէս չ'ելլեր. օր մը դէպի երկինք նայելով՝ ըսաւ. — Օգոստինոս, նայէ մէյմը. սա բոլոր աստղերը պիտի կործանին, բոլոր երկինք պիտի ոչընչանայ, բայց մեր գերիներէն ամենախեղճին ամենաթշուառին ալ հոգին յաւիտեան կենդանի պիտի մնայ, վասն զի Աստուծոյ պէս անոր հոգին ալ անմահ և յաւիտենական է։

Մայրս քանի մը հին սակաւագիւտ պատկերներ ունէր. ասոնցմէ մէկը՝ որ կարգէ դուրս տպաւորութիւն ըրած էր վրաս, Յի-

սուսի ի ծնէ կոյրը բժշկելը կը ներկայացընէր. — Նայէ, Օգոստինոս, ըսաւ օր մը. այս կոյրը խեղճ աղքատ մ'էր, բայց սակայն Յիսուս զինքը հեռուանց չուզեց բժըշկել, այլ քովը կանչեց ու ձեռքը վրան դնելով բժշկեց. այս բանս աղէկ միտքդ պահէ, տղաս: Թէ որ իր ձեռքին տակ երկայն ատեն մեծնալու ըլլայի, շատ գեղեցիկ սկըզբունքներ պիտի ունենայի հիմայ, սուրբ մը կրնայի ըլլալ: Բայց ափսոս, հազար ափսոս, տասուերեք տարեկան իրմէ բաժնուեցայ ու մէյմ'ալ չտեսայ զինքը:

Մէն—Քլէր քիչ մ'ատեն լռեց՝ ձեռուըները ճակտին տնելով, վերջը նորէն գլուխը վերուց և ըսաւ.

— Ի՜նչ խեղճ բան է այս մարդկային բնութիւնը, որուն առաքինութեան շատ անգամ մասնաւոր դիպուած մը, տեղը, բնական խառնուածքն ու պաստիրալակութիւնը կ'օգնեն ու կը դիւրացընեն: Նայէ մէյմը, օրինակի համար, քու հայրդ այնպիսի երկրի մը մէջ կը բնակի՝ ուր ամէն մարդ հաւասար ու ազատ է, և իր ազատութիւնը անվախ ու անկասկած կը վայելէ. ինքն հիմայ գերեաց ազատութեան ընկերութեան մ'անդամ գրուած է, անոր համար զմեզ

հեթանոսի տեղ կը դնէ. թէպէտեւ իրեն բնական խառնուածքով, իր սովորութիւններով՝ ամենեւին հօրմէս տարբերութիւն չունէր. այս բանիս հազար ու մէկ փորձ դիմացդ կրնամ շարել։ Հօրս պէս ինքն ալ բնութեամբ խիստ, բուռն ու տիրապետել կը սիրէր, բայց դիպուածով ռամկապետական ընկերութեանց մէջ ինկաւ, անոնց սկզբունքները լսելով լսելով՝ իրեն ընտանեցան. բայց ըստ ինքեան ինքն ալ հօրս պէս ազնուապետական էր, եւ անոր պէս հինգ կամ վեց հարիւր գերի կը պահէր։

Օֆէլիա ձեռքի գուրպան մէկդի դնելով՝ պատրաստուեցաւ պատասխան տալու, բայց Սէն–Քլէր անոր խօսքը բերնէն առնելով՝ վրայ բերաւ։

— Քու ըսելիքդ գիտեմ. ասով ըսել չեմ ուզեր թէ այս երկուքն ամէն կերպով իրարու նման էին։ Մէկը բոլորովին իր բնութեան հակառակ ընկերութեան մէջ գտնուեր է, մէկալն ալ ընդհակառակն բոլորովին իր բնութեան յարմար մարդկանց մէջ ինկեր է. անոր համար մէկը վերջին աստիճանի ռամկապետ եղեր է, մէկալն ալ անոր հակառակ բոլորովին ազնուապետական բռնաւոր մը դարձեր է։ Թէ որ երկուքն ալ Լուի-

զիտնայի մէջ բնակած ըլլային՝ մէկ կաղա-պարէ թափուած գնտակներու պէս իրարու նման կ՚ըլլային։

— Դու՝ քու ծնողքդ ու ազգականներդ անարգող մ՚ես, ըսաւ Օֆէլիա։

— Ես ամենեւին հայրս ու հօրեղբայրս նախատելու համար չեմ ըսեր աս բանս, պատասխանեց Սէն-Քլէր, թէպէտ շատ ալ յարգանք քովս չգտնուիր։ Հիմայ մեր պատմութեան դառնալով, երբոր հայրս վախճանեցաւ՝ մեր երկու եղբարց մէջ ժառանգութիւնը բաժնեցինք։ Ալփրետի պէս մէկը չեմ տեսած՝ որ այնչափ ազնուական կերպ բանեցընէ իր հաւասարակցաց հետ. ուստի մեր ամէն բանն առանց ամենեւին պզտիկ տհաճութեան մը՝ շուտ մը կարգի մտաւ։ Երկիրներն ընկերութեամբ բանեցընել սկսանք. Ալփրետ ինծմէ քառապատիկ գործունեայ ըլլալով և բանէ աղէկ հասկընալով, քիչ ատենուան մէջ շատ առաջ եկաւ ու մեծ երկրատէրներէն մէկն՝ եղաւ։

Բայց երկու տարիէն վերջը շատ կերպ փորձ փորձելէս ետեւ՝ ա՛լ կարելի չեղաւ որ օգտակար կերպով միատեղ առաջ երթանք։ Քանի որ չորս կողմս՝ չորս հինգ հարիւր գերի կը տեսնէի, որոնց և ոչ անունը գի-

տէր, մանաւանդ թէ և ոչ մէկին մէկին կըր-
նայի ճանչնալ, և վրանին ալ մասնաւոր
փոյթ մը չէի զգար, զանոնք կառավարելն
ինծի անտանելի բան մը կ'երեւար ։ Վասն
զի քանի որ կը տեսնէի որ պէտք է զա-
նոնք գնեմ, ծախեմ, կերակրեմ ու ամէն օր
կենդանեաց պէս աշխատելու հանեմ, իրենց
հանգստեան ու աշխատութեան չափ դնեմ,
որ օրուան վրայ ջանամ որ աւելի շահ հա-
նեմ այն խեղճ գերիներէն, զիրենք սան-
ջեմ, անոնց կենաց անանօրինելի հարկաւոր
բաներէն ալ զրկեմ զիրենք, զանոնք աշ-
խատցընելու համար՝ վրանէրնէն զգուշու-
թիւն, պատիժ, ծեծ չպակսեցընեմ, այս բա-
ներուս չէի կրնար դիմանալ ։ Կը սարսափէի
քանի որ մօրս ինծի սորվեցուցած այս խեղ-
ճերուն անմահ հոգւոյն յարգը կը յիշէի ։
Ի՞նչ զուր պատճառանք մ'է՝ որ կ'ըսեն թէ
գերիներն իրենց գերութիւնը կը սիրեն. և
ձեր հիւսիսային կողմի քանի մը փիլիսո-
փաները կերպով մը զմեզ արդարացընելու
համար, գերութեան վրայ մեծամեծ գովեստ-
ներ կու տան ։ Մենք այս բաներս իրենցմէ
աղէկ գիտենք. կարելի՞ բան է որ մարդ մը
զոհ ըլլայ՝ ամէն օր տարին տասնուերկու ա-
միս՝ միակերպ առտուընէ մինչեւ իրիկուն՝

անդադար աշխատելու խիստ տիրոջ մը ձեռքին տակ, առանց ամենեւին ազատութիւն մը գտնելու. և ուրիշ վարձք չունենալով՝ բայց եթէ տարին երկու վարտիք ու զոյգ մ'ալ կօշիկ, խեղճ տեղ մը պառկելու, և կերածն ալ հազիւ ապրելու չափ։ Ո՞վ կրնայ այսպիսի ողորմելի թշուառ կեանքի մը գոհ ըլլալ. կ'ուզէի որ այս բողոքներն անձամբ փորձէին. սիրով զիրենք կը գնէի, և առանց խիղճ ընելու կ'աշխատցընէի։

— Բայց ես կը կարծէի, ըսաւ Օֆէլիա, որ դուք գերեստացութիւնն օրինաւոր և Սուրբ Գրքէ թոյլ տուեալ կը համարիք։

— Եւ ոչ մտքէդ անցուր. դեռ մենք այն աստիճանին չենք հասած։ Ալփրետ անգամ, որ բոլորովին բռնաւոր կերպ մ'ունի՝ այսպէս չի մտածեր. ինքն իր գործոց սկզբունք դրած է այն հին առածը՝ թէ իրաւունքը հզօրագոյնն է։ Շատ պատճառներով կը ցուցընէ որ ամերիկացի երկրակալներուն իրենց սեւերուն հետ ունեցած վարմունքն՝ ամենեւին նման է Անգղիոյ ազնուապետականներուն և հարուստներուն՝ իրենցմէ ստորնագոյնից հետ ունեցած վարմանն, այսինքն թէ տկարները հոգւով մարմնով իրենց շահուն ու իրենց հանգստութեան համար կը գոր-

ծածեն։ Ալփրետ առանց ըրածն ալ կը գովէ, և առանց ծառայականութեան՝ քաղաքականութիւն չի կրնար ըլլալ, կ'ըսէ։ Պէտք է դասակարգ մը ստորնագունից ըլլայ, կ'ըսէ, բոլորովին նիւթական աշխատութեանց համար, և դասակարգ մ'ալ հարուստ ու պարապորդ վերնագունից, որոնք իրենց միտքը կրթելու պարապին։ Ահաւասիկ ինքն այսպէս կը մտածէ, որովհետեւ ազնուապետական ծնած է. իսկ ես չեմ կրնար այդ կարծեաց համոզուիլ, վասն զի անոր հակառակ ես ի բնէ ռամկապետական եմ։

— Ի՞նչպէս Անգղիա և Ամերիկա իրարու հետ կրնան բաղդատուիլ, ըսաւ Օֆէլիա։ Անգղիոյ մէջ աշխատաւորներն ոչ երբեք կը ծախուին, ոչ ծեծ կ'ուտեն և ոչ իրենց զաւակներէն բռնութեամբ կը բաժնուին։

— Անգղիոյ մէջ ալ գործաւոր մը՝ իրեն աշխատութիւն տուողէն կը կախուի բոլորովին, իբրեւ թէ անկէ գնուած ըլլար։ Գերիներու տէրերն՝ իրենց գերիները կրնան ծեծի տակ սպաննել, Անգղիոյ հարուստներն ալ՝ գործաւորները սովէն մեռցընել։ Իսկ թէ որ ընտանեկան սէրը կ'ըսես՝ ո՞րն աւելի անգթութիւն է. ընտանիքը իր աչքին առջեւ սովէն մեռնի՞լը տեսնել՝ թէ անոնց ծախուիլը. քեզի կը թողում մտածելու։

— Բայց աս ըսելով՝ գերութիւնը չ'ար-դարանար, թէ և ուրիշ պատռնագոյն բաներէն աւելի պառն չըլլայ։

— Իմ միտքս ալ ամենեւին ջատագո-վել չէ գերեստացութիւնը։ Մանաւանդ թէ ցուցընել է՝ թէ մենք ինչպէս մարդկութեան օրէնքը կերպով մը ոտքի տակ կ'առնունք։ Մարդ մը ձիու պէս գնելը, ակռաները քըն-նելը, իրեն կազմուածքն և ոյժը փորձելը, միով բանիւ՝ հոգի և մարմին ունեցող մը՝ կենդանւոյ պէս գնելն ու ծախելը՝ քաղաքա-կանացեալ մարդու մ'աչքին աւելի գէշ կ'ե-րեւնայ՝ քան թէ որ և իցէ ուրիշ անիրա-ւութիւն, թէպէտ և ըստ ինքեան անիրաւու-թիւնն միշտ անիրաւութիւն է. ինչպէս հոս՝ նոյնպէս ուրիշ տեղուանք՝ մարդկային ըն-կերութեան մէկ մասը՝ մէկալ մասին հան-գըստութեան և շահուն զոհ եղած է։

— Ես այս ըսածիդ վրայ ոչ երբեք այդ կերպով մտածած էի, ըսաւ Օֆէլիա։

— Ես Անգղիոյ շատ կողմերը պտըտեր եմ, և անձամբ քննած եմ այն կողմերու վարի աստիճանի մարդկանց վիճակը, անոր համար իրաւունք կու տամ Ալփրետի, եր-բոր կ'ըսէ թէ — Մեր գերիներուն վիճակը Անգղիոյ շատ կողմի բնակչաց վիճակէն ա-

ւելի երջանիկ է։ Այս լսելով Ալփրետն անգութ մարդու տեղ չեմ ուզեր դնել․ ինքը անհնապանդից դէմ շատ խիստ և անգութ է, և իր կամաց դէմ խօսողին կամ կեցողին՝ սաստիկ վրէժխնդիր կ'ըլլայ, ինչուան կը սպաննէ առանց խիղճ ընելու․ բայց ուրիշ կողմանէ ամէն ջանք կ'ընէ որ իր գերիներուն բնակութիւնն ու կերակուրն աղէկ հոգացուի։

Ես քանի որ իրեն հետ միատեղ կը բնակէի՝ ետեւէ եղայ որ քիչ մը գերիներուն կրթութեան հոգ ունենայ. հազիւ համոզուեցաւ ու քահանայ մը կանչեց՝ որ ամէն կիրակի գայ ու քրիստոնէական վարդապետութիւն սորվեցընէ, թէպէտ մտքէն համոզուած էր՝ որ խեղճ մարդը զուր տեղ ժամանակը պիտի կորսընցընէր, իբրեւ թէ անասնոց բան սորվեցընելու ըլլար։ Իրաւ ալ է՝ որ շաբաթը մէկ անգամ և քանի մը ժամ արուած կրթութիւնն՝ այնպիսի մարդկանց վրայ շատ տարբերութիւն մը չ'ընէր, որոնք ի բնէ նիւթական են և բոլոր շաբաթը աշխատութեամբ կ'անցընեն։ Այս բանիս կրնան վկայել թէ' Անգղիոյ արհեստաւորաց և թէ' մեր գերիներուն վրայ աշխատող եկեղեցականները․ այսու ամենայնիւ երբեմն զարմանալի բաց-

տուութիւններ կը գտնուէին. որովհետեւ սեւերը ճերմակներէն շատ աւելի կրօնական զգացում ունին։

— Հողատէրութիւնդ ի՞նչպէս ձեռքէ ձըգեցիր։

— Քիչ մ'ատենէն Ալփրեա ալ տեսաւ որ ես այնպիսի բաներու ամենեւին յարմարութիւն չունիմ. և իմ ուզածիս պէս նոր կարգադրութիւններ ընելով՝ գերեաց վիճակը շատ աւելի աղէկցընելէն վերջը ալ՝ տեսաւ որ դեռ զիս գոհ չկրցաւ ընել։ Վասն զի բուն իսկ գերեստացութիւնն ինծի զզուելի էր. կը զարշէի քանի որ միայն հարստանալու մտքով այս արանց ու կանանց առուտուրը կը տեսնէի, ու անոր հետեւանք այնչափ անգթութիւններ մտքիս դիմացը կը բերէի։ Եւ ուրովհետեւ ես ալ ծոյլերու գլուխ եմ, գերեաց մէջի ծոյլերուն վրայ մասնաւոր գութ մ'ունէի. և երբոր անոնցմէ մէկը ծուլութեան համար իրեն կողովին[1] տակը քար կամ աւազ կը լեցընէր՝ որ ծանր կշռէ, ես զինքը կը պաշտպանէի, ու թող չէի տար որ պատժեն.

1. Երկիրներու մէջ աշխատող գերիները չափ ունին, որ օրուան մէջ եթէ այնչափ բան չժողվեն՝ ծեծ կ'ուտեն։

վասն զի ես ալ ըլլայի իրեն տեղը՝ նոյն բանը պիտի ընէի։

Անով ինչպէս ատեն մը հօրս հետ՝ նոյնպէս ալ եղբօրս հետ միակերպ կռուի մէջ էի։ Ալփրեա ինծի խորհուրդ տուաւ որ հօրս ինծի ձգած մասն ու Նոր-Օրլէանի տունը առնեմ ու զատ ապրիմ, և իրեն թողում երկիրները. այս կերպով մէկմէկէ բաժնուեցանք, ու ես եկայ հոս բնակեցայ։

— Ուրեմն գերիներդ ինչո՞ւ չազատեցիր։

— Սիրա չըրի. և չէի կրնար ալ զանոնք իմ վաստակի գործիք ինծի ծառայեցընել. անոր համար միտքս դրի որ ունեցածս բոլոր անոնց հետ միասեղ ուտեմ։ Ոմանք շատ տարինէ ի վեր ծառայութեանս մէջ ըլլալով՝ վրանին գութ ունիմ. պզտիկներն ալ անոնց տղաքն են, ասով ամէնքն իրենց վիճակին գոհ են։

Քիչ մը լուռ կենալով ու շունչ առնելէն վերջը՝ աւելցուց Սէն-Քլէր. Ատեն մը մտքէս կ'անցնէր նոր բան մ'ընելու աս աշխարհիս վրայ, քան թէ բոլորովին ինքզինքս անոր ընթացքին տալ։ Մտածեցի որ ազատիչ ըլլամ գերեաց ու հայրենիքս այս նախատինքէն խալըսեմ։ Կարծեմ ամէն երիտասարդ՝ ատեն մ'ունի որ կարգէ դուրս բաներ կը մտածէ. բայց ...

— Ինչո՞ւ համար մտքիդ դրածը չկատարեցիր, ըսաւ Օֆէլիա. պէտք էիր ձեռքդ մաճին վրայ դնել և վերջը ետեւդ չնայէիր։

— Ո՛հ, կարծածիս պէս չգնացին բաները, ու ես ալ Սողոմոնի պէս դառնացայ աշխարհէս. և այս բանս՝ ինչպէս իրեն՝ նոյնպէս ալ ինծի իմաստութեան պատճառն էր կարծեմ։ Անկէ ետքը իմ ամէն մեծամեծ փափաքներս մէկդի դնելով՝ գետի մ'երեսը ձգուած փայտի կտորի մը պէս՝ թողուցի ես զիս աշխարհիս ընթացիցը՝ որ ուզածին պէս զիս քշէ տանի։ Ալփրես քանի որ կը տեսնէ զիս՝ կը յանդիմանէ, և ես պատասխան չունիմ տալու, որովհետեւ գոնէ ինքն իր միտքը դրածին համեմատ կը գործէ, իսկ իմ կեանքս վախճանագուրկ բան մ'է։

— Կրնա՞ս աս անգործ կեանքիդ վրայ գոհ ըլլալ։

— Գո՛հ ըլլա՞մ... Ի՞նչպէս գոհ կրնամ ըլլալ, որ հոգւով մարմնով կը պախարակեմ զայն։ Բայց մեր առջի խօսքին դառնալով գերութեան վրայ ունեցած կարծիքս, որ քիչ մ'առաջ բացատրեցի, իմս միայն չէ, այլ շատ մարդիկ տեսայ որ ինծի պէս կը մտածեն։ Հայրենիքնիս այս անօրէնութեանց տակ կը հեծէ, և ասոր հեծեւանքը ոչ միայն

գերիները կը քաշեն , այլ աւելի եւս տէ-
րերը կը կրեն ։ Անգղիացւոց ազնուապետու-
թիւնը նոյն վիճակը չունի՝ ինչ որ մենք ու-
նինք, վասն զի իրենք այս վարի աստիճա-
նի աւրուած մարդկանց հետ հաղորդակցու-
թիւն չունին ։ Իսկ հոս մեր գերիները՝ կեան-
քերնին մեր տանը մէջ կ'անցընեն , մեր
տղաքն ալ բոլոր օրը անոնց հետ են . և
մեզմէ առաջ այս գերիներն՝ մեր տղոցը վրայ
իրենց սկզբունքները կը տպաւորեն. և թէ
որ մեր Վարդիկն ալ բնութեամբ ազնիւ չըլ-
լար՝ մինչեւ հիմայ շատոնց անոնցմէ աւ-
րուած էր ։ Գերիներն առանց դաստիարա-
կութեան ու կրթութեան մեծցընելը և մեր
տղաքներն անոնց մէջ ձգելը ուրիշ բան չէ,
բայց եթէ թողուլ որ գերեաց մէջ ծաղկի
հիւանդութիւն իյնայ , ու անհոգ կենալ և
կարծել թէ մեր տղաք անոնցմէ կը զգու-
շանան ու չեն ապականուիր ։ Եւ սակայն մեր
քաղաքական օրէնքները կ'արգելուն սեւե-
րուն կրթութիւն տալը , վասն զի աղէկ գի-
տեն որ դաստիարակութեան սկզբունք մը
տալով անոնց՝ գերութեան հիմը կը խախ-
տի . որով եթէ մենք ազատութիւն ալ չտանք,
անոնք բռնի իրենք զիրենք կ'ազատեն ։

— Ուրեմն այս բաներուս ծայրն ո՞ւր պի-

տի երթայ. դու ի՞նչ կը կարծես, ըսաւ Օ-
ֆէլիա։

— Ջեմ գիտեր. այս սայոյգ է՝ որ հիմայ
բոլոր աշխարհք այնպիսի շարժում մը կայ՝
որ շուտ կամ ուշ՝ բան մը պիտի փրթի.
անոր համար բոլոր Եւրոպա ու Ամերիկա
մեծ սրտաղողի մէջ են։ Մայրս ինծի շատ
անգամ կ'ըսէր՝ թէ մօտ է այն օրը որ Քրիս-
տոս պիտի թագաւորէ ու բոլոր մարդիկ եր-
ջանիկ ու ազատ պիտի ըլլան։ Երբոր պզտի
տղայ էի՝ սաէպ ինծի Եկեսցէ արքայութիւն
քո ըսել կու տար։ — Շատ անգամ մտքէս
կ'անցնի որ ազգաց այս շարժումը, այս մե-
ռեալ ոսկերաց մէջէն ելած դղրդումը՝ յա-
ռաջընթաց կարապետ են Քրիստոսի թագա-
ւորութեան։ Բայց ո՞վ կրնայ այդ օրը գու-
շակել։

— Օգոստինոս, ըսաւ Օֆէլիա ծանրու-
թեամբ մը, կը տեսնեմ որ արքայութենէ
շատ հեռու չես։

— Շնորհակալ եմ վրաս ունեցած բարի
համարմանդ, բայց ես՝ մէյմը կ'իջնեմ մէյ-
մը կ'ելլեմ. տեսականաբար մինչեւ երկինք
կ'ելլեմ, իսկ երբոր բանը գործնականին կու
գայ՝ մինչեւ երկրիս խորը կ'իջնեմ... Բայց
ահա զանգակը կը զարնէ, երթանք թէյ

խմենք․ յուսամ թէ անկէ ետեւ ա՛լ չես զանգատիր որ ես ալ ծանր մտածութեանց տէր չեմ։

Թէյի ժամանակ Մարիամ՝ Բրիւ ապլային մահուան դիպուածները պատմեց։

— Հիմայ հրամանքդ պիտի կարծես, ըսաւ Մարիամ Օֆէլիայի, որ մենք հոս ամէնքնիս ալ բարբարոս մարդիկ ենք։

— Կարծեմ աւելի գործն է բարբարոսական, պատասխանեց Օֆէլիա, քան թէ դուք ամէնքնիդ ալ բարբարոս։

— Գիտցած ըլլաս, ըսաւ Մարիամ, որ այս գերիներուն հետ գլուխ ելլելն անկարելի է․․ ոմանք այնպէս անպիտան են՝ որ ապրելու անգամ արժանի չեն․ անոր համար ես ալ այսպիսի անպիտաններուն վրայ ամենեւին գութ չեմ զգար․ թէ որ իրենք աղէկ ըլլային՝ այս թշուառութիւններն իրենց չէին հանդիպեր։

— Բայց, մայրիկ, ըսաւ անդիէն Վարդուհին, ատ խեղճ կնիկը շատ թշուառ ըլլալուն համար ինքզինքը խումի տուեր էր։

— Ան ալ իրենք զիրենք արդարացընելու պատճառանք մ'է։ Ես ալ շատ անգամ թշուառութեանց մէջ կ'իյնամ, և կարծեմ թէ իմ քաշածներս անոնց քաշածներէն շատ

վեր են. բոլոր ըրածնին չարութիւն է, անով իրենց անպիտանութիւնը կը ծածկեն։ Ոմանք կան որչափ խստութիւն ընես՝ չեն շըտկուիր. տեսեն մը հայրս այնպէս ծոյլ գերի մ՚ունէր՝ որ չաշխատելու համար՝ կը փախչէր մօտակայ ճահիճներուն մէջ կը պահուըտէր, ու երբեմն երբեմն կ՚ելլէր գողութիւն ու ամէն տեսակ անկարգութիւն կ՚ընէր. այս մարդս շատ անգամ բռնուեցաւ, շատ անգամ ծեծ կերաւ, բայց անօգուտ. վերջապէս օր մ՚ալ բռնուելով՝ սաստիկ ծեծ կերաւ, ու փախաւ նորէն ճահիճներուն մէջ ինկաւ ու հոն մեռաւ. ամենուն պատճառ չունէր այնպէս փախչելուն, որովհետեւ հօրս գերիները շատ հանգիստ վիճակ ունէին։

— Եւ սակայն անգամ մը, ըսաւ Սէն-Քլէր, ես գերի մը նուաճեցի, զոր ոչ ոք կրցեր էր զսպել։

— Դո՞ւ, ըսաւ Մարիամ, ի՞նչպէս. շատ հետաքրքիր եմ այս քաջութիւնդ գիտնալու։

— Բարձրահասակ սեւ մ՚էր, Ափրիկէի առիւծ կը նմանէր, անունն ալ Սկիպիոն։ Ոչ ոք կրցեր էր զանիկայ գործածել. ձեռքէ ձեռք անցնելով վերջը վերջը Ալփրետ զանիկայ գնեց, միտքն ալ դնելով որ պիտի

կարենայ զանիկայ կառավարել։ Օր մ՚անի-
կայ իրեն վերակացուն աղէկ մը ծեծելէն վեր-
ջը՝ ձգեր փախեր էր։ Այս բանս մեր բաժ-
նուելէն վերջն էր. ես ալ նոյն օրը եղբօրս
երկիրները գնացեր էի։ Ալփրետ սաստիկ
բարկացեր էր. ես լսի իրեն որ յանցանքը
տիրոջն է, և իրեն խօսք ալ տուի որ զա-
նիկայ հնազանդեցընեմ. ուստի մէջերնիս
խօսք կրինք որ եթէ գանեն՝ ինծի բերեն։
Վեց եօթը հոգի մէկ եղանք, ու հրացաննե-
րով և խել մ՚ալ շներով՝ գնացինք զինքը
եղջերուի մը պէս որսալու։ Թէպէտ ես միջ-
նորդ էի, սակայն իմս ալ քիչ մը գլուխս
տաքցաւ. շներն արձըկեցինք, ձիերով աս-
դիս անդին սկսանք վազել. վերջապէս շնե-
րուն հաջելէն իմացանք ատոր ո՛ւր պահուը-
տիլը։ Խեղճը սկսաւ բոլոր ուժովը դէմ
դնել ու մէկ կողմանէ ալ փախչիլ կը նայէր.
գնաց վերջապէս եղէգի խիտ անտառի մը մէջ
մտաւ. բայց նեղը մտնելով՝ սկսաւ շներուն
դէմ կռուըտիլ, ու իրեք հատը մինակ բռըն-
ցի հարուածով սատկեցուց. բայց հրացա-
նի գնտակէ մը զարնուելով՝ ոտքէն վիրա-
ւորեցաւ և արիւնլուայ վար ինկաւ։ Ես մէ-
կէն վրան վազեցի, և շներն ու մարդիկնե-
րը՝ որ կ՚ուզէին խեղճը սպաննել, մէկդի

ըրի, ու Ալփրեաէն գնելով տարի տուն. տասնըհինգ օր անցաւ չանցաւ՝ այնպէս ընտանեցաւ ինծի հետ, որ ա՛լ փախչիլը մաքէն չէր անցըներ։

— Բայց ի՞նչպէս ըրիր, հարցուց Մարիամ։

— Ամենապարզ ոճ մը բռնեցի. թուն իմ բնակած խուցերէս մէկուն մէջ դրի զինքը. աղէկ անկողին մը տալ հրամայեցի. մէկէն բժիշկ, վիրաբոյժ կանչեցի, ու մինչեւ որ բժշկուեցաւ՝ վրան աղէկ հոգ տարի։ Քիչ մ'ատենէն իրեն ազատութեան թուղթը ձեռքը տուի, ու ըսի իրեն որ ա՛լ ազատ է բոլորովին, ուր որ կ'ուզէ երթայ, ու իր գլխին ճարը տեսնէ։

— Գնա՞ց, հարցուց Օֆէլիա։

— Չէ. իրեն այնչափ ազատասիրութենէն վերջը, մէկէն աչքիս դիմաց թուղթը պատառեց և ա՛լ քովէս չուզեց բաժնուիլ։ Ես իրեն պէս հաւատարիմ ծառայ մը չեմ ունեցած կենացս մէջ։ Քիչ մր վերջը քրիստոնեայ եղաւ, և տղու մը պէս անուշ բարք մը առաւ։ Բոլոր տունս իր ձեռքն էր, և շատ աղէկ կը նայէր։ Այս վերջի մաղձացաւը զինքն ալ առաւ տարաւ, մանաւանդ թէ ինքն իր կեանքն ինծի համար զոհ

ըրաւ. վասն զի երբոր ես մաղձացաւէ բըռնուած ծանր վտանգի մէջ էի՝ Սկիպիոն քովէս չէր հեռանար. և հազիւ թէ իր այնչափ ջանքովը քիչ մը վրայ գրի, մէյմ՚ալ նայիս ինքն հիւանդացաւ ու ճար չեղաւ զինքն ազատելու. ուրիշ մարդու մահուան վրայ այնչափ չեմ տրտմած, որչափ սա խեղճին համար վշտացայ։

Վարդուհին այս խօսակցութեանց ժամանակ կամաց կամաց հօրը մօտեցեր էր, և բերանսուբաց իրեն մտիկ կ՚ընէր. երբոր հայրը խօսքը լմընցուց՝ Վարդուհին ցատքեց հօրը վիզը պլլուեցաւ, ու սկսաւ լալ և հառաչել։

— Ի՞նչ ունիս, սիրելի, ըսաւ Մէն-Քլէր. Վարդուհին սրտին այլայլութենէն սաստիկ կը դողար։ — Խեղճը, կրկնեց հայրը, այսպէս բաներ չի կրնար լսել, մէկէն ջղերուն կը զարնէ։

— Չէ, չէ, հայրիկ, ըսաւ աղջիկը, ես ջղի բան չունիմ, բայց այսպիսի բաները սրտիս շատ կը դպչին։

— Ի՞նչ կ՚ուզես ըսել...

— Չեմ կրնար բացատրել. շատ բան մտքէս կ՚անցնի. Թերեւս օր մը քեզի ալ կը յայտնեմ։

— Շատ աղէկ, ըսաւ Սէն-Քլէր, մտածէ ինչ որ կ'ուզես, որչափ որ կ'ուզես, բաւական է որ չլաս, ու սիրտս չվշտացընես։ Նայէ՛ քեզի ինչ աղուոր դեղձ բերի. հիմայ եկու երթանք պարտիզին կարմիր ձկները տեսնենք։

Աղջիկը դեղձն առաւ ու հօրը հետ մէկտեղ պարտէզ ելան. քիչ ատենէն տրտմութիւնը փարատեցաւ, ու սկսաւ աղջիկին պէս ուրախ զուարթ ցատքըտել ու հօրը ետեւէն վազվռտել։

Վախնեմ քիչ մը մեր խնդրէն շատ հեռացանք ու մեր Թումմասին վրայ խօսելու տեղը՝ ուրիշ բարձր աստիճանի մարդիկներու վրայ խօսքերնիս երկնցուցինք։ Բայց թէ որ կ'ուզեն ընթերցողք, երթանք Թումմասին խուցը, որ ախոռին վրայ մաքուր՝ բայց պզտի ծակուկ մ'է, ուր խեղճ անկողնէ մը և մէկ աթոռէ զատ ուրիշ բան չկայ. գրակալ մ'ալ ունի, որուն վրայ Աստուածաշունչը և հոգեւոր երգերուն տետրակը կը դնէ։ Հոս մեր բարեկամը Նստեր՝ ծնկանը վրայ հերձաքար մ'առած՝ մեծ բանի մը զբաղած էր, որ կարծես թէ իր կարողութենէն վեր կ'երեւար։

Ընտանեաց սէրն ու կարօտն այնչափ զօրացեր էր Թումմասին սրտին մէջ, որ Վար-

դիկէն թերթ մը նամակի թուղթ ու գրիչ ուզեր էր, ու Շէլպի Օննիկին քով բոլոր սովրածն ի գործ դնել ուզելով՝ ամէն ջանք կ՚ընէր նամակ մը գրելու, որուն առջի ձեռքը հերձաքարին վրայ կը փորձէր։

Երկայն ատենէ ի վեր կրթութիւն չընելով՝ մոռցեր էր գրելը, և քանի մը գրերուն ձեւերը հանելու մեծ նեղութիւն կը քաշէր, և միտքը մնացածներն ալ չէր գիտեր թէ ինչպէս գործածէ։ Այս ասասիկ աշխատութեան ժամանակ՝ մէյմ՚ալ Վարդիկ ներս մտաւ, և թռչունի մը պէս՝ աթոռին կռնակին ելաւ, ու սկսաւ Թովմասին ետեւէն գրածը քննել։

— Օ՜, աղբար Թովմաս, այդ ի՜նչ այլանդակ ձեւերով գրեր ես։

— Փորձ կը փորձեմ խեղճ կնոջս ու տղոցս նամակ մը գրելու, ըսաւ Թովմաս աչուըները սրբելով. բայց վախեմ թէ գլուխ պիտի չկարենամ ելլել։

— Կ՚ուզե՞ս քեզի օգնեմ, Թովմաս. ես քիչ մը գիր սովրեր եմ. անցած տարի բոլոր գրերը կրնայի հանել, բայց վախեմ թէ ես ալ հիմայ մոռցած ըլլամ։

Վարդուհին ան ատեն իր ոսկեգոյն մազերով գլուխը՝ Թովմասին գլխուն սուած, անոր հետ մէկ եղաւ որ աս թուղթս գրեն.

բայց երկուքն ալ հաւասարապէս տգէտ ըլլալով՝ գրերուն ձեւերուն վրայ իրարու հետ վէճ կ'ընէին ու կը խորհրդակցէին։ Վերջապէս շատ աշխատութեամբ ու ջանքով գրերը քիչ մը ձեւ սկսան առնուլ, ու նամակն առաջ երթալ։

— Ահա այսպէս, ըսաւ Վարդուհին, հիմայ քիչ մը գրի ձեւ առաւ. ո՜հ, որչափ պիտի ուրախանան կնիկդ ու տղաքդ երբոր այս թուղթս առնեն։ Ի՜նչ մեծ անզգամութիւն են ըրեր, որ զքեզ անոնցմէ բաժներ են. բայց հօրմէս պիտի խնդրեմ ու շուտ մը զքեզ նորէն քու տունդ դարձընել։

— Իմ առջի տիրուհիս խոստացաւ ինծի որ եթէ քիչ մը դրամ ձեռք ձգէ՝ շուտ մը զիս պիտի ազատէ, ըսաւ Թովմաս. ապահով եմ որ խոստմունքը կը կատարէ։ Տիրոջս որդին՝ պարոն Ճոնիկ՝ ինծի խօսք տըւաւ որ ինքն անձամբ գայ զիս առնու, և իր խոստման իբր գրաւ՝ այս տոլլարն ինծի տուաւ։

Եւ Թովմաս զգեստին տակէն տոլլարը հանեց ու Վարդուհիին ցըցուց։

— Այն ատենը, ըսաւ Վարդուհին, հարկաւ կու գայ, շատ ուրախ եմ աս բանիս վրայ։

— Հիմայ կ'ուզեմ անոնց նամակ մը

*գրել և իմացընել ո՛ւր ըլլալս և ի՛նչ ընելս միանգամայն Փըլայէին ալ սիրտը հանգչեցընել որ իմ վիճակիս վրայ հոգ չընէ, որովհետեւ հիմայ շատ աղէկ եմ։ Խե՜ղճ կնիկ... ինծի համար ո՛րչափ վշտերու մէջ տանջուեցաւ . . .*

*— Թովմա՛ս, կանչեց Սէն-Քլէր՝ յանկարծակի ներս մտնելով։ Թովմասին ու Վարդիկին գոյնը նետեց։*

*— Ի՞նչ կ՚ընէիք, ըսաւ Սէն-Քլէր մօտենալով ու հերձաքարը տեսնելով։*

*— Բան չկայ, պատասխանեց Վարդուհին, Թովմաս թուղթ մը կը գրէ. ես ալ օգնեցի իրեն. նայէ, հայրիկ, աղէկ գրուած չէ՞ սա նամակը։*

*— Ես երկուքնուդ ալ սիրտը չեմ ուզեր կոտրել, ըսաւ Սէն-Քլէր. բայց աղէկ կ՚ըլլայ, Թովմաս, որ ինծի ձգես, ես պէտք եղածին պէս կը գրեմ։*

*— Շատ հարկաւոր է, հայրիկ, որ այս թուղթս գրուի, ըսաւ աղջիկը. Թովմասին տիրուհին խոստացեր է եղեր իրեն որ զինքը նորէն գնէ. ինքն ինծի ըսաւ։*

*Սէն-Քլէր կարծեց որ Թովմասին տիրուհւոյն խոստմունքն ալ անոնց խոստմանց կը նմանի, որ իրենց գերին ծախելու ա-*

տեն՝ զիրենք մխիթարելու համար այս խոստմունքը կու տան, և ծախելէն վերջն իրենց խոստմունքը կը մոռնան։ Ինչ և իցէ՝ Թուղթն առաւ, ու Թովմասին պատուիրեց որ ձիերը պատրաստէ՝ դուրս երթալու համար։

Նոյն իրիկուն Թովմասին Թուղթը գրուեցաւ ու Թղթատուն ալ ձգուեցաւ։

Օֆէլիա խաթունն անձանձրոյթ տանը կարգաւորութեան ուշ կը դնէր։ Դինայէն սկսեալ մինչև տանը պզտիկ սեւուկը՝ ամէնքն ալ Օֆէլիային համար կ'ըսէին Թէ շատ կարգէ դուրս խաթուն մ'է։ Հարաւային կողմէ սեւերն երբոր իրենց վերակեցուաց վրայ գոհ չեն ըլլար՝ այս մակդիրս կու տան։

Ծառայից մէջէն գլխաւորներն, Ադոլփոս, Յովհաննա և Սրբուհի՝ մտքերնին դրած էին ու կ'ըսէին ալ՝ որ Օֆէլիան խաթուն չէ, և Թէ խաթուն մ'իրեն պէս չ'աշխատիր, և Թէ կերպն ալ ու վարմունքն ալ՝ ամենևին ազնուականութիւն չունին. կը զարմանային ալ Թէ ինչպէս այսպիսի կնիկ մը Սէն–Քլէրի ազգականն եղեր է։ Մարիամ ալ մէկալ կողմանէ շատ գոհ մը չէր ցուցըներ ինքզինքը Օֆէլիայի գործունէութեան վրայ։ Իսկ Օֆէլիա առտուընէ մինչև իրիկուն այնպիսի արագութեամբ և տրտմնոք կար կ'ընէր, որ

կարծես թէ վերջին աստիճանի նեղը մտած է կարն հասցընելու. իսկ երբոր մութը կը կոխէր՝ կարը կը ծալլէր ու գուրպան ձեռք կ'առնէր ու կը սկսէր արագ արագ հիւսել։ Միով բանիւ՝ իր աշխատասէր կերպը տես-նողին՝ սիրտը կը բացուէր։

## ԳԼՈՒԽ Ի.

### Դուքսի

Առաւօտ մը երբոր Օֆէլիա տնական աշ-խատութեանց զբաղեր էր, Մէյմ'ալ Սէն-Քլէրի ձայնը լսեց, որ սանդուղին վարէն զինքը կը կանչէր։

— Եկո՛ւր, եկո՛ւր, քեզի բան մ'ունիմ ցուցընելու։

— Ի՞նչ կ'ուզես, ըսաւ Օֆէլիա՝ կարը ձեռքը վար իջնելով։

— Քեզի նոր բան մը գնեցի։

Մէյմ'ալ նայիս՝ Օֆէլիային դիմացը ու-թը ինը տարեկան սեւ աղջիկ մը հանեց։ Աղջկան սեւ ու վառվռուն աչուըները ա-պակիի պէս կը փայլփլէին, ու զարմանալով մը կրակի պէս խուցին ամէն կահ կարա-

սեղաց վրայ կը դարձընէր կը նայէր. զարմանքէն բերանաբաց մնացած՝ սեւ շրթունքներուն եզերքը շարուած երկու կարգ փղոսկրէ ակռաները կը ցուցընէր. բրդի նման մազերը գլխուն չորս կողմանէ հիւսուած՝ դէպ ի մէկ կողմը անկուեր էին. խորամանկ ու վարպետորդի կերպարանաց վրայ մաղձոտ վարագոյր մը ձգուած կ՚երեւար։ Հաստկեկ լաթէ պատըռուած աղտոտ շապիկ մը հագեր էր. բոլոր ունեցած հագուստն ալ այս էր. ձեռուըները կուրծքին վրայ ծալլած՝ անշարժ կեցեր էր, ու բոլոր իր կերպին մէջ այնպիսի կարգէ դուրս բան կ՚երեւար՝ որ Օֆէլիա աղջի բերան ռոռկալով,

— Ինչո՞ւ ասիկայ ինծի բերիր, հարցուց Սէն-Քլէրին։

— Որպէս զի զինքը դաստիարակես ու իր պարտքերն իրեն սորվեցընես, պատասխանեց Սէն-Քլէր. ինծի կարգէ դուրս ապաւորութիւն ըրաւ ասոր կերպարանքը։ Առաջ եկուր, Դոփսի, ըսաւ աղջկան սուլելով, կարծես թէ շուն մը կը կանչէր. երգ մ՚երգէ ու պար մ՚ալ բանէ՝ որ Օֆէլիա խաթունն ալ տեսնէ։

Սեւուկն աչուըները պլլացընելով՝ սկսաւ սեւերու երգ մ՚երգել. ոտքով ձեռքով ե-

րաժշտութեան ամանակ կը զարնէր. արահին չորս կողմն ալ թօշունի պէս դառնալով, ծունկ ծնկան զարնելով խնամ կը ձեւացընէր. մէյմ'ալ յանկարծ ձեռք ձեռքի ծալած՝ գետնին վրայ նստաւ, ու կրակոտ աչուըները գողի պէս ասդին անդին կը պտըտցընէր։

— Օֆէլիա զարմանքէն պաղած մնաց. իսկ Սէն-Քլէր այս սեւուկին հերպերը ածենելով կը զուարճանար, ու դարձաւ ըսաւ անոր.

— Թօբսի, աՀաւասիկ քու նոր տիրուհիդ, ես զքեզ իրեն կը յանձնեմ, իրեն ըսածներուն մտիկ ըրէ, ու նայէ որ զինքը գոհ ընես։

— Շատ աղէկ, ըսաւ Թօբսի՝ խոնարհ ու անուշ ձայնով մը, բայց խորամանկ նայուածքով մը։

— Ասկէ ետքը խելօք պիտի կենաս, ըսաւ Սէն-Քլէր։

— Հրամեր ես, ըսաւ Թօբսի աչքինին պէս։

— Օգոստինոս, ըսաւ Օֆէլիա, այս ինչ է. տունդ այսպիսի անպիտաններով այնչափ լեցուն է՝ որ երկու քայլ կ'առնես՝ ոտքիդ տակը կու գան։ Երբոր առաւօտը կ'ել-

լեմ՝ սեւուկ մը դրանս ետին պառկած կը տեսնեմ, ուրիշ մ՚անդին խոտէ անկողնին վրայ ինկած, երրորդ մ՚ուրիշ տեղ մը փը-ռուած։ Առտուընէ մինչեւ իրիկուն կը խա-ղան, կը պոռչըտան. խոհանոցին մէջ ծա-կուծուկ կը մտնեն կ՚ելլեն. այս ալ ի՞նչ պիտի ընենք։

— Զըսէ՞ քեզի որ կինքը պիտի դատտխա-րակես։ Միշտ ինծի քարոզ կը կարդաս որ Աֆրիկէի տղաքը կրթելու է. ես ալ մտա-ծեցի որ նոր տղայ մը քեզի ընծայ ընեմ, բոլորովին ազէտ, որպէս զի քարոզածդ մէյ-մ՚անոր վրայ փորձես, ու իրեն պարտքերը սորվեցընես։

— Ես ասոր պէտք չունիմ, նորէն կ՚ը-սեմ քեզի. բաւական գլխի ցաւ ունիմ։

— Կը տեսնե՞ս որ ի՛նչ տեսակ քրիստո-նեայ էք դուք. շատ աղէկ գիտէք քարո-զիչներու ընկերութիւններ հաստատել, քա-րոզիչներ ղրկել՝ որ խեղճերն կեանքերնին ատոնց պէս բարբարոսաց մէջ անցընեն. բայց ձեզմէ մէկն ալ չկայ՝ որ իր տունը գոնէ պզտիկ աղջիկ մ՚առնէ, ու անձամբ անոր կրթութեան հոգ ունենայ։ Երբոր այսպիսի նեղութեան մը հանդիպիք՝ ան ատեն կը սկսիք դուրս հանել՝ թէ աղտոտ են, պզտւե-

լի են, ձանձրութիւն կու տան, դեռ ի՞նչ գիտեմ ինչ տեսակ ուրիշ շինծու պատճառներ կը բերէք։

— Օգոստինոս, իմ ըսածս այդ չէր, պատասխանեց Օֆէլիա կակղութեամբ. ու վերջը աղջկան դառնալով, — Ո՞վ չի գիտեր թէ կատարեալ քարոզչի մը գործ է ասոր վրայ աշխատիլը, ըսաւ։

Սէն-Քլէր զգայուն երակին դպեր էր. Օֆէլիայի խիղճը սկսաւ զարնել որ պարագ մ'է այս բանս. բայց վրայ բերաւ.

— Ջուր բան էր ասիկայ գնելդ, տանը մէջ այնչափ կան՝ որ անոնց վրայ հագիւ կրնամ հոգ ունենալ։

— Օֆէլիա, ըսաւ Սէն-Քլէր՝ զինքը մէկդի առնելով. Թողութիւն կ'ընես որ այսպիսի կծու խօսքերով վշտացուցի զքեզ. բայց դու քու աղէկութեամբդ սիրտդ չես վներ։ Եղածը մտիկ ըրէ. սա աղջիկն երկու գինով պանդոկապետներու էր. ամէն օր ասոնց խանութին դիմացէն անցնելու ատենս՝ սիրտս կը խշխշար՝ երբոր կը լսէի տղուն ճուալու ձայնը, որ ծեծին տակը խեղճը ողիկ ողիկ կու գար. սիրտս չդիմացաւ. իրեն 'ալ կերպն ինծի շատ հաճելի ըլլալով՝ գնեցի։ Հիմայ փորձէ տեսնեմ. Նոր Անգղիացւոց պէս դաս-

տխրականութիւն մը տուր տասր, տեսնենք ի՛նչ կ'ըլլայ։ Ինչպէս որ գիտես՝ ես շնորհք չունիմ անոր կրթութեան զբաղելու. կ'ուզեմ որ դուն առնուս ու աղէկ կրթութիւն մը տաս իրեն։

— Շատ աղէկ, կրցածս կ'ընեմ, ըսաւ Օֆէլիա. վերջը պզտիկ աղջկան մօտենալով — Այս ի՛նչ աղտոտ ու պատռուած հագուստ ունիս, ըսաւ։

— Մաքրել տուր զինքը ու նոր հագուստ մը հագուեցընել տուր, ըսաւ Սէն-Քլէր։

Օֆէլիա առաւ աղջիկն ու դէպ ի խոհանոց տարաւ. մէկէն Դինան դուրս ցատքեց ու աղջիկը տեսնելով արհամարհական կերպով մը դիտել սկսաւ, և ըսաւ.

— Չեմ գիտեր թէ պարոնն այս սեւուկն ալ ի՛նչ պիտի ընէ, կարծես թէ ասոր կը կարօտէր. ես ասիկայ խոհանոցին մէջ չեմ ուզեր որ ոտքիս տակ պտըտի։

— Ո՛հ, ըսին անդիէն Ցոմհաննան ու Սրբուհին, մենք հաս այսչափ սեւուկներէն կը նեղուինք, ան ալ վրայ հասաւ։

Դինան այս խօսքս իրեն ալ նախատինք համարելով, — Քեզմէ ալ սեւ չէ, Սրբուհի, ըսաւ. դու ոչ սեւ ես և ոչ ալ ճերմակ. աւելի աղէկ է կա՛մ բոլորովին սեւ ըլլալ և կա՛մ բոլորովին ճերմակ։

Օփէլիա տեսնելով որ ոչ ոք աս խեղճին վրան մաքրելու կը շարժի, ինքն սկսաւ սոթ-տուիլ ու մաքրել. ան ատեն Յովհաննան ալ ստիպուած՝ զզուելով ու քիթը բերանը ծամածռելով՝ եկաւ Օփէլիային օգնելու։

Օփէլիա կատարեալ առաքինական հոգւով այն աղտոտ աղջկան վրան գլուխը մաքրեց, ինքզինքը բռնելով որ զզուելէն սիրտը կը խառնուէր. բայց երբոր խեղճին ուսին վրայ խարազանին կապոյտ նշանները տեսաւ՝ սիր-տը խշխշաց։

— Կը տեսնե՞ս սա նշաններն, ըսաւ Յով-հաննա, ասոնցմէ կ'իմացուի որ ծեծի կա-րօտ եղած պիտի ըլլայ. ո՞ գիտէ ինչ բա-ներ ալ հոս պիտի ընէ. ես այս ողորմելւոյն երեսը չեմ կրնար նայիլ, չեմ գիտեր թէ մեր տէրն ասոնցմէ ինչ համ կ'առնէ։

Խեղճ պզտիկը մահանալով մը մտիկ ը-րաւ այս խօսքերս. երբեմն երբեմն ալ գողի պէս Յովհաննային ականջին օղերուն կը նայէր։

Երբոր բոլորովին մաքրուեցաւ հագուե-ցաւ ու մազերը կարգի մտան, — փառք քեզ Աստուած, ըսաւ Օփէլիա, հիմայ քիչ մը վրան մարդու կերպարանք եկաւ։ Վերջը դիմացն առած՝ կը մտածէր թէ ինչ դաս-

տխարակութիւն տայ. և սկսաւ այս հարցմունքներն ընել։

— Քանի՞ տարուան ես, Դոբսի։

— Չեմ գիտեր, ըսաւ աղջիկը նազելով մը։

— Տարիքդ չե՞ս գիտեր. քեզի չե՞ն ըսած ամենեւին քանի՛ տարեկան ըլլալդ։ Ո՞վ էր քու մայրդ։

— Ես ամենեւին մայր չեմ ունեցած, պատասխանեց աղջիկը նորէն կոտրտուելով։

— Ի՞նչ կ՚ըսես. դու մայր չե՞ս ունեցած... ի՞նչ կը խօսիս ... հապա ուսկի՞ց ծնար։

— Ե՞ս ... ես ծնած չեմ ամենեւին։

Եւ աս ըսելու ատեն՝ այնպիսի կարգէ դուրս կերպով քիթն ու բերանը կը ծամածռէր, որ եթէ Օֆէլիա երեւակայոտ կնիկ մ՚ըլլար՝ պիտի կարծէր թէ ասիկայ դժոխքէն փախած պզտի սատանայ մ՚ըլլայ. բայց ինքն առանց խռովելու,

— Մարդու հետ այսպէս չեն խօսիր, ըսաւ. քեզի հետ կատակ ընելու չեմ եկեր հոս. ըսէ նայիմ, ո՛ւր ծնած ես, հայրդ մայրդ ո՞վ էին։

— Ես ամենեւին չեմ ծնած, ըսաւ նորէն աղջիկը վճռական կերպով մը. ես ոչ հայր, ոչ մայր և ոչ մարդ մ՚ունեցեր եմ։ Մէկ

գերեզմանատի մը սուն խել մը հասակակիցներուս հետ մէկտեղ մեծցեր եմ, Սեւ ապլային ձեռքին տակը։

Գորսի պարզութեամբ կ'ըսէր աս խօսքերս. անդիէն Յովհաննեան ծիծաղ մը փրցընելով,

— Խաթուն, ըսաւ, ասոնց պէս շատ կը գտնուին, գերեզմանատները ոչինչ գնով զասոնք պզտի պզտի կը գնեն ու կը մեծցընեն, և վերջէն վաստակով կը ծախեն։

— Քու վերջի տիրոջդ քով ո՞րչափ ատեն կեցար։

— Չեմ գիտեր, խաթուն։

— Տարի՞ մը, թէ աւելի։

— Չեմ գիտեր ամենեւին։

— Այս խեղճ սեւերը, պատասխանեց անդիէն նորէն Յովհաննեան, բան մ'ալ չեն կրնար ըսել. ժամանակին ի՞նչ է չեն հասկընար. տարին ի՞նչ է չեն ըմբռներ, տարիքնին ալ չեն գիտեր։

— Աստուծոյ անունը լսա՞ծ ես, Գորսի, հարցուց Օֆէլիա։

Աղջիկը չհասկընալով զարմացած երեսը կը նայէր։

— Գիտե՞ս ով զքեզ ստեղծեր է։

— Ոչ ոք. ես մէկը չեմ ճանչնար որ

զիս ստեղծած ըլլայ, պատասխանեց աղջիկը կարգէ դուրս ժպտելով։

— Կար կարել գիտե՞ս, հարցուց Օֆէլիա, մտածելով որ թերեւս այսպիսի բան կարենայ ըմբռնել։

— Չէ, խաթուն։

— Հապա ի՞նչ գիտես ընել. տէրերդ ըզքեզ ի՞նչ բանի կ'աշխատցընէին։

— Ջուր կը քաշէի, պնակ կը լուայի, դանակները կը մաքրէի, և սեղանի կը ծառայէի ...

— Քեզի հետ աղէկ կը վարուէի՞ն։

— Կարծեմ, ըսաւ աղջիկը՝ ուշադրութեամբ Օֆէլիայի երեսը նայելով։

Օֆէլիա աս խօսակցութենէս ետեւ՝ ոտք ելաւ. մէյմ'ալ ետեւը դառնալով՝ տեսաւ որ Սէն-Քլէր աթոռին կռթընած կեցեր էր։

— Նայէ Օֆէլիա, ըսաւ, անմշակ գետնի մը կը նմանի աստր միտքը. ուստի քու գաղափարներդ սերմանէ հոն. յուսամ թէ շատ նեղութիւն չես քաշեր։

Օֆէլիա՝ ինչպէս ուրիշ բաներու՝ այնպէս ալ դաստիարակութեան պարզ և անփոփոխ սկզբունք մ'ունէր, ինչ որ Նոր-Անգղիոյ բնակիչներն ալ ատենօք ունէին, և դեռ մինչեւ հիմայ ալ քանի մը գեղեր և օտարաց

հաղորդակցութենէ զուրկ մնացած տեղեր նոյն սկզբամբ կ'երթան։ Իրենց դաստիարակութեան կանոնը պարզ է. և է՝ տղոց խօսք մտիկ ընել տալ, քրիստոնէական վարդապետութիւն, կարդալ ու բան բանիլ սորվեցընել, և առանց մտածելու չխօսիլ, ու երբոր սուտ ըսեն՝ ծեծել զիրենք, այս էր բոլոր տուած կրթութիւննին։ Եւ թէպէտ քաղաքականութեան ծաղկելով՝ այս կրթութեան ոճն ալ մարեցաւ, բայց դեռ կը գտնուին մեր պապերէն կրթութիւն առած մարդիկներ, որոնք բոլորովին նոյն սկզբամբ տոգորուած են։

Ինչ և իցէ՝ Օֆէլիա ալ ասկէ աւելի բան չէր գիտեր, ուստի մեծ խնամքով այս պըզտի աղջկան դաստիարակութեան ձեռք զարկաւ։ Պզտի սեւուկը կամաց կամաց բոլոր ծառայից դիմաց Օֆէլիա խաթունին հոգեզաւակն համարուեցաւ. և տեսնելով որ խոհանոցը վրան գէշ աչքով կը նային՝ մտածեց զինքն անկէ հանել ու բուն իր խցին մէջ անոր դաստիարակութեան առաջին հիմունքը դնել։ Անկողինը մինչև ան ատեն աղախիններուն թող չտալով՝ ինքը կը շինէր, ուստի անկէ վերջը Թոբսիին սորվեցընել անկողին շինելը, ու իրեն շինել կու տար։

Երկրորդ առաւօտ՝ Օֆէլիան առաւ խուցը տարաւ Դորսին, ու երկայն բարակ սկսաւ անոր անկողին շինելու դժուարին արուեստը սորվեցընել։ Դորսին ալ մաքրուած, մազերը շտկած, մաքուր հագուած, առջեւն ալ գոգնոց մը կապած՝ ծանր կերպով Օֆէլիային դիմացը կեցեր· և այս ամենահարկաւոր բանին մտադրութիւն կ՚ընէր։

— Հիմայ ցուցընեմ քեզի, Դորսի, անկողին շինելու կերպը. ես շատ դժուարաւ գոհ կ՚ըլլամ իմ անկողնոյս, անոր համար պէտք է որ աղէկ մտադիր ըլլաս։

— Շատ աղէկ, ըսաւ Դորսի՝ խոր հառաչանքով մը։

— Հիմայ, Դորսի, աղէկ նայէ. ասիկայ է սաւանին վերի ծայրը, այս է շիտակը, այս ալ հակառակ կողմը. միտքդ կը պահե՞ս։

— Հրամեր ես, խաթուն, ըսաւ Դորսի՝ նոր հառաչանքով մը։

— Շատ լաւ, հիմայ պէտք է անկողնին սաւանը փռել, ծայրը բարձին վրայէն տակն անցընելով և չորս կողմէն ծայրերը անկողնին տակը խօթելով. այսպէս, կը տեսնե՞ս։

— Հրամեր ես, ըսաւ Դորսի՝ սաստիկ ուշադրութիւն ընելով։

— Իսկ վերմակին սաւանն ալ այսպէս պէտք է ընես, ոտքին կողմը անկողնոյն տակը խոթելով, շիտակ, առանց կարըւածքի։

— Շատ աղէկ, ըսաւ նորէն Դորսի։

Բայց գիտնալու է որ քանի որ բարեսիրտ Օֆէլիան մեծ ջանքով գլուխը կախած սովրեցընելու հետ էր, Դորսիի աչքին զարկին զոյգ մը ձեռնոց ու բարակ ժապաւէն մը, ուստի զողնալն ու թեւին մէջ խոթելը մէկ ըրաւ, այնպիսի արագութեամբ որ Օֆէլիա և ոչ իսկ անոր շարժիլը տեսաւ։

— Հիմայ նայինք, Դորսի, ինչպէս պիտի ընես, ըսաւ Օֆէլիա, ու անկողնոյն վերայէն սաւանները քաշեց վերցուց, և թողուց որ աղջիկն ինքնիրեն անկողինը շինէ։

Դորսի ծանր կերպով մը՝ իբրեւ թէ մեծ գործողութեան մը հետ ըլլար՝ սկսաւ կոկիկ կերպով սաւանները փռել, վերմակը շտկել, այնպէս որ Օֆէլիան ալ շատ գոհ եղաւ։ Բայց անկողինը շինելը լըմնցընելու ատեն, պժգաղգաբար զողցած ժապաւէնին ծայրը հագուստին թեւէն դուրս ելաւ. Օֆէլիա տեսածին պէս՝ մէկէն քաշեց դուրս հանեց։

— Այս ինչ բան է, ըսաւ, թշուառական, ինչպէս զողցեր ես։

Դուքսի՝ թէպէտև իր թեւէն դուրս ելած էր այն ժապաւէնը, բայց ամենեւին առանց խռովելու, անմեղ զարմանքով մը Օֆէլիայի երեսը նայեցաւ։

— Կ՚երեւայ թէ, խաթուն, այդ ժապաւէնն հրամանքիդ պէտք ըլլայ, ըսաւ, բայց ի՞նչպէս իմ զգեստիս թեւին մէջ մտեր է՝ ան չեմ կրնար հասկընալ։

— Ի՞նչպէս ... Դուքսի, սուտ մի՛ խօսիր, դու այս ժապաւէնը գողցած պէտք ըլլաս։

— Չէ, խաթուն, չէ, ապահով եղիր որ ես այսպիսի բան չեմ ըրած. հիմայ առաջին անգամն է որ կը տեսնեմ։

— Դուքսի, չե՞ս գիտեր որ սուտ խօսիլը գէշ բան է։

— Ես ոչ երբեք սուտ կը խօսիմ, ըսաւ Դուքսի անմեղ կերպով մը, իբրեւ թէ անիրաւաբար ամբաստանուած ըլլար. ես ճշմարիտը միայն ըսի, ուրիշ բան չեմ գիտեր։

— Թէ որ սուտ ըսելը շարունակես՝ գիտցած ըլլաս որ ծեծ պիտի ուտես։

— Թէ և առտուընէ մինչեւ իրիկուն ալ ծեծես զիս, ուրիշ բան մը չունիմ ըսելիք, ըսաւ Դուքսի աչուըները լեցուած. ժապաւէնն ինքիրմէ թեւիս մէջ մտած պէտք ըլլայ. անշուշտ հրամանքդ անկողնոյն վրայ ձգած էիր,

սաւաններուն մէջ մնացած էր, ու ի՛նչպէս եղեր է՝ թուխս մէջ մտեր է։

Օֆէլիա այն աստիճանի այս անճոռնի սուտին վրայ նեղացաւ, որ հրեց անդին ձգեց աղջիկը։

— Զար, ըսելով, որո՞ւն սուտ կ'ըսես։

Այս ցնցուելու ժամանակ՝ մէյմ'ալ նայիս ձեռնոցներն ալ մէկալ թեւէն դուրս ինկան և մէջտեղն ելան։

— Նայէ հիմայ, ըսաւ Օֆէլիա, ա՛լ պի-տի ժխտե՞ս գողնալդ։

Դորսի խոստովանեցաւ ձեռնոցները գողնալը, բայց ժապաւէնը միշտ ժխտեց։

— Դորսի, ըսաւ Օֆէլիա, թէ՛ որ ճշմարիտը խոստովանիս՝ աս անգամ զքեզ չեմ ծեծեր։

Դորսի նայեցաւ որ ճարը հատաւ, խոստովանեցաւ թէ՛ ձեռնոցները և թէ ժապաւէնը գողնալը, ու լալով թողութիւն ուզեց։

— Հիմայ ըսէ ինծի, գիտեմ որ քանի որ այս տանս մէջն ես, ի հարկէ ուրիշ շատ բաներ ալ գողցած պիտի ըլլաս, վասն զի երէկ բոլորովին զքեզ ազատ թողեր էի. թէ որ խոստովանիս ինչ որ գողցեր ես՝ ծեծ չեմ զարներ։

— Շատ աղէկ, ան ատեն գիտցած ըլ-

լառ, խաթուն, որ Վարդուհի խաթունին բուս-ատէ մանեակը գողցայ։

— Վա՜յ չար, ուրիշ նայինք ի՞նչ ըրիր։

— Սրբուհիին ալ բուսատէ օղերը գողցայ։

— Շո՛ւտ, հոս բեր գողցածներդ։

— Չկայ, կրակը նետեցի։

— Կրա՞կը նետեցիր, զո՞վ կը խաբես, գնա՛, շո՛ւտ, գնա բեր, ապա թէ ոչ՝ ծեծ կ'ուտես։

Դոբոսի սկսաւ լալով ողբալով պնդել թէ չկան և թէ իրաւցընէ կրակը նետեր է։

— Ինչո՞ւ կրակը նետեցիր, հարցուց Օ-ֆելիա։

— Վասն զի չար եմ, հրամեր ես, խա-թուն, ես վերջի աստիճանի չար աղջիկ մ'եմ, և ինքզինքս չեմ կրնար զսպել։

Այս խոստովանութեան ժամանակ՝ մէյմ'ալ Վարդիկ ներս մտաւ, Դոբսիին գողցեր եմ ըսած մանեակն ալ վիզը։

— Այս մանեակն ո՞ւր տեղէն գտար, հարցուց Օֆելիա։

— Ու՛ր պիտի գտնեմ. բոլոր օրը վիզս կախած էի։

— Երէկ ալ ունէի՞ր։

— Ի հարկէ. մանաւանդ թէ երէկ իրի-կուն մոռցեր էի հանելու, ուստի բոլոր գի-շերը վիզս մնաց։

Օֆէլիայի զարմանքն ա՛լ աւելի շատցաւ, երբոր Սրբուհին ալ ճեմակեղէնները բերելու համար՝ խուցը մտաւ ու ականջներէն ալ բուսած օղերը կախուած էին ու կը շարժէին։

Այս ի՞նչ բան է, ըսաւ, զքեզ Դուքսի ես ի՞նչ պիտի ընեմ. ի՞նչ խելքիդ փչեց զիս խաբելու ու բաներս գողցայ ըսելով։

— Խաթուն, պէտք է որ խոստովանիս, ըսիր, ես ալ ուրիշ բան չունէի խոստովանելու, ի՞նչ ըսէի։

— Բայց ես չըսի՞ քեզի որ գողցած բաներդ խոստովանիս. այս ալ նոյնպէս սըտախօսութիւն է։

— Իրա՞ւ կ՚ըսես, պատասխանեց Դուքսի՝ անմեղ կերպ մը ձեւացընելով։

— Անոնք առանց ծեծի չեն ըլլար, ըսաւ անոյլէն Սրբուհին արհամարհական կերպով մը Դուքսին նայելով, բան մ՚ալ չեն ըսեր որ ճշմարիտ ըլլայ. Թէ որ անոնց տէրն ես ըլլայի՝ ծեծի տակ կը մեռցընէի զիրենք։

— Այդպիսի խօսքեր մէյմ՚ալ մի՛ ըսեր, ըսաւ ծանրութեամբ մը Վարդուհին, այդպիսի խօսակցութիւն ես չեմ ախորժիր լըսելու։

— Խաթունի՛կ, հրամանքդ շատ բարե-

սիրտ ես, սեւերուն հետ վարուելու կերպը չես գիտեր. զանոնք բանի բերելու մէկ հընարք միայն կայ, որ է՛ ծեծը։

Վարդիկին երեսին գոյնը նետեց։

— Սրբուհի՛, լաւ կեցիր, բերնէդ մէյմ՚ալ այդպիսի խօսք չլսեմ։

Սրբուհին աղջկան այս կերպը տեսնելով՝ ձայնը վար քաշեց, բայց մռմռալով.

— Վարդուհի խաթունիկին ալ Սէն-Քլէրի աղջիկն ըլլալով՝ ի հարկէ անոր արինը կը քաշէ. հօրը լեզուն ինչ որ է՝ ինքն ալ այնպէս կը խօսի, լաւ ու դանէն դուրս ելաւ։

Վարդուհին Դուքսի դիմացն անցաւ ու գիտել սկսաւ։ Այս երկու աղջիկները դիմացէ դիմաց՝ մարդկային ընկերութեան մէկմէկու բոլորովին հակառակ երկու ծայրերն էին։ Վարդուհին գեղեցիկ, ոսկեգոյն մազերով, կապուտաչուի, ազնուական կերպ մ՚ունէր. իսկ ընդհակառակն դիմացինը տգեղ, սեւ, ցածազգի բնութեամբ աղջիկ մը. մէկը՝ քաղաքականացեալ, կիրթ և բնական ու բարոյական հարստութեամբ ճոխացեալ, մէկալը՝ հարստահարութեան, գերութեան ու բռնութեան տակ՝ բոլորովին մարդկային բընութենէն դուրս ելած։ Գուցէ Վարդիկին

մտքին մէջէն հազար ու մէկ խորհուրդներ կ՚անցնէին, զորոնք և ոչ բացատրել կրնար։ Եւ Օֆէլիա Դորսիի անկարգութեանց վրայ խօսելու ժամանակ, Վարդուհին տխուր կերպարանքով մը խեղճ աղջկան դարձած՝ ըսաւ անոր.

— Խեղճ Դորսի, գողնալու. ինչ կարօտութիւն ունիս. ասկէ ետքը ամէնքը վրադ պիտի կասկածին. բայց ես աւելի գոհ կ՚ըլլամ ամէն ուզածդ տալ քեզի՝ քան թէ քեզի գողի անուն տալ։

Առջին անգամն էր որ խեղճ աղջիկը կենացը մէջ անուշ խօսք մը լսեց։ Վարդուհիին անուշ ձայնը այն վայրի ու անկիրթ սրտին վրայ կարգէ դուրս ազդեցութիւն մ՚ըրաւ. քիչ մ՚արցունք աչուըները լեցուեցան. բայց յանկարծ նորէն առջի կերպն առնելով՝ ալէվլըլկող ձայնով ծիծաղել սկըսաւ։

Ականջ մը որ միշտ յանդիմանութեան ու բարկութեան ձայներ լսած է, ինչպէս կրնայ մարդկանց լաւութեան վրայ հաւատք ունենալ։ Դորսի կը զգար ներսի դին որ Վարդուհիին կերպը կարգէ դուրս բան մ՚է, բայց չէր կրնար հաւատալ։

Օֆէլիա չէր գիտեր ինչ կերպ բանէ Դոր-

սիրին հետ. Նայեցաւ որ իր բռնած կերպը, իր սկզբունքն այս աղջկան վրայ անկարելի կ՚ըլլայ գործադրել։ Նոր կերպ մ՚ուզեց մը-տածել, ուստի Դորսին խուցի մը մէջ փա-կեց, վերջը Սէն-Քլէրին խուցը գնաց։

— Պարոն, ըսաւ, այս աղջկան մինչև որ ծեծ չքաշեմ՝ չեմ կրնար զսպել զինքը։

— Ուզածիդ պէս ծեծէ ուրեմն, քեզի այն աղջկան վրայ կատարեալ իշխանութիւն տուեր եմ։

— Տղաքը ծեծելու է, ուրիշ կերպով չեմ լսած որ անոնք սանձուին։

— Անտարակոյս, ըսաւ Սէն-Քլէր, ինչ որ կ՚ուզես ըրէ. բայց քեզի բան մ՚ըսեմ, ես այս աղջիկը չգնած՝ կը տեսնէի որ շատ անգամ վառած փայտերով, կրակարանի թիակով և ուրիշ ձեռքերնին եկած բանով մը կը ծեծէին. ինքն այն տեսակ սաստիկ ծեծերու վարժած է, քու ծեծերդ ինչ ազ-դեցութիւն պիտի ընեն անոր, ուստի պէտք է որ աղէկ ծեծես։

— Ան ատեն ինչ ընենք։

— Ծանր խնդիր մ՚է հարցուցածդ, շատ աղէկ կ՚ընես թէ որ ինքիրմէդ այդ խնդիրը լուծես։ Ինչպէս կառավարելու է մարդկե-ղէն արարած մը՝ որ ծեծէն զատ ուրիշ բա-նով չի սանձուիր։

— Իրաւցընէ ես առոր պէս ուրիշ մ'ալ չեմ տեսած։

— Եւ սակայն մեր քով այսպիսիները պակաս չեն. և չէ թէ միայն տղաք և աղջըկունք, այլ նաև առոր նման մեծ մարդիկ ու կանայք. ուրեմն տես թէ այսպիսիներն ինչպէս կառաւարելու է։

— Ես չեմ գիտեր, ըսաւ Օֆէլիա։

— Ես ալ չեմ գիտեր, ըսաւ Սէն-Քլէր. լրագրաց մէջ երբեմն երբեմն յիշուած կարգէ դուրս անգթութիւններն, ինչպէս Բրիւ տալլային դիպուածը, ինչէ՞ն առաջ կու գան. շատ անգամ երկու կողմին ալ իրենց պարտքըն ընել չգիտնալէն. տէրը սաստիկ անգթութիւններ ընելով, գերին ալ իր յամառութեամբ։ Ծեծն ու չարչարանքն ափիոնի կը նմանին, որչափ որ զգայութիւննին կը հաստըննայ՝ այնչափ անոնց չափն աւելցընելու է։ Այս բանս գերիներուս տէր եղած օրէս մտքէս անցաւ, անոր համար միտքս դրի որ ամենևին այդ բանին ձեռք չզարնեմ, վասն զի չէի գիտեր թէ ծայրն ուր պիտի երթայ։ Ուզեցի գոնէ իմ ունեցած բարոյական սկզբունքներս ի գործ դնել, անոր համար իմ գերիներս ալ երես եղան և ուզածնին կ'ընեն. բայց ես կարծեմ որ այս-

պէս աւելի աղէկ է, քան թէ ես ու գերի-
ներս մէկզմէկ անբանացնենք։ Դու ինծի եր-
կայն բարակ քարոզ կարդացիր գերիներու
դաստիարակութեան հոգ ունենալու պարտա-
քերնուս վրայ, հիմայ կ'ուզեմ որ սա աղջը-
կան վրայ քու փորձառութիւնդ ցուցընես,
որուն նմանը մեր մէջ պակաս չէ։

— Ձեր բռնած ոճէն է՝ որ այդպէս կ'ըլ-
լան, պատասխանեց Օֆէլիա։

— Շատ աղէկ գիտեմ ես ալ. բայց
միոլ բանիւ՝ սանոնք հիմայ աշխարհիս վրայ
կան ու կ'ապրին, սանոնց հետ ինչ կերպով
վարուելու է։

— Քու ինծի առաջարկած փորձիդ վրայ
ես շատ գոհ չեմ, բայց որովհետեւ պարտքս
է՝ ջանքս պակաս չեմ ըներ, նորէն փոր-
ձեմ ու կարելին ձեռքէ չեմ ձգեր։

Անկէ ետքը Օֆէլիա իրաւցընէ անխոնջ
ջանք ունէր խեղճ աղջկան վրայ. որուն
մէջ աշխատութեան ժամեր որոշեց, կարդալ,
գրել ու կար կարել սկսաւ սորվեցընել։ Դոբ-
սի շուտ մը կարդալ սորվեցաւ, ու անսխալ
ամենայն յաջողութեամբ կը կարդար, բայց
կար կարելու քիչ մը դժուարութիւն կը քա-
շէր. կատուի պէս արագաշարժ ու կապկի
պէս անհանդարտ բնաւորութեամբը՝ երկայն

բարակ անշարժ նստիլն իրեն համար կարելի բան չէր ։ Ուստի տեղները կը կտրէր և պատուհանէն դուրս կը նետէր, կամ պատերուն ծակերը կը խոթէր. դերձանը կը խառնակէր ու կտոր կտոր կ'ընէր, երբեմն ալ ամբողջ կծիկը կը նետէր։.

Եւ այս գործողութեանց մէջ այնչափ արագաշարժ էր, և դէմքին վրայ կեղծելն այնչափ վարպետ՝ որ բարակ բան հասկցողն անգամ՝ չէր կրնար ըմբռնել թէ մի և նոյն ժամանակ ամէն բան այնպէս մէկէն վրայէ վրայ ինչպէս կրնան գալ. և պարապ տեղը կ'աշխատէր Օֆէլիա այս գործողութեանց մէկուն ատեն վրայ հասնելու. Դոբսի այն աստիճան ճարպիկ էր՝ որ վրան հսկողութիւն եղած ատենն անգամ՝ ձեռքի տակէն ուզածը կը կատարէր։

Դոբսի քիչ ատենէն տանը մէջ ծաղրածուի մեծ համբաւ հանեց, զարմանալի յաջողութիւն մ'ունէր պարելու, երգելու, մնջկատակի ու ամէն տեսակ ծաղրածութեանց. անանկ որ հանգստեան ժամանակ երբոր իր սովորական հանդէսներն սկսէր՝ տան մէջ գտնուած տղաք՝ բոլորը վրան կը թափէին ու բերաննին բաց կը զարմանային. մինչև Վարլիին անգամ անոր ծաղրածութիւննե-

րէն զուարճանալով՝ քովը կը յաճախէր. աստով Օֆէլիայի մտմտուքն ալ շատցաւ ու սկսաւ Սէն–Բլէրին աղաչել որ զասոնք մէկմէկէ հեռացընէ։

— Զէ, ըսաւ Սէն–Բլէր, Վարդիկին վըրայ մտմտուք մի ըներ, Դոքսիին հետ ընկերութիւն ընելով ինքը չ'աւրուիր։

— Զե՞ս վախեր՝ որ այդ աւրուած աղջիկը ազնիւ Վարդուհին ալ աւրէ։

— Զէ. անիկայ ուրիշ տղաքը կրնայ աւրել, բայց Վարդուհին չ'աւրուիր։ Մոլութիւնը Վարդուհիին սրտին վրայէն կը սահի կ'անցնի, ինչպէս առաւօտեան ցօղը տերեւներուն վրայէն կը սահի։

— Շատ մի վստահիր. ես քու տեղդ ըլլայի՝ ամենեւին չէի թող տար որ իմ մէկ տղաս Դոքսիին հետ խաղայ։

— Բայց ես իմ տղաքս թող կու տամ. թէ որ Վարդուհին աւրուելու ըլլար՝ մինչեւ հիմայ հազար անգամ աւրուած էր։

Գլխաւոր ծառաները սկզբան ծուռ աչքով Դոքսիին վրայ կը նայէին ու կ'արհամարհէին զինքը. բայց տեսնելով թէ ով որ անոր հետ գէշ կը վարուի՝ գլխուն փորձանք պակաս չէ, սկսան ինքզինքնին բռնել ու լեզունին փոխել։ Վասն զի Դոքսին սաստիկ

ոխակալութեամբ՝ իր հակառակորդաց դէմ չմտածուած չարութիւններ կը բանեցընէր. կամ ունեցածնին կը գողնար, կամ վրանին ծածուկ կերպով պատուհանէն տաք ջուր և կամ աղտոտ ջուր կը թափէր, և ոչ ոք ալ կրնար տեսնել թէ ով է աս ընողը։ Քանի անգամ որ Դուքսին քննութեան կանչեցին; այնպիսի ծանր ու անտարբեր կերպով պատասխաններ տուաւ՝ որ ամէնքը լռեցին։ Ոչ ոք կը տարակուսէր իրեն չարութեան վրայ, բայց յայտնի ապացոյց մը չէր գտնուեր՝ որ կարենան իրեն դէմ բան մ՚ընել. Օֆէլիան ալ՝ միայն կասկածը բաւական չէ ըսելով՝ ազատ կը թողուր։

## ԳԼՈՒԽ ԻԱ.

### Քենդըքի

Խօսքերնիս այսչափ ատեն մեր այս պատմութեանս երկրորդական պարագայից վրայ երկնցընելէն վերջը, հարկաւ ընթերցողաց հետաքրքրութիւնը կը սպասէ անհամբերութեամբ իմանալու Աղբար Թումասին Քէնդըքիէն ելլելէն վերջը՝ իր տնակին վիճակը։

Ամառուան տաք օրերէն մէկն էր, բոլոր սրահին դռներն ու պատուհանները կոնըկի վրայ բաց. Պարոն Շէլպի՝ տանը պաւիթը աթոռի մը վրայ երկընցած նստած՝ ծուխ կը քաշէր։ Խաթունն ալ դրան դիմացը նըստեր կ'աշխատէր, ու դէմքէն կ'իմացուէր որ մտքէն բան մը կ'անցնի և միջոց մը կը փնտռէ գրուցելու։

— Իմացա՞ր, ըսաւ էրկանը, որ Քլոյէն Թովմասէն նամակ մ'առեր է։

— Իրա՞ւ կ'ըսես, կ'երևայ թէ Թովմաս այն տեղուանքը բարեկամներ գտեր է իրեն։ Արդեօք ի՞նչպէս է։

— Ազնուական ընտանեաց մը քով է. գրեր է որ հետը աղէկ կ'երթան ու շատ ալ չեն աշխատցըներ զինքը։

— Շատ աղէկ, ես ալ շատ գոհ եմ, ըսաւ ուրախութեամբ Շէլպի։ Ասով կը վարժի իր նոր կենաց, և մտքէն չ'անցըներ մէյմ'ալ այս կողմերս դառնալու։

— Բոլորովին հակառակը, մանաւանդ թէ շատ կ'աղաչէ որ գնենք նորէն զինքը։ Սա ստակը ե՞րբ պիտի գտնենք։

— Չեմ գիտեր. երբոր մէկուն գործերը մէյմը դէշ սկսին երթալ՝ ա՛լ վերջը չի գար։ Մէկուն պարտքը տալու համար՝ մէկալէն

փոխ առնելու է. Հազիւ թէ շունչ մ'առնեմ կ'ըսես՝ մէյմ'ալ փոխանակագիրն ետեւէդ կը հասնի, պարտատեարց ձայնէն ականջս խըլ-ցաւ։

— Բայց կարծեմ որ այս շփոթութեան մէջէն դուրս ելլելու համար հաստատուն բան մը մտածելու է։ Զի՞նչ կրնար ձիերնիս ու կալուածներէն մէկը ծախել ու անոնցմով պարտքերնիս վճարել։

— Ի՞նչ բաներ կը մտածես։ Իրաւ դու Քէնդըրքիի ամենէն ազնիւ կնիկն ես, բայց դու ալ չես ըմբռնած՝ որ բանէ գործէ չես հասկընար։

— Բայց գոնէ մէյմը ինծի ալ ցըցուր ելքդ ու մուտքդ, որպէս զի ես ալ ըստ այնմ կրցածիս չափ խնայութիւն ընեմ։

— Ո՛հ, խնդրեմ մի՛ զիս ձանձրացըներ. ես իմ ամէն գործերս աղէկ գիտեմ, բայց ամէն բան քեզի չեմ կրնար ըսել, դու բանէ գործէ չես հասկընար։

Խաթունը տեսնելով որ էրկան ձայնը բարձրացաւ՝ իրեն ձայնը վար քաշեց, ու հառաչանք մ'արձակեց. քանի որ կը մտածէր Թովմասին տըրուած խօսքին չկատարուիլը՝ սիրտը կը ծակէր։

— Ուրեմն ա՛լ ճար չկա՛յ աս ստակը

ձեռք ձգելու, ըսաւ։ Խե՛ղճ Քլոյէ, անոր խելքը միտքը մեր տուած խոստման վրայ է։

— Ես ալ շատ կը ցաւիմ, ըսաւ Շէլպի. երանի՜ թէ խօսք տուած չըլլայի, ու շիտակէ-շիտակ Քլոյէին զրուցէի։ Մէկ երկու տարուան մէջ Թոմաս ուրիշ կնիկ մը կ՚առնէր, Քլոյէն ալ ուրիշ էրիկ մը կը փնտռէր։

— Պարոն, ես գերիներնուս միշտ սորվեցուցեր եմ՝ որ ինչպէս մեր ամուսնութիւնն՝ այնպէս ալ իրենցը սրբազան է. ուստի ես այդպիսի խորհուրդ չեմ կրնար յաւիտեան Քլոյէին տալ։

— Շատ գէշ բան ըրեր ես՝ որ իրենց վիճակէն ու վախճանէն բոլորովին դուրս՝ բարոյական սկզբունքներ մտքերնին խոթեր ես. այս բանիս վրայ ես միշտ ցաւ ունեցեր եմ։

— Իմ քովէս չէ, պատասխանեց խաթունը, Ս. Գիրքն այնպէս կը սորվեցընէ։

— Աղէկ, աղէկ, Էմիլիա, հիմայ ես քու կրօնական սկզբանցդ քննութիւն ընելու չեմ ելլեր. բայց ինծի կ՚երեւայ որ այդ վիճակի մարդոց սորվեցուցած սկզբունքներդ ի գործ չեն կրնար դրուիլ։

— Իրաւ է ըսածդ, և ես ալ այդ բանիդ համար գերութիւնը վար կը զարնեմ։ Շի-

տակը զրուցեմ քեզի, քանի որ միտքս կու գայ որ անոնց խօսք ենք տուեր՝ չեմ կրնար սիրտս հանդարտեցնել. թէ որ ուրիշ կերպով չկարենամ ստակ գտնել, երաժշտութեան դաս կու տամ. ինծի աշկերտներ չեն պակսիր, քիչ ատենուան մէջ մեզի հարկաւոր եղած ստակը կը հանեմ։

— Չէ, չէ, այդ աստիճանի նուաստութեան մէջ ես զքեզ չեմ կրնար ձգել։

— Նուաստութի՞ւն. միթէ անկէ աւելի նուաստութիւն չէ՞ խոստմունքը չկատարելը։

— Շատ դիւցազնական ու վսեմ մտածութիւններ ունիս. բայց յուսամ թէ այդպիսի գործի մը ձեռք չզարկած՝ աղէկ կը մտածես։

Այս խօսակցութեանց ժամանակ՝ մէյմ՚ալ Քլոյէ հոն երեւցաւ։

— Խաթուն, շնորհք ըրէ, ըսաւ։

— Ի՞նչ կ՚ուզես, պատասխանեց Շէլպի խաթունը ու ոտք ելաւ։

— Մէյմը սա հաւերը նայէիր։

Շէլպի խաթունն այնչափ հաւեր ու բադեր տեսնելով Քլոյէին ձեռքը, որ իբր մեծ մտածութեան մը մէջ կ՚երեւար, չկրցաւ ծիծաղը բռնել։

— Կ՚ուզէի հարցընել թէ այս հաւերը կ՚ուզե՞ս որ պլակինդ մը շինեմ։

— Ի՞նչ որ կ'ուզես ըրէ, Քլոյէ, ես անտարբեր եմ։

Քլոյէ հոն կեցած՝ հաւերը կարգի կը դնէր, բայց կ'իմացուէր որ լեզուին տակը ուրիշ բան մը կը քալէր, ու մէյմ'ալ ծիծաղելով մ'ըսաւ.

— Ինչո՞ւ համար հրամանքնիդ այնչափ գլուխ կը ճաթեցընէք սուտ գտնելու, ու ձեր ձեռքը եղած միջոցներն ի գործ չէք դներ։

— Ըսածդ չեմ հասկընար, ըսաւ խաթունը։

Մտքէն ալ չէր անցըներ որ Քլոյէ՝ իր սովորութեամբ՝ իրենց խօսակցութիւնը մտիկ ըրած ըլլայ։

— Թէ հոգիդ կը սիրես՝ ըսէ՛, խաթուն, պատասխանեց Քլոյէ. ուրիշները վաստակ ընելու համար իրենց գերիները վարձու կու տան, դուք այսչափ հոգի ինչո՞ւ այսպէս անպտուղ պահեր էք ու վարձու չէք տար։

— Աղէկ ուրեմն, Քլոյէ, զո՞վ կ'ուզես որ վարձու տանք։

— Ես բան մը չեմ առաջարկեր, բայց Սամուէլը կ'ըսէր՝ որ Լուիզվիլ քաղաքը շատ աղէկ պլակլնդ շինողներու խանութներ կան՝ որ ծառայի կարօտ են, ու շաբաթն ալ չորս տոլլար վարձք կը խոստանան։

— Ուրեմն ի՞նչ ընել կ'ուզես, Քլոյէ։

— Ընել կ'ուզեմ որ հիմայ Սօլին աշխատանքի կրնայ դրուիլ, որ երկար ատենէ ի վեր իմ ձեռքիս տակը աղէկ մը վարժեցաւ. ես ալ ան ատեն՝ թէ որ հրամանքդ հրաման տաս՝ կ'երթամ քիչ մը ստակ վաստըկելու՝ որ հրամանքիդ առաջարկութեան օգնութիւն մ'ընեմ։

— Ուրեմն տղաքդ կը ձգե՞ս։

— Հիմայ բաւական մեծցած են անոնք, ալ կրնան աշխատիլ. Սօլին ալ պզտի աղջըկան վրայ հոգ կ'ունենայ, որ արդէն հանդարտ ըլլալով անոր նեղութիւն ալ չի տար։

— Բայց գիտե՞ս որ Լուիզվիլ ասկէ շատ հեռու է։

— Հոգս չէ. գետին վարի կողմերն է, թերեւս անկէ իմ էրիկս ալ շատ հեռուն չէ։

— Չէ, Քլոյէ. Թումմասը քու երթալու տեղէդ քանի մը հարիւր մղոն աւելի հեռուն է։

Քլոյէի գոյնը աս խօսքիս վրայ մէկէն նետեց։

— Բայց հոգ չէ, ըսաւ խաթունը. թէ որ դու կարենաս երթալ՝ քու բոլոր վարձքդ ես մէկդի կը դնեմ՝ որ քու էրիկդ ազատելու օգնութիւն մ'ըլլայ։

Քլոյէին աչուըները ուրախութենէն սկը-սան փայլիլ։

— Ո՛հ, խաթուն, շատ բարի սիրտ ու-նիս, ըսաւ. ես ալ իմ կողմանէս հագուս-տի ու կօշիկի խնայութիւն ընելով՝ ստակ ստակի վրայ կը դնեմ։ Տարուան մէջ քա-նի՞ շաբաթ կայ։

— Յիսունըերկու։

— Ո՛հ, շաբաթը չորս տալլարը՝ բոլոր տարին ո՞րչափ կ՚ընէ։

— Երկու հարիւր ութը։

— Իրա՛ւ. հապա ո՞րչափ ատեն դուրսը պիտի աշխատիմ։

— Չորս կամ հինգ տարի. բայց ամէնն ալ դուն չես հոգար, ես ալ իմ կողմանէս քիչ մը բան վրան կը դնեմ։

— Բայց ես չեմ ուզեր, խաթուն, որ հրամանքդ երաժշտութեան վարպետ ըլլաս կամ ուրիշ աշխատութեան ձեռք զարնես. պարոնը իրաւունք ունէր դէմ դնելու։ Քանի որ աս ձեռուըներս կան, կը յուսամ որ աս տանս մէջ ոչ ոք այդ նուաստութեան կը հասնի։

— Մի՛ վախնար, Քլոյէ, պատասխանեց խաթունը. մեր տանը պատիւը ես ալ կ՚ու-զեմ անարատ պահել։ Բայց դու. ե՞րբ կ՚ու-զես երթալ։

— Դեռ չեմ գիտեր. միայն լսեցի որ Սամուէլ մտրուկները գետին անդիի կողմը տօնավաճառի պիտի տանի, խոստացաւ ալ որ զիս մէկտեղ տանի. անոր համար ես ալ կապոցս պատրաստեցի, թէ որ հրաման կու տաս, խաթուն, վաղը առաւօտ Սամուէլին հետ կ'երթամ. բայց կ'աղաչեմ որ ինծի անցագիր[1] մը ու յանձնարարական թուղթ մ'ալ տաս։

— Շատ աղէկ, երթամ նայիմ, թէ որ էրիկս դէմ չկենայ՝ ամէն ուզածներդ կը կատարեմ։

Երբոր Շէլպի խաթունը նորէն էրկանը քով դարձաւ, Քլոյէ ուրախութեամբ իր սընակը վազեց՝ պատրաստութիւն տեսնելու։ Ներս մտածին պէս՝ տեսաւ որ Թոմիկն ալ հոն կը գտնուէր, որ իրեն այցելութեան եկեր էր։

— Լսեցի՞ր, ըսաւ Թոմիկին, որ վաղը Լուիզվիլ պիտի երթամ. հոն շաբաթը չորս տոլլար պիտի առնեմ, ու խաթունը աս ըստակը մէկդի դնելով՝ իմ խեղճ էրիկս պիտի նորէն ձեռք բերենք։

— Շատ աղէկ բան մտածեր ես. որո՞ւ հետ պիտի երթաս։

1. Տես Հատ. Ա. Երես 109։

— Վաղը առաւօտ Սամուէլին հետ։ Հիմայ նստէ հոս ու էրկանս նամակին պատասխանը շարադրէ։

— Թովմասը քեզմէ թուղթ որ առնելու ըլլայ՝ շատ պիտի ուրախանայ. երթամ տուն և կաղամար ու թուղթ բերեմ։

— Գնա ու շուտ եկուր, ես հիմայ քեզի աղէկ հաւու առապկոց մը կը պատրաստեմ. բայց ափսոս... ես երթալէս վերջը ո՞վ պիտի քեզի այսպիսի համով կերակուրներ եփէ....։

## ԳԼՈՒԽ ԻԲ.

*Ցամաքեցաւ խոտն և թօթափեցաւ ծաղիկն.*

Մարդուս կեանքը վազանցուկ է, և ամէն բան անոր հետ միատեղ շուտ մը կ՚անցնի. այսպէս ալ երկու տարին մեր Թովմասին համար շուտ մ՚անցան գնացին։ Թէպէտ իր ամէն սիրելիներէն հեռու՝ անոնց կարօտովը կը մաշէր, բայց այսու ամենայնիւ իսկապէս թշուառութիւն մը չունէր։ Մարդուս զգացմունքը քնարի կը նմանի, որուն մինչև բոլոր թելերն ալ միանգամայն սաստիկ բախ-

մունքէ մը չփրթին՝ ներդաշնակութիւնը բու-
լորովին չի կորսնցըներ։ Այսպէս ալ մարդս
որչափ ալ նեղութիւն ունենայ, մէկ կողմէն
որ դիւրութիւն մը զգայ, բոլոր ունեցած
թշուառութեանցը դարման մը կը համարուի
իրեն։ Մէյմը որ դառնանք մենք ալ մեր
կենաց անցեալ ժամանակները քննենք, կը
տեսնենք որ մեր ամէն նեղութեանց մէջ ալ
փոքրիկ մխիթարութիւն մը պակաս չէ եղած,
և մեր խեղճ կարծուած ժամանակնիս ալ՝
երջանկութիւնը մեզմէ հեռու չէր քալեր։

Թովմաս ալ սովրեր էր գոհ ըլլալ իր որ
և է ունեցած վիճակին վրայ, և անոր խնդ-
գինքն յարմարցընել։

Ինչպէս նախընթաց գլխին մէջ ըսինք,
Թովմասին թղթին գեղեցիկ պատասխան մը
գրեց Օննիկ. այնչափ մաքուր ու յստակ
գրուած էր՝ որ հեռուանց ալ որոշ կրնար
կարդացուիլ։ Վարդուհիին խորհրդով՝ Թովլ-
մաս առաւ այս թուղթը շրջանակի մը մէջ
դրաւ, ու քանի որ վրան կը նայէր ու իր
ընտանեաց ու տերանցը որդիութիւնը կը
կարդար՝ սիրտը ուրախութենէն կը ճխար։

Վարդուհին քանի որ կը մեծնար՝ Թովլ-
մասին վրայ ունեցած սէրն ալ երթալով կը
շատնար, վրան կարգէ դուրս գութ մը կը

ցուցընէր․ Թոմմաս ալ իբրև երկնային հոգի մը՝ այնպէս կը գուրգուրար անոր վրան, ու ամէն ջանք կ՚ընէր որ սիրտը չկոտրէ։ Երբոր վաճառանոց կ՚երթար՝ առջի բանը Վարդուհիին համար ծաղիկներ ու պտուղներ գընել էր, ու երբոր տուն կը դառնար՝ տեսնես անգլիէն Վարդուհին ալ իր գեղեցիկ դեղին մազերով գլուխը պատուհանէն դուրս հանած՝ անոր գալուն կը սպասէր։

Այն ատեններ Սէն–Քլէր իր բոլոր ընտանիքովը Նոր–Օռլէանի մօտ՝ Բոնշարդրէն լճին քովը իր գիւղական տունը կը բնակէր, և ամառուան նեղացուցիչ տաքէն ազատելու համար՝ շատերն ալ այն կողմերն եկեր էին իրենց բնակութիւնը հաստատելու։

Սէն–Քլէրի ամարաստունը Հնդկաստանի ոճով շինուած էր, չորս կողմէն պամպուի ծառերով պատած ճեմելիքներ, որ դէպ ի ծաղկանոցներ ու պզտի հրապարակներ կը հանէին։ Տանը մեծ սրահը գեղեցիկ ծաղիկներով զարդարած պարտէզ մը կը նայէր, ուսկից զանազան ծառազարդ ճամբաներով մինչև լճին եզերքը կ՚իջեցուէր, որ արևուն ճառագայթները ցոլացընելով՝ ժամ ժամուան վրայ նորանոր գեղեցիկ տեսարաններ կը ներկայացընէր։

Արեւմուտքի ժամանակ՝ արեւուն վերջին պե-ղին ու ոսկեգոյն ճառագայթները կարծես թէ լճին վրայ ծիրանիէ մոգական վարագոյր մը կ'իջեցընէին, ուր ճերմակ առագաստանե-րով նաւակները մարդուս երեւակայական մը-տածութեանց նման կ'անցնէին ու կը դառ-նային։

Կիրակի գեղեցիկ իրիկուն մը՝ Թովմաս ու Վարդուհին լճին եզերքը կանանչներուն վրայ նստեր էին. Վարդուհին Աստուածա-շունչ կը կարդար. մէյմ'ալ դիպուածով Աս-տուածաշունչին մէջ այս խօսքս կարդաց. Եւ ես տեսի զծով բիւրեղեայ խառնեալ ընդ հրոյ։

— Նայէ, ըսաւ, Թովմաս, այս լճին պէս։

— Ի՞նչ կ'ըսես, հարցուց Թովմաս։

— Չե՞ս տեսներ, պատասխանեց Վար-դուհին, մատովը լիճը ցուցընելով. ահա կրակով խառնուած ապակիէ ծովը։

— Իրաւ է, ըսաւ Թովմաս, ու սկսաւ երգել.

Ո՛ տայր՝ դարձեալ ինձ ի թեւս առաւօտու
Դիտել յերկիր ի Փասանու,
Ընդ հայրենական զլւարբեանց եւ ոսկեձեւ
Երգել ի նորն Երուսաղէմ։

— Աս նոր Երուսաղէմն ո՞ւր է, հարցուց Վարդուհին։

— Ոհ, երկինքը, օրիորդիկ, ամպերէն վեր։

— Կարծես թէ ես ալ կը տեսնեմ, ըսաւ Վարդիկ։ Ամպերուն մէջ նայէ, աչքիս մարգարտէ դռներ կ՚երևան. իսկ անկէ անդին, ա՛լ անդին ամէն բան ոսկիէ է։

Թովմաս ան ատենը հեռագայ երգն երգել սկըսաւ.

Գեղաձաձանչ անդ հոգեաց դիտեմ ըզպարս
Գերաշխարհիկ փայլեալ ի փառս.
Սպիտակազգեացք ձեռներով կրրեն ի քուին
Ըզյաղթական արմաւենին։

— Թովմաս, ես զանոնք տեսեր եմ, ըսաւ Վարդուհին։

Զտարակուսեցաւ Թովմաս և ոչ ալ զարմացաւ։ Թէ որ Վարդուհին իրեն ըսէր թէ երկինք գնացեր եմ, ինքը շատ պժուարութիւն պիտի չունենար հաւատալու։

— Այս երանելեաց պարը ես երբեմն քունիս մէջ կը տեսնեմ, կրկնեց Վարդուհին, ու աչուըները դէպի երկինք յափշտակուեցան, ու քթին տակէն երգին վերջին տունը կրկնեց.

*Սպիտակազգեացք ձեռելով կըրեն ի բռին*
*Ըզյաղթական արմաւենին:*

— Թովմաս, ըսաւ, ես ալ հոն պիտի երթամ:

— Ո՞ւր, օրիորդիկ:

Վարդուհին ոտք ելաւ ու ձեռուըները դէպի երկինք վերցուց:

— Հո՛ն, հոն, ըսաւ, ուր որ երանելիք կը բնակին:

Թովմասին սիրտը կարծես թէ սուր մը խոթեցին: Վարդուհին վեց ամսէ ի վեր կը հիւծէր կը մաշէր, շուտ կը հոգնէր, շունչը կը բռնուէր, ու կարմրուկ երեսները դեղնիլ սկսեր էին, և Թովմաս սկզբան չէր անդրադարձած: Վարդուհիին այս խօսքը սրտին մէջ անեղիք ըրաւ, ու անկէ վերջը անոր օրէ օր տկարանալը աւելի աչքին կը զարնէր: Լսեր էր Օֆէլիայէն որ տղաք հազ մը կ'ունենան որ շատ վնասակար է. Վարդուհին ալ ջերմութիւն ունէր, բայց խեղճ սևը բոլորովին անոր անուշ խօսակցութեանց խելքը առած ըլլալով՝ չէր իմացած:

Եղա՞ծ են արդեօք Վարդուհիին պէս տըղաք: — Եղած են, բայց իրենց անունը միայն իրենց գերեզմաններուն վրայ կը յի-

շուրի. անոնց քաղցր խօսակցութիւնները, անոյշ նայուածքը, ոսկեղինիկ գանձի մը պէս մարդուս սրտին մէջ կը պահուին կը մնան։ Քանի՛ քանի՛ ընտանեաց մէջ դեռ կը լսուին մեռած գնացած տղոց անուշ գովասանքները։ Կարծես թէ Աստուած կարգ մը գրեր է որ հրեշտակաց խումբ մը իրենց կենաց գարունն այս աշխարհիս մէջ անցընեն, ու ամենակարծր սրտերն ալ կակղցընեն։ Որչափ ազդու, որչափ անուշ կու գայ պզտի տղու մը՝ իրեն հասակէն վեր ըրած խօսակցութիւնն ու զուարթ կերպը. կարծես թէ երկնային կնիք մ'ունի ճակատը, և իր աչուըներն անմահութեան լոյս մը կը ծագեն։

Այսպէս ես դուն ալ, ո՜վ բարեսնունդ և զուարթիկ Վարդուհի, ո՛ գեղեցիկ աստղ երկնից. դու դէպի արևմուտք կը խոնարհիս ու քու հայրենիքդ կը հրաժարիս, բայց զքեզ սիրողները դեռ չեն իմանար։

Թովմասին ու Վարդուհիին խօսակցութիւնն ընդմիջեցաւ. Օֆէլիա Վարդիկը ներս կը կանչէր, որ երեկոյեան ցօղէն չվնասուի։

Երկուքն ալ աճապարեցին ու տուն դարձան։

Օֆէլիա Նոր-Անգղիա շատ անգամ հիւանդապահ եղած ըլլալով՝ աղէկ կը ճանչ-

նար այն վտանգաւոր ու ծանրաքայլ հիւան-
դութեան նշանները, որ ի՛նչ և իցէ մարդ-
կային հնարքներէ չյաղթուելով՝ կամաց կա-
մաց իր փափկասուն որսերը գերեզման կը
տանի իրենց ծաղիկ հասակին մէջ։

Վարդիկին չոր հազը ու օր օրուան վրայ
տկարանալը և վրան եկած ջերմութիւնը
տեսնելով՝ կասկածիլ սկսեր էր Օֆէլիա, և
իր կասկածը Սէն-Գլէրին ալ յայտնեց. բայց
անիկայ բոլորովին անհիմն ցըցուց իր կաս-
կածը։

— Ի՛նչ տխուր գուշակութիւններ կ'ընես,
կ'ըսէր, չե՞ս տեսներ որ Վարդուհին երթա-
լով կ'երկըննայ. տղաք հասակ նետելու ժա-
մանակ բնականաբար քիչ մը տկար կ'ըլ-
լան։

— Բայց հազն ի՞նչ կ'ընես...

— Այն հազը բան մ'ալ չի նշանակեր.
Թերևս քիչ մը պաղ առած ըլլայ։

— Ելիզա Յովհաննային, Հեղինէին, Մա-
րիամին և ուրիշներուն հիւանդութիւններն
ալ հազով սկսան։

— Ո՛հ, պարապ տեղը այս ձախորդ խօս-
քերդ մի՛ երկնցըներ։ Կանայք քանի որ կը
պառաւընան՝ կը սկսին այնպիսի խոհեմու-
թիւն մը ստանալ՝ որ տղայ մը հազալու

կամ փանգալու ըլլալ՝ վրան կը սկսին հա-
զար ու մէկ կասկածներ ընել ու մինչև մին-
չև ալ կը վճռեն թէ պիտի մեռնի։ Դու
նայէ որ իրիկուան ատեն պտոյտ չըլլայ որ
պաղէն չվնասուի, և շատ ալ չխաղայ, ան
ատեն աղէկ կ՚ըլլայ։

Սէն-Քլէր այս խօսքերս ըսաւ, բայց ներ-
սէն անհանգստութիւն մը զինքն առաւ։ Ա-
մէն օր կը դիտէր Վարդուհին, բայց դեռ
միտքը դրեր էր որ ան հազը տղոց սովո-
րական ստամոքսի աւրուածութենէ առաջ կու
գայ։ Ամէն օր հետը մէկտեղ պտոյտ կը հա-
նէր կը քալցընէր, ու երբեմն երբեմն զօ-
րացուցիչ բաներ ալ կը բերէր, բայց միշտ
ըսելով որ — Չէ թէ հիւանդ է, այլ զին-
քը հիւանդութենէ պահելու համար են այս
դեղերը։

Վարդուհիին վրայ ամէն բանէն աւելի
զգալի էր որ օրուան վրայ մտքին բացուի-
լը. և երբեմն այնպիսի ծանր կերպով խօ-
քեր բերնէն կը հանէր՝ որ Սէն-Քլէր սըր-
տին այլայլութենէն կը դողար։ Սէրն ու գը-
թութիւնն՝ աղջկան սրտին բնական առաքի-
նութիւններն էին, սակայն բնական ազդեցու-
թեամբ խօսքեր կ՚ըսէր. բայց վերջերը սկսեր
էր նախատեսութիւններ ալ ընել։ Առաջուց

շատ անգամ կ՚երթար Գոլսիին և ուրիշ սև աղոց հետ կը խաղար, բայց 'անիկէ վերջը՝ աւելի կը կենար կը նայէր, երբեմն մինչև կէս ժամ կը կենար ու զուարճանալով մը Գոբսիին ծաղրածու շարժմունքները կը դիտէր. մէյմ՚ալ յանկարծակի երեսին գոյնը կը նետէր, աչուըները կը մթընային, ու խելքը ուրիշ մտածութեանց կ՚երթար։

Օր մ՚ալ մօրը հետ խօսակցելու ժամանակ ըսաւ.

— Մայրիկ, ինչո՞ւ մեր գերիներուն կարդալ ու գրել չենք սորվեցըներ։

— Ի՞նչ զարմանալի հարցմունքներ կ՚ընես. սովորութիւն չկայ, անոր համար չենք սորվեցըներ։

— Ինչո՞ւ սովորութիւն չէ եղած։

— Վասն զի այդ մարդկանց կրթութիւն հարկաւոր չէ. թէ որ բան սորվին՝ ալ չեն աշխատիր, անոնք աշխատելու համար աշխարհք եկած են։

— Բայց Սուրբ Գիրք կարդալը պարտքերնին է, որպէս զի Աստուծոյ պատուիրանքները գիտնան։

— Թող ուրիշի կարդացընել տան։

— Իրենք իրենցմէ առանց ուրիշի կարօտութիւն ունենալու կարդան՝ միթէ աւելի աղէկ չէ՞։

— Դու այս ի՞նչ կարգէ դուրս աղջիկ մ՚ես, Վարդիկ։

— Հապա հօրաքոյրս Օֆէլիա՝ Դոբսիին կարդալ գրել սորվեցուց։

— Ահա նայէ թէ անիկայ ի՞նչ օգուտ քաղեց։ Ես դեռ Դոբսիին պէս գէշ արարած մը չեմ տեսած։

— Իսկ խեղճ Մամմին, որչափ կ՚ուզէ Աւետարան կարդալ ու չի կրնար. որչափ գոհ կ՚ըլլար թէ որ կարենար ինքիրմէ քիչ մը կարդալ. ի՞նչ պիտի ընէ երբոր ա՛լ ես չկարենամ կարդալ։

Մարիամ որ դարան մը կը խառնէր, դարձաւ. — Դու Վարդուհի, ըսաւ, օր պիտի գայ որ գերիներուն հոգևոր գիրք կարդալը և ոչ մտքէդ պիտի անցընես. չեմ ըսեր թէ հիմակուան ըրածդ գէշ բան է, երբոր առողջ էիր՝ ես ալ կ՚ընէի. բայց երբոր ընկերութեան մէջ մտնելու համար ինքզինքդ մտածելու հետ ըլլաս՝ ա՛լ ատեն չես ունենար։ Նայէ աս զարդերը, երբոր մեծնաս ու ընկերութեանց մէջ մտնես, ան ատեն ասոնք քեզի պիտի տամ. ես զասոնք առջի անգամ պարի գնացած ժամանակս գործածեցի, և շատին ալ աչքին զարկաւ։

Վարդուհի ծանրագին զարդարանքներէն

մէկ քանի՛ն ձեռքն առաւ, ու պաղ աչքով մը դիտեց։

— Զե՞ս զմայլիր այս ազնիւ քարերուն գեղեցկութեան, հարցուց Մարիամ։

— Շատ բան կ՚արժե՞ն, մայրիկ։

— Ի՞նչ ըսել է. իմ հայրս տասնք Գաղղիայէն բերել տուաւ, և շատ սուղի ալ նըստան մեզի։

— Երանի՛ թէ աս քարերն իմ ուզածիս պէս կարենայի գործածել։

— Ի՞նչ կ՚ընէիր։

— Կը ծախէի, ու աղատ զաւաննեռու մէջ երկիր կը գնէի, և մեր գերիներն ալ հոն կը տանէի, վարպետ կը բռնէի որ իրենց կարդալ ու գրել սորվեցընէ։

Մարիամ բարձրաձայն ծիծաղեցաւ։

— Դու կրթարա՞ն կ՚ուզես հաստատել, հա՛, շա՛տ բան. հարկաւ դու այն աղօրմելիներուն նաւապարան զարնել և թաւշի վրայ բանիլ ալ պիտի սորվեցընես։

— Ես անոնց հոգևոր գիրք կարդալ և իրենց եկած նամակներուն պատասխանը գըրել կը սորվեցընեմ, ըստ համարձակութեամբ Վարդուհին։ Ի՞նչ ցաւալի բան է կարդալ ու գրել չգիտնալը. Թովմաս ու Մամիի և ուրիշներն ալ կարդալ գրել չգիտ-

նալնուն համար միշտ ցաւի մէջ են, ես ալ կարդալ ու գրել չգիտնալը շատ գէշ բան կը դատեմ։

— Վարդի՛կ, դու դեռ տղայ ես, այս բաներուս խելքդ չի հասնիր․ այս պարապ խօսակցութիւններդ ալ գլուխս կը ցաւցընեն։

Մարիամ երբոր իր դիմացը՝ չուզած բաները խօսէին՝ մէկ հատիկ պատճառ գլխուն ցաւը կը բերէր, որ լռեցընէ խօսողները։ Վարդուհին մէկէն խուցէն դուրս ելաւ, բայց մօրը խօսքին չնայելով մէկ կողմանէ Մամմիին կարդալ սորվեցընելը ձեռքէ չթողուց։

## ԳԼՈՒԽ ԻԳ․

### Գրիգորիկ

Նոյն տարին ամառուան վերջերը Սէն-Քլէրի եղբայրը Ալփրետ՝ իր անդրանիկ որդւովը, որ տասնուերկու տարեկան կար, Բոնշարդըէն լճին քով եղբօրը ամարանոցին եկաւ՝ քանի մ'օր մէկտեղ անցընելու։

Այս երկուորեակ եղբայրները բնութեամբ բոլորովին հակառակ էին իրարու, բայց այ-

սու ամենայնիւ մէկմէկու հետ կարգէ դուրս ընտանութիւն ունէին ։ Թեւ թեւի տուած՝ պարտէզը կը քալէին. Օգոստինոս կապոյտ֊աչուի, շէկ մազերով, զուարթ ու ազնուական կերպ մ'ունէր. իսկ Ալփրետ կրակոտ, ուժով, սեւաչուի ու յաղթանդամ կերպարանք մ'ունէր. երկուքն ալ մէկմէկու ըրածին չէին հաւնիր ու կը ծիծաղէին մէկմէկու վրայ, բայց մէջերնին ոչ երբեք կռիւ կամ հակառակութիւն հանդիպած էր։

Իսկ Ալփրետին մեծ որդին՝ որ Գրիգորիկ կը կոչուէր, կրակոտ և աշխոյժ տղայ մ'էր։ Վարդուհիին հետ առաջին անգամ տեսնուելուն՝ սիրտը անոր հետ կապուեցաւ։

Վարդուհին աղուոր ճերմակ մորուկ մ'ունէր, հեծնելու շատ դիւրանսաց. Թովմաս գնաց տանն առջեւ բերաւ. անդիէն նայիս Գրիգորիկին պզտի գերին ալ անոր արաբացի աշխոյժ ձին բերաւ։

— Ի՞նչ է աս, Տոտոյ, ըսաւ Գրիգորիկ գերիին, այս առաւօտ ինչո՞ւ ձիս չես մաքրած։

— Մաքրեցի, պատասխանեց գերին վախնալով մը, չեմ գիտեր ինչպէս նորէն այդչափ փոշի նստեր է վրան։

— Ձայնդ քաշէ՛, Թշուառական, պոռաց

բարկութեամբ խարազանը ձեռքը. այլ ի՞նչ համարձակութեամբ խօսիլ է։

Խեղճ ոսւուկը որ գեղեցիկ տղայ մ'էր այլայլեցաւ. կարծես թէ երակներուն մէջ ճերմակի արիւն կար, վասն զի երեսները մէկէն կարմրեցան։

— Պարոն Գրիգորիկ ... ըսելուն չմնաց, Գրիգորիկ խարազանով քթին բերնին զարկաւ, ու վերջը ձեռքէն բռնեց չոքել տուաւ ու անխնայ ծեծեց։

— Գնա՛ հիմայ սորվէ ինծի պատասխան տալը՝ անպիտան շուն, ըսաւ. տա՛ր սա ձին ու նորէն մաքրէ։

— Պարոն, ըսաւ անդիէն Թովմաս, կարծեմ խեղճը կ'ուզէր ըսել թէ ձին կրակոտ ըլլալով՝ ախոռէն դուրս ելլելու ատեն գետինը գլորեցաւ ու բոլոր փոշոտեցաւ։ Ես այս առաւօտ տեսայ որ կը մաքրէր։

— Դուն ալ լեզուդ քեզի քաշէ, պատասխանեց Գրիգորիկ, ու երբոր քեզի բան մը հարցընեն՝ ան ատեն խօսէ։

Վերջը Վարդիկին քով գնաց։

— Շատ կը ցաւիմ, սիրելի, ըսաւ, որ սա անպիտան տղուն պատճառաւ այսչափ սպասեցընել կու տամ։ Մինչեւ որ անիկայ դառնայ՝ մենք հոս նստինք .... բայց ի՞նչ ունիս, տխուր կ'երեւաս ...

— Այդ ի՜նչ անգութ կերպով կը վարուիս խեղճ Տոտոյին հետ։

— Անգո՞ւթ ... ի՜նչ ըսել է անգութ, սիրելի Վարդիկ։

— Քանի որ այդ կերպն ունիս, չեմ ուզեր որ ինծի սիրելի Վարդիկ կանչես։

— Սիրելի, դու ալ Տոտոն չես ճանչնար, իրեն հետ վարուելու մէկ հասարակ կերպն աս է. ամէն անգամ ինքզինքն արդարացընելու պատճառանք մը, սուտ մը կը գտնէ. և թէ որ չլռեցընեմ՝ խօսքը լմընցընելիք չունի. հայրս ալ աս կերպս միշտ կը բռնէ։

— Թովմասը քեզի չըսա՞ւ որ դիպուածով եղած բան է. Թովմաս ոչ երբեք սուտ կը խօսի։

— Ուրեմն այդ ի՜նչ կարգէ դուրս սև մ'է եղեր Թովմասը. բայց Տոտոն ճշմարիտ խօսելէն աւելի սուտ կը խօսի։

— Դու զինքը վախցընելով ու այդպիսի կերպով հետը վարուելով՝ անոր սուտ ըսելուն պատճառ կ'ըլլաս։

— Վարդիկ, կը տեսնեմ որ դու Տոտոյին վրայ կարգէ դուրս հոգ մը կը ցուցընես. այդ բանդ աչքիս աղէկ չի զարներ։

— Խեղճը զուր տեղը ծեծեցիր։

— Քանի օր է որ ծեծի արժանի բաներ

կ՚ընէր ու չէր ծեծեր, աս անգամ անոնց առողը թող համարի։ Տոտոյ չար աղայ մ՚է, ծեծ պէտք է անոր. բայց որովհետեւ քեզի վշտի պատճառ կ՚ըլլայ, ա՛լ քու դիմացդ մէյմ՚ալ չեմ ծեծեր։

Վարդուհին ասով զոհ չեղաւ, և զուր տեղը երկայն բարակ աշխատեցաւ Գրիգորիկին իր միտքը բացատրելու ։ Մէյմ՚ալ Տոտոն՝ ձին մէկտեղ՝ վրայ հասաւ։

— Ապրի՛ս, հիմայ մաքուր է, ըսաւ քիչ մ՚անուշ կերպով. երթանք, օրիորդին ձին բռնէ՝ որ զինքը վրան հեծցընեմ։

Տոտոյ մէկէն հնազանդեցաւ, ու ձիուն երասանակէն բռնեց. բայց աչուըները լեցուած էր, կ՚իմացուէր թէ խեղճը շատ լացեր էր։

Գրիգորիկ շատ ճարտարութեամբ Վարդուհին ձիուն վրայ նստեցուց, և երասանակն ալ ձեռքը տուաւ։

Վարդուհին երբոր ձիուն վրայ հեծաւ՝ դէպ ի Տոտոյին կողմը դառնալով,

— Ապրի՛ս, ըսաւ, շատ շնորհակալ եմ ըրած ծառայութեանդ։

Տոտոյ ապշած՝ աղջկան երեսը նայեցաւ ու աչուըներէն արցունք սկսան գալ։ Գրիգորիկ աղջիկը հաճեցընելու մտքով Տոտոն

քովը կանչեց ու ձեռքը քանի մը ստակ դրաւ որ երթայ ուզածը գնէ, ու ինքը Վարդուհիին հետ մէկտեղ ճամբայ ելաւ։

Տօտոյ երկայն ատեն անոնց ետեւէն կը նայէր. անոնցմէ մէկը ստակ տուեր էր իրեն, իսկ մէկալը անուշ խօսք մը զուրցեր էր, որ ամէն բանէ աւելի կ'արժէ։ Խեղճը քանի մ'ամիս էր միայն՝ որ մօրը քովէն բաժնուեր էր. Ալփրետ աս տղուն գեղեցիկ կերպարանքին հաւնելով՝ գներ էր, ու Գրիգորիկին ծառայութեան տուեր էր։

Տօտոյին ծեծ ուտելն ու Վարդուհիին զանիկայ պաշտպանելը՝ պարտէզին մէկալ անկիւնէն տեսեր էին Օգոստինոս ու Ալփրետ։ Օգոստինոս նեղանալէն կարմրեցաւ, բայց իրեն սովորական կծու և անհոգ կերպովը,

— Այս է, ըսաւ, ձեր տուած հասարակապետական ըսուած դաստիարակութիւնը։

— Ի՞նչ ընեմ, պատասխանեց Ալփրետ, մէյմը որ Գրիգորիկին գլուխը տաքնայ՝ ինքզինքը չի կրնար բռնել։

— Դու ալ կարծեմ անոր ըրածներուն հաւնիլ կը ցուցնես, վրայ բերաւ Օգոստինոս։

— Դէմ ալ չեմ կրնար դնել. այնպիսի բարկացոտ բնութիւն մ'ունի՝ որ ես ալ և

մայրն ալ չենք կրնար զինքը սանձել: Բայց Տօտօն ալ զարմանալի բնութիւն մ'ունի որ ծեծէն ամենեւին չ'առնուիր:

— Գրիգորիկ քու կերպերէդ կը սորվի ամէն հասարակապետական վարդապետութիւնները, որոնցմէ մէկն ալ է. Ամէն մարդիկ ի բնէ հաւասար ու ազատ կը ծնանին:

— Այրի՛ս ... պատասխանեց Ալփրետ, այդ սկզբունքներդ քանի մը գաղղիացի շատախօսներու խօսքերն են, որ շատ ծաղրելի են. և պէտք է մեր մէջէն այդպիսի սկզբունքները վերցընել:

— Ինծի ալ այնպէս կ'երեւայ, պատասխանեց Օգոստինոս՝ նշանական կերպով մը Ալփրետին երեսը նայելով:

— Վասն զի որոշ ու յայտնի գիտենք որ մարդիկ ի բնէ ազատ ու հաւասար ծնած չեն. ինծի կ'երեւայ թէ հարուստներն, իմաստուններն ու քաղաքականացեալ մարդիկ միայն պէտք է հաւասար իրաւունք ունենան, չէ թէ այդ անպիտան խառնիճաղանճը:

— Ըսածդ աղէկ է՝ թէ որ կարենաս միշտ քու կարծեացդ հաւանեցընել այդ խառնիճաղանճը. բայց գիտնաս որ խառնիճաղանճ ըսածդ Գաղղիոյ մէջ իրենց իրաւունքն առաջ տարին:

— Մարդուս հաստատ ու անփոփոխ իր խօսքին վրայ կենալն ալ վարպետութիւն մ'է, ինչպէս որ ես կ'ընեմ. նուաճելու է, ճզմելու է զանոնք, ըսաւ Ալփրեա՝ ոտքը գետին զարնելով, կարծես թէ ոտքին տակը մէկը կը ճզմէր։

— Երբոր խառնիճաղանճը մէյմը ոտք ելլէ՝ հանդարտեցընելն անկարելի բան է, ըսաւ Օգոստինոս. միտքդ բեր Ս. Տոմինիկոս[1] կղզւոյն մէջ հանդիպածը։

— Մենք մեր երկրին մէջ խռովութեան դիմացն առնելը գիտենք. պէտք է որ ամէն կերպով դէմ կենանք հիմակուան նորելուկ ընդհանուր խենթութեան, որ սեւերը դաստիարակելու է, կ'ըսեն. ստորին աստիճանի մարդիկ պէտք չէ որ կրթուին։

— Ո՛րչափ ալ դէմ կենաս, կամ մէկ կամ մէկալ կերպով անոնք տեսակ մը դաստիարակութիւն կ'առնուն։ Մեր հիմակուան կերպով՝ անոնք բոլորովին կը բարբարոսանան. մենք անոնց վրայէն մարդկութեան հոտքն ալ մեր աս վարմունքովը կը ջնջենք,

1. Ս. Տոմինիկոս կամ Հայիդի կղզին՝ Ամերիկայի Մեծ Անդիլեան կղզիներէն մէկն է. անուանի է կըղզւոյս գերեաց ապստամբութիւնը, որ 1791ին գիշերանց խռովութիւն հանեցին ու բոլոր եւրոպացիները թրէ անցուցին։

որով կամաց կամաց գաղան պիտի դառնան, և թէ որ օր մը ապստամբին՝ այդ գազաններուն դէմ մենք ինչ պիտի կարենանք ընել . . .

— Այդ տարիճանին չենք հասնիր, պատասխանեց Ալփրետ:

— Տեսնենք . . . . շոգեշարժ մեքենան քալընկցուր, ապահովութեան կատարիչները գոցէ՛, ու դու ալ ելիր վրան նստէ, նայինք ան ատեն ինչ կ՚ընես:

— Շատ աղէկ, տեսնենք … քանի որ կաթսաներն ամուր են ու մեքենան աղէկ կը քալէ՝ ես ապահովութեան կատարիչներուն վրայ նստելու չեմ վախեր:

— Լուդովիկոս ԺԶի ատենուան Գաղղիոյ ազնուականներն ալ նոյն բանը կ՚ըսէին. կան մարդիկ որ հիմայ ալ նոյնպէս կը մտածեն. բայց օր մ՚ալ երբոր կաթսաները ճաթին՝ ան ատեն կը տեսնենք թէ ինչ կ՚ըլլայ, ամէնքնիդ մէկէն օդը կ՚ելլէք:

— Առարկք յայտնեցիր, ըսաւ ծիծաղելով Ալփրետ:

— Նորէն կը կրկնեմ, Ալփրետ, հիմակուան ժամանակս ժողովրդեան ապստամբիլը բնութեան օրինաց ուժ մ՚ունի. քչէ ատենէն վարքի տարիճանի մարդիկ ազնուականներէն վեր պիտի ելլեն:

— Օգոստինոս, դու կարմիր հասարակապետական ես. ինչո՞ւ ժողովրդեան որբերուն չեղար, այդ պաշտօնին մէջ մեծ անուն կրնայիր հանել։ Ցուսամ որ այդ քու խառնիճաղանճիդ յաղթանակելուն չեմ հասնիր։

— Խառնիճաղանճ ըսէ, ի՛նչ կ'ուզես անուանէ, բայց օր մը ձեր կառավարը պիտի ըլլայ. և ան ատեն դուք ձեր հիմակուան սերմանածը պիտի հնձէք։ Գաղղիոյ ազնուապետութիւնը Սան-Քիւլոտ ժողովուրդ մ'ուզեց կառավարել, բայց ինքն անոնցմէ կառավարուեցաւ։ Հայրիկի ժողովուրդը ...

— Այդ անպիտան Հայրիկի ժողովրդեան վրայ խօսք մի՛ ըներ։ Ս. Տոմինիկոսի ճերմակները թէ որ Անկլօ-Սաքսոն ցեղէն ըլլային՝ այդ բաները չէին հանդիպիր. Անկլօ-Սաքսոն ցեղն աշխարհիս տիրելու համար եղած է ու պիտի տիրէ։

— Բայց ինծի կ'երեւի թէ մեր գերիներուն երակներուն մէջ ալ քիչ մը Անկլօ-Սաքսոնի արիւն կը քալէ. գերիներուն շատերը որ ափրիկեցի ցեղէ առաջ եկած են՝ միայն բանի գործի մէջ իրենց տաքութիւննին պահած են։ Թէ որ Սուրբ Տոմինիկոսի կղզւոյն պէս հոս ալ մէյմը ապստամբութեան ձայն մ'ելլէ՝ սա Անկլօ-Սաքսոնի ցե-

ղը պիտի ըլլայ՝ որ խռովութիւնը առաջ պիտի առնի. ան տղաքը որ հօր կողմանէ ճերմակներու խառնուրդ են՝ թող պիտի չառնն որ ա՛լ զիրենք ծախեն ու գնեն, և պիտի ազատամբլին ու իրենց հետ մէկտեղ նաեւ իրենց մայրերուն ցեղն ալ ոտք պիտի հանեն ։

— Ի՞նչ զուր ու խենթ խօսքեր են։

— Ես կարդացած եմ, պատասխանեց Օգոստինոս, որ ինչպէս եղաւ Նոյի օրերը, հիմակ ալ նոյնպէս պիտի ըլլայ. կ'ուտէին, կը խմէին, կը կարգուէին, մինչեւ ան օրը՝ որ ջրհեղեղն եկաւ և զամէնքը ջնջեց։

— Մ, ըսաւ Ալփրետ ծիծաղելով, Օգոստինոս, թափառական քարոզիչ մը կրնաս ըլլալ։ Ամենեւին մեր վրայ վախ մի՛ ունենար, մենք կարողութիւն ալ ունինք, ուժ ալ։ Այս անպիտան ցեղը, ըսաւ ոտքը գետին զարնելով, մեր ոտքին տակն է, և հոն պիտի մնայ. յուսանք որ մեր վառօդը գործածելու կարօտութիւն չենք ունենար։

— Քու Գրիգորիկիդ պէս դաստիարակուած տղաք աղէկ վառօդ պէտք է պատրաստ ունենան ։ Այդպիսիները շատ անտարբեր ու պաղ արիամբ կը մտածեն, բայց առակը կ'ըսէ. Ո՞վ որ չի գիտեր ինքզինքը

կառավարել՝ զուրիշները ալ չի կրնար կառավարել։

— Շատ դժուարութիւններ կան, պատասխանեց Ալփիրեա մտածելով մը. մեր այս կերպովը շատ դժուար է տղաք դաստիարակելը. տուն մենք ախտից ազատ համարձակ ճամբայ մը մեր ձեռքովը կը բանանք իրենց, և դժբախտաբար մեր կողմերը ախտերը շատ ճարակած են։ Գրիգորիկ ինծի շատ մտածել կու տայ. աղէկ սիրտ ունի, բայց գլուխը մէյմը որ տաքնայ՝ կայծակի պէս կը բռնկի։ Կը մտածեմ հիւսիսային կողմերը ղրկել, ուր ուրիշի խօսքին մտիկ ընելը նորելուկ բան մ'է, հոն իր հասարակաց հետ աւելի վերաբերութիւն ունենալով՝ ատեն չ'ունենար իրմէ վարի աստիճանի մարդոց հետ տեսնուելու։

— Որովհետև դաստիարակութիւնը մարդկային կենաց ամենահարկաւոր բանն է, երբոր մեր դաստիարակութեան ոճը պակասաւոր է՝ ըսել է թէ մեր ընկերութիւնն ալ անկարգ է։

— Բայց ան ալ օգուտ մ'ունի. անով տղաք աւելի կարիճ կ'ըլլան. և այս անպէտան սեւերուն վրայ երևցած գարշելի ախտերը՝ զտղաք անոնց հակառակ առաքինու-

թեանց մէջ աւելի կը կրթեն։ Օրինակի համար, իմ Գրիգորիկս առնելով որ գերիներուն բնութեան առըջ մ'է ստախօսութիւնն ու խարդախութիւնը՝ կարգէ դուրս ճշմարտասէր է։

— Այդ մտածութիւնդ ալ քրիստոնէավայել խորհուրդ մ'է դաստիարակութեան վրայ։

— Քրիստոնէավայել է թէ չէ՝ չեմ գիտեր, այս միայն գիտեմ որ ճշմարիտ է։ Բայց ի՞նչ զուր տեղը խօսակցութիւննիս կ'երկընցընենք. այս նիւթիս վրայ կարծեմ հարիւր անգամէն աւելի խօսեր ենք։ Եկուր քիչ մը նարտ խաղանք։

Երկուքը մէկտեղ վեր ելան, ուր պամպուէ սեղանի մը վրայ նարտախաղը կեցեր էր. և մինչդեռ խաղալ սկսելու վրայ էին՝ Ալփրեա ըսաւ.

— Հաւատա ինծի, Օգոստինոս, որ եթէ ես ալ քեզի պէս մտածէի՝ բան մը կ'ընէի։

— Կը հաւատամ, որովհետեւ դու շատ գործունեայ ես. բայց ընելիքդ ի՞նչ է։

— Փորձի համար՝ գերիներէս մէկ քանին կը դաստիարակէի, պատասխանեց Ալփրեա հեզնական ծիծաղով մը։

— Այս խորհուրդս, պատասխանեց Սէն-

Թւէր, տնոր կը նմանի՝ որ գերիի մը կռնակը լեռ մը բեռնաւորես՝ ու հրամայես որ շիտակ կենայ. ինչպէս կ'ուզես որ գերիները շտկուին՝ քանի որ մարդկային ընկերութեան բեռը վրանին ծանրացած՝ զիրենք ճզմելու հետ է։ Մինակ մարդ մը՝ այդչափ բազմաթիւ մարդկանց ինչպէս կրնայ դէմ դնել։ Դաստիարակութիւնն օգտակար ըլլալու համար՝ պէտք է որ տէրութիւնը վրան ձեռք դնէ, կամ գոնէ խել մը մարդիկ մէկտեղ միաբանին որ այնպիսի գործն առաջ երթայ։

Հազիւ թէ խաղն սկսեր էին ու առաջ կը տանէին՝ մէյմ'ալ ձիերուն ոտքին ձայնը լսուեցաւ։

— Տղաքը դարձան, ըսաւ Օգոստինոս, և մէկէն խաղը ձգեց ոտք ելաւ, ու վազեց Վարդիկին օգնելու՝ որ ձիէն վար իջնէ։

Վարդուհիին երեսը քիչ մը գոյն եկեր էր ու կը հեւար. հայրը խեղճին կարճ կարճ շունչ առնելը տեսնելով՝ այլայլեցաւ.

— Այս ինչ է, Վարդիկ, ըսաւ, շատ յոգներ ես, ինչո՞ւ ձին կը վազցընես, չե՞ս գիտեր որ քեզի վնաս կ'ընէ։

— Մոռցայ, պատասխանեց աղջիկը, բան մը չէի զգար, կը զուարճանայի ալ, անոր համար թողուցի ձին որ վազէ։

Օգոստինոս գրկեց աղջիկն ու առաւ տարաւ սրահին մէջ բազմոցի մը վրայ նստեցաւ։ Բայց քիչ մ'ատենէն հեւալն անցաւ, հօրն ալ սիրտը հանդարտելով՝ մինակ ձգեց զինքը Գրիգորիկին քով ու գնաց։

— Շատ կը ցաւիմ, Վարդուհի, ըսաւ Գրիգորիկ, որ հայրս երկու օրէն պիտի երթայ, ես ալ զքեզ երկայն ատեն պիտի չկարենամ տեսնել։ Թէ որ քովդ կենայի՝ Տօտոյին հետ աղէկ վարուելով՝ զքեզ գոհ կ'ընէի. ես ալ չեմ ուզեր չարչըրկել զինքը, բայց ի՞նչ ընեմ, քիչ մ'անհամբեր եմ։ Այսու ամենայնիւ երբեմն երբեմն քանի մը ստակ ձեռքը դնելով՝ սիրտը կ'առնեմ. նայէ թէ ինչպէս մաքուր ալ հագուեցուցեր եմ։ Յուսամ որ ինքն ալ իր վիճակին վրայ գոհ է։

— Դու քու վիճակիդ վրայ գոհ կ'ըլլայի՞ր, թէ որ քովդ սրտակից մը չունենայիր։

— Բնական է որ չէ։

— Ուրեմն շատ աղէկ. դու Տօտոն իր բարեկամներէն բաժնեցիր, հիմայ քովը սըրտակից մ'ալ չունի. ինչպէս ուրեմն կրնայ ինքը գոհ ըլլալ։

— Բայց իմ ձեռքէս ի՞նչ կու գայ. ես իրեն մայրը ի՞նչպէս քովը դարձընեմ. ես

չեմ կրնար զինքը սիրել, և զուրիշն ալ չեմ կրնար գտնել որ զինքը սիրէ։

— Ինչո՞ւ դու պիտի չկարենաս զինքը սիրել։

— Ես Տոտո՞ն սիրեմ. անիկայ դու ալ չես ուզեր։ Իրաւ, իրմէ կ'ախորժիմ... բայց դու ալ քու գերիներդ չես սիրեր։

— Հաւատա ինծի որ ես կը սիրեմ։

— Այդ ի՞նչ նոր բան է։

— Աւետարանը չի՞ ապսպրեր որ զամէնը սիրենք։

-- Ո՛հ, Սուրբ Գիրքը դեռ շատ բան կը զուրցէ. բայց դու ալ գիտես, Վարդիկ, որ ոչ ոք կը ջանայ զանոնք պահել։

Վարդուհին սկզբան պատասխան չտուաւ աս խօսքիս. և քիչ մը մտածելով աղջիկը նայելէն վերջը՝ ըսաւ.

— Ի՛նչ ալ ըլլայ, կ'աղաչեմ զքեզ, սիրելի, որ Տոտոն սիրես, ու իմ սիրոյս համար անոր հետ աղէկ վարուիս։

— Քու սիրոյդ համար ի՛նչ որ կ'ուզես կ'ընեմ. որովհետեւ քեզի պէս ուրիշ մը չեմ տեսած։

Գրիգորիկ մեծ աշխուժով մ'ըսաւ աս խօսքս, բայց Վարդուհին պարզ կերպով մը պատասխան տուաւ.

— Շատ ուրախ եմ, սիրելի Գրիգորիկ, յուսամ որ խոստմունքդ չես մոռնար։

Նոյն ատեն սեղանի զանգակն ալ զարնելով՝ խօսակցութիւննին կտրեցաւ։

## ԳԼՈՒԽ ԻԴ.

### Ձախող գուշակութիւնք.

Երկու օրէն վերջը Ալփրետ և Օգոստինոս մէկմէկէ բաժնուեցան ։ Վարդուհին ալ՝ որ հօրեղբօրորդւոյն հետ իր կարողութենէն վեր շատ ասդին անդին արշաւանքներ ըրեր էր քաշկռտուելով, համաց համաց սկսաւ ուժէ իյնալ։

Սէն-Քլէր վերջապէս զիջաւ որ բժիշկ կանչուի. մինչեւ ան ատեն դէմ դրեր էր բժիշկ բերելու, վախնալով որ չըլլայ թէ իր տխուր նախազգացումներն ստուգուին. բայց Վարդուհին այնչափ տկար էր՝ որ երկու երեք օր խուցէն ալ դուրս չկարենալով ելլել՝ բժիշկը կանչուեցաւ։

Իսկ Մարիամ՝ Սէն-Քլէրի կնիկը՝ իր երեւակայեալ հիւանդութեանց ուշ գնելով, և ոչ իսկ իմացեր էր իր աղջկան օրէ օր տկա-

րանալը․ միտքը դրած էր որ ոչ ոք իրեն չափ ցաւ քաշած է, և ոչ ալ կրնայ քաշել, անոր համար ուրիշներուն որ և իցէ տկարութիւնը բանի տեղ չէր դներ ։ Կ'ըսէր ալ միշտ որ ուրիշները ծուլութեամբ ու վախկոտութեամբ հիւանդ կը ձեւանան, և թէ որ իրեն քաշած ցաւերը իրենք ալ քաշէին՝ ան ատեն կ'իմանային թէ ի՛նչ տարբերութիւն կայ։

Օֆէլիա շատ անգամ փորձեր էր որ աղջըկան տկարութիւնը մօրը միտքը խօթէ, բայց կարելի չէր եղած։

— Ես Վարդուհիին վրայ պզտիկ տկարութիւն մ'ալ չեմ տեսներ, կ'ըսէր Մարիամ․ օրն ի բուն խաղալու ու վազելու հետ է։

— Բայց հազ ունի ...

— Հա՛զ ունի ... հազի վրայ ինծի հետ խօսք մի՛ ըներ։ Ես բոլոր կենացս մէջ հազ ունեցեր եմ․ Վարդիկին տարիքն ունեցած ժամանակս ամէն ոք կը կարծէր որ թոքացաւ ունիմ․ Մամմի գիշեր ցորեկ քովէս չէր բաժնուեր ...։ Վարդուհիին հազը բան մը չէ, հոգ մի՛ ըներ։

— Բայց երթալով զգալի կերպով տկարանալու վրայ է, շունչն ալ կարճ է։

— Ես ալ շատ տարի նոյն բանն ունեցեր եմ. տսիկայ ջղային հիւանդութիւն մ'է։

— Գիշերներն ալ սատանին կը քրտնի։

— Տասը տարի է որ ես ալ բոլոր գիշերները քրտինքի մէջ կը լողամ. և երբեմն՝ մանաւանդ թէ շատ անգամ՝ բոլոր վրայի հագուստներս ու սաւաններս այն աստիճանի կը թրջին՝ որ Մամմի կը հարկադրի զանոնք փոխել որ չորնան։ Վարդիկին քրտնիլը բան մը չէ իմ քրտնելուս քով։

Օֆէլիա տեսնելով որ ալ ճար չկայ զինքն համոզելու՝ խել մ'ատեն լռեց. բայց երբոր Վարդիկին տկարութիւնն յայտնի եղաւ և սաստկացաւ ու բժիշկ ալ կանչուեցաւ, նայիս Մարիամ մէկէն լեզուն փոխեց.

Շատ ատենէ ի վեր ես ալ նոյն բանը կը գուշակէի, կ'ըսէր. ի՞նչ գժբախտ մայր եմ եղեր, այսչափ քաշածներս բաւական չեն, միթէ մէկ հատիկ սիրելի աղջիկս ալ աչքիս առջեւ գերեզմա՞ն պիտի դնեմ։ Եւ Մարիամ այս բանս իրեն պատճառանք առնելով՝ խեղճ Մամմիին հոգին բերանը բերաւ. ալ ողորմելին ոչ գիշերը քուն ունէր և ոչ ալ ցորեկը հանգիստ. օրն ի բուն Մարիամ՝ հիւանդ եմ, տկար եմ, ըսելով՝ քովէն չէր ուզեր որ հեռանայ, և օր օրուան վրայ ալ կարգէ դուրս անտանելի ըլլալ սկսաւ։

— Մարիամ, սիրելիս, զուր տեղ ինքզինքդ մի չարչարեր այսչափ, կ'ըսէր Սէն-Փըլէր, դեռ ամէն ակնկալութիւն չկտրեցաւ։

— Դու մօր մը զգացմունք չես ունեցած, Սէն-Փըլէր, և ոչ ալ ունենալիք ունիս. անոր համար այսօր ալ իմ ցաւս չես կրնար հասկընալ։

— Այդպիսի դէշ գուշակութիւններ մի ըներ. հիւանդութիւնն անբուժելի չէ։

— Ես քեզի պէս անտարբեր չեմ կրնար ըլլալ։ Թէ որ դու չես զգածուած այդպիսի վտանգաւոր վիճակի մէջ տեսնելով մեր մէկհատիկ աղջիկը, բայց ես շատ այլայլութեան մէջ եմ. այնչափ ցաւերուս վրայ այս ալ մեծ հարուած մ'է ինծի։

— Իրաւ է, ըսաւ Սէն-Փըլէր, որ Վարդուհին շատ փափուկ կազմուածք ունի. այնչափ շուտ հասակ նետեց որ ուժէ ինկաւ, շատ վտանգաւոր վիճակի մէջ է. և հիմայ ալ ամառուան տաքէն և իր հօրեղբօրորդւոյն հետ ըրած արշաւանքներէն շատ չարչըրկուելով՝ տկարացաւ. բայց բժիշկը յոյս կու տայ զինքը վտանգէն ազատելու։

— Դու ալ ամէն բանին միայն աղէկ կողմը կը մտածես. այս աշխարհիս մէջ մարդ երջանիկ ըլլալու համար՝ անզգայ ըլլալու

է եղեր. իմ զգացմունքս ալ քիչ մը պակաս ըլլար՝ քեզի պէս իմ ալ հոգս չէր ըլլար։

Մարիամ բոլոր անոնցմէն անզգայի տեղ դրեր էր, և ինքզինքն զգայուն ցուցընելու համար՝ տնեցոց ամենուն հոգին կը հանէր։ Թէ որ մէկն իր գլխացը պզտիկ խօսք մը բանար անտարբեր բանի մը վրայ, մէկէն կը սկսէր գանգատիլ անոնց անզգայութեան վրայ։ Խեղճ Վարդուհին ալ քանի որ կը լսէր մօրը այս խօսքերը՝ սաստիկ կը վշտանար, և մօրը իրեն համար քաշածներուն վրայ տաքուկ արցունք կը թափէր։

Մէկ երկու շաբաթէն՝ Վարդիկ քիչ մը վրայ գալու, վասն զի այն անողոքելի հիւանդութիւնը քիչ մը իր ընթացքը դանդաղցեր էր և խաբեբայ առողջութեան յոյս մը ծագեր էր, ուր անոր գերեզմանն իր բերանը բացեր էր։ Ուստի նորէն առջի սովորութեան պէս Վարդուհին պարտէզ սկսաւ իջնել, պատուհանին ելլել, խաղալ զուարճանալ. հայրն ալ՝ աղջկան առողջութիւնը տեսնելով՝ ուրախութենէն խելքը կը թռցնէր. ու միտքն ալ դրեր էր՝ որ քիչ ատենէն աղջիկն իր առջի առողջութիւնը բոլորովին ձեռք պիտի բերէ։

Օֆէլիա ու բժիշկը միայն այս առերեւոյթ

առողջութենէն չխաբուեցան․ ուրիշ մ'ալ կար՝ որ որմէն նախազգացում մը կ'իմանար, և նոյն ինքն էր Վարդուհին ։ Ի՞նչ է այն խաղաղական ձայնը՝ որ շատ անգամ կ'ազդէ մարդուս հոգւոյն՝ թէ իր այս աշխարհիս վրայ ունեցած պանդխտութեան ժամանակը լմննալու վրայ է ։ Արդեօք ախկայ անկեալ բնութեան գաղտնի բնական զգացումն է, թէ հոգւոյն առ անմահութիւն կամակար դիմելը, որ զինքը կը կոչէ ։ Անշուշտ այս ձայնն էր որ Վարդիկին սրտին խօսեր էր, և կարծես թէ մարգարէական հոգւով՝ իմացեր էր որ ա՛լ այս աշխարհս իրեն համար չէր, և երկինքն իրեն առջեւ բացուած էր ։ Այս խաղաղական զգացումը՝ արեւուն յետին շառագոյն ճառագայթներուն պէս և կամ աշնանային քաղցր ու պայծառ օրերուն պէս՝ Վարդիկին սրտին մէջ զուարթ խաղաղութիւն մը ձգեր էր․ միայն իր սիրելեաց իրեն համար կրելու վշտերուն վրայ կը ցաւէր ։

Վասն զի ինքը թէ և սիրոյ և խնամոց մէջ մեծցեր էր, և իր չորս բոլորն եղողները՝ իբր երկնային հոգւոյ մը պէս զինքը կը պաշտէին, և այս աշխարհս իրեն մեծամեծ ակընկալութիւններ կը խոստանար, սակայն ինքն աւելի մեռնիլ կ'ուզէր քան թէ ապրիլ ։

Շատ անգամ կարդացեր էր իր ծերունի բարեկամին հետ աստուածային Վարդապետին՝ սղաքն առ ինքն կանչելը, զանոնք սիրելն ու գիրկն առնուլը. անոր համար ինքն ալ իր սրտին մէջէն երկնային փափաքով մը կը բորբոքէր դէպի երկինք թռչելու և աստուածային Վարդապետին գիրկն հանգչելու։

Իր աշխարհիս վրայ ունեցած մէկ հատիկ սէրն՝ իր սիրելիներն էին, մանաւանդ հայրը. և քանի որ կը մտածէր իրեն համար անոր քաշած վիշտերը՝ սիրտը կը կոտրտէր։ Մայրն ալ կը սիրէր, որ ի բնէ սիրուելու յատկութիւններ ունէր. բայց անոր քանի մը կերպերը քիչ մը աղջկան բնութեան դէմ եկեր էին. այլ այսու ամենայնիւ Վարդիկն՝ մայրս է ըսելով՝ և ոչ պզտի մտածութեամբ մը զինքը մաքէն մեղադրեր էր, և հօրը հաւասար զինքն ալ կը սիրէր։

Ահ, իրեն բարի ու հաւատարիմ գերիներն ալ կը սիրէր, և անոնց վիճակին վրայ կը գթար, և կարծես թէ անոնց լոյսն ու արեգակն էր. գերիներն ալ կերպով մը իրենց թշուառութեան մխիթարութիւն մը գըտեր էին։ Տղաք սովորաբար ամէն բան վեր ի վերանց կը մտածեն, բայց Վարդուհիին միտքը կարգէ դուրս բացուած էր. և շուտով

ըմբռնեց գերկնահաճութեան չարիքն ու պըղ-ծալի հետեւանքները, որ որդին մէջ անջնջե-լի տպաւորութիւն ըրեր էին։ Սապաթին փա-փաք մ'ունէր բոլոր գերեաց ազատութեան ճար մը գտնելու, և իր փափաքին մեծու-թիւնը կերպով մը հակառակ կու գար իր մարմնոյ հասակին և տկար բնութեան։

Օր մը Թովմասին հետ խել մը Ս. Գիրքը կարդալէն վերջը, դարձաւ բսաւ իրեն.

— Հիմայ կ'իմանամ, աղբար Թովմաս, թէ ինչո՞ւ Քրիստոս մեզի համար մեռնիլ ուզեց։

— Ինչո՞ւ ...

— Վասն զի ես ալ նոյն փափաքը կը զգամ որդեակ։

— Ի՞նչ ըսել կ'ուզես, աղէկ չհասկըցայ։

— Աւելի չեմ կրնար բացատրել. բայց աս միայն ըսեմ քեզի. մինչև կու գայ նա-ւուն մէջի գերիները որ մեզի հետ ճամբայ ըրին. ի՞նչ խեղճութիւն էր, տղան մայրը կը փնտռէր, մայրն իր տղաքը, եղբայրն իր քոյրը, քոյրն ալ իր եղբայրը, էրիկն իր կինը, կինն ալ իր էրիկը. և վերջը երբոր խեղճ Բոխւ ապլային ողորմելի մահն ալ լսե-ցի, սրտիս սաստիկ փափաք մ'եկաւ՝ որ մեռնիմ անոնց համար, թէ որ կարելի է

իմ մանկութենէս զիրենք իրենց թշուառութե-նէն ազատել ։ Իրաւ կ'ըսեմ, անցեալը Թով-մաս, թէ որ ձեռքս ըլլար՝ իրենց համար սիրով իմ կեանքս կը դնէի։

Այս ըսելով՝ իր ազնիւ վաստակած ձեռուըներ-ըը Թովմասին ձեռացը վրայ դրաւ։

Թովմաս ալ ապշած ու զարմացած՝ երեսը կը նայէր, և երբոր հայրը աղջիկը կանչե-լով՝ Վարդին իր քովէն հեռացաւ; Թովմաս ետեւէն նայելով՝ կուշտ մը արցունք կը թա-փէր ։

— Անօգուտ ջանք է ըրածներս, ըսաւ հայրը քիչ ետքը Մամիկին, վասն զի Վար-դուհիին ճակատը կարծես թէ աստուածային կնիք մը տպաւորուած է։

— Ես ալ միշտ նոյն բանը կ'ըսէի, պա-տասխանեց հառաչանօք Մամիկ՝ ձեռուըները դէպի երկինք վերցնելով։ Ինքն այս աշխար-հիս համար եղած չէ, ես շատոնց խորին խորհուրդներ կը կարդայի իր աչացը մէջ. ես միշտ առաջ ըսի խաթունին, նայէ հի-մայ ըսածներս կը ճշմարտին, հիմայ ամե-նուն ալ աչքերն սկսան զարնել . . . ։ Խեղճ զաւակ օրհնեալ։

Վարպետ նոյն տանն վրայ հասաւ ։ Արեւը որ աղջկան եկած կողմէն կը մտնէր՝ իր վեր-

ջին ճառագայթներով՝ աղջկան չորս դին լուսաւոր պսակ մը ձեւացուցեր էր · Վարդիկ՝ իր ճերմակ հագուստներով, փայփլուն աչուըներով ու նազելի քալուածքով կարծես թէ յաւերժահարս մ'էր, արեւուն ճառագայթներէն դուրս ելած, որ օրուան, ո՜հ, նաեւ իր կենացը վերջին ողջոյնը տալու կու գար…։

Սէն–Քլէր Վարդուհիին համար պզտի արձան մը կներ էր, ուստի կանչեց որ իրեն ցուցընէ. բայց ներս մտածին պէս՝ աղջկան տեսքն իրեն սրտին վրայ ցաւալի տպաւորութիւն մ'ըրաւ։ Տեսակ մը սաստիկ՝ բայց միանգամայն վաղանցուկ գեղեցկութիւն մը կայ, որ մարդ չի կրնար սանձել անոր տեսքին ։

Սէն–Քլէր գիրկն առաւ աղջիկը ու սըրտին այլայլութենէն ըսելիքն ալ մոռցաւ.

— Վարդիկ, այսօր աղէկ ես, այնպէս չէ՞, ըսաւ։

— Հայրիկ, պատասխանեց Վարդուհին ծանրութեամբ, շատ ատեն է որ հրամանքիդ հետ քանի մը խօսելու բաներ ունէի, ու հիմայ կ'ուզեմ ըսել, քանի որ դեռ աւելի չեմ տկարացած։

Սէն–Քլէր դողաց։ Վարդուհին՝ հօրը ծընկան վրայ ելաւ նստաւ, ու գլուխը կուրծքին կոթնցընելով ըսաւ.

— Ձուր տեղ, հայրիկ, վրաս շատ խըղնամք կ'ընէք. ձեզմէ անդարձ բաժանման վայրկեանս երթալով կը մօտենայ. ես պիտի երթամ ու ա՜լ պիտի չդառնամ։

Այս ըսաւ ու սկսաւ լալ....։

-- Ո՜հ, սիրելի Վարդիկ, ըսաւ Սէն-Քլէր դողալով, բայց ջանալով իր զգացմունքը ծածկելու. այսօր ջղերդ տաք ելեր են ու սրտի կոտրածութիւն մ'ունիս.. պէտք չէ այդպիսի տխուր մտածութեանց տեղիք տալ։ Նայէ նայէ, քեզի համար արձան մը գնեցի....։

— Չէ, չէ, հայրիկ ըսաւ Վարդուհին, և ոչ իսկ արձանին վրայ աչքը դարձուց. մի՛ խաբուիր, ես լաւ չեմ, աղէկ գիտեմ, և քիչ ատենէն պիտի երթամ ասկէ.... ոչ ջղերս տաք ելած են և ոչ սիրտս կոտրած է։ Թէ որ քու վրադ, հայրիկ, ու բոլոր իմ սիրելիներուս վրայ մտածմունք չունենայի՝ շատ աւելի երջանիկ կ'ըլլայի հիմայ և ա՜լ աւելի սիրով կ'երթայի....։ Ես շատ կը փափաքիմ երթալու....։

— Ա՜հ, սիրելի, ուսկէ՞ց այդ տխուր մտածութիւնները քու խեղճ պզտի սրտիդ վրայ տիրեցին. քեզի ի՞նչ պակաս է ուրախ զուարթ ու երջանիկ ըլլալու։

— Ես անձըն կը փափաքիմ չուան մը եր-
կինք երթալու. բայց իմ սիրելիացս Համմար
կ'ուզէր քիչ մ'ալ այս աշխարհիս վրայ կե-
նալ։ Սակայն հոն շատ բաներ կան որ խղճի
տխրութեան ու վշտաց պատճառ են. լաւ է
որ չտեսնեմ. անմիջին անձըն երջանիկ կ'ըլ-
լամ. բայց գէթ ալ չուզելով թողուլ՝ սիրտս
կը կտրտի։

— Ի՞նչ են այդ գէթ վշտացընող բա-
ները, զորոնք կը փափաքիս չտեսնելու։

— Այն ամէն բաները որ անդադար աչ-
քիս առջեւ կը կատարուին։ Տխրութեանս
պատճառը մեր գերիներն են, որոնք սրտանց
զիս կը սիրեն. փափաքս ան է որ ամէնքն
ալ գերութենէ ազատին։

— Բայց միթէ հոս իրենք աղէկ վիճակի
մէջ չե՞ն։

— Ո՛հ, հայրիկ, թէ որ քեզի դժբախ-
տութիւն մը հանդիպելու ըլլայ՝ իրենց վի-
ճակն ի՞նչ կ'ըլլայ։ Ուրիշները քեզի պէս
չեն, հայրիկ. ոչ Ալփրետ հօրեղբայրս և ոչ
իսկ մայրս։ Մտածէ մէյմը թէ ո՛վ էր պա-
ռաւ Բրիւ ապլային տէրը. ի՜նչ սոսկալի ե-
ղեռնագործութիւններ կարող են մարդիկ ը-
նելու։

— Սիրելի, դու քիչ մը չափէն աւելի

զգայուն են. ինչպէս ալ այսպիսի ցաւալի դիպուածներ քու ականջդ կը հասցընեն։

— Անհաւանելի այն է, հայրիկ, որ գիրն կը վշտացընէ. չեմ ուզեր որ ցաւալի բաներ իմ ականջս ալ հասնին, որ ես ալ չցաւիմ. ինչու՞ ան ատեն ուրիշներուն ալ վշտերը միտքս չպահիմ. շատ աղէկ է՝ որ ես չվշտանամ, իսկ ուրիշները ինչու՞ վշտանան։ Կ'ուզեմ որ այնպիսի դիպուածներն ես ալ իմանամ, ու ես ալ անոնց հետ վիշտ քաշեմ. անոնց թշուառութիւնն իմ սրտիս վէրք մ'եղած է, և խելքս միտքս անոնց վրայ է։ Ճար մը չկայ, հայրիկ, որ սա գերիներն ազատ թողուին։

— Պէտքար խնդիր մ'է ըսածդ։ Տարակոյս չկայ որ գերութիւնը պէշ բան է, շատ մարդիկ նոյն բանը կը մտածեն, ես ալ նոյնպէս կը մտածեմ. որովհետեւ կը փափաքիմ որ գերի մ'ալ մեր երկրին մէջ չգտնուի, բայց ինչպէս կրնամ ընել։

— Հայրիկ, դու ազնուական ու գթած սիրտ մ'ունիս, և ուրիշներուն հետ խօսելու սիրելի կերպ ունիս, չե՞ս կրնար գուրիշներն ալ քու կարծեացդ համոզել։ Երբոր ես մեծնամ, հայրիկ, յուսամ զիս չես մոռնար, ու իմ սրտիս համար խնդիրքս կը կատարես. Թէ որ ձեռքս ըլլար՝ ես կ'ընէի։

— Երբոր դու մեռնիս, Վարդիկ, . . . հառաչելով մ'ըսաւ Սէն-Բլէր. ո՜հ, սիրելի, ինչո՞ւ այդպիսի խօսքեր կը կրկնես, ... քեզմէ զատ բան մը չունիմ ես աս աշխարհիս վրայ։

— Խեղճ Բրիւ աալլային աղջիկն ալ, պատասխանեց Վարդուհի, իր մօրը մէկ հատիկ սիրելի բանն էր այս աշխարհիս վրայ, բայց այսու ամենայնիւ բռնադատուեցաւ առանց բնաւ օգնութիւն մը կարենալու ընել՝ տեսնել ու լսել իր խեղճ աղջկան ճուալը։ Այս խեղճերն ալ մեզի պէս իրենց տղաքը կը սիրեն. խեղճ Մամմին ալ ու Թօմմասն ալ իրենց տղաքը կը սիրեն, և քանի որ մըտաքերնին կու գան՝ կու լան. ի՜նչ անգութ բան է զիրենք այսպէս իրենց սիրելիներէն բաժնելը։

— Աղէկ, աղէկ. սիրելի, սիրտս մի՛ հաներ, մեռնելու վրայ մի՛ խօսիր։ Ես ուզածդ կը կատարեմ։

— Կը խոստանա՞ս, սիրելի հայրիկ, որ Թօմմասը տուն դառնայ իմ... Հօս աղջըկան լեզուն բռնուեցաւ, և քիչ մը կենալէն վերջը՝ ըսաւ.

— Իմ երթալէս շուտ մը վերջը։

— Հա, հա, սիրելի, ուզածդ բոլորն ալ կը կատարեմ։

— Սիրելի հայրիկ, ըսաւ, երեսը հօրը երեսին մօտեցընելով, կը փափաքէի որ երկուքնիս մէկտեղ երթայինք։

— Ո՞ւր, սիրելի։

— Ուր որ մեր Փրկիչը կը բնակի, ուր որ միշտ սէրն ու խաղաղութիւնը կը թագաւորէ։

Նազելի աղջիկն երկնից վրայ այնպիսի գիտութեամբ մը կը խօսէր, որ կարծես թէ շատոնց ի վեր հոն բնակած ըլլար։

— Ինծի հետ չե՞ս ուզեր գալ, հարցուց նորէն։

Սէն-Քլէր զինքը գրկին մէջ սեղմած կեցեր էր՝ առանց պատասխան տալու։

— Բայց քիչ ատենէն դու ալ կու գաս զիս կը գտնես, կրկնեց Վարդուհին՝ այնպիսի վստահութեամբ մը, որ կարծես թէ երկնքէն իրեն յայտնուեր էր։

— Ես ալ կու գամ քու ետեւէդ, պատասխանեց հայրը, ես զքեզ չեմ թողուր։

Երթալով մթընցեր էր. Սէն-Քլէր աղջիկը գիրկը՝ մութին մէջ նստած՝ ա՛լ չէր տեսներ իր սիրելի աղջկան դէմքը, բայց անոր խօսքերն իբրեւ երկնային ձայն մը իր սրտին մէջ կը տպաւորուէին. բոլոր իր անցեալ կեանքը քննել սկսաւ, միտքն եկան իր մօր

աղօթքներն, և իր ան ամենուածն բարի բարի տրամադրութիւններն, և անցեալին ու ներկային մէջ այն խեղճ մը տարիները, զորոնք ընդունայնութեամբ ու անհամբերութեամբ անցուցեր էր...: Մայրիկուն մտքէն մէկ վայրկեանի մէջ ինչե՞ր կ'անցնին...:

Սէն-Քլէրի մտքէն շատ բան անցաւ, բայց բան մ'ալ չըրաւ: գիշերն ալ վրայ հասած ըլլալով՝ աղջիկն իր պառկելու խուցը տարաւ, ու ծառաները ճամբելէն վերջը, աղջիկը կիրկը՝ նստաւ՝ մինչև որ անոր քունը տարաւ:

## ԳԼՈՒԽ ԻԵ.

### Դաս.

Ի նմին ժամու ցնծացաւ Յիսուս Հոգւովն սրբով և ասէ. Գոհանամ զքէն, Հայր, տէր երկնից և երկրի, զի ծածկեցեր զայս յիմաստնոց և ի գիտնոց, և յայտնեցեր տղայոց. այո, Հայր, զի այսպէս հաճոյ եղեւ առաջի քո:

ՂՈՒԿ. Ժ. 21.

Կիրակի օր մը Սէն-Քլէր կէս օրուան կերակուրէն ետեւ՝ պամպուէ շինուած աթոռի մը վրայ երկընցած՝ ծուխ կը քաշէր: Մարիամ

ալ խուցին պատուհանին փեղկերը բազմոցի մը վրայ երկնցած էր, ու չորս դին բարակ շղարշաւէտ առագաստ մը պատած էր՝ մժեղ-ներէն պաշտպանուելու համար։ Ձեռքին մէջ անհոգաբար՝ գեղեցիկ կազմուած աղօթա-գիրք մ'ունէր. և թէ որ պատճառը հար-ցընէք վասն զի հիւանդ էր, անոր համար ձեռքն էր այն գիրքը. միտքն ալ գրքին էր որ կը կարդար, թէպէտ և աչուըները քու-նէն ծանրացած կը մրափէր։

Օֆէլիա՝ Վարդուհին ապեր՝ Թովմասին հետ կառքով քաղաքի էր գնացեր։ Մարիամ խել մ'ատեն մրափելէն վերջը.

— Օգոստինոս, ըսաւ, կ'ուզեմ իմ պզտի բժիշկս կանչել տալ, սակայն գիտեմ որ սըր-տի հիւանդութիւն մը պիտի ունենամ։

— Ինչո՞ւ անիկայ կանչել տաս. Վար-դենին բժիշկն ալ շատ վարպետ կ'երեւայ ինծի։

— Վտանգաւոր վիճակի մէջ գտնուած ժամանակս՝ անոր չեմ վստահիր. և կրնամ ըսել ալ որ հիմայ նոյնպէս վիճակի մը մէջ եմ։ Երկու երեք գիշեր է որ այս բանս մտա-ծելով՝ քունս չի տանիր. սաստիկ ցաւեր կը զգամ։

— Մարիամ, չըլլայ թէ խաբուիս. սրտի հիւանդութիւն չեմ կարծեր թէ ունենաս։

— Գիտէի որ պիտի չհաւատաս, ըսաւ Մարիամ. թէ որ Վարդիկը քիչ մը հազայ, կամ պզտիկ տկարութիւն մ'ունենայ, մէկէն կ'այլայլիս. բայց երբոր իմ տկարութեանցս վրայ խօսք ըլլայ՝ հոգդ ալ չ'ըլլար։

— Թէ որ դու կ'ուզես ու կը փափաքիս սրտի հիւանդութիւն ունենալ, ըսաւ Սէն-Քլէր, ես քեզի ի՞նչպէս դէմ կրնամ դնել. թէ որ կ'ուզես՝ ես ինքզինքս բռնի համոզեմ որ դու սրտի հիւանդութիւն ունիս. չէի գիտեր որ սրտիդ մէջ այդպիսի փափաքներ ունենաս։

— Կը փափաքիմ՝ որ օր մը չզղջաս քու անզգայութեանդ վրայ, պատասխանեց Մարիամ։ Կ'ուզես հաւատա, կ'ուզես մի՛ հաւատար, Վարդիկին համար քաշած վիշտերս և իրեն վրայ ունեցած աշխատանքներս այնչափ զիս հիւծեցին՝ որ այս վտանգաւոր հիւանդութիւնն եկաւ վրաս, ինչ որ շատ ժամանակէ վեր կը կասկածէի։

Ընթերցողն անշուշտ պիտի զարմանայ թէ ի՞նչ էին արդեօք Մարիամին իր աղջկան համար քաշած վիշտերն և ունեցած աշխատանքները, որուն և ոչ խուցը կը հանդիպէր։ Սէն-Քլէր ալ նոյն բանը մտածելով ձայնը քաշեց, ու լռիկ ծուխը կը քաշէր,

սպասելով որ Վարդիկը տուն դառնայ։ Մէջ մ'ալ կառքը տանը բակն երեւցաւ, Վարդիկ ու Օֆէլիա կառքէն իջան։ Օֆէլիա՝ ըստ իր սովորութեան՝ մէկէն խուցը գնաց գըլխարկն ու շալը ձգելու. իսկ Վարդիկ վազեց գնաց հօրը գիրկը. եւ անոր ծնկան վըրայ նստած՝ այն օրուան տեսածներն ու լսածները կը պատմէր։

Անդիէն սաստիկ բարկանալու ձայն մը լսուեցաւ, որ Օֆէլիային խուցէն կու գար. եւ ինքն էր որ մէկու մը կը նեղանար։

— Ո՛ գիտէ, ըսաւ Սէն-Բլէր, արդեօք նորէն ի՛նչ ըրեր է Դուբուին, Օֆէլիան անշուշտ անոր կը բարկանայ։

Քիչ մ'առենէն նայիս Օֆէլիա բարկացած՝ քաշկռտելով ներս խօթեց յանցաւորը։

— Եկուր, եկուր, կ'ըսէր, տիրոջդ կ'ուզեմ ըսել։

— Ի՞նչ եղաւ նորէն, հարցուց Սէն-Բլէր։

— Ա՛լ անկարելի է այս անպիտանին համբերել. ալ չեմ կրնար. երկնքի հրեշտակ մ'ալ չէր կրնար ասոր ըրածներուն համբերել։ Զինքը խուցիս մէջ փակեր էի, ու ձեռքը պզտի երգ մ'ալ տուեր էի, որ բերնուց սորվի։ Գիտե՞ս ինքն ինչ ըրեր է. բա-

նապքիններս զատեր է, գնացեր պարտէզին մէկը բացեր ու գլխարկի համար եղերգները բա-նած քօղս պռեր կտոր կտոր ըրեր է, ու իր պաճուճապատանքին զգեստ շիներ է. իմ կենացս մէջ ես այսպիսի չարաճճի աղջիկ չեմ տեսած։

— Ըսեր էի ես միշտ քեզի, պատասխա-նեց անգլիէն Մարիամ, թէ տղոց խրատու-թեան ատոնք սանձելն անկարելի է։ Թէ որ իմ ձեռքս ըլլար, ըստ ծուռ ծուռ Աէն-Քլէրին նայելով, ասիկայ այնպէս ծեծել կու-տայի՝ որ գաւազանները կոտրտէին և ոտքի վը-րայ չկարենար կենալ։

— Ձեր տարակուսիը, պատասխանեց Աէն-Քլէր։ Ի՞նչ աղէկ ձեր կանացի բնու-թեան համեմատ քաղցրութիւն կը տեսնուի վրանիդ. ձեր գլխացը կենդանի մը կամ գերի մը սպաննելն հաւասար է. քիչ կնիկ տե-սեր եմ որ իրօքացընէ կանանց վայել քաղ-ցրութիւն ցուցընեն վրանին։

— Քու ճոռոմաբանութիւններդ քեզի պա-հէ, պատասխանեց Մարիամ. տանս Օֆէլիա գլուխ ունեցող կնիկ մ'է, անիկայ իմ ըսա-ծիս իրաւունք կու տայ։

Օֆէլիա սաստիկ կարգ ու կանոն սիրող ըլլալով՝ պզտիկ բաներու ալ կը նեղանար.

անոր համար Դոքսիին անկարգ գործին վը-
րայ ալ շատ նեղացեր էր. բայց երբոր տե-
սաւ որ Մարիամ չափէն դուրս ելաւ՝ մէ-
կէն ինքզինքը բռնեց:

— Ես չեմ ուզեր, ըսաւ, այդպէս խիստ վարուիլ ատոր հետ, բայց կը տեսնեմ ալ որ ճար չկայ. խրատեցի, պատժեցի, ծեծեցի, ամէն հնարք ի գործ դրի. բայց այս ամէնն ալ անօգուտ բան է, անիկայ ինքն իր չարութենէն ետ կենալիք չունի:

— Հոս եկուր, կապիկ, ըսաւ Սէն-Քլէր:

Դոքսի առաջ եկաւ. իրեն կլոր ու վառվռուն աչուըներէն չարաճճիութիւնն ու միանգամայն վախը կ'երեւար:

— Ինչո՞ւ խելօք չես կենար, ըսաւ Սէն-Քլէր, որ տղուն ծիծաղաշարժ կերպերէն խնդալը չէր կրնար բռնել:

— Վասն զի, պատասխանեց Դոքսի, չար սիրտ մ'ունիմ. Օֆէլիա խաթունն ալ այնպէս ըսած է ինծի:

— Չե՞ս տեսներ որչափ քու վրադ հոգ ունի Օֆէլիա խաթունը. բայց ինքն ալ յուսահատեր է զքեզ մարդ ընելէն:

— Իրաւունք ունիս. իմ առջի խաթունս ալ նոյն բանը կ'ըսէր. ինքը զիս շատ աւելի կը ծեծէր, մազերէս կը քաշէր, գլուխս

դռներուն կը զարնէր, բայց այս ամէնն ալ անօգուտ եղան ինծի։ Կարծեմ որ եթէ բոլոր մազերս ալ փետտած ըլլար՝ զիս պիտի չկարենար կրթել։ Ես չար եմ, և սեւի մը ամէն պակասութիւններն ունիմ։

— Վերջապէս պիտի բռնադատուիմ, ըսաւ Օֆէլիա, զինքն երբեք ձգելու. վասն զի ա՛լ չեմ կրնար համբերել։

— Քեզի բան մ'ըսե՞մ, ըսաւ Սէն-Քլէր Օֆէլիային։

— Ի՞նչ։

— Երբոր քու Աւետարանդ այսպիսի հեթանոս աղջիկ մ'ալ չի կրնար փրկել, ի՞նչ զուր բան է ան ատեն ձեր քարոզիչներուն ըրած ջանքերն՝ որ կ'երթան այսպիսի վայրենիներ կրթելու. վասն զի այս աղջկանէս կրնամ ենթադրել նաև մնացած բոլոր սեւերուն ցեղը։

Օֆէլիա այս խօսքին մէկէն պատասխան չտուաւ։

Վարդուհին մինչև ան ատեն լուռ կեցեր մտիկ կ'ընէր, մէյմ'ալ Դոփսիին աչքով նշան մ'ըրաւ, և առաւ հետը պզտի խուց մը տարաւ։ Սէն-Քլէրի հետաքրքրութիւնը շարժելով՝ ետեւէն գնաց նայելու թէ ինչ պիտի ընեն։ Կամացուկ մը դրան վարագոյրին ծայ-

ըէն ներս նայեցաւ, նշանացի Օֆէլիան ալ քովը կանչեց։

Այս երկու աղջիկները դիմացէ դիմաց գետնին վրայ նստեր էին. Դորաի իր սովորական անգոհ ու չարաճճի կերպովը, իսկ Վարդուհի՝ սիրտը ելած ու աչուըները լեցուած։

— Ինչո՞ւ, կ'ըսէր, խելօք չես կենար, Դորաի. դու մէկու մը վրայ ալ սէր չունի՞ս։

— Ե՞ս. ես սիրել ի՞նչ ըսել է չեմ գիտեր. իմ սիրած բաներս են անուշեղէն, շաքարեղէն։

— Բայց պէտք չէ՞ որ հայրդ ու մայրդ սիրես։

— Ես քեզի քանի՞ անգամ ըսած եմ, որ ես հայր ու մայր ունեցած չեմ։

— Ո՛հ, աղէկ կ'ըսես, պատասխանեց Վարդէկ. բայց ունեցած չե՞ս ամեննեւին եղբայր մը, քոյր մը, մօրաքոյր մը, կամ...

— Չէ, չէ. մարդ մ'ալ ունեցած չեմ։

— Բայց թէ որ ուզես խելօք կենալ, աղէկ ըլլալ՝ կրնաս, քու ձեռքդ է։

— Որչափ ալ աղէկ կենամ՝ պարձեալ միշտ սեւ եմ. թէ որ ձեռքս ըլլար այս մորթըս փոխել ու ճերմակ մորթ հագնիլ, անատեն թերեւս խելօք կլ կենայի։

— Դու սեւ ալ ըլլաս՝ աղէկութեամբդ ուրիշի կրնաս սիրելի ըլլալ. ան տանն իմ հօրաքոյրս ալ զքեզ կը սիրէ, ու վրադ աւելի սրտանց հոգ կը տանի։

Դուքսի այս խօսքիս չհաւատալով ծիծաղեցաւ։

— Ձե՞ս հաւատար ըսածիս, հարցուց Վարդիկ։

— Չէ. անիկայ զիս չի կրնար սիրել, սեւ զորտի մը պէս ինծմէ կը զզուի։ Ոչ ոք սեւերը կը սիրէ. սեւերն ալ աղէկ բան մը չեն կրնար ըլլալ. բայց իմ հոգս ալ չէ։

— Խե՛ղճ Դուքսի, ըսաւ գթութեամբ Վարդուհին՝ փափուկ ու վառած ձեռուըները Դուքսիին ուսին վրայ դնելով։ Խե՛ղճ Դուքսի, ես կը սիրեմ զքեզ, վասն զի դու ոչ հայր, ոչ մայր և ոչ բարեկամ ունիս. վասն զի խեղճ ու երեսէ ձգուած աղջիկ մ'ես. կը սիրեմ ես զքեզ ու կը փափաքիմ որ խելօք կենաս։ Ես հիւանդ եմ, Դուքսի, և ինծի կ'երեւայ որ ա՛լ երկայն պիտի չապրիմ. քու գէշ վարքդ զիս շատ կը վշտացընէ։ Նայէ որ գոնէ իմ սիրոյս համար՝ քանի որ դեռ ողջ եմ՝ աղէկ կենաս։

Սեւ աղջկան կլորակ ու վառվռուն աչուըները մէկէն արցունքով լեցուեցան, ու սկսան

Վարդուհիին ձեռուըներուն վրայ վազել։ Նոյն վայրկեանին այն հեթանոս հոգւոյն խաւարին մէջ՝ հաւատոյ ու սիրոյ լոյս մը ծագեց, ու գլուխը ծնկուըներուն վրայ դրած՝ բարձր ձայնով սկսաւ լալ ու հառաչել։ Վարդուհին ալ գլուխն անոր վրան կախած՝ կարծես թէ երկնքէն իջած հրեշտակ մ'էր՝ որ մեղաւորի մ'օգնելու եկեր էր։

— Խե՜ղճ Դորսի, ըսաւ Վարդիկ, չե՞ս գիտեր որ Յիսուս զամէնքնիս ալ հաւասարապէս կը սիրէ։ Ինչպէս ես զքեզ կը սիրեմ, ինքն ալ զքեզ կը սիրէ. բայց ինքն աւելի կը սիրէ, վասն զի ինքն է մեր տէրը։ Կ'օգնէ ինքը քեզի որ ինքզինքդ ուղղես, անով երկինք ալ օր մը կրնաս երթալ, ու ճերմակներուն պէս դու ալ հրեշտակ կրնաս ըլլալ։ Ասոնք մտածէ, Դորսի. դու ալ Թովմասին երգերուն մէջ յիշատակուած լուսաւոր հոգիներէն մէկը կրնաս ըլլալ։

— Ո՛հ, սիրուն Վարդիկ, պատասխանեց սեւուկը, կը ջանամ, ա՛լ առաջուան պէս անհոգ չեմ կենար ...

Նոյն միջոցին Սէն-Քլէր վարագոյրը ձգեց ու հեռանալու ժամանակ՝ ըսաւ Օֆէլիային.

— Քանի որ սա աղջիկս կը տեսնեմ, մայրս միշտ միտքս կու գայ. որչափ իրա-

ւանք ունէր ինքը՝ երբոր կ՚ըսէր՝ թէ երբ կ՚ուզենք կոյրերուն աչքը բանալ՝ պէտք է որ Յիսուսին ըրածին պէս կոյրը դիմացնիս կանչենք ու ձեռքերնիս վրան դնենք։

— Ես միշտ հակակրութիւն մ՚ունեցած եմ սեւերուն, պատասխանեց Օֆէլիա. իրաւ է որ կը զգուէի ատ սեւ աղջիկէն ու չէի ուզեր որ և ոչ քովս մօտենայ, բայց չէի կարծեր որ ինքն անդրադարձած ըլլայ։

— Ամենեւին տարակոյս մի ունենար, ըսաւ Սէն-Քլէր, տղայ մը անկարելի է որ այդպիսի կերպերէն անդրադարձութիւն չընէ։ Որչափ ալ տղու մը վրան հոգ ու խնամք ունենաս, քանի որ ինքը կը զգայ թէ իրմէ կը զանիս, անկարելի է որ անոր սրտին մէջ երախտագիտութեան կայծ մ՚ալ գտնուի։ Կարգէ դուրս բան մը կ՚երեւայ, բայց այս այսպէս է։

— Չեմ գիտեր ինչպէս այս զանիլս փարատեմ. սեւերուն շատ հակակրութիւն ունիմ, մանաւանդ սա Դոփսիին. ինչպէս ընելու է։

— Վարդիկ կ՚երեւայ թէ կերպը սորված պիտի ըլլայ։

— Ինքը կարգէ դուրս սէր ունի անոնց վրայ .... միով բանիւ Յիսուսի մէկ օրինակն

է. ըսաւ Օֆէլիա ... Երանի՜ թէ ես ալ անոր պէս ըլլայի. Հիմակուան լսածներս ինծի դաս մ'եղան։

— Եթէ այդպէս է, այս առաջին անգամ չէ որ պզտի աղջիկ մը՝ տարիքն առած աշկերտի մը բան սովրեցուցած ըլլայ, ըսաւ Սէն-Քլէր։

## ԳԼՈՒԽ ԻԶ.

### Մահ

Մի՛ լար անոնց վրայ, զորոնք մահուան քօղը՝ իրենց կենացն արշալուսին ժամանակ ձեր աչքէն կը ծածկէ։

Վարդուհիին պառկելու խուցն ընդարձակ էր, և տանը մէկալ խուցերուն պէս դէպ ի սրահը կը հանէր։ Մէկ կողմանէ իրեն հօրն ու մօրը խուցերուն հետ հաղորդակցութիւն ունէր, մէկալ կողմանէ ալ Օֆէլիային խուցին հետ։

Սէն-Քլէր ամէն կերպով ջանացեր էր որ աղջկան հաճոյից յարմար՝ խուցն ալ զարդարէ։

Պատուհաններուն վարագոյրները վարդա-

գոյն ու ճերմակ բարակ կտաւէ էին. գետինը Փարիզու գեղեցիկ գորգ մը փռուած էր, որուն չորս անկիւնը վարդի կոկոնի փունջեր նկարուած էին, մէջտեղն ալ ամբողջ բացուած վարդի մեծկակ փունջ մը. առօր օրինակը Սէն-Քլէր ինքը տուեր էր։ Անկողինը, աթոռները, բազմոցը՝ բոլոր պամպուի փայտէ՝ փառաւոր բանուած էին։

Անկողնին գլխին վրայ ալապաստրէ՝ թեւերը գոցած՝ գեղեցիկ հրեշտակ մը կար՝ երկու ձեռքովը մրտենիէ պսակ մը բռնած, ուսկից կախուած էր արծաթէ չուրքով վարդագոյն փափուկ վարագոյր մը՝ աղջիկը մժեղներուն խածուածքէն պաշտպանելու համար։

Բազմոցները բոլոր կարմիր ծիրանի պատած, և չորս գլին հրեշտակներով զարդարած էին, անկողնոյն վրայիննին պէս՝ ձեռքերնէն փափուկ վարագոյրներ կախած։

Խուցին մէջտեղը պամպուէ կլոր սեղան մը կար, վրան ալ Պարոսի մարմարինէ շուշանի ձեւով ծաղկաման մը, և չորս կողմն ալ Վարդուհիին գիրքերը և հօրը տուած ոսկիէ արծաթէ զարդարանքները շարած էին։

Կրակարանին վրայ՝ Յիսուսի աղուոր արձան մը կար որ պզտի տղաքը կ'օրհնէր, և

երկու կողմն ալ ծաղկամաններ, որոնց մէջ Թուլմաս ամէն օր թարմ ծաղիկներ կը դնէր. պատերէն ալ քանի մը տղու յարմար գեղեցիկ պատկերներ կախուած էին։ Միով բանիւ՝ մէկ նայուածքով մարդ ան սենեկին մէջ խաղաղութեան, անմեղութեան ու գեղեցկութեան տեսարան մը կը տեսնէր. առաւօտը աղջիկն արթննալուն պէս՝ աչքը արեւուն լոյսը չտեսած՝ աս իր սիրելի ու քաղցր զարդարանքները կը տեսնէր։

Այն առերեւոյթ ոյժը՝ որով քիչ մ'առեն Վարդուհին ոգի առեր էր, կամաց կամաց սկսաւ պակսիլ։ Ոչ դուրս կ'ելլէր և ոչ ալ պարտէզ կ'իջնէր. շատ անգամ պատուհանին գլխացը մեծ աթոռի մը վրայ նստած՝ անշարժ աչերով լճին վրայ կը նայէր։

Օր մ'ալ երիկուան դէմ այսպէս նստեր էր, մէյմ'ալ դուրսի սրահէն մօրը ձայնը լսեց, որ Դոքսիին սրդողելով կ'ըսէր.

— Ի՞նչ չարութիւն ըրեր ես նորէն, անպիտան, ինչո՞ւ աս ծաղիկները փրցուցեր ես. և ապտակի ձայն մը լսուեցաւ։

— Խաթուն, Վարդիկին համար փրցուցի, կ'ըսէր աղջիկը լալով։

— Վարդիկին համար, աղէկ պատճառանք գտար. կարծես թէ անիկայ քու ծաղիկներո՞ւդ կարօտ է. կորսուէ ասկէց։

վարդուհին ցատքեց մէկէն դուրս ելաւ։

— Մայրիկ, այդ ծաղիկները կը փափաքիմ ունենալ, թող որ ինծի բերէ, ըսաւ։

— Բայց. խուցդ ծաղիկներով լեցուն է։

— Ո՛րչափ ալ շատ ըլլայ՝ ես կը սիրեմ. ինծի բեր ծաղիկներդ, Դորսի։ Դորսի տխուր ու գլուխը կախած՝ ետեւ ետեւ քաշուեր էր, վախնալով մը մօտեցաւ ու ծաղկին փունջը վարդիկին ձեռքը տուաւ։

— Այս ի՜նչ գեղեցիկ փունջ է, ըսաւ վարդուհի։

Եւ իրաւցընէ աղուոր փունջ մ՚էր, որ Դորսի մանաւոր Վարդիկին սիրած ծաղիկներով կապեր էր։

— Շատ աղէկ ծաղիկ կը կապես եղեր, Դորսի, ըսաւ Վարդիկ. ասկէ ետքը կ՚ուզեմ որ ամէն օր ինծի մէյմէկ փունջ բերես։

— Ի՞նչ կարգէ դուրս երեւակայութիւն ունիս, ըսաւ մայրը. այդ ծաղիկներէն ի՞նչ համ կ՚առնես։

— Ո՜հ, մայրիկ, թող տուր որ Դորսին բերէ, ի՞նչ կ՚ըլլայ։

— Երբոր դու կ՚ուզես՝ թող ինքը բերէ, ըսաւ մայրը։ Դորսի, լսեցի՞ր Վարդիկին ըսածը. ասկէ ետքը նայէ որ իրեն խօսքին հնազանդիս։

Դորսի գլուխը ծռեց ու յարգութիւն մ'ը-
նելով՝ մէկէն հեռացաւ։ Վարդիկ տեսաւ որ աչուըները լեցուեր էին։

— Տեսա՞ր, մայրիկ, ըսաւ Վարդիկ. ես գիտէի որ խեղճ Դորսին կ'ուզէ ինծի ծառայութիւն մ'ընել։

— Կը խաբուիս. ինքը չարութեան համար ամէն բան կ'ընէ. վասն զի արգիլած են՝ անոր համար ծաղիկները կը փրցընէ. բայց երբոր դու կ'ուզես որ փրցընէ՝ ես դէմ չեմ կենար։

— Ինծի կ'երեւայ թէ Դորսին առջինին պէս չէ, հիմայ շատ ջանք կ'ընէ խելօք կենալու։

— Շատ ատեն պէտք է որ անիկայ խելօքնայ, պատասխանեց Մարիամ արհամարհանօք։

— Գիտես որ խեղճը ինչուան հիմայ գէշ կրթութիւն առեր էր։

— Բայց չէ թէ հոս. իր վրայ ամէն հոգ տարին հոս, ամէն կարելի ջանք ըրին, բայց ինչ որ էր՝ այն մնաց. կարելի բան չէ որ այդ անպիտանը կրթութիւն առնու և մարդ ըլլայ։

— Բոլորովին տարբեր բան է՝ որ ինծի պէս ինքն ալ կրթութիւն առած ըլլայ. գիտ

ամէնքը պզտիկուց ի վեր սիրեր ու վրաս գուրգուրացեր են, իսկ խեղճը հօս գալէն առաջ միշտ չարչարանքի մէջ մեծցած էր։

— Իրաւ է, պատասխանեց Մարիամ յօրանջելով ...։ Այս ի՛նչ կարգէ դուրս տաք է օդը։

— Մայրիկ, Դորսին թէ որ քրիստոնեայ ըլլար, չէ՞ր կրնար ինքն ալ հրեշտակ մ'ըլլալ, իբրեւ թէ մեզմէ մէկն ըլլար։

— Դորսի՛ն, այդ ինչ տեսակ երեւակայութիւն է, զոր դու միայն կրնաս ունենալ. բայց ըստ ինքեան անկարելի բան չէ։

— Բայց մայրիկ, Աստուած մեզի ալ և իրեն ալ հաւասարապէս հայր չէ՞. Յիսուս իրեն ալ Փրկիչը չէ՞։

— Կարելի է. ես կ'ենթադրեմ թէ Աստուած է ամէն մարդ ստեղծողը ... բայց ո՞ւր է իմ վարդի եղի շիշս ...։

— Ո՜հ ... ի՜նչ գէշ բան է ... ի՜նչ գէշ բան է ... ըսաւ ինքնիրեն Վարդուհին, երեսը դէպ ի հեռուի լիճը դարձընելով։

— Ո՞ր բանը, հարցուց Մարիամ։

— Մտածելը, պատասխանեց Վարդիկ, որ այնչափ հոգիներ, որոնք կրնային մէկ-մէկ հրեշտակ ըլլալ ու զԱստուած վայելել, հիմայ այսպէս երեսի վրայ ձգուած են։

— Մեր ձեռքէն բան մ'ալ չի գար, անոր համար հոգ ալ ընել չ'արժեր։ Ի՞նչ կրնայինք ընել. գոհ պէտք է ըլլանք՝ որ գոնէ անոնցմէ այսչափ օգուտ կրնանք քաղել։

— Ես քանի կը մտածեմ որ ասոնք կենաց մէկ դիւրութիւն մ'ալ չունին՝ սիրտս կտոր կտոր կ'ըլլայ։

— Դուն տարբեր կարծիքներ ունիս, ըսաւ Մարիամ. իմ կրօնքս ինծի երախտագէտ ըլլալ կ'ապըսպրէ հիմակուան ունեցած կենացս դիւրութեանց համար։

Վարդուհին խօսքը փոխեց.

— Մայրիկ, կ'ուզեմ, ըսաւ, մազերս քիչ մը կարել տալ։

— Ինչո՞ւ։

— Կ'ուզեմ, քանի որ դեռ կրնամ իմ բարեկամներուս մէյմէկ քիչ բաժնել. կրնա՞ս հօրաքոյրս կանչել որ կարէ։

Մարիամ՝ առանց տեղէն ալ շարժելու, Օֆէլիան կանչեց որ քովի խուցն էր։ Օֆէլիա երբոր ներս մտաւ՝ Վարդուհին բազմոցին վրայ ելաւ նստաւ, գեղեցիկ ոսկեթել մազերը քակեց, և ծիծաղելով մը Օֆէլիային ըսաւ.

— Հօրքոյր, եկուր սա ոչխարը խուզէ։

Նոյն ատեն Սէն-Քլէր ներս մտաւ՝ ձեռ-

քը Վարդիկին համար քանի մը պտուղներ բռնած.

— Ի՞նչ կայ, հարցուց։

— Հայրիկ, պատասխանեց Վարդիկ, Հօրքրոջս աղաչեցի որ մազերէս քիչ մը կտրէ, վասն զի աճեր են և աս տաքուն գլուխս շատ կը նեղեն. մէյմէկ քիչ ալ բարեկամներուս կ'ուզեմ տալ, որ քովերնին յիշատակ մը ձգեմ։

Օֆէլիա մկրատն առաւ ու աղջկան մօտեցաւ։

— Նայէ, ըսաւ Սէն—Քլէր, մազերուն շարքը չաւրես, տակէն կտրէ որ չերեւայ։ Վարդիկին ոսկեգոյն գանգուրներն ինծի պարծանք մ'են։

— Ո՛հ, հայրիկ, հառաչեց Վարդուհին։

— Անանկ է, կրկնեց Սէն—Քլէր զուարթութեամբ, կ'ուզեմ որ երբ հօրեղբօրդ երկիրներն երթանք Գրիգորիկը գտնելու՝ մազերդ աղուոր ըլլան։

— Ես հոն երթալիք չունիմ, պատասխանեց աղջիկը. ես աւելի լաւագոյն երկիր մը պիտի երթամ։ Ձե՞ս հաւատար. չե՞ս տեսներ, հայրիկ, որ օր օրուան վրայ երթալով կը տկարանամ։

Ինչո՞ւ այսպիսի մտածմունքներով զիս կը վշտացընես, ըսաւ հայրը։

— Վասն զի ստոյգ բան է, Հայրիկ... և թէ որ հաւատայիր՝ ինծի պէտք է ուրախակից ըլլայիր։

Սէն-Քլէր լուռ կեցաւ, ու տխուր աչքով կը նայէր աղջկան աղուոր մազերուն վրայ, զորոնք Օֆէլիա կը կապէր Վարդիկին կու տար, ան ալ մատուըներուն մէջ կարգաւ կը շարէր, ու երբեմն երբեմն աչուըները տխրութեամբ հօրը վրայ կը դարձընէր։

— Ահա ինչ որ կը գուշակէի եղաւ, հառաչեց Մարիամ. և այս է իմ առողջութեանս աւրուելուն պատճառը, որ զիս կամաց կամաց գերեզման պիտի տանի, և մէկու մ՚ալ հոգը չէ. բայց ես, Սէն-Քլէր, այս բանս շատ առենէ ի վեր գուշակեր էի, և վերջապէս քու խելքդ պիտի պտռկի՝ որ ըսածիս իրաւունք ունիմ եղեր։

— Ինչ որ քեզի մեծ մխիթարութիւն մը պիտի ըլլայ, պատասխանեց Սէն-Քլէր դառնութեամբ սրտի։

Մարիամ այս խօսքիս այլայլեցաւ ու աթոռին վրայ փռուեցաւ և երեսը թաշկինակով գոցեց։ Վարդուհին այս միջոցիս իր կապուտակ աչուըները մէյմը հօրը, մէյմ՚ալ մօրը վրայ կը դարձընէր։ Հանդարտ և պարզ նայուածք մ՚էր. և հոգին երկրաւոր կապանք-

ներէ արձակուած, պայծառ կը տեսնէր ու կ'իմանար իր հօր ու մօրը մէկմէկէ ունեցած տարբերութիւնը։

Հօրը ձեռքով նշան մ'ըրաւ. ան ալ շուտ մը ցատքեց գնաց քովը նստաւ։

— Սիրելի հայր իմ, ըսաւ, օր օրուան վրայ կը տեսնեմ որ ուժս կը պակսի, և կամաց կամաց կը հիւծիմ։ Շատ բան ունիմ ըսելիք ու լսելիք ... հրամանքդ չես ուզեր որ ես այսպիսի բաներու վրայ խօսք ընեմ, բայց պէտք է որ ըսեմ. ա՛լ չեմ կրնար ուշացընել. հրաման տուր որ խօսիմ և մըտաքիններս ըսեմ։

— Հրաման քեզի, սիրելիս, պատասխանեց Սէն–Բլէր մէկ ձեռքով արտասուալից աչուըները գոցելով, մէկալովն ալ աղջկան ձեռքը բռնած։

— Շատ աղէկ ուրեմն, կ'ուզեմ որ հիմայ մեր գերիները բոլոր հոս կանչես, անոնց բան մ'ունիմ ըսելիք։

— Թող ըլան, ըսաւ Սէն–Քլէր ցաւագին կերպով։

Օֆէլիա մէկէն մարդ մը ղրկեց որ գերիները կանչէ։ Նայիս շուտ մը բոլոր գերիները ժողուեցան։ Վարդուհին բարձին կըռթընած էր ու մազերը երեսին երկու կող-

մէն անհոգ կերպով ձգած, ջերմէ այլագունած ու կէս կարմիր երեսին գոյնն ալ սըրտաշարժ ու տխուր տեսարան մը կ'աւելցընէր վրան. իսկ ինքը մէկիկ մէկիկ զամէնքը աչքէ կ'անցընէր ։ Գերիները՝ սրտերնին ելած՝ կարգաւ կեցեր էին ։

Անմեղ աղջկան դէմքը, որուն վրայ ա՛լ երկրաւոր բան մը չէր մնացած, կտրտած մազերը, հօրը իր աղջկան քովը նստած և երեսը գոց կեցուածքը, մօրը լալը, այնպէս ազդեցութիւն մ'ըրին սեւերուն դիւրազգաց սրտին վրայ՝ որ ամէնքը լալ սկսան ։ Կարգաւ երբոր ներս կը մտնէին՝ մէկմէկու երես կը նայէին, ու տխրութեամբ գլուխնին կը շարժէին. և ամենուն վրայ ալ գերեզմանական լռութիւն մը տիրած էր ։

Վարդուհին ելաւ նստաւ, ու երկայն ատեն անոնց երեսը նայելէն վերջը՝ դարձաւ ըսաւ անոնց.

— Ուզեցի զձեզ ամէնքնիդ ալ մէյմը տեսնել, իմ սիրելի բարեկամներս, վասն զի կը սիրեմ զձեզ ։ Ձեզ ամէնքնիդ ալ կը սիրեմ. ձեզի քանի մը բան ըսելիք ունիմ... և կը փափաքիմ որ չմոռնաք զանոնք...։ Ես ձեզմէ պիտի բաժնուիմ և քանի մը շաբաթէն ա՛լ զիս պիտի չտեսնէք ամենեւին ։

Այս խօսքին՝ աղջկան ձայնը գերիներուն լացէն ու հեծութիւններէն խափանուեցաւ։ Վարդէն քիչ մը լռեց, վերջը լալերնին դադրեցընելով ըսաւ.

— Թէ որ զիս կը սիրէք՝ այդ կերպով իմ խօսքս մի կտրէք, ինծի մտիկ ըրէք, ես ձեր հոգւոյն վրայ քանի մը խօսք ունիմ ըսելիք։ Ձեզմէ շատը իրենց հոգւոյն վրայ ամենեւին չեն մտածեր։ Դուք այս աշխարհիս բաներուն վրայ միայն կը մտածէք, բայց կ'ուզեմ յիշեցընել ձեզի՝ որ սա աշխարհէս աւելի ուրիշ գեղեցիկ աշխարհք մը կայ, ուր Յիսուս կը բնակի, ուր ես ալ պիտի երթամ, և թէ որ ուզէք դուք ալ կրնաք գալ։ Երկինքն ամենուս համար է, ինչպէս ինծի՝ նոյնպէս ալ ձեզի. բայց թէ որ կ'ուզէք հոն երթալ՝ պէտք է որ քրիստոնեայ ըլլաք։ Գիտցած եղիք՝ որ եթէ ուզէք՝ կրնաք դուք ալ մէյմէկ հրեշտակ ըլլալ և յաւիտեան հրեշտակ մնալ։ Թէ որ դուք ձեր կողմանէ փափաք ունենաք՝ Աստուած ալ ձեզի կ'օգնէ, ու անատեն ձեր փափաքին հասնելով՝ կըրնաք դուք ալ երկնից փառաց արժանի ըլլալ։

— Աստուած տայ, ըսին Թովմաս ու Մամմին և որոնք որ քրիստոնեայ էին. իսկ մէկալները լուռ կեցած կու լային։

— Գիտեմ կրկնեց Վարդին, որ դուք ամէնքդ ալ զիս կը սիրէք։

— Հա՛, հա՛, ի՞նչ ըսել է. Աստուած օրհնէ զքեզ, պոռացին ամէնքը։

— Դուք ամէնքնիդ ալ զիս կը սիրէք, և միշտ ինծի հետ աղէկ վարուած էք. հիմայ ես ալ ձեզի մէյմէկ յիշատակ կ'ուզեմ թողուլ. մազերէս մէյմէկ կտոր ձեզի կու տամ որ միշտ քովերնիդ պահէք ու քանի որ տեսնէք՝ զիս յիշէք, որ զձեզ սիրեցի, և երկինք գնացի, ուր կը յուսամ զձեզ ալ տեսնելու։

Աննկարելի բան է այս տեսարանս նկարագրել։ Բոլոր գերիները լալով ու հառաչելով աղջկան չորս կողմը առին. ամէնքը կը ջանային որ բուն իր ձեռքէն այն գեղեցիկ յիշատակն ընդունին, որ իրենց համար Վարդիկին սիրոյն վերջին նշանակն էր։ Ծընկան վրայ եկան ամէնքն ալ, կը հեծէին, կ'աղօթէին, և հագուստին ծայրերը կը պագնէին։ Անոնցմէ ծերագոյնները՝ որոնք Վարդիկին ծնունդը տեսեր էին, սիրոյ և օրհնութեան խօսքեր կը գրուցէին։

Օֆէլիա տեսնելով որ ասոր ծայրը գէշի պիտի երթայ, ու վախնալով ալ որ խեղճ հիւանդին վրայ կարգէ դուրս այլայլութիւն

մը չգայ, մէկիկ մէկիկ առնողները դռնէն դուրս կը հանէր ։ Վերջապէս Թովմասն ու Մամմին մնացին ։

— Ա՛ռ քեզի ալ, աղբար Թովմաս, ըսաւ աղջիկը, ո՛րչափ կ'ուրախանամ երբոր կը մտածեմ որ զքեզ երկինքը պիտի տեսնեմ։ Դու ալ Մամմի, դու ալ երկինք պիտի գաս, ըսաւ, և իր հին խնամածուին ճիտը պլըլլուեցաւ ։

— Ոհ, Վարդիկ, առանց քեզի ինչպէս ողջ պիտի մնամ, ըսաւ Մամմի. ա՛լ այս աշխարհիս վրայ ամէն բանէ զրկուեցայ... ու սկսաւ լալ ։

Օֆէլիա կամացուկ մը զինքն ալ ու Թովմասն ալ դռնէն դուրս հանեց. մէյմ'ալ ետեւը դառնալով՝ տեսաւ որ դեռ Դոբսին հոն է ։

— Ուսկի՞ց հոս եկար, հարցուց բարկութեամբ ։

— Ես հոս էի, պատասխանեց աղջիկը լալով. Վերջը Վարդիկին դարձաւ ըսաւ. գիտեմ որ ես չար աղջիկ մ'եմ, բայց ինծի ալ մազերէդ գոնէ քանի մը թել չե՞ս տար ։

— Ա՛ռ դու ալ, Դոբսի. քանի որ վրան նայիս՝ յիշես որ ես զքեզ միշտ սիրեցի, ու միշտ ջանացի որ աղէկ ու բարի աղջիկ մ'ըլլաս ։

— Կը ջանամ որ ասկէց ետքն ըլլամ, պատասխանեց Դոբսի ծանրութեամբ. բայց ի՛նչ դժուար բան է եղեր խելօք կենալը, վարժած չեմ ամենևին։

— Աստուած քեզի կ'օգնէ, Դոբսի, վասն զի ինքն ալ չ'ուզեր որ դու չար մնաս։

Դոբսի պոչնոցով երեսը գոցած ու առած մազերը ծոցը պահելով՝ աչուըները լեցուած դուրս ելաւ։

Երբոր ամէնքը դուրս ելան՝ Օֆէլիա դուռը գոցեց։ Խեղճ կնիկը շատ անգամ ան սրտաշարժ տեսարանին ատեն աչուըները սրբեց. և կը վախէր թէ այս տեսարանս չըլլայ թէ այլայլութիւն մը պատճառէ հիւանդին վրայ, որ իրեն յօգնաջան խնամոցը յանձնուած էր։

Իսկ Սէն–Քլէր այն տեսարանին ժամանակ և գերիները երթալէն վերջն ալ՝ ձեռուըներով երեսը գոցած՝ լուռ կեցեր էր։

— Հայրիկ, ըսաւ Վարդուհին քաղցրութեամբ մը, ու ձեռքը հօրը ձեռացը վրայ դրաւ։

Սէն–Քլէր գլուխը վեր վերցուց, բայց սրտին այլայլութենէն պատասխան չկրցաւ տալ։

— Հա՛յր իմ, կրկնեց աղջիկը.

— Չեմ կրնար, չեմ կրնար այս ցաւերուս դիմանալ, հառաչեց Սէն-Քլէր։ Ամենակարողն Աստուած շատ անգութ կերպով իր բարկութիւնն իմ վրաս կը թափէ. այո՛ շատ անգութ կերպով, կրկնեց դառնացեալ սրտիւ։

— Օգոստինոս, ըսաւ Օֆէլիա, Աստուած տէր չէ՞ իր կամքին. ամէն բան իր կամաց կը հպատակի, ուստի ինքն ալ իր ուզածին պէս կը տնօրինէ զանոնք։

— Կրնայ ըլլալ. բայց ատով իմ ցաւս չի պակսիր, ըսաւ Սէն—Քլէր, և սրտին դառնութենէն աչուըներէն կաթիլ մ'ալ արցունք չէր գար։

— Հայրիկ, սիրտս կտոր կտոր կ'ընես, ըսաւ Վարդուհին, ու հօրը գիրկն ինկաւ. այսպիսի խօսքեր ինչո՞ւ կ'ըսես։

Խեղճ աղջիկն այնպէս սաստիկ կու լար ու կը հեծէր՝ որ ամենուն ալ սիրտը շարժեց. հայրը անոր սիրտը հանգչեցընելու համար՝ կերպը փոխեց։

— Հանդարտ կեցիր, Վարդէկ, ըսաւ, սխալեցայ, կը ճանչնամ սխալմունքս. ասկէ ետև ինչպէս որ դու կ'ուզես՝ այնպէս կ'ընեմ, բաւական է թէ դու չվշտանաս ու չլաս. ես ալ ինքզինքս Աստուծոյ կամաց

կը յանձնեմ. իրաւցընէ այսպիսի խօսքերուս համար յանցաւոր եմ։

Վարդուհին յօգնած աղաւնոյ մը պէս հօրը գիրկը հանգչեր էր, հայրն ալ գլուխը անոր վրայ ծռած՝ սրտաշարժ խօսքերով աղջըկան սիրտը հանդարտեցընել կը ջանար։

Մարիամ նստած տեղէն ելաւ ու պառկելու խուցը գնաց, և մէկէն ջղացաւով անկողին ինկաւ։

— Վարդէկ, քու մազերէդ կտոր մ'ալ ինծի չե՞ս տար, ըսաւ Մէն-Քլէր տխուր ծիծաղով մը։

— Բոլորն ալ քուկդ ու մօրս են, ժըպտելով պատասխանեց աղջիկը. իսկ հօրաքոյրս ալ որչափ ուզէ տուէք։ Կամաւ ուզեցի ես ձեռքովս մեր գերիներուն բաժնել, վասն զի մեռնելէս վերջը զանոնք յիշող չ'ըլլար, և իրենց ալ դժուարաւ մտքերնին կը մնամ. ասով յուսամ թէ զիս չեն մոռնար...։ Հայրիկ, դուն քրիստոնեայ ես, այնպէս չէ՞, հարցուց աղջիկը տարակուսանօք։

— Ինչո՞ւ կը հարցընես։

— Ես ալ չեմ գիտեր։ Դուն այնչափ բարեսիրտ ես՝ որ անկարելի է թէ քրիստոնեայ չըլլաս։

— Քրիստոնեայ ըսելով ի՞նչ կ'իմանաս, աղջիկս։

— Ան կ՚իմանամ որ է զՅիսուս ամէն բանէ աւելի սիրել։

— Դու այնպէս կը սիրե՞ս, Վարդիկ։

— Ո՛հ, ի հարկէ...

— Բայց ամենևին տեսած չես զինքը։

— Փոյթ չէ, ես իրեն կը հաւատամ, և քիչ օրէն ալ զինքը պիտի տեսնեմ։

Այս խօսքիս վրայ աղջկան երեսը ուրախութեան նշոյլ մը ծագեց։ Սէն-Քլէր պատասխան չտուաւ. այսպիսի կրօնական զգացմունքներ ինքն իր մօրը վրայ ալ տեսեր էր, բայց իր սրտին մէկ թելն ալ չէին շարժած։

Այն օրուընէ վերջը՝ Վարդուհին շուտ շուտ իրեն մուտքը կը խոնարհէր. ա՛լ ամէն տարակոյս վերցուեր էր. սէրն ալ չէր կրնար առերևոյթ յոյս մ՚ունենալ։ Իր պառկելու գեղեցիկ խուցը ամենուն աչքին մեռելի խուց մը դարձեր էր։ Օֆելիա գիշեր ցորեկ քովէն չէր հեռանար, ամենևին մտադրութիւն ու հոգ մը պակաս չէր ըներ։ Արթնութիւնն ու կարգաւորութիւնն ու ճարպիկութիւնը՝ որով այնպիսի անխռով կերպով հիւանդութեան ցաւալի դիպուածները կը պարտըկէր և բըժիշկին լսածները մանրամասնաբար ի գործ կը դնէր՝ զամէնքը կը զարմացընէին։ Անոնք ալ որ առաջ Օֆելիայի պզտի բանե-

րու մէջ ալ ճշտութիւն սիրող բնութիւնը տեսնելով վրան կը ծիծաղէին, վասն զի հարաւային կողմիններուն անհոգութեան շատ հակառակ բան կ'երեւար, մէկ բերան կ'ըսէին՝ որ իրմէ զատ անկարելի էր ուրիշ մ'ալ գըտնել՝ որ կարենար այսպիսի պարագայից մէջ հիւանդին քովը կենալ։

Աղբար Թովմաս շատ անգամ Վարդուհիին խուցն էր. խեղճ աղջիկը սաստիկ ջըղայնութենէ կը տանջուէր, ու գրկի վրայ տարուելով՝ դիւրութիւն մը կը զգար։ Թովմասին մեծ ուրախութիւն էր՝ Վարդուհին գիրկն առած պտըտցընելը. երբեմն խուցին մէջ, երբեմն դուրսը սրահը կ'ելլէր, երբեմն ալ լճին վրայէն փչած առաւօտեան զով բարակ քամիին՝ կ'առնէր պարտէզ կը տանէր, ու նարընջենիներուն տակը անկիւն մը կը նստէր ու աղջկանը քանի մը սիրած երգերը կ'երգէր։ Հայրն ալ շատ անգամ կ'ուզէր այսպէս գրկել զինքն ու պտըտցընել, բայց փափուկ կազմուածք ունենալուն՝ երբոր կը յոգնէր,

— Հայրիկ, կ'ըսէր աղջիկը, թող տուր որ հիմայ ալ աղբար Թովմասը զիս գրկէ. խեղճ մարդը զիս գրկել ու քալցընել կ'ախորժի. այս ծառայութիւնը հիմայ միայն

կրնայ ընել ինծի, և դու ալ գիտես որ միշտ կը փափաքի ինծի ծառայութիւն մ'ընել։

— Հապա ե՞ս, պատասխանեց Հայրը։

— Ո՜հ, հայրիկ, դուն ինծի համար շատ կ'աշխատիս, գիշեր ցորեկ քովս ես, ինծի կը կարդաս և ամէն հոգ վրաս կ'ընես։ Բայց Թովմաս ուրիշ բան չի կրնար ընել՝ եթէ ոչ՝ այսպէս զիս գրկել ու իր գիտցած երգերն երգել. ուրիշ կողմանէ՝ ինքն աւելի ուժով է, և զիս դիւրաւ կրնայ գրկել։

Թովմասը միայն չէր որ կը փափաքէր խեղճ Վարդիկին օգնութիւն կամ ծառայութիւն մ'ընել. բոլոր գերիներն ալ նոյն փափաքն ունէին ու կ'ուզէին որ բան մ'ալ իրենք ընեն։

Իսկ խե՜ղճ Մամմին... իր սիրուն աղջըկան վրայ սիրտը կը կտրտուէր. բայց Մարիամ գիշեր ցորեկ քովէն չէր հեռացըներ զինքը. և ըստ իրեն կարծեաց՝ ուրիշներն ամենևին պէտք չէր հանգչէին՝ երբոր ինքն անհանգիստ էր։ Գիշերը քանի անգամ Մամմին կը հարկադրէր մէյմը ոտուըները շփել, մէյմը ճակտին պաղ ջուր զարնել, մէյմը թաշկինակը փնտռել, մէյմը Վարդիկին խուցը շշնկոց մը կայ՝ անոր պատճառն իմանալ. մէյմը վարագոյրները գոցել՝ վասն զի

շատ լոյս կ'ընեն, մէյմ'ալ բանալ՝ մութը պատճառելով։ Ցորեկն ալ երբոր խեղճ Մամմիին սրտին մէջ կ'եփէր որ մէյմը Վարդուհիին քով երթայ՝ Մարիամ ամէն հնարք ու պատճառանք կը գտնէր զինքը քովէն չհեռացընելու, անանկ որ հազիւ թէ Մամմի գողունի կերպով քիչ մը ժամանակ Վարդուհիին քով կրնար գալ։

— Իմ աղջկանս վրայ ունեցած հոգէս յոգնած՝ կը տեսնեմ, կ'ըսէր Մարիամ, որ վրաս խնամք ունենալու կարօտութիւն ունիմ։

— Իրաւցընէ, սիրելի, կ'ըսէր Սէն-Քլէր քթին տակէն ծիծաղելով, կը կարծէի թէ մեր Օֆէլիան բաւականապէս վրայէդ այդ հոգն ու խնամքը կը թեթեւցընէր, ու զքեզ ազատ կ'ընէր աշխատանքէ։

— Դուն էրիկ մարդու պէս կը խօսիս, պատասխանեց Մարիամ։ Մայր մը կրնա՞յ ամենևին խնամք չունենալ՝ երբոր տեսնէ թէ իր մէկ հատիկ աղջիկն այդ վիճակին մէջն է ինկեր։ Բայց խօսիլս ալ անօգուտ է. ոչ ոք կրնայ իմ զգացածս իմանալ. ես քեզի պէս անզգայ չեմ, և ամէն բանի վրայ վեր ի վերանց չեմ կրնար մտածել։

Սէն-Քլէր այս խօսքին վրայ ծիծաղեցաւ։

— Խեղճ հայր, դեռ կրնաս ծիծաղիլ...։

Վարդուհին աշխարհիս իր վերջին բարեը կու տար այնպիսի քաղցր ու զուարթ վստահութեամբ մը՝ որ անկարելի էր կարծելը թէ պիտի մեռնի, վասն զի շատ մեղմ ու քաղցրաշունչ էր յաւիտենականութեան քամին, որ իրեն թեթեւընթաց նաւակը դէպի երկնից նաւահանգիստը կը մղէր։ Նեղութիւնները փախեր էին, միայն հանդարտ և անուշ տկարութիւնն օր օրուան վրայ կ'աւելնար. այնպէս սիրալիր և այնպիսի վստահ, այնպիսի զուարթ կերպն՝ իր ունեցած անմեղութենէն ու խաղաղ սրտէն առաջ կու գար։

Սէն-Քլէր կարգէ դուրս սրտի հանդարտութիւն մը կը զգար. ոչ յոյսն էր և ոչ համակերպութիւնը. բայց այն հանդարտութիւնը Վարդուհիին առաջիկայ վիճակին վըրայ հաստատուած՝ թող չէր տար որ ապագան մտածէ։ Իրեն զգացմունքը կը նմանէին աշնան անտառներուն մելամաղձոտ տեսքին, երբոր տերեւները կը սկսին դեղնիլ, երբոր առուակներուն եզերքը ծլած վերջին ծաղիկները կը սկսին թօռմիլ. և այս գեղեցկութիւնն այնչափ սաստիկ է, որչափ որ կը մտածէ մարդ թէ քիչ ատենէն ալ պիտի չըտեսնուին...։

Վարդուհիին բոլոր բարեկամաց մէջ՝ Թովմասն էր միայն՝ որ անոր նախազգացմանցն ու մտածութեանցը տեղեակ էր։ Ինքն իր հօրը չըսածները՝ վախնալով որ անոր սիրտը չկոտրէ՝ Թովմասին կ՚ըսէր. կը պատմէր Թովմասին խորհրդաւոր ազդմունքները, որ կը զգայ հոգին՝ երբոր երկրաւոր կապերը կը սկսին խզել։

Վերջապէս չուզեց Թովմաս ալ իր խուցը պառկիլ, ու բոլոր գիշերը Վարդիկին խուցին դուրսը կ՚անցընէր, որ կարենայ կանչուելուն պէս շուտ մը ներս մտնել։

— Բայց աղբար Թովմաս, ինչո՞ւ համար շան մը պէս դռնէն դուրս գետինը կը պառկիս, ըսաւ Օֆէլիա. ես կը կարծէի թէ դու կանոնաւորեալ կեանք սիրող մարդ մ՚ես, ու կարգաւորեալ անկողնոյդ մէջ կը սիրես քնանալ։

— Իրաւունք ունիս, պատասխանեց Թովմաս նշանաւոր ձայնով մը, բայց հիմայ...

— Աղէ՛կ, հիմայ ի՞նչ կայ։

— Կամաց խօսինք. պարոնը չիմանայ... բայց Օֆէլիա խաթուն, հրամանքդ ալ գիտես որ պէտք է մէկը արթուն կենայ ու փեսային գալստեան սպասէ։

— Ի՞նչ ըսել կ՚ուզես, Թովմաս։

— Գիտես հրամանքդ ալ որ Աւետարանն ինչ կ'ըսէ. ի մէջ գիշերի եղև բարբառ, ահա փեսայ գայ: Ուստի, խաթուն, ամէն գիշեր կը սպասեմ, ու թէ որ հեռու ըլլամ՝ քուն չեմ կրնար ըլլալ, վախնալով որ չըլլայ թէ փեսան գայ և ես չլսեմ:

— Ո՞վ ըսաւ քեզի թէ փեսային գալուստը մօտ է:

— Վարդէկն ինծի ըսաւ. Աստուած՛ իրեն հոգւոյն կը խօսի. կ'ուզեմ, խաթուն, որ ես ալ մօտ ըլլամ, վասն զի երբոր այս երջանիկ հոգին Աստուծոյ արքայութիւնը մտնելու ըլլայ՝ դռներն այնչափ լայն պիտի բացուին՝ որ մենք ալ պիտի կարենանք այն երկնաւոր բնակարանին մէջ մէյմը նայիլ:

— Թովմաս, ատ ըսէ ինծի թէ Վարդէկ բան մ'ըսա՞ւ քեզի այս առաւօտ որ գէշ կը զգայ:

— Չէ, պատասխանեց Թովմաս. բայց այս առաւօտ ըսաւ ինծի որ ատենը կը մօտենայ: Հրեշտակներն են որ իրեն իմացկուցան. — Ի ձայն փողոյ աւետեաց զգալուստ առաւօտուն, — վրայ բերաւ Թովմաս իր սիրած երգերէն մէկը կրկնելով:

Թովմասին ու Օֆէլիային մէջ եղած այս խօսակցութիւնն հանդիպեցաւ գիշերուան

տասնէին ու տասնըմէկին միջոցները, երբոր Օֆէլիա ամէն պատրաստութիւնները տեսած եկեր էր որ դռները գոցէ, մէյմ՚ալ Թովմասը դուրսը փռուած գտաւ։

Օֆէլիա խաժմունը ոչ ջղային և ոչ երևակայոտ բնութիւն ունէր, բայց Թովմասին այնպիսի ծանր գուրցուածքը վրան. շատ տըպաւորութիւն ըրեր էր։ Նոյն իրիկուան ալ Վարդուհին սովորականէն աւելի գեղեցիկ ու զուարթ կերպ մ՚՚ունէր։ Անկողնոյն մէջ նըստած՝ բոլոր արծաթեղէն ու ոսկեղէն զարդերը բերել տուաւ, ու մէկիկ մէկիկ մէկդի դրաւ զատեց ,՚ոչ որ իր բարեկամներուն յիշատակ պիտի ձգէր։ Ամէնքն ալ այս իր զուարթութեան ու աշխուժութեան վրայ կը զարմանային. ձայնն ալ աւելի իր բնական կերպն առեր էր։ Հայրը նոյն իրիկունը խուցը քաշուելու ատեն՝ դիտեր էր որ Վարդուհին քանի որ հիւանդացեր էր՝ այսպիսի զուարթ միջոց մը չէր ունեցած, ու գիշերը պառկելէն վերջը՝ դարձաւ Օֆէլիային և ըսաւ.

— Ցուսամ թէ վերջապէս գիշերը կրնանք խալլըսել։

Եւ ուրիշ անգամներէն աւելի՝ նոյն իրիկունը յուսով ու հանդարտ սրտով անկողին գնաց։

Բայց կէս գիշերուն, այն անակնունելի ու խորհրդաւոր ժամուն, երբ անստոյգ ներկան յաւիտենական ապագայէն ծածկող քօղը կը սկսի բարակնալ՝ փեսան երեւցաւ...։

Հիւանդին խուցը շշնկոց մը.... ոտնաձայն մը լսուեցաւ... Օփէլիան էր, որ բոլոր գիշերը աղջկան քով ոտքի վրայ կեցած հըսկեր էր. եւ նոյն միջոցին հիւանդին վրայ վտանգաւոր նշաններ տեսեր էր։ Դուռը բացուեցաւ, եւ Թոմմաս՝ որ արթուն կեցեր էր, մէկէն վեր ցատքեց ոտք ելաւ։

— Թոմմաս, շուտ վազէ բժիշկը կանչէ, ըսաւ Օփէլիա՝ դէպի Սէն-Քլէրի խուցը երթալով։

— Շուտ, եկուր, ըսաւ Օփէլիա Սէն-Քլէրին դուռը զարնելով։

Այս խօսքս Սէն-Քլէրին սրտին վրայ այնպէս իջաւ՝ ինչպէս ափ մը հողը դագաղի մը վրայ կ'իջնէ։

— Ինչո՞ւ... ի՞նչ կայ... ըսաւ, ու շուտ մը խուցէն դուրս ցատքելով Վարդիկին խուցը վազեց. տեսաւ որ աղջիկը հանգիստ քուն կ'ըլլար։

Բայց ի՞նչ տեսաւ արդեօք՝ որ այդպէս յանկարծ սրտին բաբախմունքը բռնուեցաւ։ Ո՜հ, ինչո՞ւ բառ մ'ալ բերնէն չկրցաւ. հա-

նել։ Դու միայն կրնաս ըսել պատճառը՝ որ նոյն զգացումն ունեցեր ես քու մէկ հատիկ սիրելի զաւկիդ վրայ... այն անխօսուն անսարանն ալ ամէն յոյս կ'ոչընչացընէ, և իմաց կու տայ քեզի որ սիրոյդ առարկան ալ քուկդ չէ...։

Այսու ամենայնիւ այս տեսարանին մէջ ահաւոր բան մ'ալ չկար. մանաւանդ թէ արքայութեան երախայրիք մը, հոգւոյ այլակերպութիւն մը, որով անմահական կենաց քաղցր արշալոյս մը կը ծագէր։

Սէն-Քլէր ու Օֆէլիա այնպիսի խոր լըռութեամբ մը կը դիտէին հիւանդը, որ ժամացուցին ճօճանակին ձայնն անդամ սաստիկ կու գար։ Քանի մը վայրկենէն՝ Թովմաս ալ բժիշկը հետը՝ վրայ հասաւ. մէյմը հիւանդին վրայ նայեցաւ բժիշկը ու մէկալներուն պէս ինքն ալ լուռ ու անշարժ մնաց։

— Ե՞րբ հանդիպեցաւ այս փոփոխութիւնն, հարցուց ցած ձայնով Օֆէլիային։

— Ճիշտ կէս գիշերուն, պատասխանեց։

Մարիամ բժշկին գալէն արթըննալով՝ ցատքեց մէկէն ու հիւանդին խուցն եկաւ։

— Օգոստինոս, Օֆէլիա, ի՞նչ կայ, ի՞նչ բան եղաւ, հարցուց այլայլած ձայնով։

— Կամաց, կամաց, պատասխանեց Սէն-

Քլէր՝ խղդուկ ձայնով մը, խե՛ղճը մեռնելու վրայ է....։

Մամմի այս բանը լսածին պէս՝ վազեց մէկէն բոլոր գերիներուն իմաց տալու։ Մէյմ'ալ նայիս բոլոր անեցիք ոտք ելան, չորս կողմն ոտքի ձայն կար, բոլոր խուցերուն մէջ լոյս տեսնուեցաւ, խել մը բազմութիւն դուրսը սրահին մէջ ժողովեցան, և կեցած՝ դրան ապակիներէն հիւանդին խուցը կը նայէին. բայց Սէն-Քլէր ոչ ձայն մը լսեց, ոչ ալ բան մը տեսաւ.... բաց ի այն խորհրդաւոր երևութէն որ աղջկան երեսին վրայ կը փայլէր։

— Ո՜հ, թէ որ մէյմը արթըննար, ըսաւ, և գոնէ բառ մ'ալ կարենար արտաբերել։

Ու անկողնոյն վրայ ծռելով՝ անուշ ձայնով մը հիւանդին ականջէն

— Վարդի՛կ... կանչեց։

Վարդուհիին կապոյտ խոշոր աչուըները բացուեցան, և ժպիտ մը դէմքին վրայէն սահեցաւ անցաւ. ջանաց գլուխը վեր վերցընել, բայց չկրցաւ։

Զիս կը ճանչնա՞ս, Վարդիկ։

— Հայրիկ, ըսաւ խղդուկ ձայնով մը՝ ինքիրեն ուժ տալով, և ուզեց ձեռուըներով հօրը վիզը պըլլուիլ, բայց ձեռուըները վար ինկան։

Եւ գլուխը վեր վերցընելու ժամանակ՝ նշմարեց Սէն–Քլէր խեղճին երեսին վրայ հոգեվարքի տագնապը. խեղճը դժուարաւ շունչ կ'առնուր ու պզտիկ ձեռուըները կը թօթափէր։

— Տէ՛ր Աստուած, այս ի՛նչ սրտատռչոր տեսարան է, հառաչեց Սէն–Քլէր՝ Թովմասին ձեռքը բռնելով՝ առանց գիտնալու թէ որո՛ւ ձեռքը կը բռնէ։

Թովմաս տիրոջը ձեռքը իր ձեռաց մէջ սեղմած էր, և աչուըներէն վազած արցունքը իր սև երեսը կը թրջէր. իր ամէն վշտաց մէջ առ Աստուած ապաւինող աչուըները նորէն երկինք վերցուց ու անկէ օգնութիւն խնդրեց։

— Աղօթք ըրէ, Թովմաս, որ այս խեղճին ցաւերը շուտ մը լմըննան, ըսաւ հառաչելով Սէն–Քլէր. սիրտս կտոր կտոր կ'ըլլայ։

— Ո՜հ, օրհնեալ է Աստուած, հառաչեց Թովմաս,. ամէն բան լըմնցաւ. հիմայ նայէ, տէր իմ։

Վարդուհին շնչասպառ՝ բարձին վրայ տագնապեալ գլուխը դրած՝ խոշոր աչուըները դէպի երկինք դարձուցեր էր. աշխարհս իրեն համար վճարեր էր. երկրաւոր վիշտերն

ա՛լ լմընցեր էին. դէմքէն այնպիսի կարգէ դուրս ու փառաւոր և յաղթական ճաճանչ մը կը ցոլանար՝ որ յորդ արտասուքներն ու պաղ հեծեծանքներն ալ կը լռեցընէին։

Ամէնքն ալ շնչերնին բռնած՝ անկողնոյն չորս կողմը շարուեր էին։

— Վարդէ՛կ.... ըսաւ Սէն-Քլէր դաշն ձայնով մը. իսկ անիկայ չլսեց...։

— Վարդէկ, ըսէ մեզի, ի՞նչ կը տեսնես, կրկնեց հայրը։

Զուարթ ու յաղթական ծիծաղ մը նորէն երեսին վրայ երեւցաւ։

— Ահ, սէր... խնդութիւն... խաղաղութիւն...

Թեթեւ ու անուշ հառաչանք մ'արձակեց, և այս մահկանացու կեանքէս յաւիտենական կեանքն անցաւ...։

Երթաս բարո՛վ, սիրեցեալ մանկիկ, երկնից դռները գոցուեցան ետեւէդ, ու ա՛լ պիտի չտեսնենք քու քաղցր դէմքդ...։ Զուառակա՜ն են անոնք՝ որ քու երկինք մտնելդ տեսնելէն վերջը՝ աչքերնին պիտի դարձընեն նորէն այս արտասուաց հովիտը, և կենաց ցուրտ ու տխուր մթնոլորտին մէջ՝ նորէն պիտի գտնեն իրենք զիրենք, զոր յաւիտեան թողուցիր դու և գնացիր...։

# ԳԼՈՒԽ ԻԵ.

## Կսկիծ

Վարդուհիին խուցին արձաններն ու պատկերները ճերմակ քօղով մը ծածկուած էին. Հոն ուրիշ բան չէր լսուեր՝ բայց եթէ ներս մտնող ելլողներուն շունչ առնել տալերնին և անցուդարձի թեթև ոտնաձայնը, և ուր հազիւ կիսաբաց վանդակափեղկերէն տկար լոյս մը ներս կը թափանցէր, աւելի խորհրդաւոր երևոյթ մը տալով սենեկին և չորս կողմն եղած առարկաներուն:

Անկողինը ճերմակ քօղով մը պատած էր, ու անկողնոյն գլխին վրայի հրեշտակին հովանւոյն տակը՝ կարծես ուրիշ հրեշտակ մը կը քնանար խաղաղիկ կերպարանքով յաւիտենական քունը:

Իր կենդանութեան առենուան պէս պարզ ճերմակ հագուստ մը միայն հագուցեր էին իրեն, և լոյսն ալ պատուհանին կարմիր վարագոյրներէն անցնելով՝ երեսին՝ մահուան պաղ գունաթափութեան վրայ՝ վարդագոյն կարմրութիւն մը տուեր էր. երկայն յօնքերը՝ ճերմակ երեսին վրայ տարածուած՝ ծան-

բացեր էին, և գլուխն ալ քիչ մը դէպի մէկ կողմը ծռած՝ կարծես թէ բնական քունի մէջ էր. բայց երեսին գծագրութեանց երկնային խաղաղութիւն ու խնդութիւն մը կը փայլէր, որով կ'իմացուէր թէ երկրաւոր և ժամանակաւոր քուն չէ, այլ յաւիտենական ու սուրբ հանգիստ մը, զոր Աստուած իր սիրելեաց միայն կը պարգևէ։

Քու նմանեացդ համար մահ չկայ, Վարդիկ. անոնց մահը ոչ խաւար ունի և ոչ ստուեր. այլ արշալուսոյն ոսկիափայլ ճառագայթներէն ծածկուող առաւօտեան աստղին պէս կը նուաղի։ Յաղթանակեցիր՝ առանց պատերազմելու, պսակուեցար՝ առանց ասպարէզ մտնելու։

Այսպէս կը մտածէր Սէն-Բլէր, երբոր թևերը կրծոց վրայ ծալլած և լուռ՝ մեռելոյն անկողնին քով կեցեր վրան կը նայէր։ Բայց ո՜վ կրնայ իրեն ամէն մտքէն անցածները պատմել։ Այն վայրկեանէն որ լսեց այս խօսքս թէ «Մեռաւ», մութ ամպ մը վրան իջաւ, ու վշտացեալ սիրտը խոր խաւար մը պատեց։

Չորս կողմէն խառնափնդոր ձայներ կը լսէր, իրեն այլ և այլ բաներ կը հարցընէին, ինքն ալ մեքենայի պէս անոնց ամե-

նուն պատասխան կու տար. Հարցուցին ի-
րեն թէ ե՞րբ Թաղման Հանդէսը կատարեն
և ո՞ւր կ'ուզէ որ թաղեն իրեն աղջիկը, ինքն
ալ անհամբերութեամբ մը՝ Հոգս չէ, ինչ
կ'ուզէք ըրէք, պատասխանեց։

Ասոլփոս ու Սրբուհին մեռելին խուցը
կարգի դրին. իրենց տղայամտութեան հետ
փափուկ ու զգայուն սիրտ մ'ունէին, ու երբ
Օֆէլիա գլուխնին կեցած՝ կը նայէր որ ա-
մէն բան կարգաւորեալ մաքուր ըլլայ՝ իրենք
երկուքը քաղցր ու բանաստեղծական երե-
ւոյթ մը ջանացին տալ խուցին, որպէս զի
մահուան նշան չմնայ։ Զորս կողմը անու-
շահոտ ու ազնիւ ծաղիկներով զարդարեցին։
Վարդիկին պզտի սեղանին ալ ճերմակ փոռ-
ցով մը ծածկած՝ վրան սովորական շուշա-
նաձև ծաղկամանը դրուած էր, մէջն ալ ճեր-
մակ գեղեցիկ վարդ մը։ Պատուհաններուն
վարագոյրներուն ալ աղուոր ծալքերով մաս-
նաւոր ձևեր տուին։

Երբոր Սէն-Քլէր իր տխուր խորհրդածու-
թեանց մէջ ընկղմած՝ անկողնին քով նստեր
էր, Սրբուհին ներս մտաւ ձեռքը կողով մը
ծաղիկ. տէրը տեսնելով՝ առջի բերան ետ
քաշուեցաւ, ու քիչ մ'ատեն անշարժ՝ վրան
դիմացը կեցաւ. բայց տեսնելով որ Սէն—

Քլէր իրեն ուշ չի դներ՝ համարձակեցաւ ա-
ռաջ եկաւ, ու սկսաւ մեռելին անկողինը
ծաղիկներով զարդարել։ Սէն-Քլէր երազի
մը պէս տեսաւ Սրբուհին՝ որ Վարդուհիին
մատուըներուն մէջ ծաղկած յասմիկի ճիւղ
մը կը խոթէր ու անոր անկողնոյն չորս կող-
մը ծաղիկներ կը շարէր։

Դուռը նորէն բացուեցաւ, ու մէյմ՚ալ
նայիս Դոբսի ներս մտաւ, աչուըներն ու-
ռած, գոգնոցին տակն ալ բան մը բռնած։
Ծուա մը Սրբուհին իրեն նշան ըրաւ որ
դուրս ելլէ, բայց անիկայ առաջ եկաւ։

— Դուրս կորսուէ, ըսաւ Սրբուհի ցած
ձայնով՝ բայց խիստ կերպով մը, հոս ի՞նչ
բան ունիս։

— Թող տուր որ ես ալ գամ, ծաղիկ
մը բերի, աղուոր ծաղիկ մը, կրկնեց Դոբսի՝
կիսաբաց գեղեցիկ վարդ մը ցուցընելով.
գոնէ թող տուր որ քովը դնեմ։

— Դուրս կորսուէ ըսի, կրկնեց Սրբու-
հի աւելի խիստ կերպով։

— Թող տուր, մէկէն կանչեց անդիէն
Սէն-Քլէր՝ ոտքը գետին զարնելով, կ՚ու-
զեմ որ ինքն ալ հոս մնայ։

Սրբուհին մէկդի քաշուեցաւ, ու Դոբսին
ալ առաջ բերած ընծան իր պզտի տիրու-

Հւոյն ուսքին քով վրաւ. և յանկարծ սուր ու սաստիկ ձայն մը հանելով՝ գետին ին- կաւ անկողնոյն քով ու սկսաւ լալ ու պո- ռալ։ Օֆէլիա վախեց որ զինքը գետնէն վեր- ցընէ ու ձայնը կտրել տայ, բայց անօգուտ։

— Ո՛վ Վարդիկ, ո՛վ խաթունիկս, ես ալ կ'ուզէի մեռնիլ. երանի՜ թէ ես ալ մեռած ըլլայի քեզի հետ։

Այս սուր ու սաստիկ ձայնէն՝ Սէն-Քլէրի արիւնը երեսը զարկաւ, և առաջ որ մար- մարիոնի պէս պաղեր մնացեր էր, մէյմ'ալ վրան կենդանութիւն մ'եկաւ. ու Վարդու- հիին մահուընէն վերջը՝ աչքէն այս առաջին անգամ արտասուաց կաթիլներն սկսաւ բըղ- խել։

— Ելիր, ելիր, աղջիկս, ըսաւ Օֆէլիա դաշն ձայնով մը, մի՛ լար. Վարդիկ երկինք գնաց, հիմայ ինքը հրեշտակ մ'եղեր է։

— Բայց ես ա՛լ պիտի չտեսնեմ զինքը, կ'ըսէր Դորսի. ա՛լ չտեսնեմ պիտի...։ Եւ նորէն լալ ու ողբալ սկսաւ։

Քիչ մ'ատեն լռութիւն պատեց։

— Ինքն ըսեր էր ինծի, կրկնեց Դորսի, որ կը սիրէ զիս. ի՛նքն ըսեր էր ինծի. վա՜յ ինծի, ա՛լ զիս սիրող մը չմնաց այս աշխար- հիս վրայ։

— Իրաւունք ունի խեղճը, դարձաւ ըսաւ Սէն-Քլէր Օֆէլիային, բայց ջանա՛ քիչ մը մխիթարել զինքը։

— Երանի՛ թէ աշխարհք եկած չըլլայի, ըսաւ լալով Դոբսի, ո՜ւր էր թէ աշխարհք եկած չըլլայի, և չեմ գիտեր թէ ինչո՞ւ համար ծներ եմ ես։

Օֆէլիա կամացուկ մը զինքը գետնէն վերուց ու առաւ դուրս տարաւ, իրեն ալ աչուըները լեցուեր էին։

— Խեղճ Դոբսի, ըսաւ իր խուցը տանելով զանիկայ, խեղճ աղջիկս, մի՛ յուսահատիր, թէպէտ այն սիրելի աղջկանն ալ չկարենամ նմանիլ, բայց ես ալ կրնամ սիրել զքեզ. և իրմէ սովրեցայ ես ալ Յիսուսի սէրն ունենալ. ես ալ կրնամ զքեզ սիրել, ու կը սիրեմ ալ. հաւատա ինծի, ու պիտի օգնեմ քեզի որ դու ալ բարեպաշտ ու քրիստոնեայ աղջիկ մ'ըլլաս։

Օֆէլիայի ձայնը խօսքերէն աւելի նշանակութիւն ունէին, ու թափած անկեղծ արցունքներն ա՛լ աւելի ուժ մը տուին ըսածներուն քան թէ ձայնը։ Այն վայրկենէն խեղճ աղջկան սրտին վրայ այնպիսի ազդեցութիւն մը ստացաւ՝ որ մինչև վերջը անջնջելի մնաց։

— Ահ, իմ Վարդուհիս, կը մտածէր անդին Աէն–Բէկր, դու այս աշխարհիս վրայ քիչ մ'առեն բնակելով՝ այնչափ բարիք ը-րիր, ես ինչ համար պիտի տամ իմ եր-կայն կենացս վրայ։

Քիչ մ'առենէն թեթև ոտնաձայն մը լը-սուեցաւ։

Բոլոր անեցիք էին, որ եկեր էին վերջին անգամ հանգուցելոյն հրեշտականման կեր-պարանքը տեսնելու։ Վերջը դագաղը բերին, և յուղարկաւորութեան հանդէսն սկսաւ։ Խել մը կառքեր տանը դիմացը կարգաւ կանգ առին, և շատ մը օտարականներ մեծ սրա-հին մէջ ժողովեցան։ Յուղարկաւորութեան հանդէսը կատարուելու առեն՝ Աէն–Բէկր լուռ ու մունջ, արցունքը ցամքած ու սիրտը բըռ-նուած՝ վեր վար կը պտըտէր։

Սկիզբէն մինչև վերջ՝ իր աչքին երևցած միակ բանը՝ դագաղին մէջ պառկած աղջը-կանը խոպոպիկներով զարդարուած պզտի գլուխն էր․ բայց քիչ մ'առենէն ան ալ տխուր քօղով մը ծածկեցին, և կափարիչն ալ գոցեցին, և ինքն ալ մէկալ յուղարկա-ւորելոց հետ մինչև պարտէզին ծայրը մէկ-տեղ գնաց, ուր Թոմաս շատ անգամ Վար-դիկը գրկած կը տանէր կը նստեցնէր ու

իր երգերով կը զուարճացընէր զինքը։ Հոն փորեր էին գերեզմանը. Սէն-Քլէր գերեզմանին եզերքը կեցաւ. ու մթընցած աչուըներով մէյմը մէջը նայեցաւ. տեսաւ որ դագաղը մէջը կ'իջեցընեն, լսեց խամնիխուան այս ահաւոր խօսքերը. Ես եմ յարութիւն և կեանք, որ հաւատայ յիս՝ թէպէտ մեռանի՝ կեցցէ. ու երբոր հողով ալ ծածկեցին գերեզմանը, չէր կրնար հաւատալ թէ իր սիրելի Վարդուհին էր որ իր աչքէն կը ծածկուէր յաւիտեան։

Եւ յիրաւի, Վարդուհին չէր ծածկուողը, այլ իր փառաւորեալ և անմահական հոգւոյն՝ ապականացու գեղեցիկ բնակարանը, որով Աստուծոյ դիմացը պիտի ելլէ յաւուրն յետնում։

Վերջը ամէնքն իրենց տեղը ցրուեցան, ու մշտացեալ սիրտերը միայն տունը դարձան, ուր ա՛լ պիտի չտեսնէին իրենց սիրելի Վարդուհին։

Մարիամ խցին փեղկերը. գոցել տուաւ, ինքն ալ անկողնոյն վրայ ինկած՝ կը հեծէր ու կը հառաչէր, և չէր ուզեր մխիթարուիլ. և կը պահանջէր որ ամէնքն ալ վրան հոգ ու մտադրութիւն ունենան։ Լալու ժամանակ չէր տար անոնց. և ինչո՞ւ անոնք պիտի լային. վասն զի վիշտ՝ միայն իրեն վիշտն

էր. ամէն կերպով համոզուած էր՝ որ աշխարհիս մէջ ոչ ոք իրեն պէս և իրեն զգացածին չափ կրնայ զգալ։

— Սէն-Բլէր կաթիլ մ'ալ արցունք չթափեց, կ'ըսէր, և հիմայ ալ ամենուն կարեկից չ'ըլլար իմ վշտացս։ Յիրաւի կարգէ դուրս բան է իրեն սրտին անզգայութիւնն ու անտարբերութիւնը, գիտնալով ալ թէ ես ի՛նչ կը քաշեմ։

Շատ անգամ մարդուս տեսածն ու լսածը վրան կարգէ դուրս տպաւորութիւն մը կ'ընէ. այսպէս ալ տանը ծառաներէն շատը իրաւցընէ հաւատացեր էին՝ որ իրենց խաթունէն աւելի այս դժբախտութեանս վրայ զգացող մը չկար. մանաւանդ երբոր Մարիամ կրած ջղացաւին վրայ գանգատելով՝ բժիշկը կանչել տուաւ ու ինքզինքը մահուան դուռը հասած կը համարէր. ա՛լ տանը տակն ու վրայ ըլլալ մ'էր որ եղաւ. խոհանոցէն խուցը, խուցէն խոհանոցը վազող վազողի, մէկը ջուր կը տաքցընէր, մէկալը ասուի կը չորցընէր, որով քիչ մ'ատեն իրենց տրտմութիւնը մոռցան։

Բայց Թովմասին սրտին խորը բան մը կար, որ զինքը միշտ իր սիրոջը քով կը մղէր. ո՛ւր երթար՝ ինքն ալ ետևէն կ'երթար,

ու տրտմութեամբ կը դիտէր զինքը. և երբոր կը տեսնէր որ Սէն-Քլէր Վարդիկին խուցը կ'երթար, հանդարտ ու գոյնը նետած կը նստէր, ծնկանը վրայ ալ այն խեղճ աղջկան Աւետարանը դրած, թէ և անոր մթընցած աչուըները գիրերն անգամ չէին կրնար տեսնել թող թէ կարդալ, Թոմմաս այն հանդարտ ու անշարժ և ցամաքեալ աչուըներուն վրայ աւելի խոր տրտմութիւն կը տեսնէր՝ քան թէ Մարիամին հեծեծանաց և հառաչանաց մէջ։

Քանի մ'օրէն Սէն-Քլէրի ընտանիքը քաղաք դարձան։ Օգոստինոս իր կրած վշտերուն պատճառաւ՝ ջղացաւէ անհանգիստ ըլլալով՝ կ'ուզէր կենաց փոփոխութիւն մ'ընել, որպէս զի քիչ մը մտածմունքներն ալ փարատին։ Ուստի ձգեցին այն տունն ու այն պարտէզը՝ ուր էր այն պզտի գերեզմանը, և Նոր-Օռլէան դարձան։ Սէն-Քլէր ինքզինքը քաղաքային կենաց աղմուկներուն հոսանքին մէջ ձգեց, ջանալով որ իր սրտին դատարկութիւնը գոնէ շարժմունքով ու բանի գործի մէջ մտնելով ելլելով լեցընէ։ Ճամբան և ուրիշ հասարակաց տեղուանք զինքը տեսնողները՝ գլխարկին վրայի սև քօղէն միայն կ'իմանային իր ըրած անդարմանելի կորուս-

տը. վասն զի ինքն այնպէս կը կենցաղավարէր, կը ծիծաղէր, լրագիր կը կարդար, քաղաքական ու առեւտուրի նիւթոց վրայ կը խօսէր, ինչպէս թէ ամենեւին դժբախտութիւն մը վրան եկած չըլլար: Ով կրնար հաւատալ որ այդպիսի արտաքին զուարթ ու հանդարտ կերպարանքը՝ խոր գերեզմանի մը պէս իր մէջը տխուր սիրտ մը բովանդակէ:

— Սէն-Բլէր կարգէ դուրս մարդ մ'է, կ'ըսէր Մարիամ Օֆէլիային գանգատանօք. ատեն մը կը կարծէի թէ ինքն աշխարհիս վրայ թէ որ կարելի ըլլար մէկը սիրել՝ միայն մեր սիրելի Վարդիկն էր. բայց կ'երեւայ թէ հիմայ բոլորովին մոռցեր է զինքը. չկրցայ բերնէն անոր վրայ մէկ խօսք մը լսել: Շիտակը, ես կարծէի թէ զգայուն սիրտ մ'ունենայ:

— Հանդարտ ջրերն աւելի խոր կ'ըլլան, կ'ըսեն, պատասխանեց Օֆէլիա ծանրութեամբ:

— Ես չեմ հաւատար այդ առակին. երբոր մէկը կը զգայ՝ դրսէն ալ կը ցուցընէ, վասն զի չի կրնար պարտըկել: Բայց ո՛րչափ ալ թշուառ է մարդ՝ երբոր կարգէ դուրս զգայուն սիրտ մ'ունենայ. շատ աւելի կ'ուզէի որ Սէն-Բլէրի պէս անզգայ ըլլայի,

վրան զի իմ սաստիկ զգայութիւնս զիս գերեզման կը տանի։

— Այս ստոյգ է, խաթուն, վրայ բերաւ Մամմին, որ մեր տէրը օր օրուան վրայ կմախք կը դառնայ. կ'ըսեն թէ ամենևին բան չ'ուտեր. և ես գիտեմ ալ որ միշտ Վարդիկին վրայ կը մտածէ...։ Ո՛վ կրնայ ալ մոռնալ այն գեղեցիկ ու երջանիկ արարածը, կրկնեց Մամմին արցունքը սրբելով։

— Միով բանիւ, Սէն-Քլէր վրաս ամենևին հոգ չունի. ինծի կարեկցութեան խօսք մ'ալ ըսած չունի, և պէտք էր գիտնալ՝ որ մայր մը էրիկ մարդէն աւելի կը կրէ։

— Ամէն մարդ իր սրտին պառնութիւնները միայն գիտէ, պատասխանեց Օֆէլիա ծանրութեամբ մը։

— Ես ալ այն կը մտածեմ, ես միայն գիտեմ իմ քաշածներս. ոչ ոք գիտէ և ոչ ալ կրնայ երևակայել. Վարդիկ միայն կ'ըմբռնէր, բայց հիմայ ան ալ չկայ...։

Այս խօսքին Մարիամ բազմոցին վրայ երկընցաւ, ու ճերմակ թաշկինակը ձեռքը՝ սկսաւ լալ հառաչանօք։

Մարիամ այն դժբաղդ մահկանացուներէն էր, որ բանի մը յարգը կորսնցընելէն վերջը կը ճանչնան. քանի որ բան մը ձեռքն

էր՝ վրան պակասութիւններ կը գտնէր, բայց երբոր կը կորսընցընէր՝ ա՛լ գին չունէր։

Մինչդեռ Մարիամին խուցը այս խօսակցութիւններս կ'ըլլային՝ անդին Սէն-Քլէրին խուցը ուրիշ տեսարան մը բացուեր էր։

Թովմաս՝ որ մեծ ջանքով իր տիրոջ ամէն շարժմունքները կը դիտէր, տեսաւ որ քանի մը ժամ առաջ անիկայ խուցը մտաւ։ Երկայն ատեն զուր տեղ սպասելէն վերջը որ դուրս ելլէ՝ համարձակեցաւ պատճառանքով մը ներս մտնելու. կամացուկ մը դուռը բացաւ, ու տեսաւ որ Սէն-Քլէր խըցին մէկ անկիւնը բազմոցի մը վրայ երկընցեր էր թեւին կոթընած, քովն ալ Վարդիկին Աւետարանը բաց. զգուշութեամբ մը մօտեցաւ քովը, ու երբ շփոթած վրան կը նայէր՝ մէյմ'ալ յանկարծ Սէն-Քլէր գլուխը վեր վերցուց։ Թովմասին համեստ ու իրաւցընէ վշտացեալ կերպարանքը և սիրոյ և յարգութեամբ լցեալ աղաչական կերպը՝ տիրոջը վրայ մեծ տպաւորութիւն մ'ըրին. Թովմասին ձեռքը բռնեց ու գլուխը վրան կոթընցուց։

— Ով Թովմաս, աշխարհս ինծի համար ձուոյ մը դատարկ պատեանը դարձաւ։

— Գիտեմ, տէր իմ, գիտեմ, պատասխա-

նեց Թովմաս․ բայց թէ որ մէյմը կարենայիր աչուըներդ դէպ ի վեր վերցընել՝ ուր կը բնակի Վարդուհին... դէպի երկինք՝ ուր է Քրիստոս...

— Թովմա՛ս, ըսածիդ պէս աչուըներս դէպի երկինք կը վերցընեմ, բայց դժբախտաբար բա՛ն չեմ տեսներ։ Շա՛տ կը փափագէի տեսնել։

Թովմաս խորին հառաչանք մ'արձակեց։

— Ինծի կ'երևի թէ, կրկնեց Սէն-Քլէր, անմեղ տղոց և քեզի պէս պարզ ու համեստ սրտերու տրուած է տեսնել՝ ինչ որ մենք չենք կրնար տեսնել։

— Զի ծածկեցեր զայս յիմաստնոց և ի գիտնոց և յայտնեցեր տղայոց, վրայ բերաւ Թովմա՛ս. այո՛, Հայր, զի այսպէս հաճոյ եղև առաջի քո։

— Թովմաս, ես չեմ հաւատար ու չեմ ալ կրնար հաւատալ. սովորութիւն է ամէն բանի վրայ տարակուսիլ. կ'ուզէի ինչ որ Ս. Գիրքը կը սորվեցընէ մեզի՝ հաւատալու, բայց չեմ կրնար։

— Տէր իմ սիրելի, դիմէ առ Փրկիչն մեր բարեբար, և ըսէ. Հաւատամ, Տէր, օգնեա՛ անհաւատութեանս իմոյ։

— Ո՛վ գիտէ, և ո՛վ դարձաւ անդիէն...

ըսաւ Սէն-Պլէր, տարտամ կերպով աչուըները աստին անդին պտըտցընելով, և ինքն իրեն խօսելով։ Այս գեղեցիկ սէրը, այս մաքուր հաւատքը մարդկային զգացմանց յարափոփոխ երևոյթ մը չե՞ն արդեօք, որ հաստատութիւն մը չունին, և կենաց շնչին հետ մէկտեղ կը ցնդին։ Ուրեմն ա՛լ ոչ Վարդուհի կայ, ոչ երկինք և ոչ Փրկիչ։

— Ո՛վ սիրեցեալ տէրդ իմ, այդ ամէն ըսածներդ կան, ես ստոյգ գիտեմ ու ապահով եմ, ըսաւ Թովմաս՝ տիրոջ ոտքն իյնալով. հաւատա՛, տէր իմ, հաւատա՛։

— Դու ի՞նչպէս կրնաս գիտնալ որ Փըրկիչ մը կայ, զոր ոչ երբեք տեսած ես։

— Ես իմ սրտէս կը զգամ, տէր իմ, հիմայ ալ կը զգամ։ Ո՛հ, տէր, երբոր զիս ծախեցին, երբոր բաժնեցին զիս իմ խեղճ կնոջմէս ու տղոցմէս, ես բոլորովին յուսահատեր էի. կը կարծէի՝ թէ ա՛լ աշխարհիս վրայ բան մը չունիմ. ան ատեն իմ բարերար Փրկիչս քովս եկաւ ու ըսաւ հոգւոյս. «Մի վախնար, Թովմաս». խեղճ ողորմելւոյս սիրտը լուսով և ուրախութեամբ լցուց ու վրաս խաղաղութիւն մը ծագեց։ Եւ հիմայ երջանիկ եմ, պամէնքն ալ կը սիրեմ. և ինքզինքս Աստուծոյ յանձներ եմ, կ'ու-

զեմ Աստուծոյ կամքը կատարել, և ուր որ կ'ուզէ՝ հոն կ'երթամ։ Գիտեմ որ այս մըտածմունքս ինծմէ չէ, վասն զի ես խեղճ ու ողորմելի և միշտ զանգատելու ենթակայ արարած մ'եմ. Աստուած է որ տուաւ ինծի այս փոփոխութիւնս. և գիտեմ որ նոյն բանը պատրաստ է հրամանքիդ ալ շնորհելու։

Թումաս այս խօսքերս ըսելու ատեն՝ յորդ արցունք կը թափէր, ու ձայնը երբեմն երբեմն կը բռնուէր։

Սէն-Քլէր գլուխն իրեն հաւատարիմ ծառային ուսին վրայ կոթընցուցած էր, և անոր սև ու կոշտ ձեռքը կը սեղմէր։

— Թումաս կը սիրե՞ս զիս, ըսաւ։

— Այսօր ըլլայ՝ կեանքս կու տայի, բաւական է թէ զհրամանքդ տեսնէի որ քրիստոնեայ եղեր ես։

— Խեղճ բարեմիտ, պատասխանեց Սէն-Քլէր՝ գլուխը քիչ մը վեր վերցընելով, ես արժանի չեմ քեզի պէս բարի ու հաւատարիմ սիրտ ունեցողի մը սիրոյն։

— Ո՛վ տէր, ես մի՛նակ չե՛մ որ կը սիրեմ զքեզ, մեր աստուածային Տէրը Յիսուս ալ կը սիրէ զքեզ։

— Իրա՞ւ կ'ըսես. դուն ուսկի՞ց գիտես, Թումաս։

— Ես իմ սրտիս խորը կը զգամ, տէր իմ. Յիսուսի սէրը խելքէ վեր բան է։

— Կարգէ դուրս բան մ'է, ըսաւ Սէն-Թըլէր՝ երեսն անդին դարձընելով, որ մարդու մը պատմութիւնը որ ասկէ հազար ութը հարիւր տարի առաջ ապրեցաւ ու մեռաւ՝ այսչափ ազդեցութիւն ընէ այս խեղճ մարդկանց վրայ. բայց մարդ պիտի չըլլայ անիկայ . . . կրկնեց նորէն. Հասարակ մարդ մը ոչ երբեք այնչափ զօրաւոր ու տեւողական զօրութիւն կրնայ ունենալ... Ո՜հ, ինչո՞ւ չեմ կրնար հաւատալ մօրս ինծի սովրեցուցած բաներուն... ինչո՞ւ հիմայ չեմ կրնար աղօթք ընել, ինչպէս տղայութեանս ատեն կ'ընէի։

— Շնորհք կ'ընե՛մս, տէր իմ, վրայ բերաւ Թովմաս՝ Աւետարանը ցուցընելով, այս գլուխը կարդաս. Վարդուհին շատ աղէկ կը կարդար, ու իր երթալէն վերջը՝ ոչ ոք դեռ կարդաց ինծի։

Յովհաննու աւետարանչին ԺԱ գլուխն էր, ուր Ղազարու յարութեան սրտաշարժ պատմութիւնը գրուած էր։ Սէն-Թըլէր բարձր ձայնով սկսաւ կարդալ, ու ստէպ ստէպ կը կենար սրտին այլայլութենէն։ Թովմաս խաղաղ դէմքով, ձեռնամած և ծունր դրած կե-

ցեր էր, և երեսին վրայ հաւատոյ, յուսոյ և սիրոյ զգացմունքները կը փայլէին։

— Թովմաս, հարցուց ատէրը, դու այս ամէն բաներն իբրև ճշմարտապէս եղած կը կարծես։

— Կարծես թէ աչքով կը տեսնեմ, պատասխանեց Թովմաս։

— Կ՚ուզէի ես ալ քու աչքդ ունենալ ու քեզի պէս տեսնել։

— Աստուած տայ։

— Բայց գիտես, Թովմաս, որ ես քեզմէ աւելի ուսեալ եմ։ Երբոր լսես թէ ես Ս. Գրոց բնաւ մէկ խօսքին ալ չեմ հաւատար, դու ի՞նչ կ՚ըսես։

— Ա՜հ, տէր իմ, հառաչեց Թովմաս՝ ձեռուըները դէպի երկինք վերցընելով։

— Ի՞նչ, միթէ այս խօսքովս քու հաւատքդ կը դրդուի՞։

— Ամենևին չէ։

— Եւ սակայն, Թովմաս, պիտի գիտնաս՝ որ ես քեզմէ աւելի ուսեալ եմ։

— Զլսեցի՞ր քիչ մը առաջ, տէր իմ, պատասխանեց Թովմաս, որ Յիսուս ինքզինքն իմաստուններէն ու գիտուններէն կը ծածկէ և տղայոց կը յայտնէ։ Բայց անտարակոյս այս խօսքերը միայն համոզմամբ

չես ըսեր , կրկնեց Թովմաս , տագնապեալ սրտիւ ։

— Չէ, Թովմաս, մտաց համոզմամբ չէ. ես բոլորովին անհաւատ չեմ, և տղէկ հա- մոզուած եմ որ հաւատալու շատ պատճառ- ներ կան, այսու ամենայնիւ տակաւին ես չեմ հաւատար։ Շատ գէշ սովորութիւն մ՚է ասիկայ, որ վրաս տիրեր է։

— Եթէ, տէր իմ, կամք ունենայիր միայն աղօթելու...։

— Ինչ՞ն գիտես, Թովմաս, որ ես աղօթք չեմ ըներ։

— Աղօթք կ՚ընե՞ս։

— Կ՚ընէի՝ թէ որ գիտնայի թէ աղօթե- լու ժամանակս քովս մէկը կայ. բայց ինծի կ՚երևայ թէ ոչ ոք կը լսէ ձայնս՝ երբոր ա- ղօթքի կը սկսիմ։ Քու աղօթք ընելդ տես- նելու եմ՝ որ ես ալ սորվիմ թէ ինչպէս պէտք է աղօթք ընել։

Թովմասին սիրտը լեցուեր էր, և սկսաւ եռանդեամբ աղօթելու։ Իր կերպէն յայտնի կը տեսնուէր՝ որ թէ լսեն կամ չլսեն ի- րեն ձայնը, ինքը հաստատապէս կը հաւա- տար թէ կայ մէկը որ իրեն մտիկ կ՚ընէ։ Սէն-Քլէրին վրայ խորին տպաւորութիւն մը ըրին գերայն հաստատուն հաւատքն և ե-

ամպուն սէրը, կը կարծէր որ ինչուան երկ-նից դուռը հասեր է ու Վարդիկին մօտե-ցեր է։

— Շնորհակալ եմ, բարեկամ, դարձաւ ըսաւ Թովմասին՝ երբոր անիկայ ոտք ելաւ, կ՚ուզեմ ուրիշ անգամ ալ լսել աղօթքդ․ հիմայ գնա ու զիս մինակ թող, ուրիշ ան-գամ կը դառնանք նորէն խօսելու մէկտեղ։

Թովմաս լռիկ մնջիկ խուցէն դուրս ելաւ։

## ԳԼՈՒԽ ԻԸ.

### Վերադարձ

Օրերն ու շաբաթներն հետզհետէ կը սա-հէին ու կ՚անցնէին Սէն-Քլէրի ընտանեաց վրայէն, և կենաց ալիքները Վարդիկին թե-թեւընթաց պզտի նաւակը կլլելէն ետև՝ նո-րէն իրենց բնական ընթացքն առին։ Կենաց պիտոյքներն, ո՜հ, ինչպէս գութ չունին մեր ցաւոց վրայ․ անողոքելի կերպով վրայ կը հասնին և անտարբերաբար իրենց շրջանն առաջ կը տանին, ու կը ստիպեն զմեզ ոտքի տակ առնուլ մեր ամենափափուկ զգացմունք-ներն ալ։ Բարոյական նեղութեանց ու վիշ-

տաց մէջ ալ պէտք է որ ուտենք, խմենք, պառկինք, ելլենք, առնունք, տանք, գնենք ու վաճառենք, հարցընենք ու պատասխանենք, և ասոնց նման դեռ հազարումէկ գործողութիւններ կատարենք. և մարդս կենաց քաղցրութիւնն ու անուշութիւնը կորսընցընելէն վերջն ալ՝ ապրելու ցուրտ ու մեքենական վարժութիւնը կը մնայ քովը։

Սէն-Պլէրի բոլոր ակնկալութիւններն ու բոլոր էութիւնն իրեն աղջկան վրայ կեդրոնացեր էին։ Վարդիկին համար էր որ իր հօրենական ժառանգութեան վրայ հոգ կը տանէր, և անոր համար բովանդակ իր ժամանակը կ'անցընէր, կը կարգաւորէր, կը փոփոխէր. բոլորն ալ իր աղջկան համար կ'ընէր. և այս սովորութիւնս այն աստիճանի վրան տիրացեր էր՝ որ հիմայ աղջիկը մեռած ըլլալով՝ կարծես թէ ա՛լ մտածելու բան չմնաց, ա՛լ ընելիք գործ մը չմնաց։

Բայց ուրիշ կեանք մը կայ, որ եթէ մէյմը ընդունուի՝ ահաւոր և նշանական թուանշանի մը պէս՝ մեր էութեան գրաններուն աջակողմը կը գրուի, և անոնց խորհրդաւոր ու անթարգմանելի թուոյ մը զօրութիւն կու տայ։ Սէն-Պլէր ալ աղէկ գիտէր այս բանս, և շատ անգամ իր տխրութեան և առան-

ձնութեան ժամերուն մէջ՝ այն անուշ ու մանկական ձայնը կը լսէր՝ որ երկնքէն զինքը կը կանչէր, և պզտի փափուկ ձեռք մ'ալ կը տեսնէր՝ որ կենաց ճամբան իրեն կը ցուցընէր. բայց ցաւոց խորին թմբրութիւնը կը ճնշէր զինքը և չէր կրնար վեր ելլել։

Սէն-Քլէր այն եզական բնաւորութիւն ունեցողներէն մէկն էր, որոնք կրօնից բաներն իրենց բնական ազդեցութեամբ ու լոկ իմացականութեամբ՝ շատ գիտուն ու բարեպաշտ քրիստոնեաներէ աւելի լաւագոյն ու պայծառ կ'ըմբռնեն ։ Բարոյական ճշմարտութեանց յարգը ճանչնալու կարողութիւնը շատ անգամ այնպիսի մարդկանց տրուած կ'ըլլայ, որոնք կարծես թէ ամենևին կամք չունին իրենց գործերն անոր յարմարցնելու։ Ինչպէս Մուր, Պայրըն և Կէօթէ կրօնից վրայ խօսելու ատեննին՝ շատ անգամ ամենայն հաւատարմութեամբ այնպիսի փափուկ զգացմունքներ բացատրեր են , որ կրօնից պատուէրները շատ ճշդութեամբ պահողներն անգամ չեն կրնար այն աստիճանի զգալ։ Այնպիսի մարդկանց կրօնքն արհամարհելը սարսափելի յանդգնութիւն մ'է, ծանր անիրաւութիւն և ահագին մեղք է։

Սէն-Քլէր ամենևին դիտաւորութիւն չէր

ունեցած ինքզինքը կրօնական սկզբամբ մ՚ուղղելու։ Կազմուածքին տեսակ մը փափկութիւնը՝ քրիստոնէական պարտուց որոշ ու ճիշդ գաղափար մը տուեր էր իրեն մտաց, և աղէկ գիտէր որ եթէ յանձն առնուր այս պարտքերը կատարել՝ ինչ բաներ կը պահանջէ իրմէ իւր խիղճը, անոր համար միշտ հեռու կը փախչէր։ Այսպիսի է մարդկեղէն բնութեան թիւր հետևութիւնը, որ լաւագոյն կը համարի բանի մը ձեռք չզարնել, քան թէ սկսիլ ու ծայրագոյն կատարելութենէն վար մնալ։

Այսու հանդերձ՝ Մէն-Քլէր շատ նկատմամբ բոլորովին տարբեր մարդ եղեր էր. ամենայն մտադրութեամբ ու բարի հաւատքով իր Վարդիկին Աւետարանը կը կարդար. գոհ չէր իր անցելոյն ու ներկային վրայ, և կը մեղադրէր ինքզինքն իրեն գերիներուն վրայ ունեցած անհոգութեան համար։ Ուստի Նոր Օրլէան դառնալէն քիչ մը վերջը՝ ետևէ եղաւ Թովմասին օրինաւոր ազատութեան։ Օր օրուան վրայ այն հաւատարիմ ծառային հետ սէրը կը կապուէր, և աշխարհիս վրայ մէկը չկար՝ որ Թովմասէն աւելի իրեն մտաց մէջ Վարդիկին յիշատակն արթընցընէր. անոր համար կ՚ուզէր որ քովէն

չհեռանայ, և թէպէտ իր ներքին զգացմունքները սովորաբար կը կեղծէր, բայց Թովմասէն չէր կրնար ծածկել։ Եւ զարմանք չէ որ Թովմասն ալ այնպիսի կարգէ դուրս սէր ու գութ ցուցընէր իր տիրոջ վրայ։

— Ուրեմն, Թովմաս, ըսաւ Սէն-Քլէր անոր ազատութեան գիրը պատրաստելուն երկրորդ օրը, կ'ուզեմ քեզի ազատութիւն պարգևել, ուստի ճամբու սնտուկդ պատրաստէ՝ որ քիչ ատենէն Քէնդըքի դառնաս։

Ուրախութեան լոյս մը ծագեց Թովմային երեսը, և ձեռուըներն երկինք վերցընելով՝ Աստուած օրհնէ զքեզ, ըսաւ։

Թովմասին այս յանկարծական ուրախութենէն Սէն-Քլէր այլայլեցաւ, և կարծես թէ դժուարն եկաւ անոր քովէն երթալ ուզելն։

— Հոս այնչափ թշուառ չէիր՝ որ այդչափ կ'ուրախանաս ազատութեանդ լուրն առնելուդ, ըսաւ Սէն-Քլէր պաղ կերպով։

— Չէ, չէ, տէր իմ, պատասխանեց Թովմաս, ուրախութեանս պատճառն այդ ըսածդ չէ, քաւ լիցի. այլ ազատութիւն գտնելս է։

— Չե՞ս մտածեր որ հոս աւելի երջանիկ էիր՝ քան թէ ազատ ըլլայիր։

— Չէ, տէր իմ, չէ, պատասխանեց Թովմաս արիութեամբ։

— Բայց, Թուլմաս, պարզ քու աշխատանոցդ՝ իմ տանս մէջ հագածդ յաւիտեան չէիր կրնար վաստըկիլ։

— Գիտեմ, տէր իմ, գիտեմ որ հրամանքդ ինծի շատ բարիք ըրեր ես, և կ'ընես. սակայն, տէր իմ, ես աւելի կ'ընտրեմ աղքատին հագուստներ հագնիլ ու խեղճուկ տնակ մ'ունենալ, միայն կարենամ ըսել թէ իմս են, քան թէ փառաւոր հագուստներ հագնիլ և աղուոր տուն մ'ունենալ, որ ուրիշին ըլլան. ինծի առջինը լաւագոյն կ'երևնայ, տէր իմ, և կարծեմ որ մարդուս ալ բնական է այսպիսի զգացմունք ունենալ։

— Ես ալ այնպէս կը կարծեմ, Թուլմաս. ուստի ասկէ ամիսէ մը զիս կը թողուս ու կ'երթաս, ըստ Սէն-Քլէր պաղութեամբ մը։ Եւ ո՛վ կրնայ զքեզ մեղադրել այսպիսի փափագ ունենալուդ համար, վրայ բերաւ, ու ոտք ելաւ և սկսաւ քալել։

— Քանի որ հրամանքդ վշտաց մէջ ես՝ չեմ ուզեր թողուլ զքեզ, կրկնեց Թուլմաս. և ասկէ հոն չեմ երթար, քանի՛ որ օգտակար կրնամ ըլլալ հրամանքիդ։

— Գիտե՞ս ո՛րչափ ատեն պիտի սևեն իմ վշտերս, կրկնեց Սէն-Քլէր, տխուր ա-

չուըներովը պատուհանէն դուրս նայելով։ Ե՞րբ իմ վշտերս վերջ պիտի ունենան։

— Երբոր քրիստոնեայ ըլլաս, տէր իմ։

— Ի՞նչ, մինչև այն օրը գալո՞ւն պիտի սպասեմ, ըսաւ Սէն-Քլէր, կէս մը ծիծաղելով։ Ա՛հ, Թովմաս, շատ բարեսիրտ ես, չեմ ուզեր զքեզ այնչափ երկայն ատեն քովս բռնել. պարծիր կնոջդ ու որդւոցդ քով, և ինծմէ ալ շատ բարև ըրէ անոնց, ու ըսէ թէ վրանին մեծ գութ ունիմ։

— Հաստատուն հաւատք ունիմ որ այն օրը շատ հեռու չէ, կրկնեց Թովմաս՝ ելած սրտով ու արտասուալից աչուըներով. Աստուած հրամանքիդ պաշտօն մը տուեր է կատարելու։

— Ի՞նչ պաշտօն, ըսէ նայիմ, Թովմաս, վրայ բերաւ Սէն-Քլէր. Ի՞նչ կը հասկընաս պաշտօն ըսելով, ինծի բացատրէ։

— Թէ որ ինծի պէս խեղճ մարդ մը կըրնայ Աստուծոյ համար աշխատիլ, ըսաւ Թովմաս, որչափ աւելի հրամանքդ, տէր իմ Սէն-Քլէր, որ այնչափ ուսեալ ես, հարուստ ես, բարեկամներ ունիս։

— Թովմաս, ինծի կ՚երևայ թէ միտքդ դրեր ես՝ թէ Աստուած կարօտ է որ մարդիկ իրեն համար աշխատին, պատասխանեց Սէն-Քլէր ծիծաղելով։

— Աստուծոյ համար աշխատած կ'ըլլանք, երբոր իրեն արարածներուն համար աշխատելու ըլլանք, ըսաւ Թովմաս։

— Այս է ահա ճշմարիտ աստուածաբանութիւնը. ասիկայ մեր ճոռոմ վարդապետներուն քարոզածէն շատ գերազանց է, կրկնեց Սէն-Քլէր։

Նոյն միջոցին քանի մը նիւթերու վրայ գալով՝ խօսակցութիւնն ընդմիջեցաւ։

Մարիամ Սէն-Քլէր ալ շատ ցաւեր էր Վարդիկին մահուան վրայ, որչափ որ կըրնար ցաւիլ. և որովհետև շատ ճարտար էր իր վիշտերն ուրիշներուն վրայ ալ ծանրացընելու, տան ծառաները շատ աւելի պատճառ ունէին ցաւելու իրենց խաթունիկին մահուան վրայ, վասն զի ինքն էր որ իր անուշ խօսքերով և միջնորդելով՝ իրեն մօրը անձնական բարուց՝ և անկարեկիր բնաւորութեան դէմ շատ անգամ՝ պաշտպանիր էր զիրենք։ Մանաւանդ խեղճ Մամմին, որ իր ընտանիքէն բռնապէս բաժնուելէն վերջը՝ իր մէկ հատիկ մխիթարութիւնը Վարդիկն էր, ամենքէն աւելի կը ցաւէր անոր մահուան վրայ։ Գիշեր ցորեկ կու լար կ'ողբար, որով չէր կրնար առաջուան պէս բոլոր հոգւով իր տիրուհւոյն համար աշխատիլ,

անոր համար ալ անդադար յանդիմանու-
թիւններ ու մահացուցիչ խօսքեր կը լսէր,
և մէկը չկար որ զինքը պաշտպանէր։

Օֆէլիա ալ սաստիկ ցաւեր էր Վարդի-
կին մահուան վրայ, բայց անոր օրինակն
իրեն բարի ու զգայուն սրտին վրայ յաւի-
տենական կենաց հարկաւոր տպաւորութիւն-
ներ ըրեր էր։ Անկէ ետև աւելի քաղցրու-
թեամբ կը վարուէր գերիներուն հետ. և թէ-
պէտ առջինին պէս ճիշդ էր իր պարտուց
կատարման մէջ, բայց աւելի չափաւոր էր
ու քիչ խստութիւն կը բանեցնէր։ Մեծ ջան-
քով Դոբսիին կրթութեան փոյթ կը տանէր,
և ա՛լ անկէց չէր զզուիր ու չէր գարշիր, և
անոր վրայ սիրոյ աչքով կը նկատէր ան-
մահ արարած մը, որ Աստուած իրեն ձեռ-
քը յանձներ էր՝ առաքինութեան ճամբուն
մէջ կրթելու զինքը, և երկնից փառաց ա-
ռաջնորդելու համար։ Իրաւ Դոբսին շատ
շուտով չմտաւ առաքինութեան ճամբուն մէջ,
բայց Վարդիկին վարքն ու մահը՝ անոր վրայ
մեծ փոփոխութիւն մ'ըրին։ Իրեն չափազանց
անտարբերութեան՝ փոխանակեցին զգացո-
ղութիւն և ջանասիրութիւն ի բարին. և թէ-
պէտ երբեմն երբեմն այս իրեն ջանքը կ'ընդ-
հատէին ու կը ասկարանային, բայց նորանոր

առաջադրութիւններով կը զօրացընէր ինքզինքը։

Օր մը Օֆէլիա Դոքսին կանչելու ժամանակ՝ Սրբուհին որ զինքը փնտռելու ելեր էր՝ տեսաւ որ ասիկայ փութալով գոգնոցին տակը բան մը պահեց։

— Ի՞նչ կ'ընես, ըսաւ Սրբուհին խիստ երեսով. նորէն արդեօք բա՞ն մը գողցար. և հասաւ վրան ու թեւէն բռնեց։

— Թող զիս, Սրբուհի, ըսաւ Դոքսի՝ անոր ձեռքէն փախչելով, քու գիտնալու բանդ չէ ասիկայ։

— Խելօ՛ք, ըսաւ Սրբուհին, տեսայ որ բան մը պահեցիր, և գիտեմ թէ ինչ խարդախ ես։

Սրբուհին վազեց ու նորէն բռնեց թեւէն, և կը ջանար պահած բանը դուրս հանել. իսկ Դոքսի ուժով ձեռքով դէմ կը դնէր կատաղաբար և թող չէր տար որ Սրբուհին պահած բանը դուրս հանէ։ Այս աղաղակէն ու շփոթութենէն Օֆէլիա և Սէն-Բլէր դուրս վազեցին։

— Բան մը գողցեր է, ըսաւ Սրբուհին։

— Սուտ է, սուտ է, կը պոռար Դոքսի լալով։

— Ի՛նչ ալ ըլլայ, տուր ինծի տեսնեմ, ըսաւ Օֆէլիա հրամայական կերպով։

Դոբսի չէր ուզեր տալ, բայց երբոր հրամանը կրկնուեցաւ՝ գոգնոցին տակէն հին գուրպայի մը մէջ պլլած կապոց մը հանեց դուրս։ Օֆէլիա մէկէն առաւ բացաւ. մէջէն պզտի գրքոյկ մ՚ելաւ, որ Վարդուհին Դոբսիին տուեր էր, որուն ամէն մէկ երեսին մէջ տարուան իւրաքանչիւր օրերուն համար Ս. Գրքէն մէկմէկ տուն գրուած էր, թուղթի մը մէջ ալ՝ փունջ մը մազ պլլած էր, զոր Վարդիկ իր վերջին բարեւը տալու այն յիշատակաց արժանի օրը Դոբսիին ընծայ տուեր էր։

Սէն-Քլէրի սիրտը սաստիկ ելաւ, պզտի գրքոյկը սեւ քօղի մը կտորի մէջ պլլուած էր, զոր անշուշտ Դոբսի սգոյ հագուստէ մը փրցուցեր էր։

— Ինչո՞ւ այդ գրքոյկը սեւ քօղի մէջ պըլլեր ես, հարցուց Սէն-Քլէր Դոբսիին։

— Վասն զի… վասն զի… վասն զի այդ գիրքը Վարդիկ խաթունիկիս էր։ Ո՜, կ՚աղաչեմ, ձեռքէս մի՛ առնէք, ըսաւ Դոբսի. ու գետինը նստած՝ գոգնոցով երեսը գոցեց և սկսաւ բարձրաձայն լալ։

Սրտաշարժ ու միանգամայն ծիծաղաշարժ

տեսարան մ'էր ասիկայ. այն հին դուրպան, այն սեւ քօղը, այն պզտի գրքոյկը, այն խարտեաշ մազերուն փունջը և Դոփսիին յուսահատական լացը՝ տեսնողներուն ծիծաղն ու գութը կը շարժէր։

Սէն-Քլէր ժպտիլ ձեւացուց, բայց աչուըները լեցուած՝ դարձաւ ըսաւ աղջկան.

— Մի՛ լար, մի՛ լար, ձեռքէդ չեն առներ։

Եւ բոլորն ալ ժողվեց, նորէն կապոց մը ըրաւ ու Դոփսիին գոգը նետեց. և ինքը Օֆէլիայի հետ խուցը մտաւ։

— Կը հաւատամ իրաւցընէ որ աս աղջկան վրայ ունեցած աշխատութիւնդ պարապը չէ եղած, ըսաւ Սէն-Քլէր՝ ձեռքովը Դոփսին ցուցընելով։ Միտք մը որ ճշմարիտ ցաւ մը զգալու ենթակայ է՝ բարւոյ ընդունակ է։ Նայէ որ այդ աղջիկը բանի մը բերես։

— Ինչուան հիմայ շատ փոխուեցաւ այդ աղջիկը դէպի բարին, պատասխանեց Օֆէլիա, կը յուսամ որ բոլորովին ուղղուի։ Բայց, Օգոստինոս, կրկնեց՝ ձեռքը անոր թեւին վրայ դնելով, քեզմէ խնդիրք մ'ունիմ. այդ աղջիկը քո՞ւկդ է թէ իմս է։

— Ես քեզի ընծայ ըրի, ըսաւ Սէն-Քլէր։

— Այո, բայց օրինաւորապէս չէ. կը փափագիմ որ օրինաւորապէս բոլորովին ինծի տաս զանիկայ։

— Շատ զարմանք, ըսաւ Օգոստինոս. ինչ պիտի ըսէ գերեստացից ընկերութիւնը թէ որ իմանայ թէ գերի մը ստացեր ես. անշուշտ օր մը ծոմ պիտի պատուիրէ պահելու ամենուն՝ այդ մեղքդ ապաշխարելու համար ...։

— Հոգ չէ. կ'ուզեմ ես որ այդ աղջիկն օրինաւորապէս իմս ըլլայ, որպէս զի օր մը զինքն ազատ երկիր մը տանելու իրաւունք ունենամ ու իրեն ազատութիւն տամ, որպէս զի իրեն համար քաշած այսչափ աշխատանքս պարապը չերթայ։

— Բայց, սիրելի, առնել զչարն զի եկեսցէ բարին, ինչ սարսափելի հերետիկոսութիւն է. իրաւցընէ ես չեմ կրնար այդ բանիդ հաւանիլ։

— Կատակը մէկդի թողունք ու քիչ մ'ալ խելքով մտածենք, պատասխանեց Օֆէլիա։ Անօգուտ բան է բոլորովին՝ որ ես այս աղջըկան սրտին մէջ քրիստոնէութեան սկզբունք սերմանեմ՝ թէ որ չկարենամ ազատել միանգամայն և պահպանել զինքը գերութեան չար հետեւանքներէն ու վտանգներէն. և թէ որ

յիրաւի կ'ուզես ինծի բաշխել՝ կը փափագիմ որ օրհնաւոր գրով մը տաս։

— Շատ լաւ, շատ լաւ, ըսաւ Սէն-Քլէր, կը հաւանիմ ըսածիդ. և նստաւ լրագիր մը ձեռքն առաւ։

— Բայց ես կը փափագիմ որ հիմայ շուտ մ'ընես, ըսաւ Օֆէլիա։

— Բայց ինչո՞ւ այդչափ կը փութաս։

— Վասն զի ներկան միայն ձեռքերնիս է, և անոր մէջ ապահով ենք թէ բան մը կրնանք ընել, ըսաւ Օֆէլիա։ Ահաւասիկ գրիչ, կաղամար ու թուղթ, նստէ գրէ տեսնեմ։

Սէն-Քլէր՝ ինչպէս նաև իրեն նման բընաւորութիւն ունեցողները՝ չեն սիրեր ամենեւին մի և նոյն ժամանակը մտածել ու գործադրել. անոր համար Օֆէլիայի պնդելը իրեն ծանր եկաւ։

— Ուրիշ ի՞նչ կ'ուզես, ըսաւ, խօսք տալը բաւական չէ՞. զիս այսպէս նեղը խօթելդ տեսնողը կ'ըսէ թէ անշուշտ հրեայէ մը սորվեր ես։

— Ես իմ իրաւունքս ապահովցընել կ'ուզեմ, ըսաւ Օֆէլիա. թէ որ դու յանկարծ մեռնիս կամ բացը ելլես ... Դոբսին կրնայ աճուրդի հանուելով ծախուիլ՝ թէ և ես բիւր ընդդիմադրութիւններ ընեմ։

— Իրաւցընէ դու կարգէ դուրս նախա-
տես ես. աղէկ աղէկ, մէյմը որ սա ձեռքդ
ինկայ՝ ա՛լ ազատում չկայ՝ ինչուան որ ու-
զածդ չկատարեմ։

Ուստի նստաւ Սէն–Բլէր օրինական կեր-
պով շուտ մը Դորսին Օֆէլիային ընծայ ը-
նելու գիրը գրեց, և խոշոր գրերով ալ տակն
ստորագրութիւնը դրաւ։

— Ա՛ռ, ըսաւ Օֆէլիային, ահաւասիկ
ուզածդ կատարեցի։

— Դու շատ աղէկ մարդ ես, պատաս-
խանեց Օֆէլիա ծիծաղելով. բայց վկայի
մ՚ալ ստորագրութիւնը պէտք չէ՞։

— Իրաւ, ան ալ պէտք է եղեր, պատաս-
խանեց Սէն–Բլէր, ու իր կնոջը խցին դուռը
բանալով՝ Մարիամ, ըսաւ, տալդ քու ձե-
ռագիրդ կ՚ուզէ, եկուր սա թղթին տակը
ստորագրութիւնդ դիր։

— Ի՞նչ բան է, հարցուց Մարիամ՝ թուղ-
թը շուտ մը աչքէ անցընելով. սա ի՜նչ ծա-
ղրական մտածութիւն է։ Ես տալս կը կար-
ծէի որ բարեպաշտ ըլլալով՝ այսպիսի սար-
սափելի բանի ձեռք չի զարներ, կրկնեց ան-
տարբերութեամբ մը թղթին տակը ստորա-
գրելով։ Ի՛նչ և իցէ, վրայ բերաւ, թէ որ
հրամանքիդ սիրտը վառուեր է այդ ապրան-

քին վրայ, ես ալ ամէն սրտով քեզի վկայ կ'ըլլամ, ու ատոր վրայ ունենալիք մտածմունքէ ինքզինքս կ'ազատեմ։

— Հիմայ բոլորովին հոգւով ալ մարմնով ալ քուկդ է սա աղջիկը, ըսաւ ծիծաղելով Սէն-Քլէր, ու ստորագրուած թուղթը Օֆէլիային ձեռքը տուաւ։

— Մանաւանդ թէ հիմայ առջինէն աւելի իմս չէ, պատասխանեց Օֆէլիա։ Աստուած միայն իշխանութիւն ունի անիկայ ինծի շնորհելու. բայց հիմայ գոնէ կրնամ զանիկայ պաշտպանել։

— Գոնէ, վրայ բերաւ Սէն-Քլէր, սա աղջիկը օրինական կեղծեօք մը քուկդ եղաւ. ու նորէն տեղը դարձաւ և լրագիրը ձեռք առաւ։

Օֆէլիա ալ՝ որ չէր սիրեր ամենեւին Մարիամին ընկերութիւնը՝ Սէն-Քլէրին ետեւէն ինքն ալ Մարիամին խցէն դուրս ելաւ, ու դաշնադրութեան թուղթը ծալլելէն ու պահելէն վերջը՝ դարձաւ Սէն-Քլէրին քով, կէս հիւսուած գուլպան ձեռքն առաւ։

— Օգոստինոս, ըսաւ, գերիներուդ ապագայ վիճակին վրայ բան մը մտածե՞ր ես. կրնայ ըլլալ որ մահը վրայ հասնի։

— Չէ, պատասխանեց Սէն-Քլէր, կարդալն առաջ տանելով։

— Այն ատեն՝ քու ներողամտութիւնդ որով անոնց հետ կը վարուիս՝ կրնայ օր մը անգթութեան փոխուիլ։

Սէն-Բլէր ալ շատ անգամ նոյն բանը մտքէն անցուցեր էր, բայց անհոգ կերպով մը պատասխան տուաւ.

— Միտք ունիմ, այդ բաներն ալ կարգի մը դնելու մօտերս, թէ որ ատեն մը գըտնեմ։

— Ե՞րբ, հարցուց Օֆէլիա։

— Այս օրերս։

— Իսկ թէ որ յանկարծ կարգի չդրած մեռնելու ըլլաս։

— Ի՞նչ բաներ մտքէդ կ՚անցընես, պատասխանեց Սէն-Բլէր՝ լրագիրը վար դնելով ու Օֆէլիային երեսը նայելով։ Ի՞նչ է, վրաս մաղձացաւի կամ դալուկի նշա՞ն տեսար, որ այսչափ խնամքով մահուընէս վերջը հանդիպելիք բաներուն վրայ հոգ կ՚ունենաս։

— Ո՛ր և իցէ ատեն մահը կրնայ վրանիս հասնիլ։

Սէն-Բլէր ոտք ելաւ, լրագիրը թողուց և դռնէն դուրս ելաւ, որպէս զի այս իրեն չսիրած խօսակցութիւնը շատ չերկըննայ։ Ինքնիրեն կը կրկնէր անդադար մահ բառը, ու

պատշգամին դիմացի երկաթէ վանդակին կոթընած՝ աղբիւրին փրփրադէզ ջրերը կը դիտէր, որ դէպ ի վեր ցնցղկելով արծաթէ անձրեւի պէս վար կը թափէին, և այն փոշետեսակ կաթիլներուն մէջէն՝ ծառերը, ծաղիկներն և ծաղկանոցները բարակ մշուշով մը պատած կ'երեւային։ Իսկ ինքը մէկ կողմանէ կը կրկնէր մաքին մէջէն այս խորհրդաւոր և ամենուն բերան հասարակ եղած ահաւոր խօսքը՝ մահ։

— Ի՞նչ կարգէ դուրս բան է, կ'ըսէր ինքիրեն, որ այսպիսի բառ մը իրականութիւն՝ մ'ըլլալով հանդերձ՝ մենք կարենանք մոռնալ զայն. և մարդ մը՝ որ այսօր առողջութեամբ և խնդութեամբ ծաղկեալ է և ակընկալութիւններով և փափագանօք լի, մէկ օրուան մէջ կ'աներեւութանայ աշխարհիս վըրայէն, և կ'աներեւութանայ անդարձ յաւիտեան։

Տաք ու գեղեցիկ իրիկուն մ'էր. գաւթին մէկ անկիւնը նստած Թովմաս՝ Աւետարան կը կարդար, և մտածմն ալ ամէն մէկ արտաքերած բառին վրայէն կ'անցնէր։ Մէն-Քլէր ալ քովը գնաց նստաւ։

— Կ'ուզե՞ս, Թովմաս, որ ես կարդամ։

— Թէ որ հաճելու ըլլաս, պատասխա-

նեց Թովմաս, շատ շնորհակալ կ'ըլլամ․ վասն զի հրամանքդ որոշ կը կարդաս։

Սէն-Քլէր գիրքը ձեռքն առաւ ու բացուած երեսը մէյմը աչքէ անցուց, և Թովմասին հասած տեղէն սկսաւ կարդալ․

« Յորժամ եկեսցէ Որդի Մարդոյ փառօք
» իւրովք՝ և ամենայն հրեշտակք ընդ նմա,
» յայնժամ նստցի յաթոռ փառաց իւրոց։
» Եւ ժողովեսցին առաջի նորա ամենայն
» ազգք, և մեկնեսցէ զնոսա ի միմեանց,
» որպէս հովիւ զի մեկնիսցէ զօդիս յայ-
» ծեաց »։

Սէն-Քլէր ընթերցմունքն առաջ տարաւ մինչեւ այն տունը՝ ուր կ'ըսէ Տէրն մեր․

« Յայնժամ ասասցէ (Թագաւորն) և ցայ-
» նոսիկ՝ որ ընդ ահեկէն իցեն․ երթայք յի-
» նէն անիծեալք ի հուրն յաւիտենական,
» որ պատրաստեալ է սատանայի և հրեշ-
» տակաց նորա։ Զի քաղցեայ՝ և ոչ ետուք
» ինձ ուտել, ծարաւեցի՝ և ոչ արբուցիք
» զիս, օտար էի՝ և ոչ ժողովեցիք զիս, մերկ
» էի՝ և ոչ զգեցուցիք զիս, հիւանդ և ի
» բանտի՝ և ոչ տեսիք զիս։ Յայնժամ պա-
» տասխանի տացեն և նոքա՝ և ասասցեն․
» Տէր, ե՞րբ տեսաք զքեզ քաղցեալ կամ
» ծարաւի կամ օտար կամ մերկ կամ հի-

» ւանդ կամ ի բանտի, և ոչ պաշտեցաք
» զքեզ։ Ցայնժամ պատասխանի տացէ նո-
» ցա՝ և ասասցէ. ամէն ասեմ ձեզ, որով-
» հետև ոչ արարէք միում ի փոքրկանցս
» յայսցանէ՝ և ոչ ինձ արարէք»։

Այս վերջի տունս Մէն-Բլէրի վրայ կար-
գէ զուրս տպաւորութիւն մ'ըրաւ. Նորէն նո-
րէն կարդաց ու բառերը մէկիկ մէկիկ կշռե-
լով՝ զարձաւ։

— Թովմաս, ըսաւ, անոնք որ այսպիսի
խիստ դատաստան ընդունեցան ճիշտ ինծի
նման հեշտին, դիւրակեաց կեանք մ'ունե-
ցեր են, առանց հոգ մ'ընելու թէ իրենց
եղբարց մեծագոյն մասն անօթի կամ ծա-
րաւ կամ հիւանդ կամ բանտն են։

Թովմաս պատասխան չտուաւ։

Մէն-Բլէր ոտք ելաւ ու վեր վար սկսաւ
քալել, և այն ատրճան մտածութեանց մէջ
ընկղմած էր՝ որ երկու անգամ իմաց տուաւ
իրեն Թովմաս թէ թէյ խմելու զանգակը
զարնուեցաւ։

Թէյ խմելու ժամանակ ալ Մէն-Բլէրի
միտքը վրան չէր։ Թէյէն ետև լռիկ մնջիկ
Մարիամ, Օֆէլիա և ինքը հասարակաց ժո-
ղովելու խուցը գնացին։ Մարիամ բազմոցի
մը վրայ երկընցաւ, և մժղարդել մեասաքսեայ

քօղով պաշտպանուելով՝ շուտ մը խոր քուն մտաւ։ Օֆէլիա լուռ իրեն զուրպան կը հիւսէր. իսկ Մէն-Բլէր ալ դաշնակին դէմն անցած՝ սկսաւ անուշ ու տխուր եղանակներ նուագել, ընկերելով միանգամայն եւողեան ըսուած քնարն ալ։ Խորունկ մտածութեանց մէջ ընկղմած կ՚երեւար, և կարծես թէ երաժշտութեամբ ինքնիրեն հետ կը խօսակցէր։ Վրան շատ չանցաւ՝ ելաւ պզտի պահարան մը բացաւ և մէջէն երաժշտութեան հին տետրակ մը դուրս քաշեց, որուն թղթերն հնութենէն դեղներ էին, և սկսաւ թղթատել։

— Ասիկայ, ըսաւ Օֆէլիային, իմ մօրս երաժշտութեան տետրակներէն մէկն էր, նայէ ասիկայ ինքն իր ձեռքով գրած է և Մոձարդի[1] Հանգիստ յաւիտենական ըսուած երաժշտութենէն առած կարգի գրած է։

Օֆէլիա ոտք ելաւ նայելու։

— Շատ անգամ կ՚երգէր այս եղանակս,

1. Մոձարդ Mozart գերմանացի երեւելի երգահանը ծնած է Սալցպուրկ քաղաքը 1756ին. վեց տարուընէ սկսեալ ինքզինքն երաժշտութեան արուեստին տուաւ։ Իրեն գործոց մէջ անուանի է Հանգիստ յաւիտենական ըսուած ննջեցելոց պատարագին եղանակը. զոր շարադրելու ատեն՝ իրեն այնպէս եկեր է՝ իբր թէ իրեն համար կը շինէ։ Այս երեւակայութեան տաքութենէն, կ՚ըսեն թէ մեռած ըլլայ, 1791ին, 35 տարուան. շինած երգն առջի անգամ իրեն համար երգեցուեցաւ։

շարունակեց Սէն-Բըլէր, կարծես թէ դեռ ձայնին ականջիս մէջ կը խօսի։

Սէն-Բըլէր դաշնակին դիմացն անցաւ նորէն, և քանի մը վսեմ նախերգանքներէն ետեւ՝ սկսաւ Լատինաց Օր բարկութեան և օրն այն ըսուած հին ու գեղեցիկ տաղն երգել ու զալնել։

Թոլմաս՝ որ դրսէն մտիկ կ'ընէր, կամաց կամաց խցկին դրան մօտեցաւ, ու սաստիկ զգածուած՝ ուշ կը դնէր։ Թէպէտ բառերը չէր հասկընար, բայց Սէն-Բըլէրի երգելէն և երաժշտութեան ձայնէն սիրտը շատ շարժեցաւ, մանաւանդ ամենէն ազդու կտորներուն։ Ա՛լ աւելի կ'ելլէր Թոլմասին սիրտը՝ թէ որ կարող ըլլար այս գեղեցիկ խօսքերուն իմաստն ալ հասկընալ.

Գորովագոյն յիշեա, Յիսուս,
Զիս որ կենաց քոց եմ առիթ.
Մի՛ յայնմ աւուր յաւլաց թողուս։
Խոնջ ի խնդիր իմ անդ նըստար,
Եւ փրկեցեր մահու խաչիւ,
Մի՛ լիցի ջանն քո վայրապար։

Սէն-Բըլէր այս տողերը խորին ու սրտաշարժ զգացմամբ մը կ'երգէր. կարծես թէ

անցած տարիներուն ստուերը փարատեր էր, ականջին այնպէս կու գար թէ մօրը ձայնը կը լսէ որ իրեն ձայնին կ'առաջնորդէր։ Սէն-Քլէրի ձայնն ու դաշնակը իրարու հետ այնպէս աղէկ յարմարեր էին՝ որ կարծես թէ Մոձարդի երգին իր վրայ պատճառած զգացմունքը նորոգուեր էին։

Սէն-Քլէր երգը լմնցընելէն ետեւ՝ գլուխը ձեռքին դրած՝ խել մ'ատեն իր նստած տեղը անշարժ մնաց. վերջէն ոտք ելաւ և սկսաւ խուցին մէջ վեր վար քալել։

— Ի՜նչ վսեմ մտածութիւն մ'է, ըսաւ, վերջին դատաստանը. բոլոր դարերուն պակասութեանց հատուցումն մ'է, ուր անսխալ իմաստութեամբ բարոյական ամէն խնդրոց և առաջարկութեանց լուծումն պիտի տրուի։ Եւ յիրաւի, ի՜նչ վսեմ ու զարմանալի տեսարան է...։

— Մեզի նմաններուն միանգամայն սարսափելի ու ահաւոր տեսարան մ'է, ըսաւ Օֆէլիա։

— Ինծի համար ալ այնպէս պիտի ըլլայ կարծեմ, ըսաւ Սէն-Քլէր, մտածութեամբ մը կանգ առնելով. քիչ մ'առաջ Մաթէի մէկ գլուխը կարդացի Թովմասին, որուն մէջ վերջին դատաստանին ստորագրութիւնը կ'ը-

նէր, վախն ու սարսափը վրաս պատեց։ Մարդ կը կարծէ թէ երկնքէն դուրս մնա-լու համար՝ մեծամեծ մեղքեր ունենալու է. բաւական է թէ մէկուն բարիք ըրած չըլլայ, այս ալ շատ է զինքը դատապարտելու. վասն զի բարիք չընելով՝ ամէն մեղաց պարտա-կան կ՚ըլլայ։

— Գուցէ կարելի չ՚ըլլայ՛, ըսաւ Օֆէլիա, որ մէկը թէ որ բարիք չընէր՝ չարիք ալ չգործէ։

— Իսկ անիկայ, պատասխանեց Սէն-Քլէր այլայլած, ինչ պիտի ընէ ան ատեն՝ որ իրեն սիրտը, առած կրթութիւնը, ընկե-րութեան պահանջքը զինքը ազնուական գոր-ծոց հրաւիրեր են, և ինքն անհոգ և ան-փոյթ կեցեր դիտեր է իր եղբարց վիշտն ու տառապանքը, կրած անիրաւութիւններն ու զրկանքները, և ձեռքէն եկած օգնութիւնը չէ ըրած։

— Ինծի հարցընելու ըլլար այդ մարդը, ըսաւ Օֆէլիա, իրեն խորհուրդ կու տայի որ մէկէն զղջար ու մէկէն ձեռք զարնէր բարիք ընելու։

— Դու ալ գործ կ՚ըսես ու կ՚երթաս, ըսաւ Սէն-Քլէր ժպտելով. ինծի ամենևին մտածելու ժամանակ չես թողուր, և միշտ

զիս ներկայիս վրայ կը բռնես, և քու հիմադ ըմբռնալիք չունի։

— Ներկայն միայն ձեռքս է, պատասխանեց Օֆէլիա։

— Սիրեցեալդ իմ, խեղճ Վարդուկ, ըսաւ Սէն-Քլէր, միաքը դրեր էր որ իր պզտի և պարզուկ սրտով՝ զիս լաւագոյնի պիտի կարենայ փոխել։

Վարդուհին մեռնելէն վերջը՝ այս առաջին անգամն էր որ Սէն-Քլէր վրան կը խօսէր, և կը ջանար սրտին այլայլութիւնը բռնել։

— Ես այսպէս կ'ըմբռնեմ քրիստոնէութիւնը, վրայ բերաւ, թէ մարդ մը չի կրնար ամենևին կատարեալ քրիստոնեայ ըլլալ՝ առանց դէմ դնելու իր բոլոր զօրութեամբ՝ մեր ընկերութեան հիմն դրուած հրէշաւոր անիրաւ դրութեան, թէ՛ և ընկճուելու ալ հարկ ըլլայ։ Ինծի կ'երևայ թէ ուրիշ կերպով չեմ կրնար քրիստոնեայ ըլլալ, թէպէտ և շատ լուսաւորեալ քրիստոնեաներ տեսեր եմ որ այսպէս չեն մտածեր։ Աս ալ կը խոստովանիմ որ կրօնասէր կարծուած ոմանց անտարբերութիւնն այս նիւթիս վրայ, այնչափ անիրաւութեանց անզգայ ըլլալնին, որոնք զիս կը սարսափեցընեն, այնչափ ը-

րին՝ որ զիս ալ գրեթէ սկեպտիկեան մը դարձուցին[1]։

— Երբոր այս ամէն բանը գիտես, ըսաւ Օֆէլիա, ինչո՞ւ դու ի գործ չես դներ։

— ՈՀ, վասն զի բոլոր իմ բարիք ուզելս ուրիշ բան չէր՝ բայց եթէ բազմոցի մը վրայ երկըննալ ու բովանդակ կրօնականներն անիծել, ըսելով թէ ինչու իրենք զիրենք չեն զոհեր այս բանիս համար։ Դիւրին է տեսնել՝ ինչպէս դու ալ գիտես՝ թէ ուրիշներն ինչպէս կը զոհեն իրենք զիրենք։

— Շա՛տ աղէկ, ուրեմն անկէ ետև կերպըդ փոխէ։

— Ապագան Աստուած միայն գիտէ, ըսաւ Սէն-Քլէր. հիմայ առաջինէն աւելի արիասիրտ եմ, վասն զի ամէն բան կորսընցուցի. և անիկայ որ ա՛լ կորսընցընելու բան չունի՝ ամէն վտանգի կրնայ դիմագրաւել։

— Ի՞նչ պիտի ընես ուրեմն։

— Իմ պարտքս պիտի կատարեմ որ առ աղքատս և առ տառապեալս, և նախ իմ գերիներէս պիտի սկսիմ, որոնց համար մինչև այս օրս բան մ՚ալ չեմ ըրած։ Գուցէ օր

1. Սկեպտիկեան կ՚ըսուին այն աղանդաւորներն՝ որ ամէն բանի կը տարակուսին, և էապէս ու դրականապէս ճշմարտութիւն չկայ կ՚ըսեն։

մ'ալ բոլոր իրենց ազգին բարիք մը հասցընեմ. և ազատեմ Հայրենիքս այս ատելի և նուաստացուցիչ վիճակէն, որ քաղաքակիրթ ազգաց առջև մեծ ամօթ մ'է մեզի։

— Ի՞նչ կը կարծես, բոլոր ազգը յանձն կ'առնո՞ւ գերեաց ազատութիւն տալ, հարցուց Օֆէլիա։

— Չեմ գիտեր, ըսաւ Սէն-Բլէր. ազնուամտութիւնն ու անշահասիրութիւնն աշխարհիս վրայ տեղ տեղ կ'երևան։ Այժմեան դարս՝ մեծամեծ շարժմանց դար է. Հունգարացի ազնուապետները դրամական մեծամեծ զոհերով բիւրաւոր ստրուկներ ազատեցին։ Գուցէ մեր մէջ ալ գտնուին այնպիսի ազնուամիտ մարդիկ՝ որ պատիւն ու արդարութիւնը տոլլարէն վեր պատեն։

— Հաւատալս չի գար, պատասխանեց Օֆէլիա։

— Բայց գիտենք թէ վաղը այս բոլոր գերիներուն ազատութիւն տանք, ո՞ւր է որ այսչափ բիւրաւոր մարդկանց կրթութիւն տալ յանձն առնու, և սովրեցընէ անոնց ազատութիւննին վայելելու։ Մեզմէ ոչ ոք այդ աշխատութիւնն յանձն կ'առնու. մենք ծոյլ ենք, անփոյթ ենք, և չենք կրնար տալ անոնց գործունէութեան և աշխատասիրութեան

այն բարձր գաղափարը, որ իրենց հարկաւոր է մարդկանց կարդն անցնելու համար։ Պէտք է որ հիւսիսային գաւառներն անցնին, ուր աշխատութիւնը նորելուկ սովորութիւն մ'է, և լսենք նաև ընդհանուր. արդ՝ ըսէ ինծի տեսնեմ, հիւսիսային գաւառներուն մէջ բաւական քրիստոնէական մարդասիրութիւն կա՞յ, որ այս դաստիարակութեան և բարոյական կրթութեան յանձնառուներ ալ գըտնուին։ Հազարաւոր տոլլար կը ղրկէք քարոզութեան պնացողներուն, բայց յանձն կ'առնո՞ւք որ այս հեթանոսները գան ձեր քաղաքներն ու գեղերը բնակին։ Կը զոհէ՞ք ձեր ժամանակը, ձեր միտքը, ձեր ստացուածքը զասոնք ի պատիւ քրիստոնէութեան ամբառնալու։ Ես այս կ'ուզեմ գիտնալ։ Թէ որ մենք ազատութիւն տանք, դուք ալ կրթութիւն կու տա՞ք։ Քանի՛ ընտանիք կրնան գտնուիլ ձեր երկիրը՝ որ յանձն առնուն սեւ մարդ մը և սեւ կին մը տուներնին ընդունելու, կրթելու, անոնցմէ չզզուելու և ամէն ջանք ընելու որ քրիստոնեայ ըլլան։ Ո՞ր վաճառականը սա Ատալփոսը քովը կ'առնու, թէ որ ես ուզեմ տալու, և կամ ո՞ր արուեստաւորը՝ թէ որ ես ուզեմ որ արուեստ մը սորվի։ Թէ որ

ես ուզէի՝ Յովհաննան ու Սրբուհին դպրոց ղրկել, ձեր երկիրը կա՞ն այնպիսի դպրոցներ որ ուզեն զանոնք ընդունիլ։ Ո՞ր ընտանիքը կ'ուզէ զանոնք քովը պահել և կերակրել։ Եւ սակայն ասոնք՝ թէ՛ հիւսիսային և թէ՛ հարաւային կանանցմէ շատերէն աւելի ճերմակ են։ Կը տեսնե՞ս, սիրելի, ես կը փափաքիմ որ մեզի ալ քիչ մ'իրաւունք տաք. գէշ դիրքի մը մէջ ենք։ Սեւերուն յայտնի հարստահարող մենք միայն կը զատուինք. բայց հիւսիսայնոց ալ քրիստոնէի անվայել նախապաշարմունքներն ալ ոչինչ նուազ անգութ հարստահարութիւններ են։

— Ես ալ գիտեմ, ըսաւ Օֆէլիա, վասն զի ես ալ նոյն նախապաշարմունքն ունեցեր եմ, ինչուան որ ճանչցայ անոնց յաղթելու պարտականութիւնս։ Եւ հիմայ վստահութեամբ կրնամ ըսել թէ յաղթեցի, փառք Աստուծոյ, և կարծեմ թէ հիւսիսականաց մէջ ալ շատերը կը գտնուին որ ուրիշ բանի կարօտութիւն չունին՝ բայց եթէ իրենց պարտքը ճանչնալու, որպէս զի իրենք ալ կարող ըլլան ի գործ դնելու։ Եւ յիրաւի, աւելի մեծ զոհ է հեթանոսները մեր քովն առնուլ՝ քան թէ անոնց քա-

բոզկիչներ. ղրկել. բայց ես կարծեմ թէ մենք ասոր ալ յարմար ենք։

— Դուն իրաւցընէ յարմար ես, ըսաւ Սէն-Քլէր. դու ո՞ր բանը պարապ ըլլալն ըմբռներ ես ու չես կատարած. ես կ՚ուզէի գիտնալ թէ ո՛ր բանը պարապ է ըսեր ու չես կատարած։

— Ես ուրիշներէն լաւագոյն չեմ, պատասխանեց Օֆէլիա. ուրիշներն ալ նոյնպէս կ՚ընեն՝ թէ որ իրենք ալ ինծի պէս բանին էութիւնը հասկընան։ Միտք ունիմ Դոփսին ալ հետս Նոր-Անգլիա տանելու. գուցէ առջի բերան զարմանան, բայց վերջը վերջը իրենք ալ իմ կարծիքէս կ՚ըլլան։ Գիտեմ ալ որ հիւսիսականաց մէջ կը գտնուին մարդիկ, որոնք ըսածիդ պէս գերիներուն ընդունելութիւն կու տան։

— Այո, բայց քիչ են այդպիսիները. և թէ որ մենք մէյմը սկսինք մեր գերիները խումբ խումբ ազատել, ան ատեն կը տեսնէք՝ թէ ինչ նեղութիւն կը քաշէք։

Օֆէլիա պատասխան չտուաւ, ու քիչ մը ժամանակ լռութիւն եղաւ, և Սէն-Քլէրի կերպարանաց վրայ տխրութիւն մը պատեց։

— Չեմ գիտեր ինչէ՞ն է արդեօք՝ որ այս իրիկուն կարգէ դուրս կերպով խելքս

միտքս մօրս վրայ կ'երթայ, ըսաւ. շատ զարմանալի զգացմունք մ'եկեր է վրաս. կարծեմ թէ մայրս քովս մօտ է. ինչ որ ատեն մը ինծի կ'ըսէր, հիմայ բոլոր միտքս ինկեր են։ Երբեմն անցեալը կենդանի գոյներով մեր մտաց դէմը կ'ելլէ։

Քիչ մ'ատեն ալ խուցին մէջ վեր վար քալելէն ետեւ, ըսաւ.

Երթամ նայիմ, այս իրիկուն ինչ նոր լուր կայ։

Եւ գլխարկն առաւ ու տնէն դուրս ելաւ։

Թովմաս ինչուան փողոցին դուռը ետեւէն գնաց, և հարցուց թէ կ'ուզէ՞ արդեօք որ ինքն ալ հետը մէկտեղ գայ։

— Չէ, պատասխանեց Սէն-Քլէր, ատկէ ժամէ մը կը դառնամ։

Աղուոր իրիկուն մ'էր. լուսինն երկնից երեսը կը փայլէր։ Թովմաս գաւթին մէկ անկիւնը նստած՝ աղբիւրին ջրոյն ցայտիլն ու վար թափիլը կը դիտէր և խոխոջալու անուշ ձայնէն կը զմայլէր։ Իր տնակը կը մտածէր ու իրեն շուտով ազատիլն ու ընտանիքը գտնելը կ'երազէր. մտքէն կնիկն ու տղաքը գնելու հաշիւներ կ'ընէր, և ուրախութեամբ զօրաւոր բազուկները կը շօշափէր, որոնք քիչ ատենէն իրենը պիտի

ըղձային, և անոնցմով կարող պիտի ըղձար կինն ու տղաքը գնել։ Նոյն ատեն իր ազնուամիտ տէրը միտքն ինկաւ, և սկսաւ իր սովորական աղօթքն ընել անոր համար. ետքէն գեղեցիկ Վարդիկը միտքն ինկաւ, որ հրեշտակաց կարգն անցեր էր. և որչափ վրան կը մտածէր՝ իրեն այնպէս կու գար թէ անոր գեղեցիկ դէմքը, ոսկեթել գանգուրները աղբիւրին ջրոյն փոշետեսակ կաթիլներէն ձևացած մշուշին մէջէն կը տեսնէ։ Այսպիսի զմայլմամբ քունը տարաւ, և երազ տեսաւ որ Վարդիկ գլուխն յասմիկէ պսակով զարդարած, թուշերը վարդագոյն վառուած ու աչուըներէն զուարթութիւն ու խնդութիւն փայլելով՝ դէպ իրեն կու գար վազելով՝ ըստ իր սովորութեան. և որչափ որ անոր կը նայէր, իրեն այնպէս կ'երեւար թէ անիկայ երկրէս երկինք կը վերանայ. թուշերն այլագունեցան, աչուըները խորին ու երկնային խաղաղութիւն մը կը ցոլացընէին և լուսաւոր ոսկեղէն պսակ մը գլուխը՝ աներևոյթ եղաւ։ Փողոցի վրան կրկին և կրկին զարնուածքէն և բազմութեան ձայնէն արթընցաւ Թովմաս և վազեց բացաւ դուռը։

Շատ մը մարդիկ՝ կամաց կամաց խօսելով և ծանր քալելով՝ ներս մտան, պատգարակով վերարկուի մէջ պլլուած մարդ մը կը բերէին։ Լապտերին լոյսը վիրաւորեալին երեսը զարկաւ, և Թովմաս զարմանաց և յուսահատութեան այնպիսի աղաղակ մը վերուց, որ բոլոր տունը թունդ ելաւ. իսկ պատգարակը շալկողները դէպ ի Հասարակաց խուցին դուռը գնացին ու ներս մըտան, ուր Օֆէլիա նստեր դեռ գուրպայ կը հիւսէր։

Սէն-Քլէր երեկոյեան լրագիրներ կարդալու համար՝ խահուէի խանութ մը մտեր էր։ Կարդալու ատեն՝ երկու հոգի կէս գինով՝ սկսան հոն կռուիլ։ Սէն-Քլէր և հետն ալ մէկ երկու հոգի մէջ մտան ու կը ջանային այս երկուքն իրարմէ բաժնել. և մինչդեռ ինքն անոնցմէ մէկուն ձեռքէն որսի դանակը քաշեմ առնում կ'ըսէր, կշտին մահացու հարուած մ'ընդունեցաւ։

Մէկէն տունը ողբով, լացով և գոռում գոչումով տակն ու վրայ եղաւ. գերիները մազերնին կը փետտէին, գետնին վրայ կը տապլտըկէին. և իրենք զիրենք կորսընցուցած՝ վեր վար կ'երթային կու գային, աղաղակ փրցընելով։ Թովմաս ու Օֆէլիա

միայն իրենք զիրենք ամուր բռնած կ'երեւային, վասն զի Մարիամ ալ չղին ցաւը բռնած՝ անկողնոյն մէջ կը տանջուէր։ Շուտ մը Օֆէլիա բազմոցներէն մէկը առաջ քաշեց տարաւ, որուն վրայ Սէն-Քլէրին արիւնաթաթաւ մարմինը դրին։ Ցաւէն ու արեան սաստիկ պակսելէն՝ Սէն-Քլէր ինքզինքը կորսնցուցեր ու մարեր էր. բայց Օֆէլիա դեղ տալով՝ զգայութիւնը վրան եկաւ, աչուըները բացաւ ու մարած նայուածքով մը խցին չորս կողմը պտըտցուց, և պատին վրայ կախած մօրը պատկերը տեսնելով՝ աչքն անոր վրայ մնաց։

Բժիշկը վրայ հասաւ, վէրքը զննեց նայեցաւ. և դէմքին վրայ ցուցած այլայլութենէն յայտնի իմացուեցաւ որ ալ յոյս չկայ. այսու ամենայնիւ Թովմասին ու Օֆէլիայի օգնութեամբ սպեղանիք մը դրաւ վէրքին վրայ, իսկ գերիներն անդին յուսահատական աղաղակներով ու լացով ամբողջ օդը կը թնդացընէին։

— Հիմայ, ըսաւ բժիշկը, պէտք է որ ամէնքը դուրս ելլեն, վասն զի հիւանդին վիճակը հանդիստ լռութիւն ու խաղաղութիւն կ'ուզէ։

Սէն-Քլէր աչուըները բացաւ ու այս խեղճ լքելոց վրայ նայեցաւ, զորոնք Օֆէլիան և բժիշկը դուրս հանել կը ջանային: — Խեղճ մարդիկ, ըսաւ քթին տակէն. և երեսին վրայ դառնագին սոգատանաց ցաւ մ'երեւցաւ: Ադոլփոս չէր ուզեր անկէ հեռանալ. սրտին ցաւէն բոլոր զգայութիւնը կորսընցուցած՝ գետինն ընկեր փռուեր էր և չէր ուզեր ելլել. մէկալներն համոզեց Օֆէլիա թէ իրենց տիրոջ առողջութիւնն՝ իրենց հանդարտութենէն ու հնազանդութենէն կը կախուի. ուստի հնազանդեցան դուրս ելան:

Սէն-Քլէր հազիւ կրնար բառ մ'արտաբերել. երկընցած պառկեր էր, աչուըները գոց, բայց հարկաւ միտքը դառն խորհուրդներու մէջ կը ծփար: Քիչ մ'ետքը ձեռքը Թոմմասին ձեռքին վրայ դրաւ, որ քովը ծնրադիր կեցեր էր, և ըսաւ իրեն.

— Խեղճ Թոմմաս:

— Ի՞նչ կ'ուզես, տէր իմ, հարցուց Թոմմաս:

— Ահա կը մեռնիմ, ըսաւ Սէն-Քլէր անոր ձեռքը սեղմելով. աղօթք ըրէ ինծի համար:

Թուլմաս՝ բոլոր սրտանց և արտասուալից աչօք՝ աղօթք ըրաւ այն խեղճ հոգւոյն համար որ մարմինէն բաժնուելու հետ էր, այն հոգւոյն համար՝ որ կարծես թէ անքըթիթ և ցաւագին՝ այն կապոյտ ու տխուր աչուըներուն մէջէն զինքը կը դիտէր։

Երբոր Թուլմաս աղօթքը լմընցուց, Մէն-Քըլէր նշան տուաւ որ վեր ելլէ, ու ձեռքէն բռնած՝ կաթոգին աչօք երեսը կը նայէր, առանց բառ մ՚ըսելու։ Աչուըները գոցեց, բայց Թուլմասին ձեռքը չթողուց. վասն զի յաւիտենականութեան վրան քով սեւ ձեռքն ալ ու ճերմակ ձեռքն ալ հաւասար սիրով մէկզմէկ կը սեղմեն։ Ընդհատ ընդհատ ինքնիրեն կը հեկեկար.

Գորովագութ յիշեա, Յիսուս...
Մի՛ յայնմ աւուր յաչաց թողուս։

Յայտնի է՝ որ նոյն իրիկուան երգած երգին բառերը միտքը կու գային, որ առ անհուն Գթութիւնն ուղղեալ են։ Երբեմն երբեմն շրթունքները կը շարժէին ու այն սրբազան երգին բառերը կը կրկնէին։

— Ինքզինքն ա՛լ կորսընցուցեր է, ըսաւ բժիշկը։

— Ձէ՛, վերջապէս ճամբաս գտայ, ըսաւ Սէն-Քլէր՝ ինքն իրեն ուժ մը տալով... վերջապէս... վերջապէս։

Այս տուած ուժէն՝ բոլորովին նուաղեցաւ. մահուան դալուկն երեսին վրայ պատեց. բայց անոր հետ մէկտեղ կարծես թէ աներեւոյթ ոգի մը թեւերը բացած՝ անուշ խաղաղութիւն մը սփռեց անոր տժգոյն դէմքին վրայ։

Քանի մը վայրկեան այսպէս մնաց. յայտնի կը տեսնուէր որ Աստուծոյ ամենակարող ձեռքը վրան էր. և այն պահուն՝ երբ հոգին ալ արձակուելու վրայ էր՝ աչուըները բացաւ, որոնք յանկարծ խնդութեամբ վառեցան, իբրեւ թէ իր սիրելիներէն մէկը կ՚երեւար իրեն։

— Մա՛յր իմ, մա՛յր իմ, գոչեց, և հոգին աւանդեց։

# ԳԼՈՒԽ ԻԹ.

## Երեւակ ձգուածները։

Շատ անգամ խօսելու նիւթ եղած է թէ գերիներն ինչ մեծ ցաւ կը քաշեն՝ երբոր իրենց բարեսիրտ տէրը կորսնցընելու ըլլան։ Եւ շատ իրաւացի է այս իրենց ցաւը. վասն զի աշխարհիս վրայ արարած մը չկայ որ այնպէս երեսէ ձգուած ու թշուառ ըլլայ՝ ինչպէս այդպիսի վիճակի մը մէջ գտնուող գերի մը։

Տղան թէ որ իր հայրը կորսնցընէ՝ բարեկամներ ունի, օրէնք կայ՝ որ իրեն կռնակ կը կենան, բանի մը տեղ կը դրուի, ձեռքէն բան մը կու գայ, օրինաւոր վիճակ մ'ունի, աշխարհածանօթ իրաւունքներ ունի. իսկ գերին՝ ասոնցմէ մէկն ալ չունի, օրինաց ամէն պաշտպանութիւններէն զուրկ է. և իբրեւ ապրանք կը համարուի օրինաց առջեւ։ Բայց որովհետեւ իբրեւ մարդկեղէն արարած՝ ինքն ալ իրեն փափագներն ու պիտոյքներն ունի, առանց կատարելու իրաւունքը տիրոջը բացարձակ իշխանութե-

նէն և անպատասխանատու հաճոյքէն կը կախուի. և երբոր այս սէրն իրմէ վերանայ՝ գերիին քով ա՛լ բան չի մնար։

Քիչ մարդ կը գտնուի որ այս իրենց անպատասխանատու իշխանութիւնը գիտնան վայելուչ և մարդասէր կերպով բանեցընել։ Այս բանս ամէնքը կը ճանչնան, մանաւանդ գերին՝ ամենէն աւելի գիտէ. և համոզուած է որ տասը հատ այլևայլ տէրերու ձեռք իյնալով՝ ինն անիրաւ և բռնաւոր կը գտնէ, և հազիւ թէ մէկը արդար և բարի. ասոր համար է՝ որ եթէ բարի տէր մը կորսնցընելու ըլլան՝ իրենց ցաւն ալ այնպէս երկար ու անմխիթար կ՚ըլլայ։

Երբոր Սէն-Քլէր իր վերջին շունչը տըւաւ՝ ցաւն ու յուսահատութիւնը տիրեց իրեն գերեաց վրայ։ Մահուան սուր մանգաղը յանկարծ կտրեց իր կենաց թելը՝ առողջութեան և ծաղիկ հասակին մէջ. բոլոր տունը լացով և ողբով լեցուեցաւ։

Մարիամ՝ որուն ջղային կազմուածքը տկարացեր էր վրան եղած այնչափ խնամքէն, ա՛լ վրան զօրութիւն չէր մնացեր այս վերջին հարուածիս ալ տանելու. և երբ իր ամուսինը վերջին շունչը կու տար, ինքը մարմրուքներու մէջ ինկեր էր, որով չկըր-

ցաւ յաւիտենական բաժանման ետքի բարեւն ընդունելու անկէ, որուն հետ ամուսնութեան սրբազան կապով միացեր էր։

Օֆէլիա իրեն եզական սրտապնդութեամբ և անխռով հանդարտութեամբ՝ ինչուան վերջին վայրկեանը հօրեղբօրորդւոյն քով էր, մտադիր և փութաջան՝ ամէն ձեռքէն եկած օգնութիւնը կ'ընէր անոր. մէկ կողմանէ ալ բոլոր սրտով խեղճ Թովմասին սրտաշարժ և եռանդուն աղօթիցը ձայնակից կ'ըլլար, որ մահուան դուռը հասած տիրոջը հոգւոյն համար դէպ երկինք կը վերառաքէր։

Երբոր անոր եղծանելի մարմնոյն վերջին հանգստեան պաշտօնը կը կատարէին, կուրծքին վրայ պզտի մետալ մը գտան, որ զսպանակով գոցուած էր. այս մետալին մէկ կողմը մանրանկար գեղեցիկ և ազնուական կնկան դէմք մը քաշուած էր, հակառակ կողմն ալ ապակիի տակ սեւ մազի փունջ մը։ Նորէն այն մետալն իրեն անկենդան կուրծքին վրայ դրին, հողն՝ հողին վրայ, և յիրաւի հող և մոխիր մնացորդ այն երիտասարդական ցնորքներուն, որ ատենօք այնչափ կրակներ վառեր էին այն սրտին մէջ՝ որ հիմայ սառեր է։

Թովմաս բոլոր մտքով յարաբերականութեան մէջ ընկղմեր էր․ այն անշնչացեալ կաւոյն իր վերջին պարագն հատուցանելու ժամանակ՝ և ոչ իսկ միտքէն անցաւ թէ այս անակնկալ հարուածովս որպիսի յուսահատ գերութեան մը մէջ ինկեր էր։ Մէնքլէրի փրկութեան վրայ տարակոյս մը չունէր, վասն զի այն ահաւոր ժամուն՝ յուրում երկնաւոր Հօր ծոցը իր աղօթքը կը թափէր, հոգւոյն՝ խաղաղութեան պատասխան մը ընդուներ էր։ Իւրեն սիրալիր բնութեան խորերը կրցեր էր աստուածային սիրոյն լիութենէն կայծ մը վառ պահել․ վասն զի հին պատգամն ալ կ՚ըսէ․ Որ կայ ի սէրն՝ բնակեալ է յԱստուած, և Աստուած ի նմա բնակէ։ Թովմաս ալ կը յուսար յԱստուած և անոր կ՚ապաւինէր, որով և խաղաղութեան մէջ էր։

Ցուղարկաւորութիւնը կատարուեցաւ սովորական արարողութեամբք, սգոյ հագուստներով, աղօթիւք և ցաւակցութեան այցելութիւններով․ ետքէն օրական կենաց ցուրտ ու պղտոր ալիքները դարձեալ իրենց սովորական ընթացքն առին, և շատ մը մէջտեղ ինկաւ անվերջանալի և դառն հարցմունքը․ Հիմայ ի՞նչ պիտի ընենք։

Այս հարցմունքս Մարիամին միտքն ինկաւ, որ առաւօտեան հագուստով՝ երկայն բազմոցի մը վրայ նստած և չորս դին գերիները մտադիր կեցած, սգոյ հանդերձից համար զանազան դիպակներու օրինակները կը զննէր։ Նոյնպէս Օֆէլիային ալ միտքն ինկաւ այս հարցմունքս, որուն մտածութիւններն սկսեր էին դէպ իրեն հիւսիսային հայրենիքը դառնալ։ Տան բոլոր գերիներուն ալ միտքն ինկաւ այս հարցմունքս, և գերեզմանական սարսափ մը պատեց զիրենք. վասն զի աղէկ գիտէին իրենց տիրուհւոյն անգութ և բռնաւորական բնաւորութիւնը, որուն ձեռքը մնացեր էին։ Շատ լաւ գիտէին որ իրենց վրայ եղած ներողամտութիւնը տիրոջմէն էր և ոչ թէ խաթունէն, և ասկէ ետև մէկը չկար որ զիրենք պաշտպանէ անոր բռնաւորական վարմունքէն, որ սրտին ցաւէն ա՛լ աւելի դաժանացեր էր։

Յուղարկաւորութեան վրայ տասնըհինգ օր մ'անցեր էր. Օֆէլիա խուցն աշխատելու ատեն լսեց որ մէկը կամացուկ մը դուռը կը զարնէր. ելաւ բացաւ և տեսաւ որ Սրբուհին էր, այն մանկահասակ և վայելչադէմ խառնածինը, որուն վրայ ու-

րիշ անգամներ ալ խօսք եղեր է. մազերը
խառնափնդոր, աչուըները լալէն ուռած։

— Ո՛հ, Օֆէլիա խաթուն, ըսաւ, ու
ոտքն ինկաւ և փէշերուն պլլուեցաւ, կ'ա-
ղաչեմ, կը պաղատիմ, գնա խաթունիս ին-
ծի համար միջնորդ եղիր։ Չիս կ'ուզէ ծեծ
ուտելու ղրկել. առ նայէ, ըսաւ՝ ու Օֆէ-
լիային ձեռքը թուղթ մը տուաւ։

Այս թուղթը Մարիամ իր ձեռքով գրեր
էր, որով հրաման կու տար Ուղղութեան
Դպրոցի (Calabourg) մը կառավարին որ
այն տոմսակը բերողին խարազանի տաս-
նըհինգ հարուած տայ։

— Ի՞նչ ըրեր ես, հարցուց Օֆէլիա։

— Գիտես, Օֆէլիա խաթուն, իմ գէշ
բնաւորութիւնս, որ ինծի շատ անգամ թը-
շուառութեան պատճառ եղեր է։ Երբոր
խաթունիս նոր հագուստ մը կը փորձէի՝
ինծի ապտակ մը զարկաւ. ես ալ առանց
մտածելու՝ իրեն դէմ պատասխան տուի,
չափս չգիտցայ. ան ատեն ինքն ալ ինծի
«կեցիր, ըսաւ, ես խելքդ քու գլուխդ կը
բերեմ, յանդուգն պատասխան տալն ինչ
ըսել է՝ կը հասկընաս»։ Եւ նստաւ այս
տոմսակը գրեց ու ինծի տուաւ որ ում
որ ուղղեալ է՝ անոր տանիմ։ Ո՛հ, աւելի

կ'ընարէի որ հոն ինքը իր ձեռքով զիս զարնէր սպաննէր։

Օֆլիա Թուղթը ձեռքը սկսաւ մտածել։

— Իմ վախս այն չէ, ըսաւ Սրբուհի, որ ծեծ պիտի ուտեմ. թէ որ խաթունս կամ հրամանքդ զարնելու ըլլայիր՝ հոգս չէր ըլլար. բայց գեաւին կ'անցնիմ ամօթէս՝ երբոր կը մտածեմ թէ էրիկ մարդ մը զիս պիտի ծեծէ, և այնպիսի ոոսկալի մարդ մը։

Օֆէլիա լաւ գիտէր որ այն երկրին ընդհանուր սովորութիւնն էր կնիկներն ու աղջիկներն Ուղղութեան Տունը ղրկել, և ամենէն ցած մարդկանց ձեռքը տալ զանոնք. ցած կ'ըսեմ այսպիսի արուեստ մը բանեցընելնուն համար, որոնք մերկացընելով զանոնք՝ այդպիսի անարգ կերպով կը խրատէին։ Շատոնց գիտէր Օֆէլիա այս բանս, բայց վրան շատ անդրադարձութիւն չէր ըրած, և այս առաջին անգամն էր որ կը տեսնէր մատաղ ու փափուկ Սրբուհին այս բանիս դատապարտուած։ Իրեն կանացի պարկեշտ բնութիւնը խռովեցաւ, և իր Նոր–Անգղիոյ ազատ արիւնը երեսը զարկաւ, ու իրեն զայրացեալ սիրան սկսաւ Թունդ Թունդ նետել. բայց իր բնատուր խոհեմութեամբ ինքզինքը բռնել գիտնա-

լով՝ սանձեց բարկութիւնը, և ձեռքին մէջ թուղթը ճմռելով՝ ըսաւ Սրբուհիին.

— Դու նստէ հոս՝ ինչուան խաթունիդ երթամ պառնամ։

— Ի՞նչ ամօթալի, ի՜նչ անգութ բան է, կ'ըսէր ինքիրեն՝ սրահէն անցնելով։

Ներս մտաւ ու տեսաւ որ Մարիամ երկայն բազմոցին վրայ նստեր էր. Մամկին քովը կեցած՝ մազերը կը սանտրէր, և Ցողհաննան ալ գետինը ծռած՝ ոտուըները կը տաքցըներ։

— Այսօր ի՞նչպէս ես, հարցուց անոր Օֆէլիա։

Մարիամ խոր հառաչանք մ'արձակեց և նուաղելով մը աչուըները գոցեց. այս եղաւ իրեն առաջին պատասխանը, վերջէն ըսաւ.

— Ո՛հ, չեմ գիտեր, սիրելի, միշտ նոյն վիճակին մէջն եմ։

Աս ըսելով՝ աչուըները սրբեց ճերմակ թաշկինակով մը, որուն չորս եզերքը սեւ գունով լայն երիզ մը պատած էր։

— Եկայ, ըսաւ Օֆէլիա ու պզտիկ մը հազաց, որ դժուարին խնդրոյ տեսակ մը յառաջաբան է. եկայ որ միջնորդութիւն ընեմ խեղճ Սրբուհիին համար։

Մարիամ աչուըները մէկէն պաստռելով մը բացաւ, և գալկահար երեսները շուտ մը կարմրեցան։

— Լաւ, ի՞նչ կայ, ըսաւ խիստ կերպով մը։

— Ըրած յանցանացը վրայ սաստիկ զղջացեր է։

— Իրա՞ւ կ՚ըսես. դեռ ինքը շատ պիտի զղջայ։ Ա՛լ բաւական համբերեցի իրեն աներեսութեան, կ՚ուզեմ զինքը ինչուան գետին խոնարհեցընել ու քիթը հողին քսել։

— Բայց ուրիշ կերպով չէ՞ր կրնար պատժել զինքը, որ այս աստիճան նուաստութեան չհասնի։

— Ուզածս ան է որ քիթը քիչ մը կոտրի. խելքը միտքը փափկութեան, գեղեցիկ դէմքին ու կոտրըտուելու տուեր է, ինչ ըլլալը մոռցեր է։ Կ՚ուզեմ սորվեցընել իրեն որ չափէն դուրս չելլէ։

— Բայց լաւ մտածէ, մէյմը որ աղջիկ տղուն վրայէն պարկեշտութիւնն ու ամօթխածութիւնը վերցընես՝ անկէ ետեւ բոլորովին կ՚ապականի։

— Ամօթխածութի՛ւն, ըսաւ Մարիամ արհամարհական ծիծաղով մը, չնայի՞ս ինչպէս ալ կը վայելէ այդպիսի աներեսի մը։

Իրեն պիտի ցուցընեմ թէ ան կատըրտուել-ներուն՝ փողոցն ինկած վատահամբաւ կնիկ-ներէն ալ ցած է իմ առջեւս, և թող սով-րի թէ ինչպէս պէտք է եղեր վարուիլ հետս։

— Բայց այդ անգթութեանդ համար Ա-ստուծոյ պատասխան պիտի տաս, ըսաւ Օ-ֆէլիա։

— Անգթութի՜ւն. կ'ուզէի գիտնալ թէ այս բանիս մէջ ի՛նչ անգթութիւն կայ։ Հրամայեցի որ տասնըհինգ հարուած միայն զարնեն, ան ալ շատ ուժով չէ. հիմայ այս բանիս մէջ ի՞նչ անգթութիւն կայ եղեր։

— Ի՞նչ անգթութիւն կայ, պատասխա-նեց Օֆէլիա, ինծի հարցընես՝ աղջիկ տղու մը համար աւելի լաւ է մեռնիլ՝ քան թէ այդպիսի անարգանաց մէջ իյնալ։

— Հրամանքդ կը կարծես թէ ամէնքն ալ քեզի պէս կը մտածեն. բայց այս ան-երեսները ծեծի վարժած են, անով միայն ճամբու կու գան։ Մէյմը որ սկսինք ի-րենց կատըրտուքներուն և փափկութեանց ականջ կախել՝ ծայրը չի գար, գլուխնիս կ'ելլեն, ինչպէս որ ըրին մինչեւ հիմայ իմ գերիներս։ Ես ալ ասկէ ետեւ գիտեմ ընե-լիքս. ով կ'ուզէ ըլլայ, թէ որ չզգուշանան՝

մէկէն զիրենք ծեծի պիտի դրկեմ, որպէս կի խելքերնին գլուխնին գայ։

Այս ըսելով Մարիամ աչուըները չորս դին կը պտըտցնէր։

Յովհաննա այս խօսքերս լսելով՝ գլուխն աւելի վար ծռեց, վասն զի իմացաւ որ մասնաւորապէս իրեն համար ալ էին այս ըսածները։ Օֆէլիա քիչ մը նստաւ, և կարծես թէ ներսի դին թնդանօթ մը լեցուեր էր, և ճաթելու վրայ էր. բայց ետքէն տեսնելով որ անօգուտ բան է այդպիսի բնաւորութիւն մ'ունեցողին հետ վիճելը, լուռ կեցաւ ու ինքզինքը ժողվելով սենեկէն դուրս ելաւ։

Շատ ծանր կ'երեւար իրեն երթալ Սըրբուհիին ըսել թէ ամէն ջանքը պարապ ելան։ Անմիջապէս ետեւէն գերի մ'եկաւ իմացընելու որ խաթունն իրեն սպասըլըիր է Սրբուհին առնուլ և Ուղղութեան Տունը տանիլ. և առանց ամենուն անոր արցունքներուն և աղաչանքներուն մտիկ ընելու՝ քաշեց տարաւ։

Քանի մ'օր վերջը՝ երբոր Թովմաս պատուհանին քով կեցեր կը մտածէր, Ատոլփոս եկաւ, որ տիրոջը մեռնելէն ետեւ ամենուն մխիթարութիւն մը չէր գտած։ Ա-

տոլփ գիտէր որ Մարիամ հետը միշտ ընդդիմութիւն մ'ունեցեր է, բայց քանի որ տէրն ողջ էր՝ ամենեւին հոգը չէր եղած։ Հիմայ որ տէրը մեռեր էր, անպաղար մեծ ահուպողի մէջ էր, չէր գիտեր թէ գլխուն ինչ գալիք կար։ Մարիամ շատ անգամ իր փաստաբանին հետ խորհրդակցեր էր, և տագերը Սէն–Քլէրի եղբօրը կարծիքն իմանալէն ետեւ՝ որոշեց որ կալուածքն ու գերիները ծախէ, և զանոնք միայն պահէ որ իրեն յատուկ ստացուածքն էին, զորոնք միտք ունէր հետը մէկտեղ հօրը տունը տանիլ։

— Գիտե՞ս Թումաս, որ ամէնքնիս ալ պիտի ծախուինք, ըսաւ Ատոլփոս։

— Ուսկէ՞ց իմացար այս բանս, հարցուց Թումաս։

— Երբոր խաթունը փաստաբանին հետ կը խօսէր՝ ես վարագուրին ետեւը պահուըտած՝ բոլորը մտիկ ըրի։ Քիչ օրէն ամէնքնիս ալ աճուրդի պիտի հանուինք։

— Աստուծոյ կամքն օրհնեալ ըլլայ, ըսաւ Թումաս՝ ձեռուըները կուրծքին վրայ ծալլելով ու խորին հառաչանք մ'արձակեց սրտէն։

— Մեր տիրոջը նման ուրիշ մ'ալ պի-

տի չկարենանք գտնել, ըսաւ Ատոլփ վըշտագին կերպով մը. բայց ի՛նչ ալ ըլլայ, աւելի կ'ընտրեմ ծախուիլ՝ քան թէ այդպիսի կնկան մ'իշխանութեան տակը մնալ։

Թոմմաս ձգեց հեռացաւ. սիրտը լեցուեր էր։ Ազատութեան յոյսն և հեռաւոր կնոջն ու որդւոց յիշատակն իրեն համբերատար հոգւոյն դիմացը նորոգուեցան. Նըման այն նաւաստւոյն որ նաւահանգիստ մտնելու ատենը կը նաւաբեկի, և տխուր ալիքներուն վրայէն իր հայրենեաց աշտարակները և բարձր շէնքերը կը տեսնէ, միայն անոնց վերջին բարև մը տալու համար։ Ուժով մը ձեռքերը կուրծքին վըրայ ծալլեց, դառն արցունքները բռնեց և ջանաց աղօթք ընել։ Խեղճը ազատութեան այնպիսի կարգէ դուրս փափաք մ'ունէր՝ որ չէր կրնար զայն սրտէն խլել, որ և իրեն սաստիկ հարուած մ'եղաւ. և որչափ եղիցին կամք քո, կ'ըսէր, այնչափ աւելի ցաւ կը զգար։

Ելաւ Օֆէլիային գնաց, որ Վարդիկին մեռնելէն ետև հետը մասնաւոր սիրով ու խնամքով կը վարուէր։

— Օֆէլիա խաթուն, ըսաւ, տէրս Սէն-Քլէր ինծի խոստացեր էր որ զիս ազատ

ընէ, և ըսեր ալ էր ինծի թէ ազատութեանս հարկաւոր բաները սկսեր է կարգի դնել։ Թէ որ հիմայ հրամանքդ ինծի մեծ շնորհք մ՚ընելով խաթունին հետ խօսելու ըլլաս, գուցէ յանձն առնու այս բանս առաջ տանելու, վասն զի տիրոջս Սէն-Քլէրին փափագն ալ այս էր։

— Տօմ լաւ, կը խօսիմ քեզի համար, ու ձեռքէս եղած ջանքն ի գործ կը դնեմ, ըսաւ Օֆէլիա. բայց թէ որ այս բանս Սէն-Քլէր խաթունին կամքէն կը կախուի, ես շատ յոյս չունիմ. այսու հանդերձ մէյմը փորձեմ։

Այս խօսակցութիւնս Սրբուհիին գիւղուածէն քանի մ՚օր ետեւ հանդիպեցաւ, երբ Օֆէլիա կը պատրաստուէր իր հայրենիքը դառնալու։

Առաջին անգամ Մարիամին հետ ըրած խօսակցութեան վրայ մտածելով Օֆէլիա՝ տեսաւ որ գուցէ շատ տաքութեամբ խօսած ըլլայ. ուստի միտքը դրաւ որ այս անգամ ամէն ջանք ընէ իր սրտին եռանդը չափաւորելու և կրցածին չափ ինքզինքը խաղաղ ցուցընելու։ Անոր համար ինքզինքը ժողվըռտեց, և գուլպայ հիւսելով՝ ելաւ շիտակ Մարիամին խուցը գնաց, առաջա-

դրութիւն դնելով մտքէն՝ որ ամէն անուշ կերպ ցուցընէ, և իր բոլոր քաղաքավարական ճարտարութեամբը Թովմասին բանը յաջողցընել ջանայ։

Տեսաւ որ Մարիամ իր բազմոցին վրայ երկընցեր էր, և արմունկովը ու բարձին կռթըներ էր, դիմացն ալ Յովհաննեան քանի մը սեւ ազնիւ դիպակներու օրինակներ բերեր կը ցուցընէր։

— Անիկայ գէշ չէ, ըսաւ Մարիամ, անոնցմէ մէկն ընտրելով. միայն կ'ուզէի գիտնալ թէ արդեօք սուգի յարմա՞ր է։

— Բայց, խաթուն, ըսաւ Յովհաննեան շուտ մ'իրեն դառնալով, անցեալ ամառ Ա. Ա. զօրապետին կնիկն ալ էրկանը մեռնելէն ետեւ այդ նիւթէն հագեր էր, և շատ լաւ ալ վայլեր էր իրեն։

— Հրամանքդ ի՞նչ կը մտածես, հարցուց Մարիամ Օֆէլիային։

— Անիկայ նորելուկի (մօտայի) վերաբերեալ բան մ'ըլլալով, պատասխանեց Օֆէլիա, կարծեմ հրամանքդ ինծմէ լաւ պատասխան կրնաս ընել։

— Այս իրաւ է, ըսաւ Մարիամ, որ հագնելու շնորհքով զգեստ մը չունիմ. և որովհետեւ գալ շաբաթ ճամբայ պիտի ել-

լեմ, ու ասկէ պիտի երթամ, ուստի պէտք է որ շուտով ճամբու հագուստ մ'ալ շինել տամ ինծի։

— Ի՞նչ, այդպէս շուտո՞վ երթալու միտք ունիս։

— Հապա ի՞նչ ընեմ. տագրս ինծի կը գրէ որ ինքն ու իր գործակալը լաւագոյն կը համարին՝ գերիներն ու տան կահ կարասիքը աճուրդի հանել ծախել, և տունն ալ գործակալին ձեռքն յանձնել։

— Կ'ուզէի հրամանքիդ հետ բանի մը վրայ խօսիլ, ըսաւ Օֆէլիա։ Օգոստինոս խոստացեր էր Թոմմասին որ զինքն ազատէ, և սկսեր ալ էր ամէն հարկաւոր բաները կարգի դնել։ Կը յուսամ թէ հրամանքդ այս բանս առաջ կը տանիս ու գլուխ կը հանես։

— Շիտակը՝ ես ալ այդպիսի բան ընելու ամենեւին կամք չունիմ, ըսաւ Մարիամ կծու կերպով մը։ Թոմմաս այն գերիներէն է՝ որ շատ կ'արժեն. ես չեմ կրնար այդ զոհն ընել։ Բաց ասկէ, ի՞նչ պէտք է իրեն ազատութիւն, աւելի լաւ չէ՞ իրեն այս վիճակը։

— Բայց ինքը սաստիկ կը փափաքի ազատութեան, և տէրն ալ խօսք է տուեր իրեն, ըսաւ Օֆէլիա։

— Կը հաւատամ թէ կը փափագի ազատութեան, կրկնեց Մարիամ. մէկը չկայ որ չուզէ. և այս մարդիկն ամենուն զոհ չեն ըլլար, այն բանին կը փափագին որ չունին։ Բաց ասկէ, գերեաց ազատութիւն տալը՝ որ և իցէ կերպով ալ ըլլայ՝ իմ սկզբանցս դէմ է։ Գերին իր տիրոջը խընամքին տակ երջանիկ է. մէյմը ազատութիւն տուր իրեն, կը տեսնես որ ծոյլերուն, դատարկապորտներուն և գինովներուն գլուխը կ'ըլլայ, մէկ խօսքով՝ ապականութեան մէջ կը թաղուի։ Եւ այս բանիս փորձը հազար անգամէն աւելի տեսեր եմ. անոնց ազատութիւն տալը օգտակար բան մը չէ իրենց, մանաւանդ թէ շատ անգամ փորձով տեսեր եմ որ վնասակար կ'ըլլայ անոնց։

— Բայց Թովմաս շատ ժուժկալ, աշխատասէր ու բարեպաշտ է։

— Ես ալ գիտեմ թէ այդպէս է. իրեն պէս շատերը տեսեր եմ որ քանի՛ իրենց տիրոջը հսկողութեանը տակն են՝ աղէկ կ'երթան, բայց վերջէն ամէն բան կը մոռնան։

— Աս ալ մտածելու է, ըսաւ Օֆէլիա, որ եթէ զինքը վաճառքի հանես՝ կրնայ ըլլալ որ գէշ տիրոջ մը ձեռքն իյնայ։

— Այդ ըսածներդ ամէնն ալ բան մը չեն նշանակեր, պատասխանեց Մարիամ։ Հարիւրին մէկն հազիւ կ՚ըլլայ որ գերի մը գէշ տիրոջ մը ձեռքն իյնայ։ Ի՛նչ որ ալ ըսեն՝ տէր եղողները մեծագոյն մասամբ լաւ մարդիկ են։ Ես հարաւային կողմերը բնակեր եմ, հոն մեծցեր եմ, և ոչ մէկը տեսեր եմ որ իրեն գերիներուն հետ աղէկ չվարուի, այսինքն՝ գոնէ այնչափ աղէկ՝ որչափ որ արժանի են անոնք։ Այս կողմանէ խիղճս հանգիստ է։

— Լա՛ւ, վրայ բերաւ Օֆէլիա ուժգնութեամբ մը, բայց ես գիտեմ որ էրկանդ վերջին փափագներէն մէկն ալ աս էր՝ որ Թոմասին ազատութիւն տայ, և այս բանս ազնիւ Վարդիկին ալ խոստացեր էր անոր մահուան անկողնոյն մէջ, և ես չէի կրնար կարծել որ հրամանքդ ասոնք ամէնն ալ արհամարհես։

Այս խօսքիս վրայ Մարիամ ձեռքի թաշկինակով երեսը գոցեց և սկսաւ հեծել ու անուշահոտ շիշը անդադար քթին տանիլ։

— Ամէնքն ալ ինծի դէմ ելեր են, կանչեց լալով, և մէկու մ՚ալ փոյթը չէ. կըսկիծներս նորոգեցիր, ու միտքս այդպիսի դառն յիշատակներ ձգեցիր. ամէնքը,

ամէնքը... մի՞թէ հրամանքդ ալ։ Մարդ մը չկայ որ քիչ մ'ըմբռնէ թէ ես ինչ կը քաշեմ. մէկհատիկ աղջիկ մ'ունէի, ձեռքէս թռաւ. էրիկ մ'ունէի, որուն հետ ամենայն կերպով յարմարեր էի, ես որ շատ պժուարաւ ինծի յարմար մարդ մը կը գտնեմ, անկէ ալ յանկարծակի զրկուեցայ ու մինակ մնացի։ Եւ հրամանքդ ամէնուն գութ չունի՞ս իմ վրաս, որ եկեր սրտիս կրակը կը բորբոքես, գիտնալով ալ թէ ինչ անմխիթար վիճակի մը մէջ եմ։ Կը հաւատամ թէ միտքդ բարի է, բայց այդ ըրածդ ալ քիչ մ'անխոհեմութիւն է...։

Այս կ'ըսէր Մարիամ, և սաստիկ կը հեծէր ու կը հառաչէր։ Մամմին կանչեց որ պատուհանները բանայ, քափրախան օղին շիշն իրեն բերէ, ճակատը շփէ, ու հագուստները թուլցընէ։

Այս շփոթութեանս ժամանակ՝ Օֆէլիա ձգեց խուցը քաշուեցաւ. տեսաւ որ ա՛լ անօգուտ է այս բանիս վրայ երկընցընել. վասն զի Մարիամ այնպիսի զգայուն ջղեր ունէր որ ամէն բան անոնց կը զարնէր։ Եւ ամէն անգամ որ գերիներուն նկատմամբ իր էրկանը կամ Վարդիկին յետին կամքը հեռուէն մէջ կը բերուէր, Մարիամին մար-

մրուքը պատրաստ էր վրայ հասնելու։ Անոր համար Օֆէլիա ալ Թովմասին ուրիշ օգնութիւն չկրնալով ընել, նստաւ Շէլպի խաթունին նամակ մը գրեց, Թովմասին խեղճ վիճակը նկարագրելով, և միանգամայն կ'աղաչէր որ ձեռքէն եկած օգնութիւնն ընէ անոր։

Երկրորդ օրը Թովմաս, Ատոլփ և մնացած գերիներէն ալ վեց եօթը հոգի՝ Գերեւաց Համբարանոցը տարուեցան. և վաճառականի մը յանձնուեցան, որ աստիէն անդիէն այլեւայլ ապրանքներ ժողվելով կը պատրաստուէր աճուրդի հանելու զանոնք։

## ԳԼՈՒԽ Լ.

### Համբարանոց գերեւաց.

Համբարանոց գերեւաց. գուցէ ընթերցողներէն ոմանք այսպիսի տեղւոյ մ'անունը լսելով՝ սարսափելի գաղափար մը կազմեն, և աղտեղի ու խաւարչտին այր մը կամ տարտարոս մ'երեւակայեն։ Սակայն կը խաբուին. վասն զի հիմակուան ատեն գէշութիւնը վայելչութեամբ ընելու կերպը

գտեր են մարդիկ, որպէս զի հասարակաց աչքը չխայթէ։ Մարդկեղէն ապրանքը ծանր գին ունի վաճառանոցը, անոր համար ամէն փոյթ կ'ըլլուի զանոնք աղէկ սնուցանելու, լաւ մը մաքրելու, որպէս զի երբոր վաճառանոց ելլեն՝ մաքուր, ուժով և լաւ վիճակի մէջ գտնուին։ Նոր—Օրլէանի մէջ ալ Գերեաց Համբարանոցն արտաքուստ ուրիշ տեղիններէն ամենեւին տարբերութիւն չունի. վայելուչ ու մաքուր է, և դիմացը տախտակամած յարկի մը տակ՝ ամէն օր քանի մ'էրիկ մարդ ու կնիկ մարդ կը շարեն, իբր նշան և ցոյց՝ ներսը պահուած վաճառքներուն։

Քաղաքավար երիտասարդ մը հոն կեցած՝ զքեզ ներս կը հրաւիրէ, ուր կը տեսնես խումբ մ'արանց, կանանց, եղբարց, քերց, մարց և մանրիկ տղայոց, որոնք կա՛մ առանձին առանձին և կա՛մ մէկ քանին մէկտեղ կը ծախուին, ի՛նչպէս որ գնողին ձեռք կու տայ. և այն անմահ հոգին՝ որ Որդւոյն Աստուծոյ արեամբն ու չարչարանքներով գնուեցաւ այն օրը՝ երբ երկիրս դողաց, ժայռերը պատռտեցան ու գերեզմանները բացուեցան, այն անմահ հոգին կրնայ ծախուիլ, վարձու տրուիլ կամ գրաւ

առնուիլ, և գաղթականութեան բերքերով և կամ ուրիշ վաճառքներով փոխանակուիլ, ինչպէս որ վաճառականութիւնը կը բերէ և կամ գնողին շահուն ձեռք կու տայ։

Մարիամին ու Օֆէլիային մէջերնին ըրած խօսակցութենէն մէկ երկու օր ետև՝ Թովմաս և Ալոլփոս ու Սէն–Քլէրի տան մնացած գերիներէն վեց եօթը հոգի՝ Սգէյկ անունով պարոնի մը խնամքին յանձնուեցան, որ Նոր–Օրլէանի փողոցներուն մէկուն մէջ Համբարանոցի մը վերակացու էր, որպէս զի երկրորդ օրը աճուրդի հանուին։

Թովմաս ու իր ընկերներէն շատը հետերնին մէյմէկ սնտուկ ունէին՝ մէջը իրենց հագուստներով լեցուն։ Զիրենք մեծ սրահ մը տարուցին՝ որ գիշերն հոն անցընեն, ուր ուրիշ խել մը մարդիկ ալ ժողոված էին ամէն տարիքէ, ամէն հասակէ և ամէն գունէ, որոնք բարձրաձայն կը ծիծաղէին, և իրենք զիրենք յիմարական և յուսահատ զուարճութեանց տուեր էին։

— Հա՛, հա՛, սանկ. ձեզ տեսնեմ, տըղաքս, ապրիք, ըսաւ Սգէյկ. իմ ձեռքիս տակ եղողները միշտ ուրախ կ'ըլլան. Սամպօյ, քեզ տեսնեմ, նայէ որ ընկերութիւնն ուրախ պահես։

Այս Սամպօն յաղթանդամ սեւ մ'էր, որ անհամ անժուր ծաղրածութիւններով ուրիշներուն ծիծաղը կը շարժէր։ Թուլմաս ալ նոյն միջոցին ներս մտաւ. և որովհետեւ ինքն այդպիսի զուարճութիւններէ համ չէր առնուր, անոր համար որչափ որ կարելի էր՝ անոնցմէ հեռու դրաւ սնտուկը, և երեսը պատին դարձուցած՝ վրան նստաւ։

Անոնք որ մարդկեղէն մարմնոյ առուտուր կ'ընեն՝ ամէն ջանք և հնարք կը բանեցընեն որ իրենց համբարանոցին մէջ ուրախութեան ձայները պակաս չըլլան, որպէս զի ամենեւին մտածելու չտան իրենք զիրենք, և իրենց թշուառ վիճակին անըզգայ ըլլան։ Այն վայրկենէն որ գերի մը հիւսիսակողման վաճառանոցներուն մէջ կը ծախուի և ինչուան որ հարաւ հասնի, ամէն կարելի հնարք կը բանեցընեն վաճառականք զանիկայ անզգայ և անփոյթ ընելու և անբանացընելու։ Գերեաց վաճառականը Վիրճինիայի և կամ Քէնդըքիի մէջ իր խումբը կը կազմէ, ու կ'առնէ առողջարար և զուարճալի տեղ մը կը տանի, շատ անգամ ջրարբի տեղուանք, ու հոն զանոնք կը գիրցընէ։ Ամէն օր հոն իրենց առատ ուտելիք կը տրուի. և որպէս

զի չըլլայ թէ մէջերնէն ոմանք իրենց տըղաք, իրենց ընտանիքն յիշելով՝ տրտմին ու մաղձոտին, սովորաբար հետեւերնին նըւագածու մը կը գտնեն, որ զիրենք կը զուարճացընէ, և ստէպ պար բռնել կու տան անոնց. իսկ որոնք որ չեն ուզեր ուրախանալ՝ այնպիսիներն իբրեւ վտանգաւոր կը համարուին, և անգութ ու անպատասխանատու տիրոջ մը ամէն խստութեանց ենթակայ կ՚ըլլան։ Անոր համար ամէն ջանք կ՚ընեն իրենք զիրենք ուրախ, զուարթ ու աշխոյժ ցուցընելու, մանաւանդ երբոր զիրենք տեսնողներ գալու ըլլան, յուսալով թէ գուցէ աղէկ տիրոջ մը ձեռքն իյնան, և կամ վախնալով որ եթէ չծախուին՝ սաստիկ տանջանք պիտի քաշեն վաճառականին ձեռքն, ու ծեծի տակ պիտի չարչարուին։

Երբոր Սգէյկ այն խուցէն դուրս ելաւ,

— Ի՞նչ կ՚ընես հոս, ըսաւ Սամպոյ՝ Թովմասին մօտենալով. ծօ ի՞նչ կը մտածես։

— Կը մտածեմ, ըսաւ Թովմաս հանդարտութեամբ, որ վաղը աճուրդի պիտի ելլեմ։

— Աճուրդի պիտի ելլե՜ս. հա՛, հա՛. մարդի՛կ, տղա՛ք, տեսէք տեսէք թէ ի՞նչ նոր

բան կ՚ըսէ սա մարդս. ծօ ո՞ւր էր թէ ես ըլլայի քու տեղդ. Հաւատա զամէնքն ալ կը ծիծաղեցընէի։ Բայց ի՞նչ, ամէնքդ ալ վաղը պիտի ծախուիք, ըսաւ Սամպօյ՝ ձեռքը ընտանեբար Աստղիկին ուսին վրայ զարնելով.

— Հանգիստ թող զիս, խնդրեմ, ըսաւ Աստղիկ՝ սաստիկ մը թօթուելով։

— Ծօ՛, հոս եկէք, հոս եկէք, սեւ ճերմակ մը զատայ, կաթի գունով, ըսաւ Սամպօյ՝ Աստղիկին մօտենալով և գլուխը հոտուըտալով. վա՜յ թշուառութեան, ինչ անուշ ալ կը հոտի. ծխախոտ ծախողի մը կը վայլէ սաքկայ, և մինակ բաւական է բոլոր խանութը անուշ հոտեցընելու և գնողներ հրաւիրելու։

— Հանգիստ թող զիս ըսի, կանչեց Աստղիկ բարկութեամբ։

— Սեւ ճերմակներն այս ինչպէս գիրագրգիռ են. խնծի նայէ, ըսաւ Սամպօյ և սկսաւ միմոսաբար Աստղիկին ձեւն ընել. Ի՞նչպէս, կրցա՞յ աղէկ ձեւ ընել։ Խնծի կ՚երեւայ թէ աղէկ ընտանիքի մը քով եղած պիտի ըլլաս։

— Հրամեր ես, ըսաւ Աստղիկ, տէր մ՚ունէի ես՝ որ զձեզ ամէնքնիդ ալ կրնար գնել։

— Տեսնես ուրեմն, պատասխանեց Սամպոյ, ի՛նչ մեծ մարդ ենք եղեր մենք ալ։

— Սէն–Քլէրի ընտանեաց քովն էի ես, ըսաւ Ատոլփ պարծելով մը։

— Իրա՛ւ. գլուխս կը կարծեմ ես՝ թէ որ տէրդ հիմայ առաջինէն աւելի երջանիկ չէ։ Կարծեմ գքեզ քանի մը կոտրտած ամաններուն հետ մէկտեղ ծախելու հաներ են, ըսաւ Սամպոյ հեգնաբար։

Ատոլփին համբերութիւնը ծայրն հասաւ, և կատաղաբար հակառակորդին վրան հասաւ ու սկսաւ հայհոյելով աղէկ մը ծեծել։ Անդիէն մէկալներն ալ սկսան ծիծաղիլ բարձրաձայն ու ծափ զարնել, մինչեւ այս աղաղակէն Սգէյկ ներս վազեց տեսնելու թէ ի՛նչ կայ.

— Ի՞նչ կ'ընէք, տղաք, խելօ՛ք, խելօ՛ք, պոռաց՝ երկայն խարազանը շողացընելով։

Ամէնքը ծակէ ծակ փախան, միայն Սամպոյ մէջտեղը մնաց՝ ծաղրածուի արտօնութիւն ունենալուն համար, և ամէն անգամ որ տիրոջը խարազանը դէպ իր կողմը կուգար՝ ծիծաղաշարժ կերպով մը կը փախչըտէր անկէ։

— Մենք չենք, մենք խելօք կը կենանք.

աս նոր եկողներն են որ խելօք չեն կենար ու գլուխնիս կը ցաւցընեն ։

Ազէյկ բոլոր բարկութիւնը Թուլմասին ու Ալտովփին վրայ թափեց, և առանց քաղաքավարութեան՝ ուքով ու բռնցի քանի մը հաս զարկաւ անոնց, և ամենուն ապըսպրեց որ խելօք ու հանդարտ կենան և երթան պառկին. իսկ ինքը թողուց դուրս ելաւ ։

Մինչդեռ այս տեսարանս էրիկ մարդկանց ժողովարանին մէջ կը կատարուէր, գուցէ ընթերցողին հետաքրքրութիւնը կը շարժի կանանց ժողովարանն ալ տեսնելու ։ Գետնին վրայ փռուած խառնափնդոր պառկեր էին բազմութիւն թշուառ արարածոց՝ ամէն գունէ, ոպնիազի պէս սեւէն սկսեալ՝ մինչեւ ճերմակը, և ամէն հասակէ, տղէն սկսեալ՝ մինչեւ պառաւը ։ Հոս տասը տարուան գեղեցիկ աղջիկ տղայ մը, որուն մայրը ցորեկը ծախուեր էր, լալով ողբալով քնացեր էր, և մէկն ալ չկար որ վրան հոգ ունենար ։ Հոն տարիքն առած պառաւ մը, որուն վատուժ բազուկներն ու փապարեալ ձեռուըները բաւականապէս կը ցուցընէին թէ ինչ ծանր աշխատութիւններ կրեր է, կը սպասէր որ վաղը՝ իբրեւ ա-

բուած ապրանք մը՝ ոչինչ գնով ծախուի։
Անդին քառասուն ու յիսուն հոգի իրարու
վրայ ինկած կը քնանային, ոմանք գլուխ-
նին լաչակ մ՚առած, ոմանք ալ հագուստ-
ներուն ծայրովը ծածկուած։ Բայց խուցին
մէկ անկիւնը, ուրիշներէն քիչ մը հեռու՝
երկու հոգի կային, որոնց արտաքին կեր-
պարանքը տեսնողին մասնաւոր հետաքըր-
քրութիւնը կը շարժէին։ Անոնցմէ մէկը
մաքուր հագուած խառնածին մ՚էր, քա-
ռասունն անցած, որուն անուշ նայուածքն՝
ու վայելուչ դէմքը դիտողին գութը կը շար-
ժէին. գլուխն ազնիւ կարմիր լաչակ մը
կապեր էր, և վրայի հագած բարեձեւ ու
կոկիկ հագուստէն կ՚իմացուէր թէ աղէկ
տունէ մ՚ելած պիտի ըլլայ, ուր ամէն խը-
նամք վրան պակաս չեն եղած։ Քովինն ալ
իրեն աղջիկն էր, տասնըհինգ տարեկան,
խառնածին հօրէ ըլլալով՝ մօրմէն աւելի
ճերմակ էր, թէպէտ մօրը շատ նման. ա-
չուըներն անոր աչուըներուն պէս սեւ ու
անուշ նայուածք մ՚ունէր, իսկ ընքուիները
քիչ մ՚աւելի երկայն, մազերն ալ գան-
գրաւոր ու սեւ։ Ինքն ալ մաքուր հագուեր
կապուեր էր, և սպիտակ ու փափուկ ձե-
ռուըներէն կ՚իմացուէր որ ամենեւին ծառա-

*յական աշխատութեանց մէջ չէ մնած։ Այս երկուքն ալ Սէն-Քլէրի ծառայից հետ մէկ-տեղ երկրորդ առտու ծախու պիտի ել-լէին. իրենց տէրը Նոր-Եօրքի եկեղեցւոյն պաշտօնեաներէն մէկն էր։*

*Ասոնցմէ մէկուն անունն էր Շուշան, մէ-կալինը՝ Էմմէլինէ, և Նոր-Օրլէան ազնիւ ու բարեպաշտ խաթունի մը քով էին, որ ամէն խնամքով զիրենք սնուցեր ու կրթեր էր. իրենց կարդալ գրել և կրօնքի ճշմար-տութիւնները սորվեցուցեր էր, և ամէն կողմանէ երջանիկ կեանք մը կ'անցընէին։ Բայց իրենց բարերար խաթունին մէկ հա-տիկ որդին՝ բոլոր ստացուածոց ազատ մա-տակարարութիւնն ունէր, որ իր անհոգու-թեամբ ու շռայլութեամբ՝ ծանր պարտքե-րու տակ ինկաւ, և քիչ ատենէն ալ սնան-կացաւ։ Գլխաւոր պարտատէրներէն մէկն ալ էր Նոր-Եօրքի վաճառական մը. ասի-կայ Նոր-Օրլէան իրեն գործակատարին գրեց՝ որ իր պարտապանին ձեռքէն բոլոր շարժական ստացուածներն առնու, որոնց գլխաւորներն էին այս երկուքը և քանի մ'ուրիշ աշխատաւոր գերիներ. գործակա-տարն առած հրամանը շուտով, ի գործ դրաւ և ետքէն ալ Նոր-Եօրք գրեց։ Իսկ այն*

վաճառականն, ինչպէս որ ըսինք, քրիստո-
նեայ և ազատ նահանգի մը բնակիչ ըլլա-
լով, խղճմտանք ըրաւ այս բանիս վրայ.
տարակոյս չկար թէ գերեաց և մարդու հո-
գւոց առուտուրը չէր սիրեր. բայց երեսուն
հազար տոլլար առնելիք ալ պզտիկ գու-
մար մը չըլլալուն, չուզեց մտաւոր սկզբան
մը զոհելու. ուստի աղէկ մը մտածելէ և
բարեկամաց խորհուրդ հարցընելէ ետև՝
գրեց գործակատարին որ ինչպէս որ իրեն
պատշաճ կ'երևայ՝ այնպէս ընէ, և զանոնք
ծախելէն ետև՝ դրամն իրեն ձեռքն հաս-
ցընէ։

Այս Թուղթս Նոր–Օռլէան հասնելուն
երկրորդ օրը՝ Շուշան և Էմմէլինէ՝ ձեռուըն-
նին կապած՝ Գերեաց Համբարանոցը դըր-
կուեցան, որպէս զի հետևեալ օրուան ա-
ռաւօտուն՝ հասարակաց աճուրդին ներկայա-
ցուին։ Մինչդեռ վանդակապատ պատուհանէն
ներս զարկած լուսնի լուսով կը տեսնենք
զիրենք, կենանք քիչ մը խօսակցութիւննին
մտիկ ընենք։ Երկուքն ալ կու լան, բայց
մէկմէկէ գաղտուկ, վախնալով որ չըլլայ
թէ մէկմէկու սիրտը կոտրեն։

— Մայրիկ, գլուխդ ծնկուըներուս վրայ
դիր ու քիչ մը քուն եղիր, ըսաւ աղջիկն
ինքզինքը բռնելով։

— Սիրտս առաջ չերթար քնանալու, անկարելի է... քունս չի տանիր. ասիկայ վերջի՛ն գիշերն է որ մէկտեղ պիտի անցընենք։

— Ահ, մայրիկ, այդ բանը մի՛ ըսեր. գուցէ երկուքնիս մէկտեղ ծախուինք. ո՛վ գիտէ...։

— Թէ որ այդ ըսածդ շատ անգամ եղած բան ըլլար, ես ալ յոյս մը կ'ունենայի. բայց ձեռքով դրածի պէս գիտեմ որ զքեզ պիտի կորսընցընեմ։

— Ինչո՞ւ, մայրիկ. մարդն ըսաւ թէ երկուքնիս ալ աղէկ կերպ ունինք, ուստի ծանր գնով կը ծախուինք։

Շուշանին միտքն ինկան այն մարդուն դիտողութիւններն ու ըսած խօսքերը. սըրտէն արիւն կ'անցնէր՝ երբոր կը յիշէր թէ ի՛նչպէս այն մարդը Եմմէլինէին ձեռուըները զններ էր, գանդուրները նայեր ու ըսեր էր թէ ասիկայ առաջին կարգի ազնիւ ապրանք մ'է։ Շուշան քրիստոնէական կըրթութիւն մ'առեր էր, ուստի երբոր կը մտածէր թէ իրեն աղջիկն ամէն տեսակ նախատալից կենաց կրնայ ենթակայ ըլլալ, կը զարհուրէր ու կը սարսափէր, ինչպէս որ բնական է քրիստոնեայ մօր մը.

բայց ինքը ոչ յոյս մ՚ունէր և ոչ ալ ապաւէն մը։

— Մայրիկ, մի՛ վախեր. կրնայ ըլլալ որ բախտերնիս բանի, ու երկուքնիս մէկտեղ ազնիւ ընտանիք մը գնէ, զքեզ իբրու խոհարար, զիս ալ իբրեւ աղախին կամ իբրեւ կար կարող։ Ուստի ամէն կերպով ջանանք զմեզ ուրախ զուարթ բռնել, հարցընողներուն պատմենք ինչ որ գիտենք ընել, գուցէ ասով բաներնիս յաջողի, ըսաւ Եմմէլինէ։

— Վաղը բոլոր մազերդ սանտրէ ու ամէնն ալ ետեւ առ, ըսաւ Շուշան։

— Ինչո՞ւ, մայրիկ. այսպէս աւելի աղէկ չէ՞։

— Աղէկ է. բայց այնպէս աւելի լաւ կը ծախուիս։

— Ես պատճառ մը չեմ տեսներ, ըսաւ աղջիկը։

— Ազնիւ ընտանիք մը՝ աւելի կ՚ընտրէ գնել զքեզ թէ որ վրադ պարզութիւն ու պարկեշտութիւն տեսնէ, քան թէ գեղեցիկ երեւնալու ջանք մը։ Ես այնպիսիները քեզմէ աւելի կը ճանչնամ, ըսաւ Շուշան։

— Լաւ, մայրիկ, ուզածիդ պէս կ՚ընեմ։

— Ինծի մտիկ ըրէ, Եմմէլինէ. Թէ որ ասկէ ետեւ մէյմ'ալ մէկզմէկ չտեսնենք, թէ որ ես մէկ կողմն երթամ, դու մէկալ կողմը, միտքդ բեր պզտիկուց ի վեր առած դաստիարակութիւնդ, ու մի մոռնար մեր խաթունին քեզի տուած պատուէրները։ Աւետարանդ ու Հոգեւոր երգերու տետրակդ հետդ առ. և գիտցի՛ր թէ որ դու հաւատարիմ ըլլաս Աստուծոյ՝ Աստուած ալ զքեզ ձեռքէ չի թողուր յաւիտեան։

Խեղճ կնիկն իրեն աղջկան այսպէս կը խօսէր, վասն զի գիտէր թէ վաղը առաւօտ՝ առաջին եկողն՝ ո՛րչափ ալ ցածազգի և վատ մարդ մ'ըլլայ, ո՛րչափ ալ ամբարիշտ ու խիստ ըլլայ, կրնար իր խեղճ աղջկան մարմնոյն և հոգւոյն տէրն ըլլալ, թէ որ բաւական դրամ ունենար ձեռքը զանիկայ գնելու, և ան ատեն ի՛նչպէս կըրնար խեղճ աղջիկն հաւատարիմ ըլլալ առ Աստուած։ Մայրն ասոնք մտածելով՝ գիրկը կը սեղմէր իրեն աղջիկը, և շատ կը փափագէր որ այսչափ գեղեցիկ ու այսչափ բարեկիրթ եղած չըլլար։ Եւ երբ կը մտածէր աղջկան մաքրասիրութիւնը, հոգեսիրութիւնն ու առած դաստիարակութիւնը՝ սիրտը կտոր կտոր կ'ըլլար։ Ուրիշ բան չէր

գար ձեռքէն՝ բայց եթէ աղօթել։ Ահ, ասոր նման քանի՜ քանի՜ հառաչանքներ ելեր են այս գերեաց բանտերէն առ Աստուած. Հառաչանքներ՝ զորոնք Աստուած չէ մոռցած. որոնց հանդէս պիտի ընէ՝ դատաստանին օրը, որ մեզմէ շատ հեռու չէ. վասն զի գրուած է՝ թէ «Որ ոք գայթակղե-
» ցուսցէ զմի ի փոքրկանցս յայսցանէ յիս
» հաւատացելոց, լաւ է նմա եթէ կախիցէ
» երկան իշոյ ընդ պարանոց նորա և ընկղ-
» մեսցի ի խորս ծովու.»։

Լուսնին հեզիկ ու տխուր ճառագայթները հոն քնացող գերեաց վրայ պատուհանին վանդակները կը նկարէին։ Մայր և աղջիկ տխուր և այրած ձայնով մէկտեղ երգ մը կ'երգէին, զոր գերիները յուղարկաւորութեան օրը կ'երգեն.

Ո՞ւր է Մարիամ, զոր լուսայք հեծել,
Ո՞ւր է Մարիամ, զոր լուսայք հեծել.
Թռեաւ նա բերեւ յերկիրն երջանկաց։
Ոչ եւս է այլ, գնաց նա յերկիրն,
Ոչ եւս է այլ, գնաց նա յերկիրն,
Թռեաւ նա բերեւ յերկիրն երջանկաց։

Այս սրտառուչ խօսքերս՝ որ տխուր ե-

ղանակով այն ողկելեաց սրտէն կը բըղխէին, բանտին պատերէն անդրադառնալով՝ այս արտասուաց հովտէս դէպի երկինք կը վերանային գիշերուան տխրազգած լռութեան մէջէն ։

Ո՞ւր են Պօղոս և Եղիշա,
Ո՞ւր են Պօղոս և Եղիշա,
Ելին տարադեմ յանձնանքից կայանս։
Ոչ եւս են այլ. գնացին յերկինս,
Ոչ եւս են այլ. գնացին յերկինս,
Ելին տարադեմ յանձնանքից կայանս։

Երգեցէք, խեղճ մայրիկ և զատրիկ, երգեցէք. վասն զի գիշերը կարճ է, առաւօտը մօտենալու վրայ է, որ զձեզ պիտի բաժնէ մէկմէկէ յաւիտեան։

Առաւօտն եկաւ հասաւ, և ամէնքն սկըսան պատրաստութիւն տեսնել։ Սգէյկ կը մտնէր կ՚ելլէր, մեծ գործողութեան մէջ էր։ Կրակի պէս գերեաց վրան գլուխը զննեց և տեսաւ թէ ամէն բան կարգի՞ է. և ամենուն ալ ապսպրեց որ իրենք զիրենք ուրախ զուարթ բռնեն. վերջին անգամ զանոնք մէկիկ մէկիկ աչքէ անցընելէն ետև՝ պատրաստ կեցէք, ըսաւ անոնց, վաճառա-

տեղին երթալու։ Իսկ ինքը գլուխն արմաւենիէ գլխարկ մը, բերանն ալ ծխախոտ՝ վեր վար կը վազէր ապրանքին վերջին ձեռքը տալու։

— Ի՞նչ է այդ, ըսաւ Շուշանին ու Եմմէլիանային պոռալով, ո՞ւր է գանգուրներդ, Եմմէլի՛նա։

Աղջիկը վախնալով՝ մօրը երեսը նայեցաւ, որ մէկէն պատասխանեց.

— Ես ըսի իրեն երէկ իրիկուն որ մազերը սանտրէ ու գանգուրները ետեւը ժողվէ. կարծեմ այսպէս աւելի պարկեշտ է։

— Այդ ի՞նչ անմտութիւն է, պոռաց Սգէյկ աղջկան պոռալով. գնա շուտ գանգուրներդ շինէ. դուն ալ գնա իրեն օգնելու, ըսաւ մօրը. գանգուրներու հարիւր տոլլարի տարբերութիւն կ՚ընեն գնոյն վրայ։

*
* *

Բոլորաձեւ գեղեցիկ յարկի մը տակ՝ ամէն ազգէ մարդիկ ժողովեր էին, և մարմարապատ յատակին վրայ վեր վար կ՚երթային կու գային։ Ասդին անդին այլ և այլ պզտի պզտի ամբիոններ կային՝ մունետիկներուն և գնահատից համար։ Ասոնցմէ

երկուքին վրայ, որ դիմացէ դիմաց էին, երկու պարոնայք ելեր էին, որոնք կէս անգլիերէն կէս գաղղիերէն՝ հոն գտնուած այլ և այլ ապրանքներուն տրուած գիները կը պոռային: Երրորդ ամբիոնի մը վրայ դեռ մարդ չէր ելած, որուն չորս կողմը գերեաց բազմութիւն մ'առած՝ աճուրդին սկսելուն կը սպասէին: Հոն էին նաև Սէն-Քլէրի ծառաները, Թովմաս, Ատոլփ և մէկալները. Հոն ամբիոնին առջև նստեր էին Շուշան ու Էմմէլինէ և անձկանօք ու տառապեալ սրտով իրենց կարգին կը սպասէին: Այլ և այլ հանդիսատեսներ ժողովեր էին, ոմանք գնելու մաքով, ոմանք ալ տեսնելու մաքով. կը շօշափէին, կը զննէին, անոնց յատկութեանց վրայ կը վիճէին ամէն ազատութեամբ, ինչպէս այլ և այլ ձիապաններ մէկտեղ եղած՝ ձիու մը յատկութեանց վրայ կը վիճին:

— Դու հոս ի՞նչ բան ունիս, Ալփրետ, ըսաւ ազնուական երիտասարդ մը՝ ուրիշ մաքուր հագուած երիտասարդի մը ուսը ծեծելով, որ ակնոցը դրած Ատոլփը կը զննէր:

— Սենեկապանի մը կարօտութիւն ունիմ. լսեցի թէ Սէն-Քլէրի ծառաները ծա-

խելու համար են. եղայ որ անօթեմ թէ...

— Թէ որ խելքս կարսընցնելու ըլլամ՝ ան տանն Սէն-Բլէրի ծառաներէն մէկը կը գնեմ. վասն զի անոնք ամէնն ալ երես ե-լած ու լիրբ են։

— Փոյթ չէ, ըսաւ առաջինն, ես թէ որ զանոնք գնելու ըլլամ՝ շուտով խելքերնին գլուխնին բերել կու տամ։ Կը հասկըցընեմ իրենց թէ ես Սէն-Բլէր չեմ։ Ինչ կ'ըսես, սա մանչը կ'ուզեմ գնել։

— Քիչ առտենէն զքեզ՝ մոխրի վրայ կը նստեցընէ. աղէկ սատակ մոխել գիտէ։

— Ինծի հետ չի կրնար խաղալ. քանի մ'անգամ Թագաւորեան Տանն իրեն այցե-լութիւն ընել տալէս ետեւ՝ տեսնես ինչ-պէս ճամբայ կու գայ։ Թէ որ ես առոր խելքը գլուխը չբերեմ, ինչ կ'ուզես տամ քեզի. շատ չ'անցնիր՝ տեսնես ինչպէս իր չափը կը գիտնայ։

Թովմաս իրեն չորս կողմի բազմութիւնը կը դիտէր, և կը փնտռէր թէ արդեօք ով պիտի ըլլայ անոնց մէջէն իր տէրը։ Թէ որ դուն ալ, ով ընթերցող, հարկադրուէիր երկու երեք հարիւր հոգիներու մէջէն քեզի տէր մ'ընտրելու, որ վրադ բացարձակ և անսահման իշխանութիւն մը պիտի ունենար,

արդեօք քանի՞ հոգի կրնայիր գտնել՝ որոնց վրայ սիրտդ կապուէր։ Թովմասին առջեւէն ամէն տեսակ մարդիկ կ'անցնէին. համալը, բարակը, խաժոադէմը, կարճը, ամէնն ալ գրեթէ վարի աստիճանի մարդիկ. որոնք այնպիսի անտարբեր կերպով կը գնեն իրենց նմանները, որ իբր թէ կրակը նետելու տաշեղ ըլլային։ Թովմաս այսպիսի շատ մարդիկ տեսաւ, բայց անոնց մէջէն մէկ Սէն-Բլէր մ'ալ չգտաւ։

Աճուրդն սկսելէն քիչ մ'առաջ՝ կարճահասակ ու յաղթանդամ մարդուն մէկը՝ բազմութիւնը կտրելով՝ առաջ կ'անցնէր. գունաւոր շապիկ մը հագեր էր վրայէն, կուրծքը բաց, վարտիքն աղտոտ ու հին. գերիներուն քով գալով՝ սկսաւ զանոնք մէկիկ մէկիկ քննել՝ գնողի աչքով։ Թովմասը զանիկայ տեսածին պէս՝ սիրտը դող ելաւ, և քանի որ այս մարդն իրեն կը մօտենար՝ վախն երթալով կ'աւելնար։ Թէպէտ կարճ էր հասակը՝ սակայն հսկայի ուժ ունէր. գլուխը կլորակ ցլու նման, մոխրագոյն փայլուն աչուըներով, չէկ ընքուիներով, դէմքը պղնձագոյն և արեւէն այրած։ Լայն բերնին մէջ ծխախոտ կը ծամէր և երբեմն երբեմն ուժով մը կը թքնէր։ Խոշոր

ձեռուըներ ունէր, մազոտ, արեւէն այրած, կոշտացած, երկայն ու աղտոտ եղունգներով։ Սկսաւ ուշադրութեամբ մէկիկ մէկիկ զամէնքն ալ քննել. երբոր կարգը Թովմասին եկաւ, ծնօտէն բռնեց՝ բերանը բանալ տուաւ որ ակռաները նայի, թեւը բանալ տուաւ որ ջղերը տեսնէ, առջին դարձուց, անդին դարձուց, ցատքել տուաւ, վազելը փորձեց, անոր արագաշարժութիւնն հասկնալու համար։

— Ո՞ւր մեծցեր ես դու, հարցուց անոր՝ քննութիւնը լմընցընելէն ետև։

— Քէնդըրքիի մէջ, պարոն, պատասխանեց Թովմաս։

— Ի՞նչ կ՚ընէիր։

— Տիրոջս տունը կը հոգայի։

— Զարմանք, ըսաւ ու առաջ անցաւ։

Երբ Ալտոլփին քովը եկաւ՝ քիչ մը կանգ առաւ, և անոր փայլուն մաքուր կօշիկներուն վրայ խուխ մ՚արձակեց, քթին տակէն մրմռալով։ Ետքէն Շուշանին ու Եմմէլինէին քովը եկաւ, և հաստ ու աղտոտ ձեռքն երկընցուց ու աղջիկն իրեն քաշեց. սկսաւ անոր վիզն ու կուրծքը շօշափել, թեւերը նայիլ, ակռաները քննել, և ետքէն դէպ ի մայրը հրեց, որուն այլայլած դէմքէն յայտնի

կը սեւնաւէր՝ այն տգեղ օտարականին ամէն մէկ շարժմունքէն կրած վախն ու սարսափը։ Խեղճ աղջիկն ալ վախէն այլայլեցաւ ու սկսաւ լալ։

— Հիմայ լալու ժամանակ չէ, կանչեց ծախողն աղջկան, հոս լալու տեղ չէ. աճուրդը պիտի սկսի։

Եւ աճուրդն սկսաւ։ Ատոլփը ծանր գնով գնուեցաւ այն երիտասարդէն՝ որ առաջ կ'ըսէր թէ կ'ուզէ զանիկայ գնել. Սէն-Քլէրի մէկալ ծառաներն ալ այլ և այլ մարդիկ գընեցին։

— Հիմայ կարգը քեզի եկաւ, ըսաւ մունետիկը Թովմասին։

Թովմաս պատուանդանին վրայ ելաւ, և անձկանօք սկսաւ չորս դին նայիլ. մունետիկին ձայնը, որ անգղիացի և գաղղիացի լեզուաւ ապրանքին առաւելութիւնները կը համրէր, գինը բարձրացընողներուն այս երկու լեզուաւ աղաղակը, խառն և շփոթ՝ ականջները կը թնդացընէին. քիչ մը վերջէն ուրագին յետին հարուածն որոտաց, և տոլլար բառին վերջին վանկը լսուեցաւ, որով մունետիկն անոր գինը կ'իմացընէր, և Թովմասին գինը կտրուեցաւ, մէկն իրեն տէր ելաւ։

Պատուանդանին վրայէն վար իջաւ, ցլու գլխով կարճահասակ մարդն ուսէն բռնեց զինքը մէկդի քաշեց. և կերկերեալ ձայնով մը — Հոս կեցիր — ըսաւ անոր։

Թումաս Հազխ կ'իմանար թէ իր չորս դին ի՛նչ բան կ'ըլլար։ Աճուրդն առաջ կ'եր- թար, և բազմութեան աղաղակն երթալով կը բարձրանար. ուրացը նորէն որոտաց. — Տուշանն ալ ծախուեցաւ. պատուանդա- նէն վար իջաւ, ու քիչ մը կանգ առած՝ ո- ղորմուկ աչուըներով ետին նայեցաւ դէպի աղջիկը. ան ալ ձեռուըները դէպ իրեն եր- կընցուցեր էր։ Ետքէն յուսահատական աչք մը ձգեց զինքը գնողին վրայ, որ հասակն առած մարդ մ'էր, շամմուճքը ծանր ու կերպն անուշ։

— Ո՛հ, պարոն, կ'աղաչեմ, կը պաղա- տիմ հրամանքիդ, աղջիկս ալ գնէ։

— Կ'ուզէի զինքն ալ գնել, բայց վա- խեմ թէ պիտի չկարենամ, պատասխանեց պարոնը՝ գթալից աչուըներով աղջիկը դի- տելով, որ պատուանդանին վրայ կ'ելլէր և ահով դողով չորս դին կը նայէր։

Դժբախտաբար Եմմէլինէին արիւնն երե- սին զարնելով այտերը վարդի պէս վառե- ցան, որ ինչուան այն ատեն մոխիր դար-

ձեր էին. աչուըները կարգէ դուրս կենդանացան, և մայրը՝ տեսնելով աղջկան այս անսովոր գեղեցկութիւնը, զոր ոչ երբեք տեսեր էր, հառաչանք մ'արձակեց սրտին խորէն: Մունետիկն այս առաւելութիւններս տեսնելով՝ բերանը փրփրած՝ ապրանքին յատկութիւնները մէջ կը բերէր գաղղիացի և անգղիացի լեզուաւ, որով շուտ մը գինն սկսաւ բարձրանալ:

— Ես ալ ձեռքէս եկած գինը կու տամ, ըսաւ այն պարոնը՝ ինքն ալ բարձրացընելով: Բայց քիչ ատենէն Էմմէլինէին գինը այս պարոնին միտքը դրածէն շատ աւելի վեր ելաւ. ինքն ալ լռեց: Մունետիկն աւելի ոգեւորեցաւ, բայց նախանձորդներն սկսան քիչնալ. կռիւը Նոր-Օռլէանցի ազնուականի մը և այն ցլու գլխով մարդուն մէջ միայն մնաց. ազնուականն հետզհետէ բարձրացուց գինը՝ արհամարհելով իր հակառակորդը. բայց այն աղտոտ ու ցլու գլխով մարդն իրմէ աւելի յամառ և քսակը մեծ գտնուեցաւ. շատ չանցաւ կռիւը դադրեցաւ, ուրագն որոտաց... աղջիկն այս ետքինիս ինկաւ՝ մարմնով և հոգւով. Աստուած հետն ըլլայ:

Այս աղջկան տէրն էր Պ. Լըկրի, որ կարմիր գետոյն եզերքը բամպակի կալուածք

*մ՚ունէր։ Եմմէլինէն այն խումբին մէջ էր, ուր էին Թոմման և ուրիշ երկու գերիներ. և լալով բաժնուեցաւ հոն տեղէն։*

*Եմմէլինէին մայրը գնող վերոյիշեալ այն բարեսէր պարոնը շատ վշտացաւ. բայց այսպիսի դիպուածներ ամէն օր կը պատահին. ամէն օր կը տեսնենք որ մայրն իրեն զաւակէն կը բաժնեն. ճար չկայ։ Ինքն ալ իր ապրանքն հետն առած՝ ճամբայ ելաւ։*

*Նոր-Եօրքի վերոյիշեալ քրիստոնեայ վաճառականին գործակատարն երկու օրէն ետև դրամն իրեն ղրկեց։ Դաշնագրոյն ետև ահեղ Համարակալին այս խօսքերն ալ գրենք, որուն օր մը իրենք ալ համար պիտի տան։*

*Ի դատել զամբարիշտս՝ ոչ անտես արարեք զաղաղակ տառապելոց։*

---

# ԳԼՈՒԽ ԼԱ.

## Անցք

> *Սուրբ է ակն քո ի տեսանելոյ զչարիս, և հայել յաշխատութիւնս ոչ կարասցես։ Զմէ՞ հայեցար յարհամարհոտս և ըստունգանեցեր ի կլանել ամպարշտի զարդարն։*
>
> ԱՄԲԱԿ. Ա. 13։

*Թոմմաս պզտի խեղճ նաւու մը վարի կողմը նստեր էր, որ Կարմիր գետէն դէպ ի վեր կ'ելլէր։ Ձեռքը շղթայ, ոտքը շղթայ, բայց սրտին վրայ ալ աւելի ծանրագոյն շղթաներ կը կրէր։ Իրեն երկնքին երեսէն ամէն բան անհետացաւ. ոչ լուսին կը փայլէր և ոչ աստղ. ինչպէս հիմայ գետին ափունքներն ու ափանց վրայ ծառերը շուտ շուտ կը փախչին, այսպէս ալ ամէն յոյս և ակընկալութիւն իրմէ հեռացեր էին յաւիտեան։ Մնաս բարեաւ Քէնդըքի, մնաս բարով ագարակին տնակդ, մնացէք բարեաւ Քլոյէ, Մոզէս և Պիտրոս։ Վիրացաւ իրմէ Սէնթլէրի տանը բոլոր իր մեծագործութիւնն-*

րով ու զարդերով, վերացա՛ն իրմէ Վարդի-կին ոսկեփայլ գլուխն և անուշ նայուածք-ները, վերացաւ իրմէ այն կարիճ, զուար-ճախօս և գեղեցիկ Մէն—Քլէրը, որ արտա-քուստ անհոգ կ'երևար, բայց ներքուստ շատ բարեսիրտ էր. վերացան իրմէ հանգստեան և ազատութեան այն ժամերը, ու անոնց տեղը ի՞նչ փոխանակեցին...։

Գերութեան ամենադառն հետևանքներէն մէկն ալ այս է՝ որ գերի մը բնութեամբ զգայուն ու ամենուն հետ շուտով յարմա-րող, ազնիւ ընտանեաց մը մէջ ապրելէն ու անոնց բոլոր սովորութիւններն ու զգաց-մունքներն առնելէն ետև, ամէն վայրկեան վաճառքի մէջ է խիստ ու անասնաբարոյ տի-րոջ մը ստացուածք ըլլալու. ամենևին նման աթոռի մը կամ սեղանի մը՝ որ փառաւոր խուցի մը զարդ ըլլալէն վերջը՝ գործածուած ու հինցած աղտոտ պանդոկի մը և կամ անառակութեանց ախուր որջի մէկ անկիւնը կը ձգուի։ Բայց հոս տարբերութիւնն այս է՝ որ աթոռն և սեղանը բան մը չեն զգար, իսկ գերին կ'իմանայ և կը զգայ իրեն բնու-թեան դէմ եղած անպատուութիւնը. վասն զի այն օրէնքը որ զինքն իբրև կահ կարասի մը գնել և ծախել կը վճռէ, չի կրնար իրմէ

Հողին վերցընել և ոչ մաքէն իր յիշատակներն, ակընկալութիւնները, սէրը, փափագները և երկիւղը ջնջել։

Սիմոն Լըկրի, Թովմասին տէրը՝ Նոր-Օրլէանի այլ և այլ կողմերը ութը գերի գըներ էր, որոնց ձեռքը շղթայ զարկած և երկու երկու իրարու կապած էր, և Աւազակ (Pyrate) ըսուած շոգենաւուն մէջ դրած՝ կը պատրաստուէր Կարմիր գետէն վեր ի վեր ելլելու։

Շոգենաւուն մէջ գերիներն տղէկ մը տեղաւորցընելէն ետև՝ երբոր ճամբայ ելան, իրեն բնական գործունէութեամբ եկաւ գերիները մէյմը աչքէ անցընելու։ Թովմասին դիմացը կանգ առնելով՝ տեսաւ որ մաքուր հագուեր էր, կօշիկներն ալ փայլուն.

— Ոտք ելիր, ըսաւ անոր կոշտ կերպով և խստութեամբ մը։

Թովմաս ոտք ելաւ։

— Հանէ՛ այդ վզնոցդ։

Թովմաս որովհետև ձեռուընները շղթայակապ էր՝ չէր կրնար շուտ մը քակել վզնոցը, Լըկրի օգնութեան եկաւ, և կոպիտ կերպով քաշեց վզէն հանեց ու գրպանը դրաւ։ Ետքը գնաց Թովմասին սնտուկը բացաւ, զոր ուրիշ անգամ արդէն կողոպտեր էր, և

մէջէն հին վարտիք մը ու մաշած բաճկոն մը դուրս հանեց, զորոնք Թովմաս ախոռն աշխատելու ժամանակ կը հագնէր. և ձեռաց շղթաները քակելով՝ անոր անկիւն մը ցըցուց սնտուկներուն մէջտեղը։

— Գնա հոն հագիր առոնք, ըսաւ։

Թովմաս հնազանդեցաւ, և գնաց հագուեկաւ։

— Կօշիկներդ հանէ, ըսաւ Լըկրի։

Թովմաս հնազանդեցաւ։

— Հիմայ առոնք հագիր, ըսաւ Լըկրի, և զոյգ մը հաստ ու ամուր ոտքի աման առջևը նետեց։

Բայց այս արագ այլափոխութեանս մէջ ալ Թովմաս սիրելի Աստուածաշունչը չէր մոռցած հետն առնելու։ Աղէկ որ հետը մէկտեղ առեր էր. վասն զի Լըկրի՝ Թովմասին ձեռուըները նորէն շղթայի զարնելէն ետև՝ սկսաւ անոր հանած հագուստներուն գրպանները մէկիկ մէկիկ նայիլ։ Մետաքսէ լաթի մը կտոր գտաւ ու մէկէն իր գրպանը դրաւ. ետքէն քանի մը հատ ալ աղայական խաղալիք գտաւ, որոնք Վարդիկին ըլլալով Թովմաս խնամքով կը պահէր. զառոնք աչքէ անցընելէն ետև գետը նետեց՝ քթին տակէն մրմռալով։

Երգի տետրակ մ'ալ գտաւ, զոր Թուլմաս հագուստները շուտ շուտ փոխելու ատեն գրպանը մոռցեր էր։

— Հում... կ'երեւայ թէ շատ ջերմեռանդ ես։ Անունդ ի՞նչ է։ Ուրիշ քրիստոնեա՞յ ես, հա՞։

— Հրամեր ես, պարոն, ըսաւ Թուլմաս անհրկիւղ։

— Լաւ. քիչ ատենէն ես քեզի մոռցընել կու տամ։ Ես իմ կալուածներուս մէջ այնպիսի սեւեր չեմ ուզեր որ պոռան կանչեն, աղօթք ընեն, երգեն. ասոր աղէկ միտքդ պահէ։ Ուշ դիր ըսածներուս. վրայ բերաւ Լըկրի՝ ոտքը գետին զարնելով և խեղճ Թուլմասին վրայ կատաղի նայուածք մ'արձակելով. ասկէ ետեւ ես եմ քու կրօնքդ, հասկըցա՞ր. իմս ես, ինծի պէտք է որ հընազանդիս։

Թուլմասին սրտէն մէկը ոչ պատասխանեց, և այս անտեսանելի ձայնս շատ անգամ կրկնուելով՝ հին պատգամի մ'այս խօսքերս ալ լսեց նա, զոր Վարդուհին շատ անգամ իրեն կարդացեր էր. «Մի երկնչիր, զի ես փրկեցի զքեզ, յանուանէ կոչեցի զքեզ, իմ ես դու»։

Սիմոն Լըկրի ձայն մ'ալ չլսեց, և ոչ

ալ լսելիք ունի. քիչ մ'ատեն ալ գերւոյն յուսահատ ու տխուր երեսը նայեցաւ և ձըր-գից հեռացաւ։ Թուլմասին սնտուկն ալ հե-տը մէկտեղ տարաւ, որուն մէջ քանի մը կտոր մաքուր հագուստներ կային։ Երբոր տեսան նաւաստիները՝ մէկէն Լըկրիին չորս կողմն առին, և սկսան մէկը մէկալը Թուլ-մասին հագուստները գնել, և պարապ սըն-տուկն ալ աճուրդի հանեց։ Այս բանս ա-նոնց համար աղէկ խնտալու նիւթ մ'էր, և Թուլմասին երեսը նայելով՝ բարձրաձայն կը ծիծաղէին, վասն զի կը տեսնէին որ խեղճ մարդն այրած սրտով իրեն հագուստներուն ծախուելուն կը նայէր։

Մնացուկին աճուրդի ելլելն աւելի զուար-ճալի եկաւ իրենց, և սկսան բերաններնուն եկածն ըսել ու ծիծաղիլ։

Սիմոն այս պզտի առուտուրս ըմընցընե-լէն ետև, շուտ մ'իրեն ստացուածքին քովն եկաւ ու ըսաւ.

— Ի՛նչպէս որ տեսար, Թուլմաս, գէշ քու աւելորդ կարասիներէդ ազատեցի. Նայէ հագուստներուդ հոգ տանիս, վասն զի եր-կայն ատեն ձեռքդ ուրիշ հագուստ պիտի չանցնի. Ես մասնաւոր կատարելութիւն մ'ու-նիմ, որ սևերուն խնայող ըլլալ կը սովրե-

ցրնեմ։ Իմ կոլուածոցս մէջ հագուստ մը՝ ամբողջ տարի մը պիտի դիմանայ։

Սիմոն գնաց դէպի Եմմէլինէին կողմը, որ ուրիշ կնկան մը հետ կապուած էր։

— Քեզ տեսնեմ, ըսաւ երեսը շոյելով, ուրախ կեցիր։

Աղջիկն ակամայ սարսափած ու ատելութեամբ մը՝ երեսը նայեցաւ. Սիմոն այս բանս տեսնելով՝ ընկերներն ամփոփեց բարկութեամբ։

— Նայէ որ անուշ պէմքդ ինծի ցուցընես, աղջիկս, երբոր քեզի հետ խօսելու ըլլամ, հասկըցա՞ր։ Դուն ալ հինցած դեղինցած կաշի, ըսաւ Եմմէլինային հետ կապուած խառնածին կնկան, նայէ որ կերպըդ փոխես, երեսս նայէ, քեզի կ'ըսեմ։

Եւ քիչ մը ետև ետև քաշուելով,

— Ձեզի կ'ըսեմ, ըսաւ գերիներուն, ինծի նայեցէք, երեսս նայեցէք, աչուըներուս մէջ նայեցէք, և ամէն մէկ ըսելուն՝ ոտքը գետին կը զարնէր։

Ամէնքն ալ աչուընին Սիմոնին փայլուն ու կանաչագոյն աչուըններուն մէջ տնկեցին։

— Իսկ հիմայ այս բուռս կը տեսնէ՞ք, ըսաւ, ու դարբնի ուռան նման ահագին բուռը վեր վերցընելով, ասիկայ կը տեսնէ՞ք.

նայէ ծանր է, ըսաւ՝ Թովմասին ձեռքին վրայ դնելով. աղէկ նայեցէք սա ոսկորները, երկաթի պէս պնդացեր են գերիները ծեծելով։ Ինչուան հիմայ սև մը չեմ գտած՝ որ մէկ հարուածով ջախջախած չըլլամ, ըսաւ անոնց, ու ձեռքն այնպէս Թովմասին երեսին մօտեցուց՝ որ անիկայ վախէն ետ ետ քաշուեցաւ։ Ես ձեր վրայ գրուած խեղճ ողորմելի վերակեցուներուն վրայ ամենևին համարում չունիմ. ես անձամբ վերակեցութիւն կ'ընեմ, և աչքէս բան չի փախչիր, ապահով գիտնաք։ Բերանս բացածիս պէս՝ ամէնքնիդ ալ պատրաստ պիտի ըլլաք ըսածներս մէկէն ի գործ դնելու. այս կերպով միայն կրնաք աչքս մտնել. ինծմէ ամենևին աչք գոցել կամ չտեսնելու զարնել մի սպասէք։ Հասկըցա՞ք. սրտիս մէջ ամենևին գութ չունիմ ու չեմ ալ կրնար ունենալ։

Խեղճ կնիկները վախերնէն հազիւ թէ շունչ կրնային առնուլ, և ամէնքն ալ տխուր ու յուսահատ դէմքով առջևնին կը նայէին։ Սիմոն քովերնէն հեռացաւ ու գնաց գաւաթ մ'օղի անկեց։

— Ահաւասիկ ես այս կերպով գլուխ կ'ելլեմ իմ գերիներուս հետ, ըսաւ Սիմոն

քովի մէկուն՝ որ իրեն այն ճառախօսութիւնը մտիկ ըրեր էր. իմ ոճս է սաստիկ խօսութեամբ սկսիլ, որպէս զի ամէնքն ալ առաջուց գիտնան ընելիքնին։

— Իրա՛ւ կ՚ըսես, պատասխանեց օտարականը ուշի ուշով Լըկրիլին երեսը նայելով, նման այն բնապատումին որ կարգէ դուրս երեւութի մը վրայ զննութիւն կ՚ընէ։

— Հրամեր ես, ես այսպէս կ՚ընեմ։ Ես ձեր կնամարդի կալուածատէրներուն չեմ նմանիր, որոնց ձիուըները շուշանի պէս ճերմակ են, և իրենց խեղճ ողորմելի գործակալներէն կը խաբուին։ Իմ յօդուածներս մէյմը շօշափէ նայէ, բուռս նայէ, ասոնց միսը գերիներու վրայ գործածելէս քարի պէս պնդացեր են։ Շօշափէ, մէյմը տես։

Օտարականը մատով Լըկրիլին թեւը շօշափեց, և պարզութեամբ մ՚ըսաւ.

— Իրաւցընէ, բաւական պինդ են. և կ՚ենթադրեմ թէ վարժութիւնը սիրտդ ալ պնդացուցած պիտի ըլլայ։

— Ի՜նչ ըսել է, ատոր խօսք չկայ, պատասխանեց Սիմոն ծիծաղելով։ Շիտակը կարծեմ ինծի պէս քիչ զգացողութիւն ունեցող մարդ չի գտնուիր. քիթս մէկու մ՚ալ ձեռքը չեմ տուած. և գերիներս ալ ոչ ի-

րենց վարպետութիւններով և ոչ իրենց շո-ղոքորթութիւններով գլխ չեն կրցած հանել:

— Հոս սևերու լաւ խումբ մ'ունիս:

— Հրամեր ես. մանաւանդ սա Թով-մասը, զոր իբրև սակաւագին բան մը ին-ծի տուին. քիչ մը սուղի ալ նստաւ. իմ միտքս է զինքը կառավար կամ թէ աշխա-տող վերակեցու ընելու: Միայն պէտք է որ իրեն մտքին գաղափարները փոխէ. վասն զի իրեն մեծ պակասութիւնն է այնպիսի կերպ մը բռնել որ ամենուն գերւոյ մը չի վայ-լեր. ապա թէ ոչ շատ լաւ մարդ կ'երևայ: Իսկ այն դեղնորակ կինը վախեմ շատ պիտի չապրի, հիւանդոտ կ'երևայ, բայց կրցածիս չափ գինը կը նայիմ հանել. մէկ երկու տարի հազիւ կրնայ դիմանալ: Ես սովորու-թիւն չունիմ գերիներուն վրայ խնամք տա-նելու. կրցածիս չափ կը գործածեմ, և թէ որ մեռնելու ըլլայ՝ ուրիշ մը կը գը-նեմ: Ասով շատ հոգ ալ չի մնար ընելիք, և համոզուած ալ եմ որ եթէ հաշուի նստե-լու ըլլանք՝ կարծեմ այս կերպով աւելի շահաւոր կ'ելլեմ:

Աս խօսքին վրայ Լէկրի պուտ պուտ գա-ւաթ մ'օղի նորէն անկեց:

— Ընդհանրապէս որչափ կը դիմանան գերիները, հարցուց օտարականը:

— Շիտակը՝ աղէկ չեմ գիտեր. այս բանը իրենց կազմուածքէն կը կախուի։ Զօրաւոր կազմուածք ունեցողները վեց եօթը տարի կը դիմանան. իսկ տկարները երկու երեք տարիէն աւելի չեն դիմանար։ Սկզբան շատ կ'աշխատէի կեանքերնին երկարելու. երբոր կը հիւանդանային՝ դեղեր կու տայի, հագուստ է, ճերմակեղէն է, ծածկոյթ է, ա՛լ ինչ գիտնամ ամէն բան իրենց կը ճարէի. որպէս զի վայելուչ ու մխիթարեալ կեանք մ'ունենան. բայց այս ամէն բաներս ինծի շատ սուղի կը նստէին, և վրայէս ալ հոգ պակաս չէր ըլլար։ Բայց հիմայ, ինչպէս որ կը տեսնես, հիւանդ կամ առողջ՝ զամէնքն ալ առաջ կը մղեմ։ Երբոր սևերէն մէկը մեռնի՝ ուրիշ մը տեղը կը գնեմ, և ամէն կողմանէ կը տեսնեմ որ այս կերպս աւելի դիւրին ու աւելի շահաւոր է։

Օտարականը կռնակը դարձուց գնաց ուրիշ պարոնի մը քով նստաւ, որ բոլոր այս խօսակցութիւններս զայրացմամբ մտիկ ըրեր էր։

— Պարո՛ն, ըսաւ օտարականին ատոր, պէտք չէ այս մարդէն չափես բոլոր հիւսիսակողման կալուածատէրները։

— Ես ալ այնպէս կը յուսամ, պատասխանեց երիտասարդ ճանապարհորդը։

— Անիկայ վատ, գարշելի և կատաղի մարդուն մէկն է, ըսաւ առաջինը։

— Այսու ամենայնիւ ձեր օրէնքները թող կու տան որ խել մը մարդկեղէն արարածներ ատոր կամացը բռնաւորական իշխանութեան տակ հեծեն, առանց մէկ պաշտպանութեան մը յոյս ունենալու. և որչափ ալ այդ մարդը գարշելի ու վատ համարիս՝ չես կրնար ըսել թէ այս արուեստին մէջ ինքն է միայն այսպէս, ուրիշներն ալ այսպէս չեն։

— Իրաւ է, պատասխանեց առաջինը. բայց կալուածատեարց մէջ շատեր ալ կան որ գթած ու մարդասէր են։

— Թող ըսածիդ պէս ըլլայ, ըսաւ երիտասարդը, բայց ըստ իմ կարծեացս՝ դուք որ գթած և մարդասէր մարդիկ կը համարուիք և ազդեցութիւն ալ ունիք, դուք պատասխանատու էք այս խեղճերուն դէմ եղած անգթութեանց ու անիրաւութեանց, վասն զի առանց ձեր յայտնի հաւանութեան ու ձեր ցուցած ազդեցութեան՝ այս բանս և ոչ վայրկեան մը կրնար դիմանալ։ Թէ որ բոլոր կալուածատէրներն այս մարդուս պէս ըլլային՝ մատովը Լըկրին ցուցընելով՝ որ կռնակն իրենց դարձուցեր էր, այս ամէն

բաները կը ջնջուէին ու անհետ կ'ըլլային։ Ձեր մարդասէր ու գթած կերպն է՝ որ այսպիսի գազանամիտ մարդկանց համարձակութիւն կու տայ։

— Կ'երեւայ թէ վրան մեծ համարում ունիս, ըսաւ ծիծաղելով կալուածատէրը. բայց խորհուրդ կու տամ որ այդպէս բարձր ձայնով չխօսիս, վասն զի այս նաւուս մէջ այնպիսի մարդիկ կրնան գտնուիլ որ ինծի պէս քու կարծիքներուդ աչք չեն գոցեր։ Սպասէ քիչ մ'ալ՝ ինչուան իմ կալուածներս հասնինք. հոն կրնաս ուզածիդ չափ դէշ խօսիլ մեր վրան։

Երիտասարդ պարոնը կարմրեցաւ ու սկսաւ ծիծաղիլ, ու երկուքը մէկտեղ սատրինճ խաղալու նստան։

Ասոնց խօսելու ատեն՝ նաւուն մէկալ ծայրը ուրիշ խօսակցութիւն մը կ'ըլլար Եմմէլինային ու իրեն կապուած խանըմծին կնկան մէջ. մէկը մէկուն՝ ինչպէս սովորաբար կը պատահի՝ իրենց պատմութիւնը կը պատմէին։

— Դուն որո՞ւն քովն էիր, հարցուց Եմմէլինա։

— Իմ տէրս Եըլիս կ'ըսուէր, Լէյլի թաղը կը բնակէր, գուցէ տունը տեսար։

— Քեզի հետ աղէկ կը վարուէ՞ր, հարցուց Եմմէլինա։

— Հրամեր ես, բայց վրան հիւանդութիւն մ'եկաւ ու բնութիւնը բոլորովին փոխուեցաւ։ Վեց ամիս՝ գիշեր ցորեկ մէկն ալ հանգիստ չթողուց, ամենուն վրայ ալ պակասութիւն կը գտնէր, և մարդ մ'ալ չկար որ զինքը գոհ ընէր։ Օր աւուր վրայ աւելի անտանելի եղաւ, և բոլոր գիշերները զիս քովը արթուն կը պահէր։ Քիչ առնէն ամէն ուժէ ինկայ և չկրցայ քունի դէմ դնել. և որովհետև օր մ'ալ զիս քունս տարած գըտաւ՝ սաստիկ բարկացաւ ինծի, և սպառնացաւ որ զիս խիստ տիրոջ մը ծախէ. վերջը խոստացաւ որ զիս ազատէ, բայց մահը վրայ հասնելով՝ առաւ տարաւ զինքը։

— Բարեկամ ունէ՞ր, հարցուց Եմմէլինա։

— Երիկս ունէի, որ դարբին է. սովորաբար տէրս զինքը դուրս վարձու կու տար։ Զիս այնպէս շուտ յափշտակեցին՝ որ ժամանակ չունեցայ զինքը մէյմ'ալ տեսնելու, չորս հատ ալ զաւակ ունիմ։ Ո՜հ, տէր Աստուած իմ, հառաչեց խեղճ կնիկը՝ ձեռուըներովը երեսը գոցելով։

Ցաւալի պատմութիւն մը լսողը սովորա-

բար բնական ազդեցութիւն մը կ'ունենայ քանի մը մխիթարական խօսքեր գտնելու։ Եմմէլինա ալ կը փափաքէր քանի մը մխիթարական խօսքեր ըսել, բայց չէր կրնար գտնել։ Եւ ի՞նչ կրնար ըսել։ Լռին ու գաղտնի միաբանութեամբ մը երկուքն ալ զգուշացան այն զարհուրելի մարդուն վրայ խօսք բանալու, որ իրենց տէրն եղեր էր։

Միայն կրօնքն է որ այսպիսի տխուր վայրկեաններուն մէջ ալ մխիթարութիւն մը կը գտնէ։ Խառնածին կինը քրիստոնեայ էր, և թէպէտ կրօնական բաներուն մէջ շատ ուսեալ չէր, սակայն անկեղծ բարեպաշտութիւն մ'ունէր։ Եմմէլինային վրայ աւելի հոգ տարուած էր. կարդալ գրել գիտէր, և իրեն բարեպաշտ ու ազնիւ խաթունը կրօնական դաստիարակութիւն մը տուեր էր իրեն։ Այսու ամենայնիւ հաստատուն հաւատքով քրիստոնէի մը համար ալ՝ դժուարին փորձութիւն մը չէ՞ արդեօք տեսնել ինքզինքը, գէթ առ երևոյթս, Աստուծոյ երեսէն ինկած ու պաղ բռնութեան տակ ընկճուած։ Ո՛րչափ ևս առաւել այսպիսի փորձութիւն մը չի՞ դրդուեցըներ արդեօք խեղճ քրիստոնէի մը հաւատքը՝ որ չափաւոր գիտութիւն ալ չունի, ու տղայ է հասակաւ։

Շոգենաւն այս ցաւակին բեռներով ծան-րացած՝ կաւագոյն ու տղմուտ գետին վրա-յէն առաջ կ'երթար։ Խել մը տխուր աչքեր՝ իրենց հոգնած նայուածքը գետին սեւեռած՝ մթագոյն կաւէ ափանցը վրայ կը դարձը-նէին, որոնք հետզհետէ կը փախչէին։ Վեր-ջապէս շոգենաւը պզտի քաղաքի մը դիմաց կանգ առաւ, ուր Լըկրի իր գերիներով ցա-մաք ելաւ։

## ԳԼՈՒԽ ԼԹ.

### Տխուր տեղուանք

Թովմաս ու իր ընկերները մասամբ նե-ղութեամբ սայլի մ'ետևէն կ'երթային. ճամ-բան ալ շատ անհարթ էր։ Սիմոն Լըկրի կառքը նստեր էր, և այն երկու կնիկներն իրարու կապուած միշտ, կառքին ետևը խառ-նափնդոր բեռներուն հետ դրեր էր. և ա-մէնքը մէկտեղ դէպ իրեն կալուածները կ'եր-թային, որ անկէ շատ հեռու էր։

Այս ճամբան անապատ ու անկոխ էր, և երբեմն անմշակ դաշտերու մէջէն կ'անցնէր, ուր բարձր եղևին ծառեր բուսած էին, ո-

րոնց մէջէն քամին հեծելով կը սուլէր. ու երբեմն ալ մանր թուփերով պատած՝ ճախճախուտ տեղերէ կ'անցնէր, ուր բարձր նոճիներն իրենց մութ կատարքը մինչև յամպս կ'ամբառնային, ճիւղերը սև մամուռէ պսակներով զարդարուած էին. գետինը տեղ տեղ ծառերու կոճղերով ու մացառներով ծածկուած էր, որոնք օձերու բնակարան էին, և հոն թացութեան մէջ կը փտտէին։

Այսպիսի ճամբաները տխուր ու ամայի կ'երևան այն ճանապարհորդին ալ՝ որ քսակը ոսկիով լեցուն, աղէկ ձիու մը վրայ հեծած՝ աճապարելով կ'անցնի իր գործերուն կ'երթայ. բայց ո՛րչափ աւելի սոսկալի կ'երևայ շղթայակապ գերիի մ'աչքին, երբոր կը մտածէ թէ ամէն մէկ քայլ առնելուն ու առաջ երթալուն՝ ա՛լ աւելի կը հեռանայ իւր սիրելիներէն։

Ո՛վ չէր կրնար իմանալ այս խեղճերուն ունեցած ցաւը, երբոր դիտէր այն գունաթափ երեսներուն վրայ նկարուած յուսահատութիւնն ու համբերատար տրամութիւնը, որով իրենց ցաւալից աչուըներն այս թշուառ ճամբորդութեան մէջ պատահած առարկաներուն վրայ կը դարձընէին։

Ընդհակառակն Սիմոն ամենևին ուրիշ

մատածութիւն չունէր, և երբեմն երբեմն օգիին շիշը գրպանէն հանելով՝ պուտ պուտ բերանը կը թրջէր։

— Ծօ՛ տղաք, ըսաւ ետին դառնալով և գերիներուն ախուր կերպը տեսնելով, ձեզ տեսնեմ՝ երգ մ'երգեցէք որ ես ալ մտիկ ընեմ, հա՛ նայիմ։

Գերիներն իրարու երես սկսան նայիլ։

— Ձեզ տեսնեմ, շո՛ւտ ըրէք, պոռաց նորէն Լըկրի՝ խարազանը շառաչեցընելով։

Թովմաս Հոգևոր երգ մը սկսաւ.

Երուսաղէմ, ո՛վ ցանկալի հայրենիք,
Յանուշն քո քաղցր հուշի սիրտ իմ անձ-
(կայրեաց.
Ե՞րբ լրեսցեն դարըն մեր կեանք և յա-
(շիք.
Ի քում խորան . . . .

— Լո՛ւռ կեցիր, ձայնդ քեզի քաշէ, անիծած ծեր, պոռաց Լըկրի բարկութեամբ. ի՞նչ կը կարծես, միթէ ես այդ քու դժոխային երգերո՞ւդ կարօտութիւն ունիմ։ Զուարճալի բան մ'երգեցէք, հա՛ տղաք ձեզ տեսնեմ։

Անդիէն մէկալ գերիներէն մէկը սկսաւ

անիմաստ երգ մ՚երգել, որ սեերուն մէջ սովորական է.

Ձեռքըս ձագար մը առէս երբ զիս տեսնուս
Երէկ իրիկուն,
Այն ո՛րչափ խնդաց, կարծես մարեցաւ.
Լուսինն է փայլուն.
Ծօ՛, տղաք, թռէք դուք, պար բռնած թռէք
Միաբան թռէք:

Այս երգիչը առանց իմաստին ուշ դնելու՝ միայն յանգին նայելով կը ջանար յանկարծական նոր բաներ ստեղծելու. և բոլոր մէկալ գերիներն ալ ընդհատ ընդհատ աս տողերը կը կրկնէին.

Ծօ՛, տղաք, թռէք դուք, պար բռնած թռէք
Միաբան թռէք:

Սաստիկ աղաղակաւ կ՚երգէին, և իրենք զիրենք կը բռնադատէին ուրախ զուարթ ցուցընելու. բայց ոչ յուսահատութեան հառաչանքներն և ոչ ալ եռանդագին աղօթից խօսքերը՝ չէին կրնար այս վայրենի երգին եղանակէն աւելի այսպիսի խորին ցաւ մը բացատրելու: Կարծես թէ այս համր խեղճ

սրտերն՝ սպառնալեաց և շղթայից տակ ճըմլած, երաժշտութեան սահմանները կ'ապաւինէին, և հոն իրենց լեզու մը կը գտնէին առ Աստուած ամբառնալու իրենց սրտին տառապանքները: Անիկայ աղօթք մ'էր՝ որ խեղճ սրտերէ առ Աստուած կը վերանար, զոր Լըկրի չէր կրնար հասկընալ: Ինքը միայն անոնց ձայնն ու աղաղակը կը լսէր, և կը զուարճանար, և կը կարծէր թէ գերիներուն վրայ զուարթութիւն բերաւ:

— Ահա, սիրելիս, ըսաւ Լըկրի՝ Եմմէլինային դառնալով ու ձեռքն անոր ուսին վրայ դնելով, տուն հասնելու քիչ մնաց:

Երբոր Լըկրի կը բարկանար ու կը հայհոյէր՝ Եմմէլինա կը սարսափէր. բայց երբոր ձեռքը վրան կը դնէր ու այս կերպով հետը կը խօսէր, աւելի կ'ընտրէր ծեծ ուտել՝ քան թէ անոր այն անուշ կերպը տեսնել: Լըկրիին նայուածքէն դող կ'ելլէր ու մազերը կը տնկուէին. առանց ուզելու ետ ետ քաշուեցաւ ու խառնածին կնկան քով կծկեցաւ, իբր թէ անիկայ իր մայրն ըլլար:

— Դուն ամենևին օղ գործածած չունի՞ս. հարցուց Լըկրի՝ կոշտ ձեռուըներով անոր ականջին ծայրէն բռնելով:

— Չէ, պատասխանեց Եմմէլինա՝ դողալով ու դէպ ի գետին նայելով:

— Լաւ ուրեմն, կրկնեց Լըկրի, տուն հասնելնուս պէս՝ ես քեզի զոյգ մը օղ կու տամ, բաւական է թէ դու աղէկ ըլլաս։ Այնչափ մի՛ վախեր, ես զքեզ ծանր աշխատութիւններու տակ հոգնեցընելու միտք չունիմ։ Ինծի հետ երջանիկ կ'ըլլաս, ու խաթունի մը պէս կ'ապրիս, միայն թէ աղէկ ըլլաս։

Լըկրի այնչափ խմեց որ կամաց կամաց կարծես թէ առջի դաժանութիւնը վրայէն փարատեցաւ։ Հեռուէն սկսան իրեն կալուածները ալ տեսնուիլ. ատենօք ասոնք հարուստ ու կիրթ ճաշակ ունեցող պարոնի մ'էին, որ շատ խնամքով զարդարեր էր։ Պարտքի տակ մեռած ըլլալով՝ զանոնք բոլոր Լըկրի գնեց, և ուրիշ վախճան չունէր այս բանիս մէջ, բայց եթէ քանի մը դրամ աւելի շահելու. անոր համար ալ հիմայ ամէն բան աւերակ դարձեր էին, և խնամքով զարդարուած այն տեղերն՝ երեսի վրայ թողուեր էին։

Տանը դիմացի կանաչազարդ ու թաւիշի նման գորգի մը պէս ընդարձակ դաշտը, որուն մէջ ատենօք ցրիւ ասդին անդին գեղեցիկ թփեր զարդ կ'ընէին, հիմայ խառնափնդոր խոտեր բուսեր երկընցեր են։ Այն

վարդարուն ծառերուն տեղը՝ ձի կապելու ցիցեր անկուած էին, և չորս կողմն ալ մայիզի յարդով ծածկուած կամ թէ ուրիշ աղտեղութիւններով։ Կործանած խոյակներուն մէջէն դեռ թարշամեալ գլուխնին կ'ամբառնային յասմիկն ու այծախոտը։ Այն գեղեցիկ ու ընդարձակ պարտէզը՝ բոլոր վայրենի ու անպիտան խոտերով ծածկուեր էր, որոնց մէջ դեռ քանի մ'օտար կլիմայի բոյսեր մոռցուած մնացեր էին։ Այն ջերմանոցը ողջ պատուհան մ'ալ չունէր, և իրեն փտտած պատուանդաններուն վրայ դեռ քանի մը թաղար մնացեր էին, որոնց մէջի չորցած ճիւղերէն ու տերևներէն կ'իմացուէր որ ատենօք հին ազնիւ բոյսեր կը պահուէին եղեր։

Կառքը քարուտ ու անպիտան խոտերով ծածկուած ճամբայ մը մտաւ, որ ատենօք ուղղապատ էր, երկու կողմանէ ալ կարգաւ Զինաստանի ծառեր կային, որոնց գեղեցիկ ձևը և մշտադալար տերևները միայն այն տխուր ամայութեան մէջ դեռ անաղարտելի և անփոփոխ մնացեր էին. Նման այն ազնուախոհ սրտերուն, որոնց մէջ առաքինութիւնն այնչափ խորին արմատ արձակեր է, որ ինչ և իցէ դժբախտութիւն ու չարիք չեն կրնար խախտել անիկէ։

Տունն ատենօք մեծ ու գեղեցիկ էր, և ընդհանրապէս հարաւակողման շէնքերուն ոճովը շինուած. բոլոր շէնքին չորս կողմը երկու կարգ հովանոցներ կային, որոնց վրայ կը բացուէին վրան դռները, և ստորին կարգի հովանոցն՝ աղիւսեայ սիւներու վրայ շինուած էր։

Բնակութիւնը տխուր ու ամայի տեսարան մը կ'ընծայէր. պատուհաններէն շատերը տախտակով փակուած էին, ոմանց ալ ապակիները կոտրուած, և փեղկերն ալ մէկ մէկ ծխնիի վրայ կեցած. վերջապէս ամէն բան երեսէ ձգուած, և վերջին աստիճանի խեղճութեան մը մէջ կ'երևնային։

Ամէն կողմ տախտակի կտորուանքներ, կոտրտած ամաններ ու հինցած արկղներ կը վխտային։ Երեք չորս հատ ալ կատաղի շներ՝ կառքին ձայնը լսելով՝ մէկէն դուրս վազեցին, և անոնց ետևէն վազող պառաւած հագուստով սևերն՝ հազիւ կրցան արգիլել զանոնք որ Թովմասին ու անոր ընկերաց վրայ չյարձակին։

— Տեսէք, ինչ բարեկամներ ունիք, ըսաւ Լըկրի՝ շները սիրելով՝ Թովմասին ու անոր ընկերացը, տեսէք թէ որոնց հետ պիտի խաղաք թէ որ փախչիլ ուզենաք։ Ա-

սոնք սեւերն ոլսալու աղէկ վարժած են, ձեզմէ ո՛վ ալ ըլլայ՝ իրենց կերակուրին պէս կը լափեն. ուստի աչուընիդ չորս բացէք։ Հիմայ ըսէ տեսնեմ, Սամպոյ, դարձաւ հարցուց սեւի մը՝ որ պատըռտած զգեստներով ու աղտոտ և հինցած գլխարկ մըն ալ գլուխը՝ տիրոջը դիմացը կեցած՝ կարգէ դուրս գործունէութիւն կ՚ուզէր ցուցընել. Նայինք, ըսաւ, հիմայ իմ հոս չեղած ատենս մեր բաներն ինչ ջուրի վրայ էին։

— Շա՛տ լաւ, շատ աղէկ վիճակի մէջ են, պարոն։

— Քուիմպոյ, ըսաւ Լըկրի ուրիշ գերիի մը դառնալով՝ որ ամէն ջանք կ՚ընէր իր տիրոջ աչքն իր վրան ալ դարձընել տալու. քեզի ըրած յանձնարարութիւններս միտքդ պահեցի՞ր։

— Հրամեր ես, պարոն. ինչ ըսել է։

Այս երկու սեւերը, Սամպոյ և Քուիմպոյ, Լըկրիին կալուածոց գլխաւոր գերիներն էին։ Լըկրի իրեն շներուն պէս զասոնք ալ վայրենութեան ու գազանութեան վարժեցուցեր էր, և երկայն ատեն կրթելով՝ զանոնք ալ շներուն հաւասար կատաղի ըրեր էր։ Շատ անգամ դիտուած է որ սեւ վերակեցուները միշտ ճերմակներէն ա-

ւելլի բռնաւոր ու անգութ կ'ըլլան։ Եւ այս ուրիշ բանէ առաջ չի գար՝ բայց եթէ սեւը ճերմակէն աւելի ընկճուած ու հարստահարուած ըլլալէն։ Այս բանս ամէն ընկճուած ու հարստահարեալ ցեղերու վրայ յայտնի կը տեսնուի։ Գերի մը երբոր բռնաւորութեան պաշտօնի մը մէջ գրուի՝ միշտ բռնաւոր կ'ըլլայ։

Լըկրի՝ պատմութեանց մէջ յիշուած քանի մը բռնաւորներու պէս, իր կալուածքը իրարու հակառակ ընդդիմամարտ զօրութիւններով կը կառավարէր։ Սամպոյ և Քուխսպոյ զիրար սրտանց սաստիկ կ'ատէին. միւս գերիներն ալ իրենց սրտերնուն խորը սաստիկ ատելութիւն կը կրէին թէ՛ մէկին և թէ՛ մէկալին դէմ. անոր համար Լըկրի ապահով էր որ զասոնք մէկ մէկու դէմ գործածելով՝ ինչ կ'ըլլար չէր ըլլար՝ բոլորն ալ կ'իմանար։

Մարդ ընկերական հաղորդակցութենէ դուրս չի կրնար ապրիլ. այն պատճառաւ Լըկրի ալ իրեն այս երկու սեւ արբանեակներուն մէջ տեսակ մը պաղ ընտանութիւն կը ջանար սնուցանել. այնպիսի ընտանութիւն՝ որ վայրկեանէ վայրկեան կրնար երկուքին մէկուն թշուառութեանց դուռ բա-

— Տէր իմ, ըսաւ, ես իմ էրիկս Նոր-Օրլէան Թողուցի:

— Ի՞նչ կ'ըլլայ եղեր... Հոս ուրիշ մ'ալ պէտք չէ՞ քեզի... կարճ կապէ, գնա բանդ, ըսաւ Լըկրի՝ խարազանը շարժելով:

— Դու ալ, խաթունիկ, ըսաւ Եմմէլինային, հոս ինծի հետ եկուր:

Այս միջոցիս տանը պատուհանէն դաժան ու վայրենի դէմք մ'երեւցաւ, և երբոր Լըկրի դուռը բացաւ՝ ներս պիտի մըտնէր, բարկութեամբ զայրացած կնկան մը ձայնը լսուեցաւ: Թոմաս՝ որ մասնաւոր կարեկցութեամբ Եմմէլինային ետեւէն կը նայէր, երբոր անիկայ տանը դռնէն ներս կը մտնէր, լսեց որ Լըկրի բարկութեամբ կ'ըսէր. — Դու ձայնդ քեզի քաշէ. ես ինչ որ կ'ուզեմ այն կ'ընեմ:

Թոմաս ուրիշ խօսք չկրցաւ լսել, վասն զի պէտք եղաւ որ Սամպոյին ետեւէն գերեաց բնակութիւնն երթայ: Այս ըսած բընակութիւններս տանէն բաւական հեռու՝ դիմացէ դիմաց երկու կարգ տխուր ու խեղճ խրճիթներ էին. ասոնց երեւոյթը Թոմասին վրայ ցաւալի տպաւորութիւն մ'ըրաւ. ինքն ալ յուսով մխիթարուեր էր որ գոնէ չափաւոր տնակ մը տան իրեն, որուն ար-

նալ. վասն զի ոչինչ գրգռմամբ մը և տիրոջը նշան մը տալուն՝ պատրաստ էր մէկը մէկալին վրայ ելլել ու տիրոջը վրէժխնդրութեան գործիք մ՚ըլլալ։

Այսպէս Լըկրիին գինացը կեցած ատեններին՝ մարդ կրնար անոնց վրայ յայտնի տեսնել այս խօսքիս ճշմարտութիւնը՝ թէ անբանացեալ մարդը անասուններէն ալ աւելի անբան կ՚ըլլայ։ Իրենց կոշտ և տխուր ու խիստ կերպարանքը, նախանձոտ ու չարասրտութեամբ լի աչուըները, հաստ ու կոկորդային ձայներնին, որ ամենուն մարդու ձայնին չէր նմանիր, և պատառոտուն հագուստնին՝ որ հովէն կը ծածանէին, իրենց չորս կողմն եղած աղտեղի ու պըժգալի տեսարանին հետ շատ աղէկ յարմարութիւն ունէին։

— Սամպոյ, ըսաւ Լըկրի, սա մարդիկն իրենց բնակութիւնը տար. ահա այս կնիկն ալ քեզի համար գնեցի, ըսաւ ու խառնածին կինը Եմմէլինայէն բաժնեց, և դէպ ի Սամպոյին առջեւ քշեց։ Միտքդ կու գա՞յ, երթալու ժամանակս քեզի կին մը խոստացեր էի։

Խեղճ կնիկը զարհուրած՝ ետ ետ քաշուեցաւ։

— Տէր իմ, ըսաւ, ես իմ էրիկս Նոր-Օռլէան թողուցի։

— Ի՞նչ կ'ըլլայ եղեր... հոս ուրիշ մ'ալ պէտք չէ՞ քեզի... կարճ կապէ, գնա բանդ, ըսաւ Լըկրի՝ խարազանը շարժելով։

— Դուն ալ, խաթունիկ, ըսաւ Եմմէլինային, հոս ինծի հետ եկուր։

Այս միջոցիս տանը պատուհանէն դաժան ու վայրենի դէմք մ'երեւցաւ, և երբոր Լըկրի դուռը բացաւ՝ ներս պիտի մըտնէր, բարկութեամբ զոյրացած կնկան մը ձայնը լսուեցաւ։ Թոմմաս՝ որ մասնաւոր կարեկցութեամբ Եմմէլինային ետեւէն կը նայէր, երբոր անիկայ տանը դռնէն ներս կը մտնէր, լսեց որ Լըկրի բարկութեամբ կ'ըսէր. — Դուն ձայնդ քեզի քաշէ. ես ինչ որ կ'ուզեմ այն կ'ընեմ։

Թոմմաս ուրիշ խօսք չկրցաւ լսել, վասն զի պէտք եղաւ որ Սամպոյին ետեւէն գերեաց բնակութիւնն երթայ։ Այս ըսած բընակութիւններս տունէն բաւական հեռու՝ դիմացէ դիմաց երկու կարգ տխուր ու խեղճ խրճիթներ էին. ասոնց երեւոյթը Թոմմասին վրայ ցաւալի տպաւորութիւն մ'ըրաւ. ինքն ալ յուսով մխիթարուեր էր որ գոնէ չափաւոր տնակ մը տան իրեն, որուն ար-

տաքին տեսքը թէ և կուշտ ալ ըլլայ՝ ինքը կարգի դնէ ու մաքուր և խաղաղ բնակարան մը կազմէ իրեն համար, ուր դարան մը ունենայ Աստուածաշունչը դնելու, և օրական աշխատութիւններէն ետև միայնութիւն ու հանգիստ գտնէ։ Ասոնցմէ շատը գիտեց, տեսաւ որ բոլորն ալ դատարկ խրճիթներ են, և ուրիշ կահ կարասի չունին՝ բայց եթէ աղտեղութիւններով լեցուն կոյտ մը յարդ գետնին վրայ խառնափնդոր ցրուած. և գետինն ալ հոն բնակող անթիւ տոտապելաց ոտնակոխ ըլլալէն բոլորովին քար դարձեր պնդացեր էր։

— Այս խրճիթներէն որն է իմս, հարցուց խոնարհաբար Սամպոյին։

— Ես ալ չեմ գիտեր, ինծի կ՚երեւայ թէ հոս կրնաս մտնել, ըսաւ Սամպոյ։ Կարծեմ անդին ուրիշ պարապ խրճիթներ ալ կան. ասոնց ամէն մէկուն մէջ բաւական սեւեր կան. ես ալ չեմ գիտեր թէ այս նոր եկողները որ ծակը խոթեմ։

Իրիկունը կոխեր էր, ժամանակն ուշ էր. գերիներն յոգնած դադրած, արք և կանայք իրենց խրճիթները կը դառնային, հակուստնին աղտոտ ու պատառոտուն, երես-

նին տխուր ու կախած, և նոր եկող հիւրերուն և ոչ բարեւ մը տալու կամք ունէին։ Բոլոր այս պզտի գիւղին մէջ արտախական ձայն մը չէր լսուիր. միայն ձեռքի ջաղացքներուն քով կերկերեալ ու կոկորդախօս ձայներ կը վիճէին իրենց մայրիկն աղալու, որոնք զի երեկոյեան կերակուրնին պատրաստեն։ Առաւօտուընէ մինչեւ իրիկուն դաշտերուն մէջ աշխատեր էին իրենց վերակացուին խարազանին տակ։ Վասն զի տաք եղանակն հասեր էր ու բամբակ ժողվելու ատենն էր, և ամէն միջոց ի գործ կը դրուէր որ ամէն մէկ գերիէն լաւ կարելույն օգուտ քաղուի։

Բայց բամբակ քաղելը, պիտի լսէ պարապորդ քաղաքացւոյն մէկը, շատ ծանր աշխատութիւն մը չէ։ Այնպէս կը կարծես. բայց գլխուդ վրայ կաթիլ մը ջուր կաթիլը խիստ ու ծանր բան մը չէ. և սակայն ատեն մը՝ յանցաւորաց տրուած ամենէն անգութ տանջանքն էր՝ ամբաստանեալին գլխուն վրայ մի և նոյն տեղը կաթիլ կաթիլ ջուր կաթեցընել ընդհատ ընդհատ՝ բայց միակերպ։ Ամենէն թեթեւ աշխատութիւնն ալ ամենածանր կ՚ըլլայ՝ երբոր մարդ պարտաւորուի առանց շունչ մ՚առնելու, ան-

փոփոխելի և հարկեցուցիչ կարգաւ մը կատարելու զայն, մտածելով որ ամենեւին կարող չէ ինքզինքն անկէ խալըսելու։ — Ջուր տեղը Թուլմաս քոլէն անցնող գերեաց խումբին մէջ իրեն կարեկիր դէմք մը կը փնտռէր։ Բոլոր տեսածները տխուր, աղտոտ ու անբան պարձած մարդիկ էին. կնիկներն ալ տկար, վհատեալ, կամ թէ իրենց կանացի բնութենէն դուրս ելած էին. զօրաւորներն զտկարները կը մղէին. մարդուս անձնահաճ կամքն և անսահման շահասիրութիւնը, որոնցմէ բարւոյ մը յոյս և ակնկալութիւն չի կրնար ըլլալ, մարդկեղէն արարածներն անբանի հաւասարեցուցեր էին։ Ջեռքի ջաղացքները գրեթէ ինչուան կէս գիշեր կը ճռնչէին, վասն զի գերիներուն բազմութեանն համեմատ աղոնք շատ սակաւաթիւ էին, ուստի տկարներն և ուժէ ինկածները զօրաւորներէն ետեւ կը մղուէին, որով ամենէն վերջը կը մնային։

— Ահաւասիկ քեզի ալ, ըսաւ Սամպոյ՝ խառնածին կնկան մօտենալով ու դիմացը պարկ մը մայիզ նետելով. անունդ ինչ է, ըսէ՛ տեսնեմ։

— Լուչիա է, պատասխանեց կնիկը։

— Լաւ ուրեմն, Լուչիա, դուն հիմայ իմ կինս ես. գնա սա մայիզն աղա ու ինծի ընթրիք պատրաստէ. իմացա՞ր։

— Ես քու կինդ չեմ. և չեմ ալ ուզեր ըլլալ, պատասխանեց խեղճը՝ յանկարծական արիութեամբ և յուսահատ կերպով մը։ Գնա քալէ։

— Այնպէս. ես քեզի կը հասկըցընեմ, ըսաւ Սամպոյ՝ սպառնալով ու սուքը վեր վերցընելով։

— Թէ որ կ՚ուզես զիս կրնաս սպաննել ալ... և ո՛ւր էր թէ շուտ մը զիս սպաննէիր. լաւ է մեռնիլ քան թէ այս կեանքս, ըսաւ կինը։

— Սամպո՛յ, պարապ տեղը քու ցած վարմունքովդ գերիները նեղը կը խոթես, հիմայ կ՚երթամ տիրոջս կ՚ըսեմ, պոռաց ներսէն Քուիմպոյ, որ քանի մը տկար և յոգնած կնիկներ դուրս վռնտելով ջաղացքէն՝ իրենց կարգն առեր ինքը կ՚աղար։

— Ես ալ կ՚ըսեմ թէ դուն ալ կ՚արգելուս կնիկները ցորեննին աղալէն, ըսաւ Սամպոյ, և կարգին չես սպասեր։

Թովման այն երկայն ճամբորդութենէն յոգնած՝ անօթի սիրտը կը մարէր։

Ու քեզի ալ, ըսաւ Քուիմպոյ՝ Թովմասին առջեւ հաստ պարկով չափ մը մայիզ նետելով. ա՛ռ ասիկայ, և նայէ որ խնայութեամբ գործածես, վասն զի բոլոր շաբաթը պիտի բաւեցընես։

Թովմաս երկայն բարակ սպասեց որ ջաղացքներուն մէկուն իրեն ալ կարգը գայ. և տեսնելով որ երկու կնիկ բոլորովին ուժէ ինկած ու յոգնած՝ չէին կրնար աղալ, գութը շարժեցաւ, ու իրենը ձգած՝ նախ անոնց մայիզն աղաց, և կէս մարած կրակն ալ արծարծեց, որուն վրայ ուրիշներն հացերնին եփեր էին, և այս խեղճերուն համար ալիւրը պատրաստելէն ետեւ՝ իրեն մայիզն աղալու ձեռք զարկաւ։

Սիրոյ գործ մը՝ որչափ ալ պզտիկ ըլլայ՝ այս տեղւոյս համար կարգէ դուրս բան մ'էր. խեղճ կնիկներուն սրտերնին եղաւ, և երախտագիտութիւննին իրենց խորշոմեալ երեսաց վրայ նկարուեցաւ։ Թովմասին հացն ալ իրենք շաղուեցին և եփուելուն ալ իրեք ուշ դրին։ Թովմաս ալ կրակին քով նստած՝ Աստուածաշունչը դուրս հանեց որ քիչ մ'անոր լուսովը կարդայ. վասն զի ընկճեալ սիրտը շատ կարօտ էր մխիթարութեան։

— Անիկայ ի՞նչ բան է, հարցուց կնիկներէն մէկը։

— Աստուածաշունչն է, ըսաւ Թօվմաս։

— Ա՜հ, ա՜հ, Քէնդըքի նահանգը ձգելէս ետեւ՝ մէյմ՚ալ Աստուածաշունչ չէի տեսած։

— Ի՞նչ, հարցուց Թօվմաս հետաքրքրքրութեամբ, դու Քէնդըքիէ՞ն ես։

— Հրամեր ես, և աղէկ ալ պատիվարակութիւն առած. ամենեւին չէի կարծեր որ այս խեղճութեան մէջ իյնամ, ըսաւ կինն հառաչելով։

— Վերջապէս այդ գիրքն ի՞նչ բան է, հարցուց միւս կինը։

— Աստուածաշունչն է ըսի։

— Աստուածաշո՞ւնչ... բայց ի՞նչ բան է այդ Աստուածաշունչ ըսածդ, ըսաւ կինը։

— Ի՞նչ, չե՞ս գիտեր, ամենեւին չե՞ս լսած Աստուածաշունչին ի՞նչ ըլլալը, հարցուց առջի կինը։ Քէնդըքի եղած ժամանակս երբեմն խաթունս ինծի կը կարդար. բայց հոս սպառնալիքէ ու հայհոյութենէ զատ ուրիշ բան չենք լսեր։

— Ուրեմն քիչ մը կարդա մեզի, ըսաւ միւս կինը հետաքրքրութեամբ մը, տեսնելով որ Թօվմաս ուշադրութեամբ կը թղթատէր։

Թուլման սկսաւ կարդալ. Եկայք առ իս ամենայն աշխատեալք և բեռնաւորք, և ես հանգուցից զձեզ։

— Այս ինչ գեղեցիկ խօսքեր են, ըսաւ կնիկը. ո՞վ է գրուցեր ասոնք։

— Աստուած, պատասխանեց Թուլման։

— Շատ կը փափագէի գիտնալ թէ արդեօք ո՞ւր կը գտնուի Աստուած, ըսաւ կինը. իրեն քով կ'երթայի, վասն զի կարծեմ հոս ա՛լ հանգստութիւն պիտի չկըրանեմ։ Բոլոր մարմինս ցաւագար է, և անդադար դողի մէջ եմ. Սամպոյ ալ հոգէառի պէս գլխուս վրայ կեցած՝ միշտ կը ողբանայ որ շուտ շուտ թամբակ ժողվեմ։ Իրիկունն ալ հազիւ թէ կէս գիշերն անցած՝ ընթրիքս կրնամ պատրաստել, և քիչ մը աչքս գոցեմ կ'ըսեմ՝ մէյմ'ալ եղջերեայ փողին ձայնը կը լսեմ, որ զմեզ ելլելու ու աշխատելու կը կանչէ։ Թէ որ գիտնայի թէ արդեօք Աստուած ո՞ւր կը գտնուի, ո՛հ, կ'երթայի այս ամէն բաներս իրեն կը պատմէի։

— Աստուած հոս է, Աստուած ամէն տեղ է, ըսաւ Թուլման։

— Զուր տեղը մի՛ աշխատիր, չես կըրնար ինծի հաւատացընել. ես որոշ գիտեմ որ

Աստուած հետ չէ, ըսաւ կնիկը: Բայց ի՞նչ բանի կու գայ այսչափ երկար խօսիլը: Հիմայ երթամ քիչ մ՚երկըննամ, գուցէ կըտոր մը քունս առնի:

Կնիկները խրճիթնին քաշուեցան, բայց Թովմաս միայնակ կրակին քով մնաց, որ մարխլու վրայ էր, և շառագոյն լուսով անոր երեսը կը լուսաւորէր:

Քիչ մ՚ատենէն ալ արծաթափայլ լուսինը խաղաղ ու կապոյտ երկնից կամարին վըրայ սկսաւ բարձրանալ, և իր հանդարտիկ ու լռիկ ճառագայթներն՝ Աստուծոյ աչացը նման՝ այս ցաւոց ու տառապանաց տեսարանին վրայ դարձուց: Իրեն քաղցր լոյսը՝ միայնիկ խեղճ սեւին վրայ տարածեր էր, որ թեւերը կուրծքին վրայ ծալլած՝ Աստուածաշունչը գիրկը՝ գետինը նըստեր էր:

— Աստուած հետ է արդեօք, խեղճ Թովմասն ինքիրեն հարցուց:

Ինչպէս կրնայ պարզ ու տգէտ սիրտ մը անխախտ պահել իր հաւատքը, տեսնելով որ այսպիսի անիրաւ բռնութիւնն և անօրէնութիւնն յայտնի կը յաղթանակէ: Այս պարզ սրտին մէջ սոսկալի պատերազմ մը սկսաւ. անիրաւութեան սրտաճմլիկ զգա-

ցումն, վշտալից ու ցաւագին կենաց պատկերն, իրեն անցեալ անկեղծութեանց անհետանալն, աչացն առջեւ կը ծփէին։ Նըման այն նաւաստւոյն՝ որ անդնդոց խորն իջնելու ժամանակ՝ կը տեսնէ կնոջը, որդւոյն, բարեկամին անշնչացեալ դիակները, որ տխուր ալեաց երեսը կը սաւանին։ Կրնա՞ր արդեօք հաստատուն հաւատքով հաւատալ քրիստոնէական վարդապետութեան այս խօսքին՝ թէ Աստուած ամէն տեղ է, և վարձահատոյց պիտի ըլլայ անոնց, որոնք սրտի մտօք զինքը կը փընտռեն։

Թովմաս սրտաբեկ ոտք ելաւ, և քաշկըռտուելով դէպ իրեն ցոյց տրուած խրճիթը գնաց։ Գետնին վրայ խել մը հոգի յոգնած փռուեր կը քնանային. օդն ալ այնպէս ապականեր էր՝ որ Թովմաս մէկէն չկրցաւ ներս մտնել։ Բայց գիշերուան ցօղը ցուրտ էր, և ինքն ալ յոգնածութենէն ոտքի վրայ չէր կրնար կենալ. ուստի պատռած վերմակի մը պլլուեցաւ, և բոլոր այն էր իրեն անկողինը, ու յարդին վրայ երկնցաւ։

Երազին մէջ կարծէր թէ անուշ ձայն մը ականջին կու գար։ Բոնշարդրէն լճին քովը

պարտէզին մէջի մամռապատ նստարանին վրայ նստեր էր. և Վարդիկին ալ խոր աչուըներն անոր պարձուցած՝ Աստուածաշունչ կը կարդար. և այս խօսքերը լսեց. Երբոր ջրերուն մէջէն անցնիս՝ ես քեզի հետ եմ, և ալիքները պիտի չընկղմեն զքեզ. Երբոր կրակին մէջէն անցնիս՝ պիտի չայրէ զքեզ, և կրակին բոցը քեզի պիտի չհասնի. վասն զի ես եմ քու Աստուածդ, Սուրբն Իսրայէլի, քու Փրկիչդ։

Կամաց կամաց այս խօսքերս սկսան որոշ չհասկըցուիլ, և կարծես թէ երկնային քաղցրաձայնութեանց փոխուեցան. աղջիկն անոր վրայէն խորին նայուածքը վերուց, և մէյմ՚ալ գթութեան աչուըներով նայեցաւ, որով Թովմասի սրտին մէջ եռանդեան և մխիթարութեան ճառագայթի մը ծագիլն զգաց։ Ետքէն աղջիկը՝ երկնային քաղցրաձայնութիւններէն յափշտակուած՝ այնպէս երեւցաւ Թովմասին իբր թէ լուսափայլ թեւերով կը թռչէր, ուսկից աստղերու նման ոսկիէ կայծակներ և շանթեր կը թօթափէին, և աներեւոյթ եղաւ։

Արթընցաւ Թովմաս։ — Տեսածն արդեօք երազ էր։ Գիտենք թէ այնպէս ըլլայ։ Բայց ով կրնայ ըսել թէ այն մատաղ ու փա-

փուկ հոգին, որ իր կենդանութեան ժամանակ այնչափ փափագ ունէր վշտացեալները մխիթարելու և սփոփելու, մահուընէն վերջն ալ Աստուծմէ հրաման առած չըլլայ նորէն իր առաջին պաշտօնը կատարելու ։

## ԳԼՈՒԽ ԼԳ

### Գէսսի

Շատ չանցաւ՝ Թոմսոն շուտ մ՚իմացաւ որ այս իր նոր կենաց մէջ ուսկէ՛ աւելի վախնալիք ունէր և ուսկէ աւելի յուսալիք։ Ճարտար ու գործունեայ աշխատասիրութեամբը ձեռք կարկած բանը կը յաջողցընէր. ամէն բանի պատրաստ և հաւատարիմ էր թէ՛ ունակութեամբ և թէ՛ սկզբունքով։ Խաղաղ ու անուշ բնաւորութեամբը կը յուսար որ իր անխռով ջանքովը՝ վիճակին յարակից չարեաց գոնէ մաս մը թեթեւցընէ։ Այնչափ թշուառութիւններն ու գէշ վարմունքները տեսնելով՝ սիրտը խոր կը խոցէր. բայց միտքը դրաւ որ քրիստոնէական համբերութեամբ իր կրցած ջանքն ընէ, և յոյսն Անոր վրայ դնէ՝ որ միայն

իմաստութեամբ կը դատի, յուսալով միան-
գամայն որ գուցէ ազատութեան միջոց
մ'առջեւն ելլէ։

Լըկըրի գոհ սրտով Թովմասին աղէկ
յատկութիւնները կը դիտէր, և իրեն առա-
ջին կարգի աշխատաւորներէն մէկը կը համա-
րէր զինքը. այսու ամենայնիւ՝ ծածուկ հա-
կակրութիւն մը կ'իմանար ներսէն անոր
դէմ, — որ է հակակրութիւն չարին ընդդէմ
բարւոյն։ — Շատ աղէկ անդրադարձեր էր
որ երբոր տկարներուն դէմ անգթութիւն ու
խստութիւն կը բանեցընէր՝ Թովմաս ա-
մէն բան ուշի ուշով կը դիտէր. վասն զի
կարծեաց մթնոլորտն այնպէս բարակ է որ
առանց խօսելու անգամ՝ մարդ կրնայ զգալ,
և նոյն իսկ գերւոյ մը կարծիքն ալ շատ
անգամ կրնայ իրեն տիրոջ անհաճոյ ըլլալ։
Այլ և այլ պարագաներու մէջ Թովմաս ի-
րեն գերեկցաց վրայ գութ ու խնամք կը
ցուցընէր, որ անոնց համար կարգէ դուրս
ու նոր բան մ'էր. իսկ Լըկըրի նախանձու
աչքով կը դիտէր։ Թովմասը գնելու ատեն
միտքը դրեր էր որ տեսակ մը վերակացու
ընէ զանիկայ, և քանի մ'օրուան համար
կալուածներէն հեռանալու ժամանակ՝ անոր
յանձնէ իրեն գործողութիւնները. և իրեն

խեղքով՝ այս պաշտօնին հարկաւոր առաջին և երկրորդ ու երրորդ յատկութիւնն էր խըստութիւնը։ Ուրիշ կողմանէ ալ Լըկրի կ'երեւակայէր թէ Թովմաս ինչուան այն օրը իրեն կամաց ընդդիմութիւն մ'ըրած չըլլալուն՝ կամաց կամաց կրնար զինքը խըստացընել, ուստի Թովմասին գալէն քանի մը շաբաթ ետեւ՝ Լըկրի ձեռք զարկաւ անոր կրթութեան։

Առաւօտ մը՝ երբոր բոլոր գերիները կարգաւ շարուեր էին աշխատելու համար դաշտ երթալու, Թովմաս զարմացմամբ նորեկ մը տեսաւ, որուն կերպարանքը շատ նշանաւոր էր։ Ասիկայ բարձրահասակ ու վտատուժ կընիկ մ'էր, կանոնաւորեալ ձեռուըներով, կոկ ու մաքուր հագուած։ Երեսէն երեսունըհինգ քառասուն տարուան մը կ'երեւար. և դէմքի այնպիսի գծագրութիւն մ'ունէր՝ որ զինքը տեսնողը մէյմ'ալ չի կրնար մոռնալ։ Առաջին նայուածքով՝ մարդ կարգէ դուրս և ցաւալից ու խեղճ պատմութիւն մը կարծես կը կարդար անոր դէմքին վրայ։ Ճակատը բարձր, կարակնաձեւ ընքուիներով, և քիթն արծուենգն ու բարեձեւ, բերանը վայելուչ, եւ գլխուն ու վզին գեղեցիկ շրջապատէն կ'իմացուէր որ ատենօք շատ տեսքով եղած

պիտի ըլլայ. բայց ցաւէ խորշոմած երեսին վրայ՝ ամէն բան արհամարհող ու դառն համակամութիւն մը կը տեսնուէր։ Երեսին գոյնը դեղին ու վատառողջ, թուշերը ներս մտած, դէմքը կորնճմտած, և վերջին աստիճանի նիհար։ Բայց վրան ամէն բանէ աւելի նշանաւոր՝ խոշոր ու սաստիկ սեւ աչուըններն էին և սեւ ու երկայն արտեւանունքներն, ուսկից վայրենի ու տխուր յուսահատութիւն մը կը ցոլար։ Դէմքին բովանդակ գծագրութեան վրայ, և շրթանց ամէն մէկ խորշոմներուն մէջ ու մարմնոյն ամէն շարժմանց մէջ՝ ամբարտաւանութիւն մը և ամէն բանի արհամարհութիւն մը կ՚երեւար. բայց նայուածքին մէջ ալ այնպիսի խորին անձկութիւն մը և անդարմանելի ցաւ մը նկարուած էր, որ իրեն ամէն բան արհամարհող կերպին հետ ամենեւին չէր միաբանիր։

Ուսկի՞ց եկեր էր այդ կինն. արդեօք ո՞վ էր։ Թովմաս ամենեւին բան մ՚ալ չէր գիտեր։ Այս առաջին անգամն էր որ զինքը կը տեսնէր, և առաւօտեան շաղին մէջ՝ շիտակ ու հանդարտ քովէն կ՚երթար։ Բայց միւս գերիները զանիկայ կը ճանչնային. ամէնքն աչուըննին ու գլուխնին դէպ անոր

դարձուցին. և չորս կողմն եղող պատըրաստած Հապուստով ու սովալլըլուկ խեղճերն անձայն ու լռիկ՝ բայց առերեւոյթ ուրախութիւն մ'ունեցան։

— Վերջապէս ատիկայ ալ այս մինճակիս Հասաւ, շատ ուրախ եմ, ըսաւ գերիներէն մէկը։

— Հը՛, հը՛, հը՛, խնտաց ուրիշ մը. հիմայ կը տեսնես, խալթուն, թէ ի՛նչ աղէկ մինճակ ունինք եղեր։

— Նայինք թէ ինքն ալ ի՛նչպէս պիտի աշխատի, վրայ թերաւ նորոլ մը։

— Կ'ուզէի գիտնալ թէ ինքն ալ մեզի պէս այս իրիկուն իր խարազանին մասը պիտի ընդունի՞ արդեօք։

— Ի՛նչպէս կ'ախորժէի տեսնել որ ինքն ալ չոքէր խարազան ուտելու Համար, ըսաւ ուրիշ մը։

Կնիկն այս Հեգնական խօսքերուն ամենեւին ուշ չէր դարձըներ, և այնպիսի զայրացեալ ամբարտաւանութեամբ ու արՀամարՀանօք քալուածքն առաջ կը տանէր՝ որ իրրեւ թէ ամենեւին բան մը լսած չըլլար։ Թովմաս իր կեանքը բարեկիրթ ու ազնուական մարդկանց մէջ անցուցած ըլլալով՝ ամենեւին դժուարութիւն չքաշեց տար

կերպէն ու քալուածքէն գուշակել թէ ինքն ալ այս կարգի մարդկանցմէ պիտի ըլլայ։ Բայց թէ արդեօք ինչպէս այսպիսի նուաստ ու թշուառ վիճակի մը մէջ ընկեր է, այս բանս չէր կրնար գուշակել, և թէպէտ կնիկը խրճիթներէն ինչուան դաշտը Թովմասին քովէն չբաժնուեցաւ ու բոլոր ճամբան միշտ հետը մէկտեղ կը քալէր, բայց և ոչ մէկ անգամ անոր երեսը նայեցաւ, և ոչ մէկ խօսք լսաւ անոր։

Թովմաս մէկէն աշխատիլ սկսաւ. և որովհետև կնիկն իրմէ շատ հեռու չէր՝ երբեմն երբեմն գաղտուկ անոր կը նայէր, երբոր անիկայ աշխատութեան զբաղած էր։ Եւ վրան բնական ճարպիկութիւն, արագութիւն մը տեսաւ, որով աշխատութիւնն ալ ուրիշներէն աւելի իրեն կը յիւրանար։ Շատ շուտ ու վայելուչ կերպով բամբակը կը ժողվէր. բայց միշտ նոյն արհամարհական կերպով, իբր թէ կ'արհամարհէր միանգամայն այս տեսակ աշխատութիւնն ու իրեն վրայ դրուած այս նուաստութիւնը։

Նոյն օրը Թովմաս աշխատելով՝ իրեն հետ գնուած խառնածին կնկան քով հասաւ։ Խեղճը սաստիկ նեղութիւն կը քաշէր, և երբոր կը դողդղար, կը դանդաչէր ու

կարծես թէ մարելու ինկնալու վրայ էր, Թովմաս բերնէն աղօթքի հառաչանքներ կը լսէր։ Կամացուկ մ՚այս կնկան քով մօտեցաւ ու քանի մը բուռ բամբակ անոր կողովին մէջ դրաւ։

— Ա՛հ, չէ, չէ, աղէկ չէ ըրածդ, աղէկ չէ ըրածդ, ըսաւ կնիկը զարմացմամբ. այս բանիս համար պատիժ կրնաս առնել։

Նոյն միջոցին Սամպոյ վրայ հասաւ. կարծես թէ այս կնոջ դէմ մասնաւոր ատելութիւն մ՚ունէր. խարազանը շողացընելով՝ խստութեամբ պոռաց երեսն ի վեր.

— Ի՞նչ կ՚ընես, Լուսիա, ինչո՞ւ չես աշխատիր։ Խօսքին՝ գործքն յաջորդեց, և սաքով կից մը զարկաւ անոր, և խարազանն ալ Թովմասին քթին բերնին իջեցուց։

Թովմաս լռիկ մնջիկ նորէն իր աշխատութեան ձեռք զարկաւ. բայց կնիկը բոլորովին ուժէ իյնալով՝ ընկաւ մարեցաւ։

— Ես հիմայ զինքը կը սթափեցընեմ, ըսաւ գազանական ծիծաղով մը անգութ պահիճը. ես հիմայ քափուրէն աւելի ազդու դեղ մը կու տամ իրեն։ Եւ հագուստին թեւին վրայէն երկայն գնդասեղ մը հանելով՝ ինչուան ոսկորները կնկան միսը խոթեց։ Ողորմելին ցաւագին ճիչ մը հանեց

ու թիզ մը վեր ցատքեց։ — Ելի՛ր, աշխատէ՛, անպիտա՜ն կենդանի. ապա թէ ոչ՝ տուած գեղս դարձեալ նորէն կու տամ։

Խեղճ կնիկը քիչ մը ժամանակ կարծես թէ կարգէ դուրս զօրութիւն մը զգեցաւ, և սկսաւ յուսահատ կերպով շուտ շուտ աշխատիլ։

— Նայէ որ այսպէս շարունակես, ըսաւ Սամպօյ, ապա թէ ոչ՝ այս իրիկուն մահդ կը գտնես։

— Ես ալ այն կը փափաքիմ, հառաչեց կնիկը։ Թովմաս լսեց այս խօսքս, ինչպէս նաև տեսաւ որ կինը քթին․ տակէն ·կը մրմռար․ — Ո՜հ, Տէր, ինչուա՞ն ե՞րբ այս նեղութիւնս պիտի քաշեմ. ո՜հ, Տէր, ինչո՞ւ ինծի օգնութեան չես հասնիր։

Թովմաս առանց նայելու թէ ինչ վըտանգի մէջ կը ձգէ ինքզինքը, նորէն այս խեղճ կնկան քով մօտեցաւ, և բոլոր ժողված բամբակները Լուչիայի կողովը լեցուց։

— Ո՛հ, չէ, չէ, մի՛ ըներ, ըսաւ կնիկը. դու չես գիտեր թէ այդ ըրածիդ համար գլխուդ ինչ փորձանքներ կրնան գալ։

— Ես քեզմէ աւելի կրնամ տանիլ անոնց, ըսաւ Թովմաս, ու նորէն առջի տե-

ղը դարձաւ. այս բանս մէկ երկու վայրկեան քշեց։

Մէյմ՚ալ յանկարծ այն անծանօթ կինը, զոր քիչ մը առաջ ստորագրեցինք, աշխատելով առաջ եկեր էր և այնչափ մօտեցեր էր՝ որ Թովմասին վերջի խօսքերը լսեց, և խոշոր սեւ աչուըները վերցուց ու քիչ մ՚ատեն դիտելով՝ անոր երեսը նայեցաւ. և ետքէն իր կողովին մէջէն խել մը բամբակ առաւ ու Թովմասին կողովին մէջ նետեց։

— Դու չես գիտեր, ըսաւ Թովմասին, թէ ո՛ւր ես, ապա թէ ոչ ինչ որ ըրիր՝ չէիր ըներ։ Դու ալ ամիս մը թէ որ հոս մնաս, ա՛լ ուրիշին օգնելը մաքէդ չ՚անցնիր. և ոչ իսկ քու կաշիդ պիտի կարենաս պաշտպանել։

— Աստուած պահէ, խաթուն, պատասխանեց Թովմաս՝ ամենայն յարգութիւն ընելով այս իր գերութեան ընկերին, ինչպէս որ ատենով իրեն տիրուհիներուն հետ խօսելու ժամանակ կը բանեցընէր։

— Աստուած այս կողմերս ամենեւին այցելութիւն չ՚ըներ, ըսաւ կինը դառնութեամբ. — և շուտով մը զարմանալի արագութեամբ սկսաւ աշխատիլ. և նոյն արհամարհական ծիծաղը դէմքին վրայ երեւցաւ նորէն։

Բայց գերիներուն վերակեցուն այս ամէն բանս հեռուէն տեսաւ, և խարազանը շողացընելով՝ կնկան վրայ վազեց։

— Ի՞նչ է, ի՞նչ է, պոռաց յաղթական կերպով մը, դո՛ւ ալ մի ժամանակ կը կորսընցընես։ Աղէկ նայէ, հիմայ իմ իշխանութեանս տակն ես, աչքդ աղէկ բաց, թէ չէ՝ խարազանը կ'ուտես։

Կնկան սեւ աչուըներէն կայծակ ցատքեց, դողդոջուն շրթունքները պարզուեցան, քթին ծակերն ընդարձակեցան. ոտքի վրայ շիտակ կայնեցաւ, և բարկացայտ և արհամարհութեամբ լի աչուըները շիտակ Սամպոյին վրայ տնկեց։

— Քեզի պէս շուն, պոռաց անոր երեսէն վեր, թէ որ կը յանդգնիս՝ զա՛րկ ինծի մէյմը տեսնեմ. դեռ բաւական զօրութիւն ունիմ զքեզ շներուն պատառտել տալու, ողջ ողջ այրելու, կտոր կտոր ընելու. մէկ խօսք մը ինծի բաւական է։

— Ուրեմն հոս ի՞նչ բան ունիս, պատասխանեց Սամպոյ՝ վախցած ետեւ ետեւ քաշուելով. միտքս հրամանքիդ վնասել չէ, Գէսսի խաթուն։

— Ան ատեն գնա կորսուէ ասկից, ըսաւ կնիկը։

Սամպոյին ալ ուզածն այն էր. ուստի ձեւացընելով թէ դաշտին մէկալ կողմը հարկաւոր բան մ'ունի, շուտ մը հեռացաւ անկէ։

Կնիկն սկսաւ նորէն այնպիսի արագու-թեամբ աշխատիլ՝ որ Թովմաս զարմացաւ. կարծես թէ դիւթական ճարպիկութիւն մ'ու-նէր։ Դեռ իրիկուն չեղած՝ կողովը ինչուան բերանը լեցուեր էր, և շատ անգամ ալ Թովմասին կողովին մէջ ալ խել կը թամ-բակ նետեր էր։ Արեւը մանելէն շատ մը ետեւ՝ բոլոր գերիներուն խումբը յոգնած դադրած, և կողովնին ալ գլուխնին դրած՝ դէպ ի թամբակի մթերանոցն սկսան երթալ, օրական ժողովածնին կշռել տալու։ Լըկրի ալ հոն էր, և իրեն երկու արբանեակնե-րուն հետ տաք տաք կը խօսակցէր։

— Այս թշուառական Թովմասը գլխու-նուս շատ փորձանքներ պիտի բերէ. բոլոր օրն ուրիշ բան չէր ըներ՝ բայց եթէ Լու-չիային կողովին մէջ թամբակ լեցընել։ Թէ որ, տէր իմ, աչքդ չբանաս, անիկայ կըր-նայ սեւերն համոզել թէ իրենց հետ գէշ կը վարուին և չափէ դուրս նեղութեան մէջ ինկած են, ըսաւ Սամպոյ։

— Իրաւ է. ո՜վ անիծած սեւորդի, ըսաւ

Լըկրի․ ծօ ձեզ տեսնեմ, տղաքս, պէտք է այդ անպիտանը ճամբու բերել։

Երկու սևերուն երեսներուն վրայ հաճութեան ծիծաղ մը ծագեցաւ։

— Այնպէս է, այնպէս, տէր իմ․ հրամանքիդ պէս գերիները ճամբու բերող ուրիշ մէկն ալ չի գտնուիր աշխարհիս մէջ․ սատանան անգամ հրամանքիդ չի հասնիր, ըսաւ Քուիմպոյ։

— Ձեզ տեսնեմ, տղաքս, ամենէն լաւ միջոցն է այնչափ ծեծ քաշել անոր՝ որ բոլոր մաքին գաղափարները դուրս ձգէ․ այս կերպով կրնաք զինքը կրթել։

— Աղէկ, աղէկ, տէր իմ․ բայց շատ դիւրին բան չէ անոր գաղափարները մըտքէն հանել տալը, ըսաւ Քուիմպոյ։

— Ի՞նչ ալ ըլլայ՝ պէտք է զինքը ճամբու բերել, պատասխանեց Լըկրի՝ բերնին մէջ ծխախոտի տերև մը ծամելով։

— Հապա Լուչիային ի՞նչ կ՚ըսէք, անոր պէս չար ու անպիտան ուրիշ մ՚ալ չկայ այս տանս մէջ, վրայ բերաւ Սամպոյ։

— Աղէկ նայէ, Սամպո՛յ․ Լուչիային դէմ ունեցած ատելութեանդ պատճառն ինծի անծանօթ չէ։

— Հրամանքդ ալ գիտես, տէր իմ, որ

այդ անպիտանը հրամաններուդ դէմ դրաւ, և կամացդ դէմ՝ գիս չուզեց։

— Ես զինքը խարազանի հարուածներու տակ շուտով հնազանդեցընել կու տայի, բայց Լըկրի թքնելով, թէ որ հիմայ աշխատաւորի կարօտութիւն չունենայինք. անոր համար ինծի կ՚երևայ թէ հիմակուհիմայ չ՚արժեր ժամանակ կորսընցընել։ Այնչափ փափուկ է անիկայ որ չի կրնար դիմանալ, և դուն ալ գիտես որ այդ կնիկներն հազար անգամ աւելի յանձն կ՚առնուն մեռնիլ՝ քան թէ խոնարհիլ։

— Լաւ. բայց Լուչիան ծոյլերուն գլուխն է, և ամենևին աշխատիլ չ՚ուզեր. անոր բամբակին կողովը բոլոր Թոմասը լեցուց։

— Ի՞նչ. իրա՞ւ կ՚ըսես, Թոմա՞սը լեցուց։ Շատ լաւ. ան ատեն աս իրիկուն թող ինքը ծեծէ Լուչիան որ տեսնէ։ Այս բանս իրեն օգտակար կրթութիւն մը կ՚ըլլայ. և ապահով գիտեմ թէ անիկայ ալ ձեզի չափ կրնայ ծեծել. ես ձեր ինչ սատանորդի ըլլալնիդ աղէկ գիտեմ։

Հօ՜, հօ՜, հա՜, հա՜, հա՜. սկսան ծիծաղիլ, և Լըկրիին իրենց շնորհած մակդիրին արժանաւորեցան՝ իրենց դժոխային ծիծաղովը։

— Աղէկ է ըսածդ, տէր իմ. բայց ոչ միայն Թովմաս՝ այլ նաև Գէսսի խաթունն ալ և ուրիշներն ալ Լուչիային կողովին մէջ բամբակ դրին. ուստի կշիռքը ճիշդ կու գայ։

— Ես անձամբ կը կշռեմ, ըսաւ Լըկրի։

Այն երկու պահիճները նորէն սկսան դի-ւահարած ծիծաղիլ։

— Ասով ըսել է թէ, վրայ բերաւ Լը-կրի, Գէսսի խաթունն ալ աշխատեցաւ։

— Ի՛նչ ըսել է. անանկ շուտ շուտ բամ-բակ կը ժողվէր՝ որ տեսնողը զինքը սա-տանայ կամ անոր արբանեակներէն մէկը կը կարծէր։

— Անոր փորը բոլոր սատանաներով լե-ցուն է, կը հաւատամ, ըսաւ Լըկրի. սարսա-փելի հայհոյանքներ բերնէն դուրս տալով, և բամբակները կշռելու տեղը մտաւ։

Յոգնած պարտած, տրտում տխուր՝ գե-րիները կարգաւ ներս սկսան մտնել, և ա-հով դողով կողովնին կշիռքին վրայ կը դը-նէին։

Լըկրի հերձաքարի մը վրայ կշիռքի չա-փերը կը նշանակէր իւրաքանչիւրին անուան առջև։

Թովմասին կողովն ալ կշռուեցաւ ու ճիշդ

եկաւ. իսկ ինքն անձկութեամբ կը սպասէր թէ արդեօք այն խեղճ կնկան կողմէն ալ ճիշդ պիտի գա՞յ։

Իսկ անիկայ տկարութենէն հոգին բերանն եկած՝ գողդըղալով կշիռքին վրայ դրաւ իրեն կողմէն ալ. ճիշդ էր չափը։ Լըկրի անձամբ փորձեց, բայց բարկանալ ձևացընելով՝ պոռաց անոր երեսէն վեր.

— Ծոյլ անպիտան կենդանի, կշիռքն ինչո՞ւ պակաս է։ Մէկդի կեցիր, հիմայ ես քեզի կը ցուցընեմ։

Կնիկն յուսահատական ճիչ մը վերցուց, ու սախտակի մը վրայ նստաւ ու սկսաւ լալ։

Անկէ ետև Գէտոի խաթուն ըսուածն առաջ եկաւ, խրոխտ ու արհամարհական կերպով մը կողովը կշիռքին վրայ դրաւ։ Լըկրի հետաքրքրութեամբ ու հեգնական կերպով անոր կը նայէր։

Ան ալ խրոխտաբար իրեն խոշոր սև աչուըները Լըկրիին վրայ անկեց, և քթին տակէն մռմռալով՝ գաղղիերէն քանի մը խօսք ըսաւ։ — Արդեօք ինչ ըսաւ։ Մարդ բան մը չհասկըցաւ, բայց Լըկրիին վրայ դժոխային կատաղութիւն մ'եկաւ, և ձեռքը վերուց իբր թէ զարնէ անոր. բայց անի-

կայ պատուհանի տեղ՝ խրոխտ ու արհա-մարհական կերպով մէյմը երեսը նայեցաւ, ետքը կռնակը դարձուց ելաւ գնաց:

— Թովմաս, հիմայ հոս եկուր, ըսաւ Լըկրի: Դուն ալ գիտես որ ես զքեզ հասա-րակ աշխատութեանց համար չգնեցի. կ'ու-զեմ զքեզ առաջ քաշել և վերակացու դնել: Այս իրիկունէ սկսէ տեսնեմ պաշտօնդ. խարազանն ա՛ռ՝ սա կնիկը ծեծէ. ուրիշ անգամներ տեսեր ես, գիտես թէ ինչպէս կը ծեծեն:

— Թողութիւն կ'ընես, տէր իմ, ըսաւ Թովմաս, և կը յուսամ թէ զիս այսպիսի պաշտօնի մը չես դներ, վարժութիւն չու-նիմ ամենևին, ոչ երբեք ըրած բանս է, չեմ ալ կրնար ընել, անկարելի է:

— Քանի որ իմ ձեռքիս տակն ես՝ դեռ շատ բան պիտի սորվիս որ չես գիտեր, ըսաւ Լըկրի՝ հաստ կաշիով մը քթին բերնին վրայէ վրայ քանի մ'անգամ զարնելով: Սորվեցա՞ր հիմայ, կանչեց Լըկրի՝ շունչ առնելու համար կանգ առած, դեռ կրնա՞ս չէ ըսել:

— Հրամեր ես, տէր իմ, պատասխանեց Թովմաս՝ երեսէն վազած արիւնները ձեռքով սրբելով. մինչև վերջին շունչս գիշեր ցորեկ

աշխատելու պատրաստ եմ. բայց չեմ կրնար կարծել որ ինծմէ պահանջածդ արդարացի ըլլայ, և ոչ երբեք կրնամ ընել, տէր իմ, ոչ երբեք։

Թովմասին անուշ ու խաղաղ ձայնէն և անոր ունեցած պատկառանքէն՝ Լըկրի կը կարծէր թէ անիկայ թուլամորթ ըլլայ, և ինքը շուտով կրնայ իր վախճանին հասնիլ։ Բայց երբոր անիկայ այս վերջին ժխտողական խօսքն ըսաւ, բոլոր հոն գտնուողներուն վրայ զարմանաց դողում մը պատեց. խեղճ կինը անդիէն ձեռք ձեռքի բերաւ ու «Տէր Աստուած» պոռաց։ Բոլոր գերիներն առանց ուզելու՝ իրարու երես նայեցան, և ծագելիք փոթորիկէն սարսափած՝ հազիւ թէ շունչերնին կրնային քաշել։

Լըկրի քիչ մ'ատեն ապշած ու շփոթած մնաց, բայց վերջապէս բարկութիւնը պայթեցաւ։

— Ի՞նչ. անիծած սևորդի, անբան անասուն. կը յանդգնի՞ս իմ դիմացս ըսելու թէ քեզի հրամայածս արդարացի չէ ։ Ի՞նչ. անպիտան կենդանի, դու ո՞վ ես որ դատես թէ այս արդարացի է, այն անիրաւ...։ Ես քու խելքդ գլուխդ կը բերեմ։ Դու զո՞վ կը կարծես զքեզ. մարդու տե՞ղ դրեր ես զքեզ.

պարո՛ն Թովմաս, որ յանցգնիս տիրոջդ առջև ըսելու թէ այս բանս արդարացի է և այն բանն անիրաւ...: Ութեմն միայն դրեր ես թէ սա կինը ծեծելն անիրաւ բան է:

— Ես այնպէս կը կարծեմ, տէր իմ, պատասխանեց Թովմաս: Այս խեղճ կնիկը հիւանդ ու տկար է. անլուր անգթութիւն մ'է զանիկայ ծեծելը, ես չեմ կրնար այդպիսի անգթութիւն ընել, և յաւիտեան ալ չեմ ըներ: Թէ որ կ'ուզես զիս սպաննել, տէր իմ, սպաննէ. բայց թէ ուրիշի ձեռք վերցընե՞մ՝ յաւիտեան այդ բանդ չեմ կրնար ընել, որո՛ւն դէմ ալ կ'ուզէ ըլլայ: Աւելի յանձն կ'առնում ես մեռնիլ քան թէ այդ բանն ընել:

Հեզութեամբ կը խօսէր Թովմաս, բայց այնպիսի հաստատուն կերպով՝ որ անկարելի էր զինքն յաղթահարել: Լեկրի բարկութիւնէն կը դողար, կանաչագոյն աչուըներն կայծակ կը ցայտէին, մազերը տընկուեցան. բայց կատաղի գազանի մը նըման, որ նախ քան գէշ գէշ պատառելն ձեռքն ինկած որսը՝ անոր հետ կը խաղայ, քիչ մ'իրեն բարկութիւնն յագեցընելու սաստիկ փափագը զսպեց, և յետոյ սկսաւ դառն հեգնութեամբ ըսել.

—Ցեսէք սա ջերմեռանդ շունը, որ մե֊
զի պէս մեղաւորաց դարձ տալու համար
երկնքէն ղրկուեր է. ճ՛, կատարեալ սուրբ
մըն է, և եկեր է մեղքերնիս երեսնիս զար֊
նելու ու զմեզ դարձի բերելու։ Սա սուրբին
նայեցէք։ Անպիտան, որ խնքզինքդ սուրբի
տեղ դրեր ես, Աստուածաշունչդ ինչ կ՚ըսէ,
չե՞ս կարդացեր. «Ծառայք հնազանդ եղիք
ձեր տէրերուն»։ Ես հազար երկու հարիւր
տոլլար չվճարեցի՞ քու հին ու անիծած սև
կաշիիդ մէջ պառկող ամէն բանին։ Ըսէ
տեսնեմ, քու մարմինդ ու հոգիդ իմս չէ՞,
պոռաց Լըկրի՝ սաստիկ կից մը զարնելով
Թովմասին։

Թէպէտ սաստիկ ցաւոց մէջ էր Թովմաս,
և դժոխային բռնութեան մը լծոյն տակ ընկ֊
ճուեր էր, այսու ամենայնիւ այս հարցմուն֊
քիս վրայ ուրախութեան կայծ մը ծագեց
սրտին մէջ։ Ցանկարծ գլուխը վեր վերցուց՝
շիտակ կեցաւ, ու աչուըները դէպ երկինք
դարձուց, և մինչդեռ արտասուքն ու արիւնն
երեսէն վար կը վազէին՝ ինքն աղաղակեց
ըսելով.

—Չէ, չէ, չէ. հոգիս հրամանքիդ չէ,
տէր իմ. զանիկայ դու չես գնած, և չես
ալ կրնար գնել։ Իմ հոգիս այնպիսի մէկը

գներ է, և գինն ալ վճարեր է, որ կարող է զայն պահել։ Չէ, տէր իմ, չէ. հրամանքդ ինծի չարիք մ՚ալ չես կրնար ընել։

— Ի՞նչ, չե՞մ կրնար, պոռաց Լըկրի կատղած ծիծաղով մը, հիմայ կը տեսնես թէ կրնա՞մ թէ չեմ կրնար։ Ձեզ տեսնեմ, Սամպօյ ու Քուիմպօյ, սա թշուառական շունին այնպիսի դաս մը տուէք որ ամիս մ՚ալ ոտք չկարենայ ելլել։

Այն երկու յաղթանդամ գերիները գազանային ուրախութեամբ մը Թօմասին վրայ դիմեցին. տեսնողը կը կարծէր թէ դժոխքէն փախած երկու կատաղիներ են։ Խեղճ Լուչիան ողորմուկ ճիչ մը վերցուց, և բոլոր հոն կեցողները ոտք ելան. իսկ ան երկու դահիճները քարշեցին տարին խեղճ Թօմմասը, որ պզտիկ կերպով մ՚ալ անոնց դէմ չդրաւ։



# ԳԼՈՒԽ ԼԳ.

## Գեսսիին պատմութիւնը.

*Դարձայ և տեսի ես զամենայն զրպարտութիւնս որ լինին ընդ արեգակամբ, և ահա արտասուք զրպարտելոցն. և ոչ ոք էր որ մխիթարէր զնոսա. և ի ձեռս զրպարտչաց նոցա բռնութիւնք:*

*Եւ գովեցի ես զամենայն մեռեալսն որ յառաջագոյն մեռան, քան զկենդանիսն՝ որ ցայժմ կենդանի իցեն:*

ԺՈՂՈՎ. Դ. 1. 2:

Մութը կոխեր էր. Թովմաս հեծելով ու արիւնլուայ եղած՝ շտեմարանի մը մէկ անկիւնը կատըրտած գործիքներու և փտտուած բամբակի կոյտերու և ուրիշ աւերակներու մէջ ինկած կը տապըլըկէր:

Գիշերը լռին ու խաղաղ էր, օդը թանձր և հազարաւոր մժեղներով լեցուն, որ իրենց խածուածներով՝ խեղճ վիրաւորեալին ցաւերը կը սաստկացնէին: Սաստիկ ծարաւ մը՝ որ տանջանքներու ամենէն անտանելին է՝ խեղճ Թովմասին բնական նեղութիւններուն լրումն կու տար:

— Տէ՜ր բարերար, կը կանչէր, աչքդ մէյմը վրաս դարձուր, այժ տուր ինծի ամէն բանի յաղթելու։

Մէյմ'ալ եռանէն ոտքի ձայն մը լսուեցաւ, և կանթեղի մը լոյսն աչքին զարկաւ։

– Ո՞վ կայ հոն. Աստուծոյ սիրոյն համար ըլլայ պուտ մը ջուր տուր ինծի։

Եկողը Գէսօին էր. ձեռքի ճրագը վար դրաւ. ամանէ մը գաւաթի մը մէջ ջուր լեցուց, և Թովմասին գլուխը վեր բռնելով՝ տըւաւ որ խմէ։ Թովմաս վրայէ վրայ երկու երեք անգամ գաւաթը պարպեց։

—Ո՛րչափ որ կ'ուզես խմէ, ըսաւ կինը։ Ես բանին էութիւնը գիտէի. այս առաջին անգամ չէ՝ որ գիշերը դուրս ելեր եմ, և քեզի պէս ծարաւելոց ջուր հասուցեր եմ։

— Շնորհակալ եմ խաթուն, ըսաւ Թովմաս ջուրը խմելէն վերջը։

— Չէ, չէ. ինծի խաթուն մի՛ ըսեր. ես ալ քեզի պէս խեղճ գերի մ'եմ ու քեզմէ ալ նուաստ, ըսաւ պառնացեալ սրտիւ։ Վերջը դէպ ի դուռը գնաց ու յարդէ պզտի անկողին մը ներս քաշեց բերաւ, որուն վրայ պաղ ջրով թրջած սաւան մը փռեր էր, ու — Հիմայ ջանք ըրէ, ըսաւ Թովմասին, և ե՛լ այս անկողնոյն վրայ պառկէ։

Թովմաս վիրալից ու պատառատուն մարմնով՝ քաշկռտուելով քաշկռտուելով հազիւ թէ կրցաւ անկողնոյն վրայ ելլել. բայց երբոր այն թրջած սաւանը պաղ պաղ իրեն վէրքերուն դպաւ՝ մեծ հանգստութիւն մը զգաց։

Այս կինս անգթութեան զոհ եղողներուն մէջ երկայն ատեն բնակած ըլլալով՝ այլ և այլ կերպեր գտեր էր անոնց օգնութեան հասնելու. սկսաւ Թովմասին վէրքերը դարմանել, որով անիկայ շատ դիւրութիւն զգաց։

— Ահա քեզի ձեռքէս եկած օգնութիւնն ըրի, ըսաւ Գէսսի, Թովմասին գլուխը վերցընելով ու տակը քանի մը բուռ այն աւրուած բամբակէն դնելով։

Թովմաս սրտանց շնորհակալ եղաւ անոր։ Կինը գետնին վրայ նստաւ ու ձեռուըները ծնգացը վրայ դրած՝ սկսաւ ուշի ուշով դիմացը նայիլ. բայց երեսէն սրտի դառնութիւնն ու ցաւը կ՚երեւար։ Գլխարկը դէպ ետև դրած, և ալեաց նման ծածանող սև մազերն ալ խառնափնդոր առջևն եկած՝ իր կարգէ դուրս ու տխուր կերպարանքը ծածկեր էին։

— Անօգուտ տեղը կ՚աշխատիս, խեղճ մարդ, անօգուտ տեղ կը ջանաս դէմ դնե-

լու։ Քաջութիւն ցըցուցիր, և իրաւունք ալ ունիս. բայց պարապ տեղ զքեզ կը չարչարես, և բոլորովին վախճանագուրկ է այդ քու աշխատանքդ. սատանային ձեռքը մատնուեր ես, անիկայ քեզմէ զօրաւոր է, ուզես չուզես պէտք է որ անոր խոնարհիս։

Խոնարհի՛լ. միթէ մարդկային տկարութիւնն և բնական ցաւերն ալ իրեն խորհուրդ չէի՞ն տուած այս բանս ընելու։ Թովմաս տակն ու վրայ եղաւ, և այս կնկան դառն խօսքերը, կատաղի նայուածքն ու տխուր ձայնը լսելով ու տեսնելով՝ իրեն այնպէս եկաւ՝ իբր թէ նոյն իսկ բանսարկուն մարմին առած՝ եկեր էր զինքը փորձելու։

— Ո՜վ Աստուած իմ, Աստուած իմ, ըսաւ հառաչանօք, ի՛նչպէս կրնամ այս բանիս խոնարհիլ։

— Անօգուտ աշխատութիւն է զԱստուած օգնութեան կանչելը, ինքն ամենևին չի լսեր մեր ձայնը, ըսաւ կինն ուժգնութեամբ։ Ես կարծեմ թէ և ոչ Աստուած կայ. և թէ որ կայ ալ՝ ան՛ալ մեզի դէմ ելեր է։ Ամէն բան մեզի դէմ ելեր է, երկինք և երկիր. ամէն բան զմեզ դէպ ի դժոխք կը մղեն. Ի՞նչպէս կրնանք հոն չինկնալ։

Թովմաս աչուըները գոցեց, և այս ամ-

Ծարիշտ խօսքերը լսելով՝ վրան դող եկաւ։

— Տեր, ըսաւ կնիկը, դու դեռ բան չես գիտեր. ես քեզմէ աւելի տեղեկութիւն ունիմ այս բաներուս։ Հինգ տարի է որ ես հոս եմ, և մարմնով ու հոգւով այդ մարդուն ոտնակոխ կ՚ըլլամ, զոր մահուչափ կ՚ատեմ։ Դու հոս առանձին կալուածի մը մէջ ես, որ ուրիշ կալուածներէ տասը մըղոն հեռու է, ճահիճներու մէջ. կրնան զքեզ հոս ողջ ողջ այրել, մորթել քերթել, կտոր կտոր ընել, շներուն պէշ գէշ պատըռտել տալ, կախել զքեզ, խարազանին տակն սպաննել. բնաւ ճերմակ մարդ մը չկայ որ այս բանիս վկայ ըլլայ։ Հոս ոչ օրէնք կայ, ոչ Աստուած կայ և ոչ մարդ, որ քեզի կամ մեզմէ մէկուն պզտի օգնութիւն մ՚ընելու կարող ըլլայ։ Իսկ այս մարդս՝ աշխարհիս վրայ բան չկայ որ չկարենայ ընել։ Թէ որ հինգ տարուընէ վեր ինչ որ հոս տեսեր եմ՝ քեզի հիմայ պատմելու ըլլամ՝ մազերդ կը տնկուին, սարսափէդ բոլոր մարմինդ դող կ՚ելլէ։ Ասոր համար կ՚ըսեմ թէ բոլորովին անօգուտ է դէմ դնելդ։ Միթէ ես ալ այդ մարդուն քով կ՚ուզէի՞ ապրիլ. ես ալ ազնուական կըրթութիւն առած չէի՞. իսկ ինքն ո՞վ էր։ Եւ

տակայն հինգ տարի իրեն հետ ապրեցայ. անիծելով միշտ գիշեր ցորեկ իմ գոյութիւնս։ Իսկ հիմայ ինքն ուրիշ աղջիկ մը ձեռք ձգեր է, որ հազիւ տասնուհինգ տարուան կայ և աղէկ ալ կրթութիւն առած է։ Խեղճին բարեպաշտ խաթունն իրեն կարդալ գրել սորվեցուցեր է. Աստուածաշունչ մ՚ալ տուեր է ձեռքը. ան ալ առեր իրեն հետ այս դժոխքը բերեր է։

Այս բառս կնիկն ու սկսաւ կատաղի ու կսկծեցուցիչ ծիծաղ մը փրցընել, որ այն աւերակ տեղւոյն մէջ դիւթական արձագանգ մը հանեց։

Թովմաս ձեռուըները մէկմէկու բերաւ. և չորս կողմն ուրիշ բան չէր տեսներ՝ բայց եթէ սարսափն ու խաւար։

— Ո՜վ Յիսուս, տէ՜ր Յիսուս, հաւաչեց, արդեօք բոլորովին երեսէ ձգեցի՞ր քու խեղճ արարածներդ։ Օգնէ՛ ինծի, Տէր իմ, ապա թէ ոչ կը կորսուիմ։

Բայց կինը ծանրութեամբ սկսաւ խօսքն առաջ տանիլ։

— Իսկ այդ ողորմելի շներն ո՞վ են, որոնց հետ կ՚աշխատիս, և անոնց համար նեղութիւն կը քաշես։ Տեղն եկածին պէս՝ անոնք ամէնքն ալ քեզի դէմ կը դառնան,

ատոնք ամէնն ալ վատ, ամէնն ալ իրարու դէմ անգութ մարդիկներ են։ Ի՞նչ բանի համար զանոնք խնայեմ ըսելով՝ դու զքեզ նեղութեան մէջ կը ձգես։

— Խե՛ղճ մարդիկ, ըսաւ Թօվմաս. ո՞վ զանոնք այսպէս անգութ ըրաւ։ Հիմայ ես ալ թէ որ խոնարհելու ըլլամ՝ ես ալ անգթութեան կը վարժիմ, և կամաց կամաց անոնց կը նմանիմ։ Չէ, չէ, խաթուն. ես ամէն բան կորսնցուցի, կին, որդիք, տուն, ազնուական ու բարեսիրտ տէր մը, որ թէ որ շաբաթ մ՚ալ ապրելու ըլլար՝ զիս պիտի ազատէր։ Ես այս աշխարհիս վրայ ամէն բան կորուսի, և այնպէս կորուսի որ մէյմ՚ալ գտնելու յոյս չունիմ։ Չեմ կրնար երկինքն ալ կորսնցընել, ո՛հ, չէ. վերջապէս չեմ կրնար ուրիշի չարիք հասցընել։

— Բայց անկարելի բան է որ Աստուած այս մեղքերուն համար մեզմէ հաշիւ ուզէ, ըսաւ կինը։ Չի կրնար մեզի համարել այն մեղքը՝ զոր ստիպուած ենք ընելու։ Անոնք պատասխանատու են այս բաներուս՝ որոնք որ կը ստիպեն զմեզ մեղանչելու։

— Հրամեր ես, այնպէս է, պատասխանեց Թօվմաս. բայց տալ չենք կրնար

ըսել թէ մենք ալ մեղքի մէջ չենք ինկնար։ Թէ որ ես ալ Սամպոյին պէս այնչափ անգութ ըլլամ, այնչափ չար ըլլամ, ով իմծի պատճառը կը հարցընէ։ Զարութեան անունը վրաս լսելը բոլոր ոսկորներս դող կը հանէ։

Կնիկն ապշած ու զարմացած՝ Թովմասին երեսը նայեցաւ, իբր թէ միտքը նոր մտածութիւն մ'եկած ըլլար. ետքէն խորունկ հառաչանք մ'արձակելով պոռաց.

— Ո՛վ Աստուած ողորմութեանց, շիտակ է ըսածը։ Ետքը գետնին վրայ փըռուեցաւ և սկսաւ հեծել ու բարոյական ցաւերու մէջ չարչըրկուիլ։

Քանի մը վայրկեան լռութիւնը պատեց, և ուրիշ բան չէր լսուեր՝ բայց եթէ իրենց շնչառութեան ձայնը. ետքը Թովմաս կամացուկ ձայնով մը՝ — Խաթուն, կ'աղաչեմ... ըսաւ։

Կնիկն յանկարծ վեր ելաւ, ու դէմքն առջինին պէս խիստ ու մաղձոտ կերպ մ'առաւ։

— Կ'աղաչեմ, խաթուն, ՝տեսայ որ սա անկինը նետեցին վրայի հագուստներս, գրպանին մէջ Աստուածաշունչս պիտի ըլլայ, շնորհք մը ը՛րէ՛ս, կը բերե՞ս։

Գէսսի տաք եղաւ, գնաց ընելու Աստուածաշունչը։ Թովմաս նշան դրուած տեղ մը բացաւ. որուն Թղթերը մաշեր էին։ Քրիստոսի Տեառն մերոյ կենաց վերջին աւետարանն էր բացուածը, որուն վէրքերով բժըշկութիւն գտանք։

— Խնդրեմ, խաթուն, շնորհք ըրէիր ու սա կարգն ինծի կարդայիր. Ջրէն աւելի ինծի օգուտ կ'ընէ։

Գէսսի անտարբեր ու խրոխտ կերպով մը առաւ գիրքը, և մէյմը վրան նայեցաւ։ Եաքէն սկսաւ բարձր ու անուշ ձայնով ու լաւ առոգանութեամբ այս սրտաշարժ պատմութիւնը կարդալ։ Կարդալու ժամանակ շատ անգամ ձայնը կը նուաղէր ու յանկարծ կը մարէր. ան ատեն կանգ կ'առնէր, և կեղծ ցրտութիւն մը կը ձեւացընէր՝ մինչեւ որ այլայլութիւնն անցնէր։ Բայց երբոր այս վսեմ խօսքերուն հասաւ. Հայր թող դոցա, զի ոչ գիտեն զինչ գործեն. գիրքը վար ձգեց, ու երեսը մազերովը ծածկելով՝ սկսաւ դառնագին հեկեկալ ու լալ։

Թովմաս ալ կու լար, և երբեմն երբեմն քթին տակէն աղօթք մը կը փսփսար, հառաչանք մը կը հանէր։

— Ո՞ւր էր թէ մենք ալ իրեն համակամութեան կարող ըլլայինք նմանելու, ըսաւ Թուլմաս. այս բանս իրեն շատ բնական կու գար, իսկ մեզի սաստիկ դժուար: Ո՛վ Տէր, օգնէ մեզի. ո՛վ Յիսուս Աստուած իմ, ողորմէ մեզի:

— Խաթուն, կրկնեց Թուլմաս՝ քի՛չ մ՚ատեն լուռ կենալէն ետեւ, կը տեսնեմ որ ամէն բանի մէջ ալ դուն ինծմէ շատ վեր ես. բայց մէկ բան կայ միայն՝ որ խեղճ Թուլմասէն կրնաս սորվիլ: Դուն կ՚ըսես թէ Աստուած մեզի հակառակ է, որովհետեւ կը թողու որ զմեզ ընկճեն ու զմեզ չարչարեն. բայց մէյմը նայէ թէ իրեն միածին Որդին՝ Տէրն փառաց, ինչե՛ր քաշեց: Միշտ խեղճ ու աղքատ կեանք մը չունեցա՞ւ. մեր մէջ ո՞վ կայ անոր չափ նեղութիւն քաշող: Աստուած զմեզ չէ մոռցեր, ես հաւատքով գիտեմ. թէ որ իրեն հետ չարչարուինք, իրեն հետ ալ օր մը պիտի թագաւորենք. Սուրբ Գիրքն այսպէս կը սորվեցնէ. բայց թէ որ մենք զինքն ուրանանք, ինքն ալ զմեզ պիտի ուրանայ: Քրիստոս աէրն մեր և իրեն աշակերտներն ի՞նչ նեղութիւններ չքաշեցին, չքարկոծուեցա՞ն, չսղոցուեցա՞ն, լեշկ մաշկօք և մորթօք չշրջեցա՞ն, ամէն

բանէ մերկացեալք, չարչարեալք, նեղեալք։ Նեղութիւն քաշելնիս պատճառ չէ ուրեմն որ հեռուցընենք՝ թէ Աստուած ալ մեզի դէմ դարձեր է. այլ ընդ հակառակն՝ ինքը մեր կողմն է, միայն թէ մենք իրեն հաւատարիմ ըլլանք ու մեղաց մէջ չիյնկնանք։

— Բայց ինչո՞ւ զմեզ այնպիսի վիճակի մը մէջ կը ձգէ որ չմեղանչելն անկարելի է, պատասխանեց կինը։

— Ես կարծեմ թէ կրնանք մեղքէ փախչիլ, վրայ բերաւ Թովմաս։

— Է՛հ, դու ալ կ'իմանաս, ըսաւ Գէսսի։ Ի՞նչ կ'ընես, վաղը ամէնքն ալ քեզի դէմ պիտի ելլեն. ես զանոնք աղէկ կը ճանչնամ, ես անոնց բոլոր ըրածները տեսեր եմ։ Երբոր միտքս կը բերեմ՝ կը սոսկամ թէ ինչ բաներ պիտի ընեն քեզի՝ ինչուան որ զքեզ խոնարհեցընեն։

— Տէ՛ր Յիսուս, աղաղակեց Թովմաս, դու պահէ իմ հոգիս։ Տէր, Տէր, մի՛ թողուր զիս որ անոնց չար կամքը կատարեմ։

Ո՛հ, եղո՜ւկ քեզի, ըսաւ Գէսսի, ես այսպիսի մաղթանքներ ո՛րչափ անգամ լսեր եմ։ Բայց վերջը վերջը ընկճուեր ու անոնց

լուծին տակը մտեր են։ Եմմէլինային նայէ, ինքն ալ քեզի պէս ինչուան հիմայ կը ջանայ դէմ դնել, բայց ի՞նչ բանի կու գայ։ Կա՛մ ան է՝ որ անոնց կամքին պիտի խոնարհի, և կա՛մ ան է՝ որ բզիկ բզիկ պիտի ըլլայ։

— Լաւ ուրեմն, կը մեռնիմ, ըսաւ Թովմաս։ Ո՛րչափ որ կ'ուզեն թող երկընցընեն տանջանքներս. չեն կրնար արգելուլ որ օր մ'ալ չմեռնիմ. անկէ ետեւ ա՛լ բան չեն կրնար ընել ինծի։ Ես միտքս հաստատ դրեր եմ, անոր համար հոգս չէ։ Ես գիտեմ որ Աստուած ինծի կ'օգնէ այս փորձութիւններս տանելու։

Կինը պատասխան չտուաւ. անշարժ կեցած առջեւը կը նայէր։

— Ո՛վ գիտէ, գուցէ այսպէս աղէկ է ընել, մըմռաց քթին տակէն։ Բայց անոնք որ մէյմը խոնարհեր են՝ ա՛լ յոյս չկայ անոնց։ Տղմի մէջ կ'ապրինք մենք, և այն աստիճանի անարգութեան մէջ ենք՝ որ մենք մեզմէն կը սոսկանք։ Մահուան կը փափագինք, բայց սիրտ չենք կրնար ընել մենք զմեզ սպաննելու։ Ա՛լ յոյս չկայ, ա՛լ յոյս չկայ։ Իսկ այդ խեղճ աղջիկը, ես ինչ տարիք որ ունէի նոյն ժամանակ՝ ինքն ալ

ճիշդ այն տարիքն ունի։ — Հիմայ գիս կը տեսնե՞ս, դարձաւ ըսաւ Թովմասին, նայէ թէ ի՞նչ դարձեր եղեր եմ... ես ալ ատենօք ճոխութեանց մէջ մեծցեր եմ։ Ինչուան հիմայ միտքէս չեն ելլեր աղայութեանս ատենի այն փառաւոր սրահներն, ուրտեղ կը խաղայի, և ջազած գեղեցիկ հագուստներս, և այցելուաց իմ վրաս ունեցած գգուանքներն։ Սրահին պատուհանները գեղեցիկ պարտիզի մը վրայ կը նայէին. ուր եղբայրներուս ու քոյրերուս հետ նարընջի ծառերուն տակը պահուըտուկ կը խաղայինք։ Ետքէն կուսանաց վանք մտայ կրթութեան համար, ուր երաժշտութիւն և գաղղիերէն, ասղնեգործութիւն և ուրիշ բաներ ալ սորվեցայ։ Երբոր տասնըչորս տարիս մտայ՝ վանքէն ելայ, ու գնացի հօրս յուղարկաւորութեան հանդիսին ներկայ գտնուելու։ Հայրս յանկարծակի մեռաւ. և երբոր եկան անոր ունեցածն ու չունեցածը քննեցին, տեսան որ ունեցածներն հազիւ թէ պարտքերը կը գոցէին։ Պարտատէրները հօրս ստացուածոցը ցանկ մը շինեցին, որուն մէջ ես ալ մտայ։ Մայրս գերի էր, և հայրս միշտ միտք ունէր ինծի ազատութիւն տալու, բայց չկըրցաւ տալ. ուստի ես ծախու ելլելու բա-

ներուն կարգն անցայ։ Ես իմ ով ըլլալս աղէկ գիտէի, բայց ամենեւին փոյթս ալ չէր եղած։ Որո՞ւն մաքէն կ'անցնէր որ այնպիսի քաջառողջ ու կարիճ մարդը շուտ մ'ինկնայ ձեռնի։ Նոր-Օռլէանի մէջ մաղձայաւին տապին զոհերէն մէկն ալ Հայրս եղաւ։ Յուղարկաւորութեան երկրորդ օրը՝ Հօրս Հարազատ կինն իրեն ստացքն առաւ և իր Հօրը կալուածները գնաց։ Ինծի այնպէս կու գար թէ իմ Հետս մասնաւոր կերպով մը կը վարուէին, և չէի կրնար պատճառ մը գտնել։ Երիտասարդ փաստաբանի մը թողուցեր էին Հօրս բաները կարգի դնելու Հոգը. որ ամէն օր տուն կու գար և ինծի Հետ շատ անուշութեամբ կը վարուէր։ Իրիկուն մ'ալ Հետը գնեցիկ երիտասարդ մը բերաւ, որուն նմանը կենացս մէջ չեմ տեսած։ Յաւիտեան պիտի չմոռնամ ես այն յիշատակաց արժանի իրիկունը։ Թեւը մըտած՝ պարտէզը պտըտեցայ. ես տխուր ու քաշուած էի և տրամութիւնը վրաս տիրած էր. իսկ անիկայ շատ քաղցրութեամբ ու բարեկամութեամբ Հետս կը խօսակցէր։ Ըսաւ թէ վանք մտնելէս առաջ զիս տեսեր է եղեր, և զիս շատ կը սիրէ եղեր, ուստի Հիմայ ալ կ'ուզէ իմ պաշտպանս ու բարե-

կամս ըլլալ։ Վերջապէս, թէպէտ ինքն ինծի բան մը չըսաւ. թէ զիս երկու հազար ոսկիի գներ է և թէ ինքն է զիս սնուցեր, ես շատ սիրով յանձն առի իրեն տալ ինքզինքս. վասն զի զինքը շատ կը սիրէի, ես, ըսաւ կնիկն ու հեկեկաց... ո՜հ, որչափ զինքը սիրեցի, և հիմայ ալ կը սիրեմ, և մինչաւան վերջին շունչս պիտի սիրեմ։ Այն ինչպէս գեղեցիկ էր, ինչպէս բարեկիրթ, և ինչպէս ազնուական կերպ ունէր։ Զիս գեղեցիկ տուն մը տարաւ, ինծի ծառաներ, ձիեր, կառքեր, կահ կարասիք և փառաւոր հագուստներ տուաւ, ու ամէն կարելի ճոխութիւն առջեւս թափեց։ Բայց ես այս ամէն բաներուս վրայ անտարբեր աչքով կը նայէի, բոլոր իմ մտածութիւնս իրեն վրայ էր ։ Աստուծմէս աւելի , հոգիէս աւելի կը սիրէի զինքը. ասոր համար անկարելի էր որ իրեն կամքին դէմ դնէի, ուզէր ալ՝ չէի կրնար։ Հենրիկոս էր իրեն անունը։

Մէկ բան միայն կը փափաքէի ես իրմէն, այն է՝ որ օրինաւոր կերպով ինծի հետ ամուսնանար։ Ինծի այնպէս կ՚երեւար որ եթէ զիս կը սիրէր, ինչպէս ինքն ալ կ՚ըսէր, և թէ գրուանց ինչ գութ որ կը զգացցուցընէր վրաս՝ սրտէն ալ նոյն զգացումն ու-

նի, ուսալի առանց պժուարութեան կրնար հեաս ամուսնանալ ու զիս ազատ դրել։ Բայց ինքը զիս համոզեց որ այս բանս անկարելի է. և ըսաւ որ եթէ մէկմէկու հաւատարիմ ըլլանք՝ Աստուծոյ գիմաց նոյնպէս օրինաւոր ամուսնութիւն է [1]։ Թէ որ այս բանս իրաւ է, միթէ ես անոր համար չապրեցա՞յ, այն օդս չշնչեցի՞։ Անգամ մը պալուկէ հիւանդացաւ. քանի օր ու քըսան գիշեր քովէն բաժնուած չեմ, վրան ամէն հոգ խնամք տարի։ Զիս իր պահապան հրեշտակը կը կանչէր, և ինծի կ'ըսէր թէ ես ազատեցի իր կեանքը։ Երկու գեղեցիկ զաւակ ունեցանք. առաջինը մանչ էր, և անունը դրինք Հէնրիկ։ Բոլորովին հօրը կը նմանէր, գեղեցիկ աչուըներով, բարձր ճակատով, գանգրաւոր մազերով, հօրը աշխոյժն ու մտաբացութիւնն ունէր։ Իսկ

1. Բարեսէր ընթերցողք չզարմանան այս կնկան ամբողջ վարուց պատմութեան վրայ. Մարդս որչափ ալ պզտիկուց աղէկ կրթութիւն առած ըլլայ՝ թէ որ ինքզինքը սանձելու կամք չունենայ, արտաքին նըկատմունքը կամ քաշուիլը շուտ կը թօթափի վրայէն, և իրմէ ստորնագոյնը իր ամէն կրից այնպէս զոհ կ'ընէ՝ որ մարդ լսելու կը պժգայ։ Այս աղէտալի պատմութիւնս ալ ունի իրեն հետեւանք զգուշացուցիչ օգտակար դասն. ա՛յս եղած է Հեղինակին միտքը, ա՛յս դարձեալ մեր ամբողջական թարգմանութեան ալ նպատակը։

պզտիկ Ելիզային համար կ'ըսէր՝ թէ ինծի կը նմանէր. և իրեն ըսածին նայելով՝ ես Լուիզիանայի մէջ ամենէն գեղեցիկ կինն էի, և թէ իրեն համար գանձ մ'ենք ես և զաւկըներս։ Կ'ուզէր որ ես անձամբ զանոնք հագուեցընեմ, և հետս առած՝ բաց կառքով պտըտելու ելլեմ, որպէս զի հրապարակական մեր վրայ խօսուած գովեստները լսենք. և իմ վրաս ու տղոցս վրայ ի՛նչ գովութիւն որ լսէր՝ մէկէն կու գար և ուրախութեամբ ինծի կը պատմէր։

Ո՜հ, այն ի՛նչ երջանիկ օրեր էին. կարծէի թէ ինծի պէս երջանիկ կին մը չկայ աշխարհիս վրայ։ Բայց անոնց ետեւէն տըխրագին օրեր յաջորդեցին։ Իր մէկ հօրեղբօրորդին և միանգամայն սրտակից բարեկամը, որ պարոն Գըալէր կ'ըսուէր, յանկարծ Նոր-Օռլէան եկաւ։ Պատճառը չեմ գիտեր. առաջին անգամ որ զինքը տեսայ՝ վրաս վախ մ'եկաւ։ Կարծես թէ նախազգացութիւն մ'ունեցայ թէ անիկայ մեր թըշուառութեան պատճառ պիտի ըլլար։ Հենրիկօս հետն առած՝ դուրս կ'երթար. և շատ անգամ կէս գիշերէն երկու երեք ժամ անցած տուն կը դառնային։ Ես չէի համարձակիր բան մ'ալ հարցընելու. Հենրի-

կոս դիւրագրգիռ բնաւորութիւն մ՚ունէր, ուստի կը վախէի թէ զինքը չզայրացընեմ։ Խաղի ատեններ կը տանէր զինքը. և Հէնրիկոս ալ այնպիսի բնութիւն մ՚ունէր՝ որ մէյմը այսպիսի տեղեր մանելէն ետեւ՝ ա՛լ չէր կրնար անոնցմէ ետ կենալ։ Ուրիշ կընկան մը հետ իրեն ծանօթութիւն ընել ալւաւ. և ես շուտ մ՚իմացայ որ Հէնրիկոսին սիրտն ա՛լ ինծի հետ չէր։ Ինքն ամենեւին ինծի չըսաւ այս բանս, բայց ես գիտէի, և օր աւուր վրայ աւելի յայտնի կը տեսնէի։ Սիրտս կտոր կտոր կ՚ըլլար, բայց չէի համարձակիր ինչ և իցէ կերպով մեղադրութեան խօսք մ՚ընել իրեն։ Վերջապէս այն անպիտան մարդը Հէնրիկոսին առաջարկեց որ զիս ու տղաքս իրեն ծախէ, և մեր գնովը՝ խաղի պատճառաւ ըրած պարտքերը վճարէ, որպէս զի կարող ըլլայ նորէն ուզած ամուսնութիւնը կատարել. ուստի ծախուեցանք։ Հէնրիկոս ինծի ըսաւ որ գեղը հարկաւոր բան մ՚ունի, և երկու երեք շաբաթ կ՚ուշանայ հոն։ Սովորականէն աւելի անուշութեամբ խօսեցաւ հետս այն օրը, և ըսաւ թէ շուտով նորէն կը դառնամ։

Բայց ես չխաբուեցայ, իմացայ թէ ա՛լ

բանս լմընցեր է. անոր համար քար պարձայ. բառ մ'ալ չկրցայ հանել բերնէս, և ոչ կաթիլ մ'արցունք աչքէս թափել։ Քանի մ'անգամ տղաքս պագայ, ինծի հետ ալ պագտուեցան ու ճամբայ ելան։ Տեսայ որ ձին կը հեծնէր, անդադար ետեւէն կը նայէի՝ ինչուան որ աներեւոյթ եղաւ, ես ալ մարեցայ ինկայ։

Ան տանեն եկաւ այն անպիտան մայրը, եկաւ որ զմեզ տանի։ Ըսաւ թէ զիս ու տղաքս գներ է, և դաշնագիրն ալ ցըցուց։ Ես զինքն անիծեցի առաջի Աստուծոյ. և ըսի թէ աւելի յանձն կ'առնում մեռնիլ՝ քան թէ ես զիս իրեն ձեռքը տալ։

— Դու գիտես, պատասխանեց ինծի. բայց թէ որ խելքդ գլուխդ չժողվես՝ տղաքդ կը ծախեմ, և յաւիտեան զանոնք մէյմ'ալ չես տեսներ։ Ըսաւ ալ թէ առաջին անգամ որ զիս տեսաւ՝ վրան փափաք մ'եկաւ զիս ձեռք ձգելու. և գիտամամբ Հենրիկը գլխէ հաներ էր և պարտքերու տակ ձգեր էր, որպէս զի ստիպուի զիս ծախելու. կամաւ ուրիշ կնկան մը հետ զանիկայ ծանօթացուցեր էր՝ որպէս զի ինծմէ սէրը պաղի. և գիտցած ըլլաս, ըսաւ, ինչ ալ ընես, որչափ ալ լաս՝ ամենեւին քեզի տեղի տալիք չունիմ։

Ստիպուեցայ զինջանիլ. վասն զի բարոյական շղթաներով ոտքս ձեռքս կապուած էին. տղաքս իր ձեռքն էին, և ամէն անգամ որ իրեն կամքին դէմ կը գնէի, մէկէն կը սպառնար թէ տղաքդ կը ծախեմ, և այս կերպով ամէն ուզածը վրաս կը կատարէր։ Ո՜հ, այն ինչ կեանք էր։ Մտածէ մէյմը թէ ինչ կ՚ըլլայ մարդ՝ երբոր տեսնէ թէ օր աւուր վրայ սրտին խոցերը կը շատնան, սէրը դեռ կը վառի՝ որ անկէ ետեւ ուրիշ բան չէր՝ բայց եթէ շարունակ տանջանք մը, և թէ՝ մարմնով և հոգւով այնպիսի մարդու մը հետ կապուիլ՝ զոր մահու-չափ կ՚ատէի։ Շատ կ՚ախորժէի Հենրիկոսին կարդալ որ ինքը մտիկ ընէ. իրեն համար դաշնակ կը զարնէի, հետը մէկտեղ կը պարէի և իրեն համար կ՚երգէի. իսկ այս մարդուս համար ինչ որ կ՚ընէի՝ բոլորովին ակամայ էին, և սակայն չէի կրնար բանի մ՚ալ իրեն չէ ըսել։ Տղոցս հետ սաստիկ խստութեամբ կը վարուէր։ Ելիզան շատ վախկոտ էր բնութեամբ, իսկ Հենրիկը հօրը պէս անվախ ու խրոխտ էր, և ամենուն մէկէ մ՚ալ չէր վախեր։ Այս անպիտան մարդը անդադար կը ջանար վրան պակասութիւն մը գտնել. զինքը կը

յանդիմանէր՝ այնպէս որ շարունակ սրտա-
դողի մէջ էի։ Ես ամէն ջանք կ՚ընէի որ
տղաքս այս մարդուն հետ ամէն յարգու-
թեամբ վարուէին, և իրմէ միշտ հեռու կը
բռնէի. վասն զի կեանքէս աւելի կը սիրէի
զիրենք։ Բայց ամէն բան պարապ ելաւ.
այն անպիտան մարդը իմ երկու տղաքս ալ
ծախեց։ Օր մը գիս ձիով հետը մէկտեղ
պտըտելու տարաւ, և երբոր տուն դարձայ՝
երկուքն ալ տունը չէին։ — Ծախեցի, ը-
սաւ, զանոնք. և դրամն ալ ինծի ցըցուց.
անոնց արեան գինը։ Ան ատեն ինծի այն-
պէս երևցաւ թէ ամէնքն ալ գիս երեսէ
ձգեցին. աչքս դարձաւ, սկսայ անիծել,
սարսափելի անէծքներ թափեցի Աստուծոյ
և մարդկանց դէմ, և այնպէս ալ կարծեցի
թէ այն անպիտան մարդը խել մ՚ատեն ինծ-
մէ վախցաւ։ Բայց ինքն իր միտքը դրա-
ծէն ետ չկեցաւ. « Թէպէտ, ըսաւ, տղաքդ
ծախեցի, սակայն իմ ձեռքս է զանոնք
քեզի տեսնել տալը. և թէ որ հանդարտ
չկենաս՝ պատիժն անոնց գլխուն պիտի
իջնէ »։ Ի՞նչ չէն ըներ մօր մը՝ որուն
ձեռքէն տղաքն յափշտակեցին։ Կամայ ա-
կամայ ձայնս վար քաշեցի. ինքն ինծի
յոյս կու տար թէ գուցէ նորէն գնէ զա-

նանք, և այսպէս մէկ երկու շաբաթ գիս խաղցուց։ Օր մ՚ալ գուրբը պտըտելու ժամանակս՝ ուղղութեան տան[1] մ՚առջևէն անցայ. դրանը դիմաց բազմութիւն լեցուեր էր. ներսէն տղու մը ձայն լսեցի. մէյմ՚ալ յանկարծ Հենրիկս երկու երեք հոգւոյ ձեռքէն փախչելով՝ որ զինքը բռնել կ՚ուզէին, լալով դէպ ինծի վազեց և հագուստներուս պլլուեցաւ։ Դահիճները սարսափելի հայհոյութիւններ ընելով՝ ետևէն վազեցին. անոնցմէ մէկը, որուն դէմքը յաւիտեան միտքէս չելլեր. Մ՛ի փախչիր, ըսաւ, տղայ թէ ոչ՝ ուզես չուզես նորէն ուղղութեան տունը կը մտնես, ու հոն այնպիսի դաս մը կ՚առնես որ յաւիտեան չես մոռնար։ — Ես սկսայ աղաչել պաղատիլ, անոնք սկսան վրաս ծիծաղիլ։ Խեղճ տղան կու լար կ՚ողբար, և ողորմուկ կերպով երեսս կը նայէր ու ինծի կը պլլուէր։ Քաշեցին զինքը ինծմէ փըրցուցին. հագուստս կտոր մը ձեռքը մնաց. ու առին նորէն ներս տարին. խեղճը անդադար, «Մայրի՛կ, մայրի՛կ» կ՚աղաղակէր։ Մէկը կար հոն որ կարծես թէ գըթաց վրաս. քովս ինչ ստակ որ ունէի ա-

1. Calaboose կամ Calabouse

նոր տուի՝ որ երթայ տղուս համար բարեխօսութիւն մ'ընէ։ Անիկայ գլուխը թօթուեց, ու ըսաւ թէ իր աներեսութեանն ու անհնազանդութեան համար արժանի է այդ տղան պատիժ ուտելու, որպէս զի խելքը գլուխը գայ։ Ան տանն վազելով տուն դարձայ, և ամէն մէկ քայլ առնելուս կարծէի թէ տղուս ձայնը կը լսեմ։ Տուն հասայ չհասայ, շունչս բռնուած՝ սրահը վազեցի, Գրալէրը հոն գտայ. բոլոր տեսածս իրեն պատմեցի, և աղաչեցի որ միջնորդութիւն մ'ընէ տղուս համար։ Ինքն ինծի ծիծաղելով պատասխան տուաւ՝ թէ «Տղադ արժանի էր ծեծի. պէտք է զինքը զսպել, քիչ ատենէն խելքը գլուխը կու գայ. ասկէ աւելի ինծմէ ի՞նչ կը սպասէիր դուն »։

Նոյն միջոցին կարծես թէ գլխուս մէջ բան մը ճաթեցաւ, աչուըներս դարձան ու վրաս կատաղութիւն մ'եկաւ։ Միտքս կու գայ թէ մեծ դանակ մը տեսայ հոն, վազեցի առի ու այն անպիտանին վրան յարձակեցայ. Ետքէն աչուըներս բոլորովին մթընցան, ինքզինքս կորսնցուցի և քանի մ'օր ոչ տեսածս գիտէի, ոչ լսածս։

Երբոր ես ինծի եկայ, ինքզինքս գեղե-

ցիկ խուցի մը մէջ գտայ, բայց իմ խուցս չէր։ Սեւ պառաւ մը զիս կը դարմանէր, բժիշկ մը կ՚երթար կու գար, և ամէն խը-նամք վրաս կ՚ըլլուէր։ Ետքէն իմացայ որ Գրտլէր եկեր գնացեր, ու զիս ծախելու համար այս տունը ձգեր էր. ուստի ասոր համար էր որ զիս մեծ խնամքով կը դար-մանէին։

Ամենեւին չէի փափագիր որ առողջա-նամ. և յոյս ալ ունէի թէ չեմ առողջա-նար. բայց իմ ամէն փափագանացս հա-կառակ՝ կամաց կամաց ջերմս պակսեցաւ, օրէ օր վրայ կը գնէի, և վերջապէս բոլո-րովին առողջացայ։ Ամէն օր զիս մաքուր հագուեցընել կու տային. առաւօտուընէ ին-չուան իրիկուն ամէն տեսակ մարդ զիս տեսնելու կու գային, ծախողնին բերան-նին՝ զիս կը գնէին. հարցմունքներ կը հարցընէին ինծի, և վրաս գին կը կտրէին։ Բայց ես այնչափ տխուր, այնչափ լուրջ էի՝ որ մարդ չէր ուզեր զիս գնել։ Ինծի սպառնացան որ եթէ ուրախ զուարթ դէմք չցուցընեմ զիս ծեծել կու տան։ Վերջա-պէս օր մը Սդուարդ անունով պարոն մը դիմացս եկաւ. կարծես թէ վրաս գութ ունե-ցաւ և իմացաւ ինչ սոսկալի անձկութեան

մէջ ըլլալս. շատ անգամ մինակ եկաւ գը-նաց, ու վերջապէս զիս համոզեց որ իմ ցաւոցս գաղտնիքն իրեն յայտնեմ։ Ետքէն զիս գնեց և խոստացաւ ալ որ ամէն ձեռքէն եկածն ընէ ու տղաքս գտնէ և նորէն ինծի դարձընէ զանոնք։ Ելաւ այն պանդոկը գը-նաց՝ ուր իմ պզտի Հենրիկս ծառայութիւն կ'ընէր. հոն իրեն ըսեր են թէ Մարգարիտ բռնած գետին քով բնակող երկրատէր մը գներ էր զանիկայ. անկէ ետեւ ա՛լ լուր մը չեմ առած տղուս վրայ։ Շատ փնտռելէն ետքը՝ աղջիկս ալ գտաւ, պառաւ կնկան մը քով է եղեր. բայց պառաւը ո՛ր և իցէ գնով ալ չուզեց ծախել զանիկայ։ Պըտլէր իմացաւ որ Սդուարդ կ'ուզէր աղջիկս նորէն ինծի դարձընել, ան ատեն ինծի իմաց տուաւ որ պարապ տեղ յոյս չունենամ։ Սդուարդ նա-ւապետ էր. ինծի հետ շատ աղէկ կը վա-րուէր. գեղեցիկ կալուածք մ'ունէր, զիս ալ հոն տարաւ։ Նոյն տարին մանչ տղայ մ'ալ ունեցայ. ո՜հ, ո՛րչափ սէր ու գութ ունէի վրան. ամենեւին Հենրիկիս կը նմանէր. բայց ես միտքս դրած էի որ անկէ ետև ա՛լ տղայ չմեծցընեմ։ Տասնըհինգ օրուան կար չկար՝ գիրկս առի խեղճ տղան. աղէկ մը պագի գլուխը, և արցունքներովս թրջեցի.

տաքէն քիչ մը ափիոնի ոգիք (laudanum) խմցուցի իրեն. տղան գլուխը կուրծքիս վրան՝ քնացաւ ու մէյմ'ալ չարթընցաւ։ Այն ի՛նչ լաց ու ողբ էր որ տղուս վրայ փրցուցի։ Ուրիշները կարծեցին թէ սխալմամբ տուի տղուս այս մահու դեղը. բայց ես ըրածիս վրայ ոչ երբեք զղջացի, հիմայ կ'իմանամ թէ շատ աղէկ ըրեր եմ եղեր։ Գոնէ խեղճ տղան այս աշխարհքիս թշուառութիւններէն ազատեցաւ. և մահուընէ լաւագոյն ի՜նչ բան կրնայի անոր տալ։ Վրան շատ չանցաւ մաղձացաւը նորէն դուրս եկաւ. Եդուարդ նաւապետն ալ անկէ բռնուեցաւ ու մեռաւ։ Անոնք որ ապրիլ կ'ուզէին՝ մահն առաւ տարաւ զիրենք, իսկ ես որ ինչուան գերեզմանին դուռը հասայ, նորէն ողջ մնացի։ Դարձեալ ծախեցին զիս, և ձեռքէ ձեռք անցնելով՝ հալեցայ, մաշեցայ. Ջերմն ալ վրաս հասաւ։ Վերջապէս այս անպիտան մարդը զիս գնեց ու հոս բերաւ, ուր մնացեր եմ ինչուան հիմայ։

Կնիկն հոս կանգ առաւ. այրած սրտով բոլոր իր կենաց պատմութիւնը համառօտ մը պատմեց. խօսքը երբեմն Թօմասին կ'ուղղէր, երբեմն ալ ինքիրեն կը խօսէր։ Այնչափ սաստկութեամբ ու սրտաշարժ կեր-

պոլ պատմեց՝ որ Թովմաս առժամանակ մը վէրքերուն ցաւերը մոռցաւ. երբեմն մէկ արմընկան կը կայթընէր, երբեմն մէկալին. իսկ Գէսսի խուցին մէջ վեր վար կը պարտէր, ս՚ երկայն մազերն արձակած, որ ալեաց պէս օդուն մէջ կը ծփային։

— Դու ինծի ըսիր, կրկնեց նորէն Գէսսի, թէ Աստուած մը կայ. Աստուած մը որ վերէն մեր վրայ կը նայի և այս ամէն անզգամութիւնները կը տեսնէ։ Այս ինչպէս կրնայ ըլլալ։ Այն վանքին մայրապետներին ալ, որոնց քով կրթութիւն առի, ինծի ստէպ վերջին դատաստանին վրայ կը խօսէին, ուր ամէն բան յայտնուի պիտի կ՚ըսէին։ Նոյն օրը արդեօք վրէժխնդրութիւն ալ պիտի չըլլա՞յ։

Աշխարհք մեր և մեր որդւոց քաշածները չեն գիտեր, և հոգերնին ալ չէ։ Ես սակայն ճամբան քալելու ժամանակս՝ ցաւոց այնպիսի բեռ մը սրտիս վրայ կը կրեմ՝ որ բաւական է բոլոր քաղաքն իր ծանրութեան տակ ճմլելու։ Շատ կը փափագիմ որ տները վրաս փլչին և կամ թէ գետինն ոտքիս տակը բացուէր ու զիս կլլէր։ Այո՛, դատաստանին օրը ես ալ Աստուծոյ դիմացը պիտի ելլեմ, և պիտի բողոքեմ իմ և ազգս

մարմնով և հոգւով կորստեան պատճառ եղողներուն դէմ։

Քանի որ օրհորդ էր՝ եռանդնոտ ու հոգեւէր էր. զԱստուած կը սիրէր և ստէպ աղօթք կ'ընէր։ Իսկ հիմայ դատապարտելոց մէկն եմ, սատանաներն ետևէս ընկերեն ու գիշեր ցորեկ զիս կը չարչարեն։ Կը մղեն զիս, կը գրգռեն զիս. ես ալ՝ գիտեմ ընելիքս, այնպիսի տեղ մը դրկեմ զինքը՝ ուր որ արժանի է երթալու, և կարճ ճամբով... այս օրերս... գիշեր մը, թէ և ուզենայ ալ զիս ողջ այրել։

Երկայն ու ահռելի ծիծաղ մը փրցուց, որ բոլոր այն աւերակ խուցը թնդացուց. ետքէն յանկարծ այս ծիծաղը խորին հառաչանաց ու հեկեկանաց փոխեց. գետինը փռուեցաւ, վրան ջղային դող մ'եկաւ։ Քիչ մ'ետքը կարծես թէ այս կատաղութիւնն հանդարտեցաւ, կամաց կամաց ոտք ելաւ և վրան զգաստութիւն եկաւ։

— Կրնա՞մ քեզի ծառայութիւն մ'ընել, ըսաւ, Թովմասին պառկած անգւոյն մօտենալով. Նորէն պուտ մը ջուր կ'ուզե՞ս։

Գէսպինին այս անուշ ու քաղցր կերպն ամենևին չէր միաբանիր իրեն քիչ մ'առաջ ունեցած կատաղութեան։

Թովմաս տուած ջուրը խմեց, և կարեկից ըլլալով անոր երեսը նայեցաւ։

— Ո՛վ խաթուն, ըսաւ, կը փափագէի որ Անոր դիմէիր՝ որ քեզի կենդանի ջուր կրնար տալ։

— Անոր դիմե՛լ. ո՞ւր է անիկայ, ըսաւ Գէսսի։

— Անիկայ է որուն վրայօք ինծի կարդացիր... Աստուա՛ծ...

-- Միտքս կու գայ որ անոր պատկերը խորանին վրայ տեսեր եմ տղայութեանս ատեն, ըսաւ Գէսսի. ու անշարժ աչուըներուն վրայ տրտմութեան քօղ մը պատեց. բայց անիկայ հոս չէ. հոս ուրիշ բան չկայ, բայց եթէ անօրէնութիւն և յուսահատութիւն անվերջանալի, ըսաւ՝ ձեռքը կուրծքին վրայ դնելով, կարծես թէ սրտին՝ վրայէն ծանր բեռ մը կ՚ուզէր վերցընել՝ որ զինքը կը խղդէր։

Թովմաս կ՚ուզէր նորէն խօսիլ, բայց անիկայ իշխանական ձեւով մը լռութիւն հրամայեց անոր։

— Մի՛ խօսիր, ըսաւ, նայէ թէ որ կրնաս՝ քիչ մը քուն ըլլաս։

Ետքէն ջուրը քովը մօտ դնելով ու անկողնոյն վրայ զինքը կրցածին չափ տեղաւորելով, Գէսսի ձգեց անկէ հեռացաւ։

# ԳԼՈՒԽ ԼԵ.

## *Բժժանք*

*Լըկըրին տան հասարակաց ժողովատեղին ընդարձակ սրահ մ'էր, ուր խոշոր վառարան մ'ալ կար: Ատենով այս խցին պատերը զարդարուն թղթերով պատած էին, որոնք հիմայ աղտոտած ու սեցած՝ պատառ պատառ եղեր և պատերէն վար կախուեր էին: Բորբոսի ու աղտեղութեան վատառողջ և անախորժ հոտ մը հոն կը բուրէր ամէն կողմանէ. գունաւոր թղթերուն վրայ տեղ տեղ կաւիճով բաներ գրուած, տեղ տեղ ալ երկայն բարակ հաշիւներ ըրած էին, իբր թէ մէկը հոն թուաբանական գործողութիւններ կատարած ըլլար: Վառարանին մէջ ալ քանի մը վառած ածուխներ կային. թէպէտ օդը ցուրտ չէր, բայց իրիկուններն այս խցին օդը միշտ թաց ու զով կ'ըլլար. բաց ատկէ, Լըկըրի ծխախոտը վառելու և փոնչի ջուրը տաքցնելու համար կրակի կարօտութիւն ունէր: Ածուխին կարմրագոյն լոյսն այն խուցին մէջ եղած խառնափնդորութիւնը կը*

լուսաւորէր։ Հոն ամէն բան կը գտնուէր, ձիու թամբեր, սանձեր, ձիու տեսակ տե-սակ կազմուածներ ասդին անդին ցրուած սփռուեր էին. ասոնցմէ զատ՝ այն շներն ալ՝ որոնց վրայ առաջ խօսեցանք՝ այն խառնա-կութեան մէջ կապուած էին, և զանազան դիրքերով գետինն ինկեր պառկեր էին։

Լըկրի գաւաթ մը բօնչ պատրաստելու ետևէ էր. և ձեռքը՝ ծակ ու բերանը կո-տրած աման մ'առած՝ տաք ջուր լեցընելու ատեն, քթին տակէն ալ կը մռմռար.

Անիծած Սամսոն պատճառ եղաւ ին-ծի որ նորեն գերիներուս հետ խառնութեամբ վարուիմ։ Այն մարդը շաբաթէ մ'ալ չի կըր-նար ոտք ելլել աշխատիլ. և եկուր նայէ որ բամբակ ժողվելու ամենէն Հարկաւոր ե-ղանակն ալ հիմայ է։

— Հրամեր ես, Սամսոնն ալ բոլորովին քեզի նման է, լսաւ ձայն մը աթոռին ե-տևէն։

Ասիկայ Գէսսին էր, որ Լըկրիին ինքն-իրեն խօսելու ժամանակը կամացուկ մը ներս մտեր էր ու աթոռի մը ետևէն մտիկ կ'ընէր։

— Ա՛հ, դո՛ւ ես, դիւահարած կնիկ. ի՞նչ նորէն եկար։

— Հրամեր ես, նորէն եկայ, պատաս-

խանեց Գէսսի ցրտութեամբ. որպէս զի բոլոր ուզածներս կատարեմ։

— Ա՛լ խելքէդ հանէ, խե՛նդ. ես ըսածս գիտեմ։ Կա՛մ ա՛ն է որ խելքդ գլուխդ կը ժողվես, կա՛մ գերեաց բնակութիւնը կ'երթաս ու կ'ուտես, կ'աշխատիս։

— Բիւր անգամ կ'ընտրեմ գերեաց բնակութեան ամենէն աղտոտ ծակին մէջ բնակիլ քան թէ հոս քու ոտքիդ տակը։

— Ուզես չուզես նորէն ոտքիս տակն ես, պատասխանեց Լըկըր՝ Գէսսիին դառնալով այլանդակ ծիծաղով մը. և այս բանիս վրայ շատ գոհ եմ։ Ուստի քովս նըստէ, ու խօսք հասկըցիր, ըսաւ Լըկըր՝ Գէսսիին թեւէն բռնելով։

— Սիմոն Լըկըր, զգոյշ կեցիր, պոռաց կինն այնպիսի բարկացայտ աչուընելով ու կատաղի նայուածքով մը, որ մարդը սարսափեցաւ։ Այդպէս կը վախես ինծմէ, Սիմոն, կրկնեց անվախ կերպով մը, և իրաւունք ունիս. աղէկ զգուշացիր վրադ, վասն զի փորս սատանայ մտած է։

Այս վերջի խօսքերս Գէսսի անոր ականջէն վար սուր ձայնով մ'ըսաւ։

— Գնա, կորսուէ ասկէ. իրաւցընէ փորդ սատանայ մտեր է, պոռաց Լըկըր՝ զանիկայ

մէկզի հրելով և շփոթած չորս դին նայելով։ Վերջը կերպը փոխելով՝ ըսաւ. — Ինչո՞ւ համար, Գէսսի, առջինին պէս մէկմէկու բարեկամ պիտի չըլլանք։

Առաջինին պէս բարեկամ ըլլա՛նք... կրկնեց Գէսսի դառնութեամբ։ Սրտին սաստիկ այլայլութենէն խօսքը բերանը մնաց. շատ մը տխուր զգացմունքներ սիրտը ճըմլեցին։

Գէսսի Լըկրիի վրայ միշտ ազդեցութիւն ունեցեր էր. վասն զի զօրաւոր և կրիւք վառեալ կին մը՝ ամենէն անբան մարդուն վրայ անգամ մեծ ազդեցութիւն ունի։ Բայց քանի մ'առենէ ի վեր էր՝ որ գերագրգռութիւն մը ստացեր էր, և որ աւուր վըրայ ալ չէր կրնար տանել գերութեան պըժգալի լծոյն, և իրեն այս գերագրգռութիւնը երբեմն կատաղի փախածութեան կը փոխուէր։ Սոսկ Լըկրի աւելի վախնալ սկսեր էր անկէ, վասն զի ինքն ալ իր տխմար ու տգէտ բարքով՝ խենդերէն աւելորդապաշտական վախ մ'ունէր։ Երբոր Լըկրի Եմմէլինան տուն բերաւ, Գէսսիին վշտահար սրտին մէջ թաղուած կանացի բոլոր զգացմունքները մէկէն՝ կէս մարած ածուխի պէս՝ բորբոքեցան, և ան աղջկան կողմն եղաւ. ասով

Գէսսիին ու Լըկրիին մէջ սաստիկ կռիւ մը ծագեցաւ. այնպէս որ օր մ'ալ Լըկրի բարկութեան տանն սպառնացաւ Գէսսիին որ եթէ հանդարտ չկենայ՝ զինքն ալ մէկալ գերիներուն հետ մէկտեղ դաշտը կը ղրկէ աշխատելու։ Գէսսի արհամարհական խրոխտութեամբ մ'ըսաւ. թէ պատրաստ եմ դաշտերուն մէջ աշխատելու. և իրօք ալ՝ օր մը գնաց աշխատեցաւ, ինչպէս որ վերը տեսանք, անոր սպառնալիքներն արհամարհելու համար։ Բոլոր օրը Լըկրիին խելքը գլուխը չէր, վասն զի այս կինն այնպիսի ազդեցութիւն մ'ունէր վրան՝ որ չէր կրնար ինքզինքն անկէց ազատել։ Երբոր իր կողովը կշիռքին վրայ դրաւ, Լըկրի կը կարծէր թէ գուցէ Գէսսի քիչ մը կակղցած ըլլայ, անոր համար ալ կէս մ'ընտանեկան, կէս մ'ալ արհամարհական խօսք մը նետեց անոր, բայց Գէսսի դառն արհամարհանօք պատասխան տուաւ։

Եւ երբոր խեղճ Թովմասին ալ սրուած անգութ պատիժը տեսաւ՝ սրտին դառնութիւնն աւելի շատցաւ, և ուրիշ բանի համար Լըկրիին եանէն չէր ելած, բայց եթէ անոր անգթութիւնն յանդիմանելու։

— Խնդրեմ, Գէսսի, քիչ մ'աւելի վայելուչ կերպով վարուիս հետս։

— Կը յանդգնի՞ս հետս վայելուչ կերպով վարուէ ըսելու...։ Ըրածդ չե՞ս գիտեր։ Քիչ մը գութ չունէի՞ր քու դիւական բարուցդ սանձ մը դնելու. և խնայելու քու լաւագոյն գերիներէդ մէկուն, ու այս վիճակին մէջ չձգէիր, ան ալ այնպիսի ատեն մը՝ որ աշխատաւորի կարօտութիւն ունիս։

— Խենդութիւն էր ըրածս, ըսաւ Լըկրի. բայց որովհետև ան մարդուն ալ ընդդագլխութիւնը՝ բռնեց, ես ալ հարկադրեցայ զինքը խոնարհեցընել։

— Գիտցած ըլլաս որ դու զանիկայ խոնարհեցընելիք չունիս։

— Ի՞նչ, ես զինքը պիտի չկարենա՞մ խոնարհեցընել, ըսաւ Լրկրի՝ բարկութեամբ ոտք ելլելով. շատ կ'ուզէի այս բանս տեսնել. ինքն առաջինը պիտի ըլլայ որ ինծի դէմ դրած ըլլայ։ Կա՛մ ան է որ կը խոնարհի, կա՛մ բոլոր ոսկորները կը ջախջախեմ։

Այս միջոցիս դուռը բացուեցաւ ու Սամպոյ ներս մտաւ. և տէրը բարևելով՝ առաջ եկաւ, ու թղթի մէջ պլլած բան մ'անոր ձեռքը տուաւ։

— Ի՞նչ բան է, շան լակոտ, ըսաւ Լըկրի։

— Ցուռութուլաւնք մ'է, տէր իմ։

— Ի՞նչ։

— Այնպիսի բան մ'է որ կախարդները սևերուն կու տան, որով ամենևին ծեծին ցաւը չեն իմանար։ Թովմաս ալ ասիկայ սև ժապաւէնով մը վիզն էր անցուցեր։

Լըկրի ալ ուրիշ անզգամ ու անգութ մարդիկներու պէս շատ աւելորդապաշտ էր. թուղթն առաւ ու դողդողալով բացաւ։

Մէջէն արծաթէ տոլլար մ'ելաւ, և փունջ մ'ալ երկայն ու ոսկեթել մազեր, որոնք կարծես թէ կենդանութիւն մը զգալով՝ Լըկրիին մատուըներուն պըլլուեցան։

— Կրակը տանի, պոռաց յանկարծ՝ ոտուըները գետին զարնելով, ու քաշեց մատուըներէն դուրս հանեց մազերը, որոնք կարծես թէ մատուըները կ'այրէին։ Կորսընցուր սըւոնք. շուտ կրակը նետէ այրէ, կըրկնեց կրակարանին մէջ նետելով։ Ինչո՞ւ համար առիր ինծի բերիր։

Սամպոյ ապշած՝ բերանը բաց՝ անշարժ մնաց. և Գէսսի որ դռնէն դուրս ելլելու վրայ էր՝ կանգ առաւ, և սկսաւ զարմանալով մը Լըկրիին երեսը նայիլ։

— Զըլլայ թէ մէյմ'ալ այսպիսի սատանայական բաներ ինծի բերես. ըսաւ Լըկրի՝ բուռը ցուցընելով Սամպոյին, որ վախէն դէպի դուռ վազեց։ Լըկրի ալ տոլլարն առաւ պատուհանէն դուրս նետեց։

Սամպոյ զարմացաւ թէ ի՛նչպէս Լըկրըին ձեռքէն փախաւ։ Երբոր անիկայ դուրս ելաւ, Լըկրը այսպէս սաստիկ վախ ցուցընելուն վըրայ ամչցած ու շփոթած՝ աթոռին վրայ նըստաւ և սկսաւ քօնչ խմել։

Գէսսը ալ դռնէն դուրս ելաւ, և գնաց խեղճ Թուլմասին քիչ մ՚օգնութիւն՝ ընելու, ինչպէս նախընթաց գլխին մէջ պատմեցինք։

Բայց Լըկրըին վրայ ի՞նչ եկաւ։ Այն ոսկեփայլ մազերուն փունջն ինչո՞ւ այնպիսի վախ մը ձգեց այդ մարդուն վրայ, որ ամէն սեսակ անգթութեանց վարժ էր։ Այս բանիս պատասխան տալու համար՝ հարկ է որ մէյմը ետ դառնանք ու Լըկրըին վարքը քննենք։ Ո՛րչափ ալ անգութ ու ցոփ էր հիմայ այս անզգամ մարդս, ատենով բարեպաշտ մայր մը զինքը աղօթքներով ու հոգեւորական երգերով գրկին մէջ օրօրեր էր. իրեն այս այրած ճակատը Աւազանին սուրբ ջրովը զովացեր էր։ Տղայութեան ատեն՝ գեղեցիկ մազերով կնիկ մը ձեռքէն բռնած՝ զինքը կիրակի օրեր ժամ կը տանէր աղօթք ընելու։ Նոր-Անգղիոյ խորերը՝ այն բարեպաշտ մայրը՝ այս մէկ հատիկ տղուն վրայ անբաւ խնամք ցուցեր էր, և միշտ աղօթքով մեծցուցեր էր զինքը։ Հայրը խստասիրտ

մարդ մ'էր, որուն վրայ այս ազնիւ կինն անպատմելի սէր ցուցեր էր։ Իսկ Լըկրի՝ իրեն հօրը հետեւեցաւ։

Բնութեամբ կրակոտ, անկարգ ու խիստ բըլալով, մօրը բոլոր խորհուրդներն արհամարհեց, և ոչ անոր խրատուց ականջ կը դնէր։ Շուտ մը զինքը թողուց, և գնաց ծովերուն վրայ իրեն բաղդ մը փնտռելու ելուզակութեամբ։ Մէկ անգամ միայն տուն դարձաւ. ան ատեն իր մայրը՝ այն եռանդուն սրտով՝ որ կարօտ է սիրելու և իրեն սիրոյն առարկայ կը փնտռէ, շատ ետեւէ եղաւ, աղաչեց պաղատեց որ այս կորստեան ճամբէն ետ կենայ, որպէս զի որդւոյն հոգին յաւիտենական դատապարտութեան տակ չինկնայ։

Այն օրը Լըկրիին համար շնորհաց օր մ'էր. բարի հրեշտակները զինքը կը կանչէին, ինքն ալ անոնց ետեւէն երթալու վրայ էր, և Աստուծոյ ողորմութիւնն ալ ձեռքն երկընցուցեր էր։ Սիրտը շարժեր էր. և ներսը պատերազմ կար… բայց չարութեան ոգին յաղթանակեց. իր անոպայ բարուց բոլոր ուժովը՝ խղճմտանքին կոչմանցը դէմ դրաւ։ Սկսաւ ինքզինքը նորէն կերուխումի տալ և հայհոյել, և առաջինէն աւելի անկարգ և

անբարի կեանք մ'անցընել։ Իրիկուն մը՝ մայրը, որ որդւոյն յուսահատութիւնէն մահուան դուռն հասեր էր, անոր ոտքն ինկաւ. անիկայ ալ մէկդի հրեց խեղճ կինը և մարած գետինը փռեց, և հայհոյելով ու անիծելով՝ ելաւ դէպ ի նաւը փախաւ։ Այս սարսափելի դիպուածէս ետև, առաջին անգամ որ Լըկրի մօրը վրայ լուր առաւ՝ իրիկուն մ'էր, երբոր արբեցութեան մէջ ընկղմեր էր, գինով ընկերներն ալ չորս դին առած։ Թուղթ մը բերին իրեն. բացաւ ու մէջէն մազերու երկայն փունջ մ'ելաւ և մատըներուն պլլուեցաւ։ Այս թուղթն իրեն կը ծանուցանէր թէ մայրը մեռեր է, և թէ մեռնելու ատեն՝ զինքն օրհներ է ու իրեն թողութիւն տուեր է։

Տեսակ մը չարէն սարսափիլ մը կայ՝ որ ամենէն քաղցր ու ամենէն սուրբ բաներուն ալ ահաւոր ու սոսկալի կերպարանք մը կու տայ։ Գալկահար ու սիրասուն մօր մը յիշատակը, որ այն ահաւոր վայրկենին զինքը կ'օրհնէր ու իրեն թողութիւն կու տար, մեղաց գիւէն այս խստացեալ որդւոյն վրայ ուրիշ տպաւորութիւն չըրաւ՝ բայց եթէ վերջին դատաստանին սարսափն ու յաւիտենական դատապարտութեան յիշատակը միտքը

ձգեց։ Կատղած՝ մազերն ու նամակը կրակը նետեց, և երբոր անոնց խանձելու հոտն առաւ և անոնցմէ ելած բոցը տեսաւ, չկրցաւ չսոսկալ յաւիտենական կրակը մտածելով։ Ջանաց որ խմելով այս տխուր յիշատակները մտքէն խլէ ու դուրս վռնտէ. բայց շատ անգամ գիշերներն՝ այն խաղաղական պահուն, որ բռնի ամպարշտին սրտին վրայ ալ իր խաղաղութիւնը կը տարածէ, իր դալկահար մայրը կը տեսնէր անկողնոյն քով կեցած, և այն մազերուն փունջը մատուներուն պլլուիլը կը զգար։ Այն ատեն պաղ քրտինք մ'երեսը կ'իջնէր, և սարսափած՝ անկողնէն դուրս կը ցատքէր։ Դու որ մի և նոյն Աւետարանին մէջ կարդալով կը զարմանաս՝ թէ Աստուած բոլորովին սէր է, և միանգամայն հուր ծախիչ է՝ հիմայ կրնաս տեսնել որ չարութեան մէջ արմատացած հոգւոյ մը համար՝ ամենէն կատարեալ սէրն ալ՝ ամենէն սարսափելի տանջանքը կ'ըլլայ, կնիք և վճիռ անգութ յուսահատութեան։

Ուստի երբոր Սամպոյին բերած մազերը տեսաւ Լըկրի՝ նորէն առջի յիշատակները միտքը նորոգուեցան ու կատղած,

— Կրողը տանի զինքը, մրմռաց բռնը պուտ պուտ խմելով. ուսկի՞ց ալ գտաւ այդ

բանը։ Ինչպէս կը նմանի այն... Կը կարծէի թէ բոլորովին մոռցած ըլլամ։ Ի՜նչ դըժուար է եղեր մոռնալը...։ Բայց ինչու հոս մինակ ձգեցեր եմ. երթամ Եմմէլինան հոս կանչեմ. անիկայ զիս կ'ատէ, բայց հոգ չէ. բռնի կ'առնեմ կը բերեմ։

Լըկրի ընդարձակ գաւիթ մը մտաւ, ուր խխընջաձև սանդուղ մը կար՝ որ դէպ ի վեր կը հանէր։ Այս սանդուղս առեննօք շատ փառաւոր էր, հիմայ երեսէ ձգուած և աղտոտ էր, աստիճաններուն վրայ սնտուկներ դրուած և յարդի փշրանքներով լեցուած էին։ Լուսնին դեղնորակ լոյսն ալ՝ տանը վրայի պատառուածքէ մը ներս զարկեր էր. այն տեղւոյն օդն ալ ցուրտ և անառողջ էր։

Լըկրի սանդուղին ոտքը կանգ առաւ և երգելու ձայն մը լսեց. իրեն անսովոր բան մ'երևցաւ. և այսպիսի հին ու տխուր տան մը մէջ՝ ցնորք կարծեց. Թերևս իրեն արդէն այլայլած ջիղերն ալ այսպիսի տպաւորութեան մ'օգնեցին. ուստի սկսաւ մտիկ ընել։

Սուր ու տխուր ձայն մը՝ վերնաց մէջ սովորական եղած՝ հեծեծալ երգը կ'երգէր.

Ո՜հ, ո՛ր յայտնեմ և որպիսի՛ դառն ողբումն,
Յորժամ Քրիստոս եկեսցի դատել զազգ մարդ-
(կան։

— Կրողը տանի, ըսաւ Լըկրի, Եմմէլի-նան է. Հիմայ կ'երթամ զինքը կը խեղդեմ։ Էմ... Էմ... պոռաց կերկերեալ ձայնով մը։ Բայց արձագանգը միայն անոր վրայ ծիծաղելով մը պատասխանն տուաւ։ Իսկ այն անուշ ձայնը իր երգն առաջ կը տանէր։

Բաժանեցին որդիք ի հարց,
Բաժանեցին դստերք ի մարց,
Բաժանեցին ի յաւիտեան։

Երգը նորէն այն առջի կարգն աւելի որոշ ու աւելի բարձրաձայն որոտաց այն պա-րապ սրահներուն մէջէն։

Ահ, ո՛ր յայնժմն և որպիսի դառն ողբումն,
Յորժամ Քրիստոս նստցի դատել զազգ մարդ-
(կան։

Լըկրի չկրցաւ առաջ երթալ. ինքզինքը կ'ուտէր, բայց վրան պաղ քրտինք մ'իջաւ. և վախէն սիրտը կը նետէր. աչքին ճերմակ բան մը կ'երևար՝ որ դիմացի խուցը մտաւ. և մտածելով՝ որ չըլլայ թէ մօրն ուրուա-կանն ըլլայ տեսածը՝ սարսափէն մազերը տնկուեցան, և աՀով դողով նորէն առջի խուցը դարձաւ։

— Մաքէս կ'անցնի, ըսաւ ինքիրեն՝ կրակին քով նստելով, որ այդ մարդը հանգիստ թողում: Բայց այն անիծած թղթին ինչո՞ւ ձեռք դպուցի. կարծես թէ գիւթեցայ: Ան թղթին դպչելէս ետև՝ վրաս պաղ քրտինք մ'եկաւ, սիրտս ալ աճուպոպի մէջ ինկաւ: Ուսկէ՞ց ալ գտեր է այն մազերը, վասն զի ես զանոնք կրակը նետեր էի. որոշ միտքս կու գայ՝ որ ես ձեռքովս այրեցի զանոնք: Շատ կարգէ դուրս բան կ'երևայ՝ որ այն մազերը նորէն յարութիւն առած ըլլան:

Ա՛հ Լըկրի, այն մազերուն փունջին վրայ դիւթական զօրութիւն մը կար, և անոր ամէն մէկ թելը քեզի համար ահի և երկիւղի մէջ մէկ բժժանք էին, որով ամենակարողն Աստուած անգութ ձեռուըներդ կը կապէր՝ որ անպատսպար արարածոց արիւնը չմանես:

— Ձե՛զ տեսնեմ, ըսաւ ոտուըները գետին զարնելով ու շներուն սուլելով. ձե՛զ տեսնեմ, արթընցէք ելէք, ու ինծի ընկերութիւն ըրէք:

Բայց շները քունէն ծանրացած՝ աչուըներին հազիւ բացին չբացին՝ նորէն գոցեցին:

— Երթամ Սամպոն ու Քուիմպոն կանչեմ, որ ինծի բան մ'երգեն, ու դիմացս պար մը բռնեն, որպէս զի այս զարհուրեցուցիչ

խորհուրդները մաքէս ելլեն, ըստ․ Լըկրի, և գլխարկը դրած՝ բակն իջաւ ու փող մը փըչեց, որով սովորութիւն ունէր այս երկուսներն իրեն կանչելու։

Շատ անգամ Լըկրի երբոր սաստիկ գըլւարթացած կ'ըլլար՝ այս իրեն արժանաւոր երկու պաշտօնեաները խուցը կը կանչէր, և անոնց քանի մը գաւաթ օղի անկել տալէն ետև՝ կը հրամայէր որ երգեն, պարեն և կամ թէ իրարու հետ կռուին, ալ ինչ որ խելքին կը փչէր՝ անոնց կատարել կու տար։

Կէս գիշերը գրեթէ երկու ժամ անցեր էր, Գէսսի ալ Թոմմասին քովէն կը դառնար, որ այն խեղճին օգնելու գնացեր էր. երբոր լսեց ասոնց պոռալու, պոռչալու ձայնը և գինահարած երգելնին ու շներու հաչելը՝ բակին սանդուղներէն քանի մ'ոտք վեր ելաւ, ու պատուհանի մը ծակէն այն դժոխային տեսարանն սկսաւ դիտել։

Լըկրի և իր երկու արբանեակները վերջին աստիճանի գինովցած՝ կ'երգէին, կը պոռային, աթոռները տակն ու վրայ կ'ընէին, և իրարու վրայ կ'ելլէին կ'իջնէին ու ամէն տեսակ պժգալի ու անկարգ շարժմունքներ կ'ընէին։

Գէսսի ձեռուըները պատուհանին կոթըն-

ցուցած՝ ուշի ուշով զասոնք կը դիտէր։ Նոյն միջոցին աչուըններուն վրայ վշտաց, արհամարհանաց ու դառնութեան քօղ մ'իջաւ, ու շիտակ դէպի Եմմէլինային խուցը գնաց։

## ԳԼՈՒԽ ԼԶ.

### Եմմէլինա և Գէսսի.

Գէսսի ներս մտաւ, և տեսաւ որ Եմմէլինա խուցին մէկ անկիւնը քաշուեր նստեր էր, և վախէն ·երեսը գոյն չկար։ Երբոր ոտնաձայն լսեց՝ խեղճ աղջիկը վախէն վեր ցատքեց, բայց տեսնելով որ Գէսսին էր՝ մէկէն գլխացը վազեց ու ձեռքէն բռնեց։

— Ա՜հ, դու ես Գէսսի, ըսաւ. ինչպէս հանդչեցաւ սիրտս՝ երբոր տեսայ զքեզ։ Վախէս կը դողայի թէ չըլլայ որ...։ Ո՜հ, չես գիտեր թէ բոլոր այս գիշեր վարի խուցը ինչ դժոխային աղաղակներ կային։

— Գիտեմ, գիտեմ, ըսաւ Գէսսի տխուր կերպով, ես ալ շատ անգամ լսեր եմ։

— Ո՜հ, Գէսսի, բաւ է ինծի, չե՞նք կրնար ինքզինքնիս այս տեղէն մէյմը դուրս ձգել։ Ո՛ւր կ'ուզէ ըլլայ հոգս չէ. ճահիճներու մէջ

ըլլայ, օձերու մէջ ըլլայ։ Զե՞նք կրնար տեղ մը փախչիլ։

— Գերեզմանէն զատ ուրիշ տեղ չենք կրնար գտնել, ըսաւ Գէսսի։

— Ամենեւին չե՞ս փորձած։

— Ուրիշները տեսեր եմ որ փորձեցին, բայց ինչ վաստըկեցան…

— Ես աւելի յանձն կ՚առնում ճահիճներու մէջ ապրիլ ու ծառերու կեղև կրծել՝ քան թէ հոս բնակիլ։ Ես օձերէ չեմ վախեր, և աւելի կ՚ուզեմ որ քովս օձ մ՚ըլլայ՝ քան թէ այդ անպիտան մարդը, կրկնեց Եմմէլինա։

— Հոս քեզի պէս մատաղներ շատ գըտնուեր են, ըսաւ Գէսսի։ Բայց դու չես կըրնար ճահիճներու մէջ բնակիլ. շները մէկէն չորս կողմդ կ՚առնուն ու նորէն հոս կը բերեն. ան տանին…

— Ինծի ի՞նչ պիտի ընեն, ըսաւ խեղճ աղջիկն՝ անձկութեամբ երեսը նայելով։

— Աւելի ան հարցուր թէ արդեօք ի՞նչ չեն կրնար ընել։ Անդիլեան հիւղակներուն մէջ մեծցեր է այդ անպիտան մարդը. և թէ որ իմ՝ ամէն տեսած բաներս լսէիր, ու ինչ որ ինքն երբեմն մեզի կը պատմէ՝ իբր թէ զմեզ զուարճացընէ, գիշերները քունդ չէր

տանիր։ Ես այնպիսի աղաղակներ լսեր եմ՝ որ շաբաթներով ականջիս մէջ խօսեր են։ Գերիաց բնակութեան մօտերը ծառ մը կայ, կէս մ'այրած, որուն արմատը ախրագոյն մոխրով մը ծածկուած է։ Որո՛ւն կ'ուզես հարցուր թէ ի՞նչ արդեօք հանդիպեր է հոն. և տես թէ բերաննին առաջ կ'երթա՞յ քեզի պատմելու։

— Տէ՛ր Աստուած, ի՞նչ ըսել կ'ուզես։

— Անկէ աւելի չեմ կրնար զրուցել, մաքէս անցընելու ալ կը սարսափիմ։ Ես քեզի ըսի, Աստուած գիտէ թէ ի՛նչ պիտի տեսնենք վաղը, թէ որ այն խեղճ Թովմաս նորէն իր մտաց վրայ պինդ կենայ։

— Այդ ի՞նչ սարսափելի բաներ կան եղեր, ըսաւ Եմմէլինա՝ գոյնը մեռելի պէս նետած։ Ո՜հ, Գէսսի, ըսէ ինծի, ես ի՞նչ պիտի ընեմ։

— Ի՛նչ որ ես ըրի։ Կրցածդ ըրէ. տեղի տուր բռնութեան, անիծելով և ատելով բռնաւորը։

— Ետևէս ինկեր է՝ որ իր գարշելի օղիէն ես ալ խմեմ, ըսաւ Եմմէլինա. ես այնպիսի բան ընելէն կը սոսկամ։

— Աղէկ կ'ընէիր թէ որ խմէիր, ըսաւ Գէսսի։ Ես ալ քեզի պէս կը սոսկայի խը-

*մելու, իսկ հիմայ առանց օղիի չեմ կրնար կենալ։ Ի՛նչ ընեմ՝ պէտք է բան մը խմել։ Դուն ալ թէ որ խմելու ըլլաս՝ վիճակիդ դառնութիւնն այնչափ չես զգար։*

*— Մայրս ինծի ապսպրեր է որ ոչ երբեք այսպիսի բաներ կենացս մէջ բերանս առնում, ըսաւ Եմմէլինա։*

*— Քու մայրդ... քու մայրդ քեզի այնպէս ապսպրեր է, կրկնեց Գէսսի մայր բառին վրայ սրտի դառնութեամբ մը կանգ առնելով։ Բայց ի՞նչ բանի կու գան մայրերուն այսպիսի պատուէրները։ Քու վիճակդ ծախուիլ ու գնուիլ չէ՞, և հոգիդ ալ զքեզ գնողին ձեռքը չէ՞։ Այսպէս է աշխարհիս ընթացքը, հաւատա ինծի. խմէ օղին, խմէ որչափ որ կրնաս, ասով միայն կրնաս ցաւերդ ու վիշտերդ քիչ մը մոռնալ։*

*— Ո՜հ, Գէսսի. կ՚աղաչեմ դու գոնէ գութ ունեցիր վրաս։*

*— Գութ ունենամ վրադ. ի՞նչ, միթէ վրադ գութ չունի՞մ. միթէ ես ալ քեզի նման աղջիկ մը չունի՞մ։ Աստուած գիտէ թէ հիմայ ո՞ւր է և ի՛նչ եղեր է։ Ի՛նչ ճամբէ որ իրմէ առաջ իրեն մայրը գնաց, ինքն ալ նոյն ճամբէն կ՚երթայ, և վաղը մէկալ օր՝ իրեն տղաքն ալ նոյն ճամբէն պիտի երթան։ Մեր*

վրայ եղած անէծքն յաւիտեան վերջ պիտի չունենայ։

— Երանի՜ թէ և ոչ իսկ ծնած ըլլայի, ըսաւ Եմմէլինա։

— Ես ալ նոյն բանը փափագեր եմ, ըսաւ Գէսսի, և հիմայ ալ կը փափագիմ։ Թէ որ սիրտ ընէի՝ ինքզինքս կը սպաննէի, կրկնեց Գէսսի՝ յուսահատ աչուըներով գետին նայելով։

— Անձնասպանութիւնը մեծ մե՞ղք է, ըսաւ Եմմէլինա։

— Չեմ գիտեր թէ ինչո՞ւ մեծ մեղք պիտի ըլլայ։ Աւելի մեծ մեղք չէ՞ն կենդանի մնալով՝ մեր ամենօրեայ ըրած գործողութիւնները։ Բայց վանքն եղած ժամանակս մայրապետներն ինծի այնպիսի բաներ ըսեր են՝ որ մահուանէ զիս կը վախցընեն։ Թէ որ մեզի համար ամէն բան լմընցած ըլլայ, ան ատեն...։

Եմմէլինա երեսը դարձուց ու ձեռուըներովը գոցեց։

Մինչդեռ այս երկուքը կը խօսակցէին, Լըկրի իր դիւական զուարճութիւններէն յոգնած, խորունկ քուն մտեր էր։ Սովորաբար Լըկրի այնչափ չէր խմեր, կազմուածքն ալ ուժով ըլլալով՝ շատ կը վերցընէր, այնպէս որ ի-

րեն խմածին կէսը՝ աւելի փափուկ կազմուածք ունեցողի մը շատ վնաս կրնար տալ. բայց ինքը իր խորին խոհեմութեամբ կը զգուշանար որ զգայական ախորժակը մտքին վրայ չյաղթէ. ուստի այնչափ կը խմէր որ ինքզինքը բոլորովին չկորսնցընէ։

Սակայն նոյն իրիկունը մտքին մէջի յիշատակներն ու խղճին խայթոցները մարելու համար, սովորականէն աւելի խմեր էր, այնպէս որ իր սև արքանեակները ճամբելէն ետև, աթոռի մը վրայ ինկաւ փռուեցաւ ու խոր քուն մտաւ։

Ո՜հ, չարագործին հոգին ի՜նչպէս կը յանցգնի անրջոց խորհրդաւոր աշխարհքն ալ կոխելու, որուն անորոշ սահմաններն յաւիտենական դատաստանին եզերքներուն կը մօտենան։ Երկրի երազ մը տեսաւ։ Խորունկ ու տագնապողական քնոյն մէջ տեսաւ՝ որ քօղով ծածկուած մէկը դէպ իրեն մօտեցաւ և ցուրտ ու թեթև ձեռքն՝ իրեն ուսին վրայ դրաւ։ Երկրի մակաբերեց անոր ով ըլլալը, թէ և քօղով ծածկուած ըլլար, և վախէն սկսաւ դողալ։ Իրեն այնպէս կու գար որ այն կրակը նետած մազերուն փունջը նախ մատուըներուն կը պլլուէր, և ետքը սկսաւ վիզը պլլուիլ ու սեղմել, և այնպէս սեղմել

որ շունչը բռնուեցաւ ։ Ականջին ալ այնպիսի ձայներ կու գային որ վախէն վրան պաղ քրտինք իջաւ։ Վերջէն յանկարծ ինքզինքը գահավիժի մ'եզերքը գտաւ, ուր ամէն ուժովը կը տապըլտըկէր դէմ դնելու խել մը սև ձեռքերու, որոնք կը ջանային զինքն այն խորխորատին յատակը գլորելու. Ետևէն Գէսսին եկաւ ու սկսաւ ինքն ալ մղել։ Նոյն միջոցին այն ահաւոր քօղարկեալ ոգին նորէն երևցաւ, քօղը պատռեց, երեսը բացաւ, և ահա իր մայրն էր, բայց կոնակը դարձուց որդւոյն. ինքն ալ խորխորատին յատակը գլորեցաւ. և գլորելու ատեն խառնաձայն շփոթութիւններ, հեծութեան ձայներ և սատանայից ծիծաղելու աղաղակներ կը լսէր...։ Ասոր վրայ արթընցաւ Լըկրի։

Վարդամատն ու խաղաղական արշալոյսն իրեն խցին մէջ ալ ծագեր էր։ Առաւօտեան աստղը՝ ճառագայթարձակ հաստատութեան բարձրէն իր պայծառ ու ջինջ աչուըներով՝ կարծես թէ այս մեղաւոր մարդը կը դիտէր։ Ո՜հ, այն ինչ զովութիւն է, այն ինչ պայծառութիւն է որ իւրաքանչիւր օր հետը կը բերէ։ Կարծես թէ անմիտ մահկանացուին կ'ըսէ. «Ահաւասիկ քեզի օր մ'ալ. յաւիտենական փառաց համար պատերազմէ» ։

Այս ձայնս ամէն տեղ կը լսուի, ամէն մարդ կը հասկընայ՝ թէ և այլևայլ լեզուներ գըտնուին աշխարհիս վրայ. բայց այս խրոխտ ու չար մարդս չհասկըցաւ. բերանն անէծքով և հայհոյութեամբ արթընցաւ։ Նորածին աւուր հանապազօրեայ պայծառութիւնն և հրաշալիքն՝ իրեն վրայ արդեօք ի՞նչ ազդեցութիւն կ'ընէր։ Այն սրբափայլ աստղը, զոր Որդին Աստուծոյ իբրև իրեն նշանակ ընտրեց, Աստղ առաւօտեան, արդեօք իրեն վրայ ի՞նչ տըպաւորութիւն կ'ընէր։ Անբանի նման այս ամէն բանս կը տեսնէր ու չէր ըմբռներ։ Դողդոջելով ոտք ելաւ, գաւաթ մ'օղի լեցուց և կէսը տնկեց։

— Դժոխային գիշեր մ'անցուցի, ըսաւ Գէսսիին՝ որ նոյն միջոցին դիմացի դռնէն ներս կը մտնէր։

— Ասկէ եւս դեռ շատ ասոր նման գիշերներ պիտի անցընես, պատասխանեց Գէսսի արհամարհանօք։

— Հէ՞, ի՞նչ ըսել կ'ուզես, լիրբ աներես։

— Այս օրերս կ'իմանաս, կրկնեց Գէսսի. հիմայ, Սիմոն, խորհուրդիս մտիկ ըրէ։

— Քու խորհուրդդ.... ի՞հ, կրողը տանի զքեզ ալ և քու խորհուրդդ ալ։

— Թէ որ ինծի մտիկ կ'ընես, պատաս-

խանեց Գէսսի անայլայլակ կերպով ու խուցը քիչ մը կարգի դնելով, աղէկ կ'ընես թէ որ քիչ մը Թումասն հանգիստ թողուս։

— Քեզի ի՞նչ։

— Ինծի ինչ. իմ փոյթս ալ չէ, քեզի համար կ'ըսեմ. վասն զի կը զարմանամ թէ ինչպէս հազար երկու հարիւր տոլլար տուիր ու գերի մը գնեցիր, և հիմայ որ աշխատաւորի կարօտութիւն ունիս, պարզ քու բարկութիւնդ յագեցընելու համար զինքը մէկ սարկի ըրիր թողուցիր. իրաւ այս բանս ինծի չիյնար. բայց ես իմ ձեռքէս եկածն ըրի անոր։

— Իրա՛ւ կ'ըսես. բայց քեզի ի՞նչ կ'իյնայ ինծի վերաբերեալ բաներուն մէջ խառնուելու։

— Շիտակը ինծի ամենեւին չիյնար քու բաներուդ խառնուելու. շատ անգամ զքեզ հազարաւոր տոլլարներ կորսընցընելէն ազատեցի՝ գերիներուդ վրայ հոգ տանելովս. և հիմայ այսպիսի շնորհակալութիւն կ'ընդունիմ քեզմէ։ Թէ որ հունձքդ ուրիշներէն վար մնայ՝ առած գրաւներդ չե՞ս կորսընցըներ, և վնասով չե՞ս ելլեր։

Լըկրի՝ ինչպէս ամէն երկրատէր, ուրիշ փափագ չունէր՝ բայց եթէ վաճառքի առատ

հունձք հանել. և շատերէն գրաւ առած էր որ ատենին բամբակ տայ անոնց։ Գէսսի իրեն կանացի ճարտարամտութեամբ՝ այս մարդուս այնպիսի ջղին դպաւ՝ որ անկարելի էր չթրթռար։

— Լաւ ուրեմն, ըսաւ Լըկրի. հիմակուհիմայ այսչափ պատիժը բաւական կը համարիմ. բայց պէտք է որ ինծմէ թողութիւն խնդրէ, և խոստանայ որ ասկէ ետև մէյմ՚ալ այնպիսի բան չընէ...։

— Այդ բանն անկարելի է որ ընէ, ըսաւ Գէսսի։

— Ի՞նչ, չ՚ը՞նէր...։

— Չէ, յաւիտեան չ՚ըներ։

— Կ՚ուզէի պատճառը գիտնալ, խաթուն, պատասխանեց Լըկրի արհամարհական կերպով։

— Վասն զի իրաւունք ունէր, և ինքն ալ կը ճանչնայ թէ աղէկ ըրաւ, և ամենեւին չ՚ուզեր խղճմտանքին դէմ ըսել թէ գէշ ըրաւ։

— Իմ ինչ փոյթս է թէ գիտէ եղեր կամ չի գիտեր եղեր. կա՛մ ան է որ ուզածս պիտի ընէ, կա՛մ թէ չէ...։

— Կամ թէ չէ՝ առած գրաւներդ պիտի կորսընցընես, հարկաւոր ժամանակը այսպիսի աշխատաւորէ մը զրկուելով։

— Բայց կը խոնարհի՛, պէտք է որ խոնարհի։ Ի՞նչ, միթէ ես սևերը չե՞մ ճանչնար. տեսնես այս առաւօտ կու գայ շան մը պէս ինծի քծնելու։

— Կը խաբուի՛ս, Սիմոն, դու այս մարդը չես ճանչնար։ Զինքը կտոր կտոր ընես՝ բերնէն խոնարհելու և ոչ պզտի խօսք մը կրնաս առնուլ։

— Տեսնենք։ Ո՞ւր է սրւիկայ, ըսաւ Լըկրի դուրս ելլելով։

— Համբարանոցին քովի պարապ խուցն է, պատասխանեց Գէսսի։

Թէպէտ այսպէս խրոխտաբար խօսեցաւ Գէսսիին հետ, բայց երբոր անէն դուրս ելաւ՝ չէր գիտեր թէ ինչ պիտի ընէ։ Նախընթաց գիշերուան երազներն և Գէսսիին տուած խորհուրդները զինքը մեծ շփոթութեան մէջ ձգեցին։ Չուզեց որ Թովմասին հետ խօսակցելու ատեն՝ մարդ մ՚ալ ներկայ գտնուի, և միտքը դրաւ որ եթէ սպառնալեօք չկարենայ զինքը խոնարհեցընել՝ վրէժխնդրութիւնն ուրիշ ատենի թողու, և ոխն հանելու համար յարմար ժամանակ մը գտնէ։

Արշալուսին պայծառ ճառագայթն և առաւօտեան աստղին հրաշալի պայծառութիւնը Թովմասին պառկած որջին լուսա-

մուտէն ներս զարկեր էին։ Գիշերին խորհրդաւոր ազդարարութիւնները, տուած յորդորները փոխանակ զինքը լքանելու՝ աւելի ուժ տուեր էին իրեն, իբր երկնային խրախոյս մ'ըլլային։ Այդպէս ասիկայ իրեն կենաց վերջին օրը չէ՞ր...։ Ուրախութեամբ ու փափագանօք կը բաբախէր սիրտը, մտածելով որ այն մեծվայելչութիւնները, որոնց վրայ յաճախ կը խոկար, այն լուսաւոր աթոռը, այն սպիտակազգեստ բազմութիւնը, այն ջուրց խոխոջանաց նման ձայները, այն պսակները, այն յաղթութեան նշանները, այն քնարները, գուցէ արևը մայր մտնելէն առաջ կարող պիտի ըլլար տեսնելու։ Անոր համար զինքն հալածողին ձայնը, որ երթալով կը մօտենար, վրան ոչ դող բերաւ և ոչ ալ սոսկում։

— Հէյ, ի՞նչպէս ես, ըսաւ Լըկրի Թովմասին՝ ոտքովը կից մը զարնելով արհամարհանօք։ Ես չըսի՞ թէ ես ալ մէկ երկու բան կրնամ քեզի սորվեցընել։ Առած դասդ ի՞նչպէս գտար։ Երէկ իրիկուան ըմբոստութիւնդ տակաւին վրա՞դ է, Թովմաս։ Կարծեմ երէկուան չափ այսօր կամք չունիս. չես կրնար նորէն ինծի պէս խեղճ մեղաւորին քարոզ մը տալ։

Թովմաս պատասխան չտուաւ։

— Ոտք ելիր, անասուն, ըսաւ Լըկրի՝ ոտքովը նորէն կից մը տալով:

Թովմաս՝ որ ծեծէն ոսկորները կոտըր-տուեր էին և վրան գլուխը վէրքերով ծած-կուած՝ չէր կրնար տեղէն շարժիլ, սակայն ամէն ջանք կ'ընէր տիրոջ հրամանին հնա-զանդելու. իսկ Լըկրի անդիէն սկսաւ վայ-րենաբար ծիծաղիլ:

— Այս տասուոտ վրայ աշխոյժ չկա՛յ, Թովմաս. չըլլա՞յ թէ այս գիշեր պաղ առած ըլլաս:

Թովմաս հազիւ վերջապէս ոտք կրցաւ ելլել և շիտակ տիրոջ առջև կեցաւ, աներ-կիւղ և անայլայլակ կերպով անոր երեսը կը նայէր:

— Ա՛յ թշուառական, կրցա՛ր ոտք ելլել, կըրկնեց Լըկրի՝ ոտքէն գլուխը աչէկ մը զննելով: Կարծեմ բաւական չէ կերած ծեծդ: Հիմայ, Թովմաս, չոքէ դիմացս և երէկ ի-րիկուան ըրածներուդ համար թողութիւն խնդրէ:

Թովմաս ամենևին տեղէն չշարժեցաւ:

— Չոքէ, ըսի, շա՛ն որդի, պոռաց Լը-կրի՝ խարազանովն ալ քանի մը հարուած իջեցընելով:

— Տէր իմ Լըկրի, պատասխանեց Թով-

մաս, չեմ կրնար ընել այդ ըսածդ։ Ես ինչ որ խղճմտանքս ազդեց՝ այն ըրի, և թէ որ նորէն առիթ ըլլայ՝ նոյն բանը պիտի ընեմ։ Ես յաւիտեան այնպիսի անգթութիւն չեմ կրնար ընել, գլխուս ինչ որ ալ գայ։

— Այնպէս է, բայց դու չես գիտեր թէ գլխուդ ինչ կրնայ գալ, պարոն Թովմաս. գուցէ կարծես թէ առած պատիժդ բան մ՚ըլլայ. ես քեզի ցուցընեմ թէ ան դեռ բան չէ։ Ինչ կ՚ըսէիր՝ թէ որ զքեզ ծառի մը կապել տայի և թեթև կրակով զքեզ կամաց կամաց այրել տայի։ Այս բանս քեզի ինչպէս կու գար, պարոն։

— Տէր իմ, պատասխանեց Թովմաս, ես գիտեմ թէ հրամանքդ դեռ շատ սարսափելի բաներ կրնաս ընել. բայց, կրկնեց նորէն՝ դէպի երկինք նայելով ու ձեռուըներն իրարու բերելով, այս մարմինս սպաննելէն ետև ալ աւելի բան չես կրնար ընել. և այս կեանքէս վերջը ուրիշ կեանք մը կու գայ, այն է յաւիտենականութիւն։

Յաւիտենականութի՛ւն. այս բառս ըսելու ատեն՝ այլայլեցաւ ինկաւ խեղճ սեւուկը. և սրտին մէջ ոյժ մը և լոյս մը ծագեց. իսկ մեղաւորին սիրտը ճմլեցաւ իբրև թէ կարիճ մը խածած ըլլար։ Լըկրի ակռաները

կճրտեց, բայց բարկութենէն չկրցաւ բառ մ'արտաբերել. և Թումաս իբր թէ գերութեան շղթաները խզած ըլլար՝ սկսաւ համարձակ և աներկիւղ ըսել.

— Տէր իմ Լըկրի, դու զիս գնեցիր, ես ալ ամենայն հաւատարմութեամբ ու եռանդեամբ քեզի կը ծառայեմ։ Քեզի համար ձեռքէս եկածը կ'ընեմ, իմ ժամանակս, իմ բոլոր ոյժս քեզի կը զոհեմ. բայց հոգիս մահկանացուի մ'ալ չեմ զոհեր։ Ես Աստուծոյ ձայնին կը հետևիմ և իրեն պատուիրանները ամէն բանէ վեր կը դնեմ, թէ որ ապրիլ ալ և կամ մեռնիլ ալ հասնի. ասիկայ լաւ գիտնաս։ Տէր իմ Լըկրի, ես ամենևին մահուանէ չեմ վախեր. փոյթս չէ՝ թէ ապրեր եմ և կամ մեռեր եմ։ Կրնաս զիս խարազանի տակ փտտեցընել, սովով սպաննել, ողջ ողջ այրել, ասոնցմով ուրիշ բան չես ըներ ինծի՝ բայց եթէ աւելի շուտ կը ղրկես զիս հոն՝ ուր որ արդէն կը փափաքիմ երթալու։

— Կեցի՛ր. դեռ անկէ առաջ ես քեզի խոնարհել պիտի տամ, ըսաւ Լըկրի կատաղի բարկութեամբ։

— Ես օգնութիւն կը գտնեմ, ըսաւ Թումաս, և յաւիտեան ըսածդ պիտի չընեմ։

— Ո՞ր սատանան քեզի օգնութեան կրնայ գալ, ըսաւ Լըկրի հեգնօրէն։

— Ամենակալն Աստուած։

— Գլխուդ կրակ թափի, պոռաց Լըկրի, և բըռնցի զարկաւ ուժով ու Թովմասը վար ձգեց։

Նոյն միջոցին փափուկ ու պաղ ձեռք մը Լըկրիին ձեռաց վրայ իջաւ։ Լըկրի ետև դարձաւ ու տեսաւ որ Գէսսին էր. բայց այն փափուկ ու ցուրտ ձեռքէն ունեցած զգացմունքը միտքը ձգեցին նախընթաց գիշերուան տեսած երազը, և կայծակի մը պէս այն երազին մէջ տեսած ահաւոր պատկերներն և ունեցած վախն աչքին առջև նկարուեցան։

— Խենթըցե՞ր ես, ի՞նչ եղեր ես, ըսաւ Գէսսի գաղղիերէն։ Հանգիստ ձգէ այդ մարդը. թող ինծի որ հոգամ զինքը, որպէս զի կարենայ նորէն աշխատիլ. ըսածս շիտակ չէ՞ր՝ թէ չի խոնարհիր։

Կ'ըսեն թէ կոկորդիլոսը, ռնգեղջիւրը, որ հրազինուց գնտակէ անթափանց զրահով մը պատատուած են, երկուքն ալ վրանին դիւրախոցելի կէտ մ'ունին։ Այսպէս ալ անզգամ, ամբարիշտ և անօրէն մարդկանց դիւրախոցելի կէտն է աւելորդապաշտական երկիւղը։

Լըկրի ելաւ գնաց անկէ, ուրիշ անգամի թողլով վրէժխնդրութիւն ընելը։

— Լաւ ուրեմն, ըսաւ կոպտաբար Գէսսին, գիտցածդ ըրէ։ Դուն ալ գիտցած ըլլաս, ըսաւ Թուլմասին, հիմակուհիմայ աչք կը գոցեմ, վասն զի հունձքի ժամանակ ըլլալով՝ աշխատողի կարօտութիւն ունիմ. բայց ամենեւին չեմ մոռնար։ Ես այս բանս կը նշանեմ, և օր մը չէ՝ օր մը՝ քու հին սև կաշիէդ ոխս կը հանեմ. միտքդ պահէ։

Այս ըսաւ Լըկրի ու գլուխն առաւ քալեց։

— Գնա կորսուէ, ըսաւ Գէսսի ծուռ ծուռ ետեւէն նայելով, դուն ալ օր մը համար պիտի տաս։ Վերջը Թուլմասին դառնալով՝ ինչպէս ես, հարցուց։

— Աստուած իրեն հրեշտակը ղրկեց, և այս անգամուս համար ալ առիւծին բերանը գոցել տուաւ, պատասխանեց Թուլմաս։

— Այսպէս է, կրկնեց Գէսսի, այս անգամուս համար ալ. բայց մէյմ'որ անոր ատելութիւնը շարժեցիր վրադ՝ ա՜լ ազատումն չկայ. անիկայ գիշեր ցորեկ ետեւէդ պիտի քալէ. շան մը պէս վզէդ պիտի կախուի ու կաթիլ կաթիլ արիւնդ պիտի ծծէ՝ մինչև որ ցամքի։ Ես զինքը շատ աղէկ կը ճանչնամ։

# ԳԼՈՒԽ ԼԵ.

## Ազատութիւն

Հիմայ քիչ մ'ատեն թողունք Թովմասն իր հալածչաց ձեռքը, և Գէորգին ու իր կընոջ ետեւէն երթանք, զորոնք ճամբուն քով կալուածի մը մէջ բարեսէր մարդկանց ձեռքը ձգեցինք։ Երբոր Թովմաս Լոքէրէն բաժնուեցանք՝ տեսանք որ Քուաքէրներու քով՝ մաքուր ու փափուկ անկողնոյ մը մէջ կը տապըլտըկէր՝ հեծելով ու հեկեկելով, և Տորքաս խաթունն ալ քովը կեցած՝ վրան մայրական խնամք կը տանէր. բայց չէր գիտեր թէ ինչ ընէ, վասն զի անիկայ հիւանդ պիզոնի մը կը նմանէր։

Երեւակայեցէք բարձրահասակ ու հոգնեւէր և ծանրագլուխ կնիկ մը, որուն բացագոյն բամբակէ պլխարկին՝ արծաթափայլ մազերը ծածկէ, որոնք լայն ու խաղաղ ճակտին վրայ երկու բաժնուած ըլլան. աչուըններն ալ մոխրագոյն ըլլան, որոնց մէջ խոհականութիւն փայլի. ձեան պէս մաքուր ճերմակ թաշկինակ մ'ալ՝ կանոնաւոր կերպով ծալլուած՝

կուրծքը գոցած ըլլայ, և վրայի սև մետաքսէ փայլուն հագուստն ալ խշխշայ խուցին մէջ երթալու գալու ժամանակ։ Այս է ահա Տորքաս խաթունը։

— Կրողը տանի զիրենք... ըսաւ Լոքէր՝ անկողինը տակն ու վրայ ընելով։

— Պարոն, կ՚աղաչեմ որ մէյմ՚ալ բերնէդ այդպիսի խօսքեր չհանես, ըսաւ Տորքաս՝ անկողինն իր սովորական հանդարտութեամբ կարգի դնելով։

— Շատ աղէկ, թէ որ կարենամ՝ մէյմ՚ալ բերնէս այնպիսի բաներ չեմ հաներ, ըսաւ Լոքէր. ո՜ւֆ, բայց աս անիծած սաքուն ո՞վ կրնայ առանց հայհոյելու դիմանալ։

Տորքաս ոտից ծածկոյթը դուրս հանեց անկողնէն, սաւանները կարգի դրաւ, և ծայրերն այնպէս դէպ ի ներս ծալլեց՝ որ կարծես թէ Լոքէր շերամի բոժոժի մէջ փաթթուեցաւ. ետքէն դարձաւ ըսաւ անոր.

— Կը փափաքիմ որ հայհոյելու և անիծելու սովորութիւնդ վերցընես, և վրադ արթուն կենաս։

— Ի՞նչ բանի համար ես վրաս արթուն պիտի կենամ, ըսաւ Լոքէր. ասիկայ ամենէն վերջը մտածելու բանն է։ Ու նորէն

այնպէս մը շարժեցաւ՝ որ անկողինը տակն ու վրայ եղաւ։

Քիչ մ'ատեն լուռ կենալէն ետև՝ հանդարտութեամբ մ'ըսաւ.

— Կարծեմ այն մարդն ու այն կնիկը հոս են։

— Հրամեր ես, հոս են, պատասխանեց Տորքաս։

— Աղէկ կ'ընեն թէ որ շուտ մը լճին մէկալ կողմն անցնելու ըլլան, ըսաւ. որչափ շուտ շարժին՝ այնչափ իրենց աղէկ է։

— Հաւանականաբար իրենք ալ այն կը մտածեն, ըսաւ Տորքաս՝ անխռով ձեռքի կարն առաջ տանելով։

— Ինծի մտիկ ըրէ, ըսաւ Լոքէր. մենք Սէնտըրսքի թղթակիցներ ունինք, որոնք մեզի համար նաւեր կը վարձեն։ Հիմայ վախ մը չունիմ ամէն բան տեղն ի տեղը պատմելու. յուսամ ձեռք չեն իյնար. ուրիշ բանի համար ալ չըլլայ՝ գոնէ Մարքը կատղեցընելու համար ըլլայ, այն անպիտան անիծած շունը... կրո՛ղը տանի զինքը։

— Լոքէր... ըսաւ Տորքաս։

— Ես ըսի. թէ որ շիշի մը բերանը սաստիկ խցես՝ կը ճաթի, պատասխանեց Լոքէր։ Բայց խօսքերնիս այն կնոջ վրայ դար-

ձընելով, ըսէ որ հագուստը փոխէ և ծպտի. վասն զի զինքը ճանչնալու նշաններն ինչուան հիմայ Սէնտըլօքի հասած են։

— Ճար մը կ'ընենք, ըսաւ Տօրքաս՝ իրեն սովորական հանդարտութեամբ։

Որովհետև հիմայ Լօքէրին քովէն պիտի հեռանանք, ուստի գիտնալու է որ Քուաքէրներուն քով երեք շաբաթ կենալէն ետև՝ երբոր անկողնէն ելաւ՝ առաջինէն աւելի խելքը գլուխն եկեր ու խոհեմցեր էր։ Սևերու որսորդութիւնը թողուց ու նոր դաղթականաց մէջ մտաւ, և հոն խելքը միտքը արջեր, գայլեր և ուրիշ վայրենի կենդանիներ որսալու տուաւ, անոր համար քաւական անուն ալ հանեց։ Անկէ ետև Լօքէր միշտ յարգանօք կը խօսէր Քուաքէրաց վրայ։

— Շատ բարեսիրտ ժողովուրդ են, կ'ըսէր. ջանացին զիս դարձի բերելու, բայց բոլորովին չյաջողեցան։ Հիւանդաց վրայ մեծ հոգ ու խնամք կը ցուցընեն.... և եփած ապուրնին և ուրիշ կերակուրնին ես տեղ մը չեմ կերած։

Լօքէրէն իմանալով փախստականները թէ Սէնտըլօքի մէջ զիրենք փնտռողներ կան, խոհեմագոյն ճամբայ համարեցան որ մէկմէկէ բաժնուին։ Ճէյմ և իրեն պառաւ մայրն ա-

ռաջ անցան, և ապա մէկ ու երկու օր ետև ալ Գէորգ ու Եղիզա իրենց տղուն հետ մէկտեղ գաղտնի՝ Սէնտըսքի գնացին, և Քուաքէրի մը տուն ապաւինեցան, լճէն անդին անցնելու ժամուան սպասելով։

Իրենց համար գիշերը շուտ մ'անցաւ, և ազատութեան աստղը փառաւորապէս ծագեց։

Ազատութի՜ւն. այն ի՞նչ մոգական բառ է. ի՞նչ կը նշանակէ այս բառս. արդեօք պարզ անո՞ւն մ'է, հռետորական ձե՞ւ մ'է։ Այրք և կանայք Ամերիկոյ, երբոր այս բառս կը լսէք՝ ինչո՞ւ սրտերնիդ կ'ելլէ, որուն համար ձեր հայրերն իրենց արիւնը թափեցին, որուն համար ձեր մայրերն՝ արիական սրտով յանձն առին որ իրենց ազնուագոյն ու առաքինի որդիքը մեռնին։

Ազգի մը համար փառաւոր ու սիրելի եղած բառը, միթէ մարդու մը համար նուա՞զ սիրելի, նուա՞զ փառաւոր պիտի ըլլայ։ Ազգի մը ազատութիւնն ի՞նչ է, եթէ ոչ նոյն ազգը բաղկացընող անձանց ազատութիւնը։ Այս երիտասարդին համար ազատութիւնն ի՞նչ է, որ առջևնիս նստեր է, ձեռուըները՝ լայն կուրծքին վրայ պլլած, ափրիկեցի արեան կնիքը դէմքին վրայ տպաւորուած և աչուըներէն կայծակ կը ցայտէ... Գէորգ Հարրիսին համար ազատութիւնն ի՞նչ է...։

Ձեր հարց համար ազատութիւնն էր՝ ազգի մը ազգ ըլլալու իրաւունքը. Գէորգին համար ալ ազատութիւնն է՝ մարդու մը մարդ ըլլալու իրաւունքը և ոչ թէ անբան անասնոց կարգը համարուելու. իրեն ամուսինը՝ իր կինն անուանելու իրաւունքը, և անսանձ բռնութեան դէմ զանիկայ պաշտպանելու, իր տղան պաշտպանելու և կրթելու իրաւունքը, ընտանիք մ՚ունենալու իրաւունքը, կրօնք մ՚ունենալու իրաւունքը, ուրիշին կամքէն ազատ կամք ունենալու իրաւունքը:

Բոլոր այս մտածութիւններս Գէորգին սրտին մէջ կ՚եփէին ու կ՚եռային, և գլուխը ձեռքին կոթընցուցած՝ կնոջը կը նայէր, որ էրիկ մարդու զգեստով ծպտելու զբաղեր էր, որպէս զի այս կերպով իրենց փախուստն աւելի ապահով ըլլայ:

— Հիմայ կարգն ասոնց եկաւ, ըսաւ Ելիզա՝ իր սև ու մետաքսի պէս մազերը ցոյց տալով: Մեղք չէ՞, Գէորգ, մեղք չէ՞ զասոնք կտրելը:

Գէորգ տխուր կերպով ծիծաղեցաւ, և պատասխան չտուաւ: Ելիզա հայելւոյն դէմն անցաւ, ու մկրատն առած՝ սկսաւ մազերը կտրտել:

— Կարծեմ բաւական է, ըսաւ, մազի

վրձինը ձեռքն առնելով. հիմայ ուրիշ բան չի մնար, բայց եթէ քիչ մը մազերս շտկել։ Ինծի նայէ, Գէորգ, հիմայ գեղեցիկ երիտասարդ մը չդարձա՞յ, ըսաւ՝ էրկանը դառնալով ու երեսները կարմրած ծիծաղելով։

— Դու ի՞նչ հագուստ ալ հագնիս, Ելիզա, պատասխանեց Գէորգ, իմ աչքիս միշտ գեղեցիկ ես և ազնիւ։

— Ի՞նչ մտածմունք ունիս, ըսաւ Ելիզա Գէորգին առջև չոքելով և ձեռքը էրկանը ծնկան վրայ դնելով։ Գանատայէն քանըչորս ժամ հեռու ենք։ Օր մը և գիշեր մը միայն լճին վրայէն անցնելու բաւական է, անկէ ետև..., ո՜հ, անկէ ետև...

— Ո՜հ, Ելիզա, ըսաւ Գէորգ՝ զինքը վեր վերցընելով, ահա այս բանս է որ զիս անհանգիստ կ'ընէ. իմ բախտս մէկ կէտի մը վրայ կը կայանայ հիմայ։ Այնչափ մօտեցանք՝ որ նաւահանգիստը դիմացնիս է... և թէ որ չյաջողինք, ես ա՛լ չեմ կրնար ապրիլ, Ելիզա։

— Մի՛ վախնար, ըսաւ յուսադրական ձայնով. ամենաբարին Աստուած զմեզ այսչափ հեռու տեղ'եր չէր բերեր՝ թէ որ զմեզ մեր փափագանաց հասցընելու կամք չունենար։ Անկէ կ'ըսեմ թէ Աստուած մեզի հետ է, Գէորգ։

— Դու օրհնեալ կին մ'ես, Եղիզա, պա-
տասխանեց Գէորգ՝ անոր պլլուելով։ Արդեօք մեր թշուառութեան երկայն տարիները լմըն-
ցա՞ն կ'ըսես . արդեօք ազատութիւն պիտի գտնե՞նք։

— Ես ապահով եմ, Գէորգ, որ պիտի ազատինք, ըսաւ Եղիզա՝ աչուըները դէպի երկինք վերցընելով և յուսոյ ու խնդութեան արտասուք թափելով։ Ես ներսէս կը զգամ որ Աստուած այսօր զմեզ մեր գերութենէն պիտի ազատէ։

— Կը հաւատամ ըսածիդ, Եղիզա, պատասխանեց Գէորգ՝ յանկարծ ոտք ելլելով. ես քեզի կը հաւատամ։ Շուտ ըրէ, պէտք է որ ճամբայ ելլենք։ Իրաւցընէ, ըսաւ՝ Եղիզային թեւէն բռնելով և ուշի ուշով երեսը նայելով, գեղեցիկ երիտասարդ մը դարձար. կարճ ու ոլորուած մազերը քեզի շատ կը վայլեն։ Գլխարկդ ալ դիր նայիմ. . . այսպէս, քիչ մ'ալ քովընտի ծռէ։ Ես զքեզ այսպէս վայելուչ տեսած չունէի։ Կառքն հեծնելու ատենն հասաւ, չեմ գիտեր արդեօք Սմիթ խաթունն ալ Հէնրիկին հագուստը փոխե՞ց։

Նոյն միջոցին դուռը բացուեցաւ, ու տարիքն առած և յարգելի խաթուն մը ներս

մնաւ Հէնրիկին ձեռքէն բռնած, որուն պզտի աղջկան հագուստ հագուցուցեր էր։

— Ահ, այդ ի՜նչ գեղեցիկ աղջիկ է, ը-սաւ Էլիզա՝ տղուն գլխէն ինչուան ոտքը դի-տելով։ Անունը Հէնրիկա դնենք. սակայն աղէկ անուն չէ՞։

Տղան աչուըները պատռելով՝ լուռ կե-ցած՝ մօրն անսովոր հագուստը կը դիտէր. և երբեմն երբեմն սև գանգուրներուն տակէն գո-ղունի մօրն երեսը նայելով՝ խոր հառաչանք-ներ կ'արձակէր։

— Հէնրիկ, մայրդ չե՞ս ճանչնար, ըսաւ Էլիզա՝ զանիկայ գրկել ուզելով։

Տղան վախնալով զինքը բերող կնկան պլլուեցաւ։

— Թող Էլիզա, ինչո՞ւ խեղճ տղան վախ-ցընել կ'ուզես. գիտես ալ որ հասերնիս պի-տի չգայ։

— Իրաւունք ունիս, ես ալ գիտեմ, բայց ի՞նչ ընեմ, իրմէ չեմ կրնար բաժնուիլ։ Ի՛նչ որ է, վերարկուս ո՞ւր է։ Հա՛ հոս է. բայց Գէորգ, սակայ էրիկ մարդիկ ի՞նչպէս կը հագնին։

— Այսպէս հագնելու է, ըսաւ Գէորգ՝ վերարկուն Էլիզային հագուցընելով։

— Այսպէս, անանկ չէ՞, ըսաւ Էլիզա

երկան նայելով. ոտքը պէտք է ուժով ու-ժով ոտուըներս գետին զարնեմ, և երիտա-սարդի մը պէս կոտրատուելով քալեմ։

— Ձէ, չէ, Ելիզա, այնչափ կոտրատուիլ հարկաւոր չէ, ըսաւ Գէորգ. համեստ երի-տասարդներ ալ պակաս չեն. ես կարծեմ աւելի ասոնց կրնաս նմանիլ։

— Հապա սա ձեռնոցները նայէ, ի՞նչ-պէս ալ մեծ են. ձեռուըներս մէջը կը կոր-սուին, ըսաւ Ելիզա ծիծաղելով։

— Հիմակուընէ քեզի կ'ապսպրեմ որ ամենեւին ձեռքէդ չհանես, ըսաւ Գէորգ. քու պզտի վատուժ ձեռուըներդ զմեզ կրնան մատ-նել։ Հիմայ, Սմիթ խաթուն, հրամանքդ մեր հօրաքոյրն ես, այնպէս չէ՞։

— Ես լսեցի, ըսաւ Սմիթ խաթունը, որ հոս մարդիկներ եկեր են, և շոգենաւուց նաւապետներուն էրիկ մարդու մը, կնկան մը և տղու մը նշանները տուեր են։

— Իրա՞ւ, կրկնեց Գէորգ ժպտելով։ Լաւ ուրեմն, թէ որ ասոնց պատահելու ըլլանք՝ նաւապետներուն կ'իմացընենք։

Այս միջոցիս դրան առջև կառք մը հա-սաւ, և բոլոր տնեցիք փախստականներուն չորս կողմն առին, որ իրենց վերջին բա-րևը տան անոնց։

Փախստականները Լոզէրին լսածին պէս ծպտեր էին։ Բարեբախտաբար յարգելի Սմիթ խաթունը Գանատա կը դառնար, ուր էր արդէն իր բնակութիւնը. ուստի յանձն առաւ Հէնրիկը հետը տանելու և անոր մամը ձևանալու. և որպէս զի տղան իրեն ընտանենայ՝ վերջի երկու օրը քովը առեր էր զինքը, և վրան ունեցած խնամքովը ու տուած անուշեղէններով՝ տղան շուտ մը հետը ընտանեցեր էր։

Կառքը լճին Եզերքն հասաւ. մեր երկու երիտասարդները շոգենաւուն կամրջին վրայ ելան։ Ելիզա քաղաքավարութեամբ մը Սմիթ խաթունին ձեռք տուաւ, Գէորգ ալ բեռներուն ուշ դրաւ։

Գէորգ՝ նաւապետին խուցն էր՝ նաւագինն վճարելու, լսեց որ երկու հոգի հոնը կեցած՝ իրարու հետ կը խօսէին։

— Նաւ մտնողները մէկիկ մէկիկ դիտեցի նայեցայ, կ՚ըսէր անոնցմէ մէկը, ստոյգ գիտեմ որ այս նաւուն մէջ չեն։

Այս ըսողը նաւուն գործակատարն էր, և մէկալն ալ՝ որուն հետ կը խօսէր՝ մեր հին բարեկամը Մարքն էր, որ իր սովորական յարատևութեամբ մինչուան Սէնտասքի եկեր եկեր էր որսը փնտռելու։

Գէորգ նաւուն թուղթն ու աւելորդ լը-
տակն ետ առնելու ատեն՝ ձեռքը քիչ մը
կը դողար. բայց անտարբեր կերպով հաւ
դարձաւ, ու ցուրտ ցուրտ՝ խօսողին երեսը
նայեցաւ, և կամաց կամաց քալելով՝ նա-
ւուն մէկալ կողմը գնաց, ուր Ելիզա նստած
իրեն կը սպասէր։

Ամիթ խաթունն ալ պզտի Հենրիկն ա-
ռած՝ կանանց սենեակը քաշուեցաւ, ուր
ճանապարհորդ խաթուններն իր պզտի թո-
ռան գեղեցկութիւնը տեսնելով՝ իրեն ուրա-
խակից եղան։

Երբոր շոգենաւուն ճամբայ ելլելու զան-
գակը վերջին անգամ զարնուեցաւ, Մարքին
շոգենաւէն ցամաք ելլելը տեսնելով՝ Գէորգի
սիրտն հանդչեցաւ. և երբոր տեսաւ թէ
նաւն՝ իրեն ու իր թշնամւոյն մէջ անանցա-
նելի խարոց մը ձգեց, որուն խորէն եր-
կայն հառաչանք մ՚արձակեց։

Շատ գեղեցիկ օր մ՚էր. Երիէ լճին կա-
պուտակ ալիքները վէտ վէտ խաղալով ա-
րեւուն ճառագայթներէն կը շողշողային։ Ցա-
մաքէն զով քամի մը կը փչէր, և գեղեցիկ
նաւը ծանրութեամբ մը կը կտրէր կ՚անցնէր։

Ո՜հ, մարդուս սրտին մէջ ի՜նչ անծանօթ
զգացմունքներ կը գտնուին։ Գէորգը տեսնե-

լու էր, որ իր երկչոտ ընկերոջ հետ նաւուն մէջ վեր վար պտըտելու ատեն, ո՞վ կրնար գուշակել թէ սրտին մէջ ինչ կ'եռայ: Հաւատալը չէր գար թէ վայրկեան առ վայրկեան ծայրագոյն երջանկութեան մը կը մօտենար, և վախէն կը դողար՝ որ չըլլայ թէ յանկարծ խըմէ այն երջանկութիւնն յափշտակեն:

Բայց շոգենաւն առաջ կ'երթար. ժամերը կը փախչէին, և շատ չանցաւ՝ պայծառ և որոշ տեսնուեցան Գաղատայի երջանիկ ափունքը: Օրհնեա՜լ ափունք, որ մոգական զօրութիւն մ'ունին՝ մէկ հարուածով գերութեան բոլոր շղթաները խորտակելու:

Երբոր շոգենաւը Գաղատայի Ամհէրստպէրկ պզտի քաղաքին կը մօտենար, Գէորգ ու իր կինը թև թևի տուած՝ նաւուն տախտակամածին վրայ կեցեր էին: Գէորգին շունչը բռնուեցաւ, աչուըները մթընցան. կամացուկ մը Եղիզային պզտի ձեռքը սեղմեց, որ թևին տակը կը դողդղար: Զանգակը զարկաւ, շոգենաւը կեցաւ: Գէորգ սրտին այլայլութենէն ըրածը չէր գիտեր, բեռները ժողվեց և ճամբու ընկերներուն հետ դուրս ելաւ: Հանդարտ ու լռիկ ցամաքին վրայ սպասեցին՝ որ շոգենաւուն մէջի ճամբորդ-

ներն հեռանան։ Այն տանն էրիկ կնիկ ար-տասուալից աչուըններով հոն մէկմէկու հետ պագատեցան, և իրենց մէկ հատիկ զաւա-կը գրկած՝ գետինը չոքեցան ու սրտերնին առ Աստուած ամբարձին. տղան շփոթած ու զարմացած՝ երեսնին կը նայէր։ Եւ ինչ-պէս բանաստեղծ մը կ՚ըսէ.

Որպէս յանկարծ վերադարձիկ մահ՚ ի կեանս,
Կամ թէ շիրմի պատանք՝ յերկնի պատմու-
(ճանս.
Կամ տէրութեան մեղաց և կրից ի պայքար՝
Յազատութիւն փոխիլ հոգւոց սրբաբար.
Յորժամ քակտին կապանք մահու և դժոխոց
Եւ մահացուն յանմահութեան փոխի ծոց,
Եւ Գըթութեան զանգակայն ձայնչեալ բանայի՝
Գոչէ. Ուրախ լեր, զի զերծաւ քո հոգի։

Մեր փախստականները Սմիթ խաթունին առաջնորդութեամբ՝ լճին մօտ բնակող բա-րեսիրտ քարոզիչի մը հիւրընկալու տունը գնացին, որ քրիստոնէական սիրով բորբո-քուած՝ եկեր այն կողմերը բնակեր էր, որ հովուի մը պէս՝ փախստական ու հալածեալ խաշինքը ժողվէ, որոնք ամէն օր այն ա-փանց վրայ կ՚ապաւինէին։

Ո՞վ կրնայ պատմել ազատութեան այն առաջին օրուան ուրախութիւնը: Մասնաւոր զգայութիւն մ'ալ ու նիմարդս, այն ինքն է ազատութեան զգայութիւնը, որ մէկալ հինգ զգայութիւններէն ալ աւելի վսեմ ու աւելի փափուկ է: Ի՜նչ սիրելի բան է մարդուս, գործել, խօսիլ, շնչել, երթալ, գալ, առնուլ և տալ՝ առանց մէկ մը իրեն խառնուելու և առանց վտանգի մէջ իյնալու: Ո՞վ կրնայ պատմել այն խաղաղական քաղցրութիւնը՝ որ ազատ մարդը կը զգայ՝ օրինաց հովանաւորութեան տակը նստած, որոնք Աստուծոյ մարդուս տուած իրաւունքները կը պաշտպանեն: Այն ի՜նչ գեղեցիկ, ի՜նչ անուշ կու գայ մօր մը՝ իր քնացած որդւոյն դէմքը, մանաւանդ երբոր կը յիշէ անցեալ վտանգները...: Այնպիսի մեծափափաք երջանկութենէ մ'ունեցած սըրտի այլայլութիւններնէն ի՜նչպէս կրնային քուն ըլլալ: Եւ սակայն այս երկու ամուսինք թիզ մ'ալ երկիր չունէին, իրենց սեփհական խրճիթ մ'ալ չունէին, մինչև վերջին տոլլարնին ալ գործածեր էին: Օդուն մէջի թռչուններէն ու դաշտի ծաղիկներէն աւելի բան մը չունէին, և սակայն ուրախութիւններնէն չէին կրնար քնանալ: Ո՛վ դուք, որ մարդուս ազատութիւնն իրմէ կը

վերցընէք, ո՛հ, դուք ի՞նչ պատասխան պիտի տաք Աստուծոյ՝ երբոր ձեզմէ համար պահանջելու ըլլայ։

## ԳԼՈՒԽ ԼԸ.

### Ցաղքուշքիւն

Կենաց այս խիստ ճամբէն անցնելու ատեններս՝ մեզմէ քանիներ՛ր արդեօք վհատութեան այնպիսի վայրկեաններ չե՞ն ունեցած՝ որ մահը կեանքէն աւելի քաղցր եկած ըլլայ իրենց...։

Նահատակ մը՝ դառն մահուան սոսկալի տանջանքներուն մէջ՝ խրախոյս կամ գերբնական զօրութիւն մը կը զգենու, և եռանդուն սրտով ոտքի տակ կ'առնու ամէն նեղութիւն և վիշտ. վասն զի անոնք կ'առաջնորդեն փառաց և յաւիտենական հանգստեան։

Բայց օր աւուր վրայ նուաստութեան մէջ հիւծիլը, անգութ ու ապականարար գերութեան մը լուծին տակ ընկճուիլը, և ստիճանաբար ամէն մտաւորական կարողութեանց ոչնչանալը, սրտի այս երկայն ու սոսկալի նահատակութիւնը, բանականութեան այս մշանջենաւոր հոգեվարութիւնը, որ կաթիլ

կաթիլ և ժամէ ժամ կը մարի, մարդուս վրայ եկած ամէն փորձութիւններէն, ամէն տանջանքներէն աւելի սարսափելի չէ՞։

Երբոր Թովմաս ինքզինքն իրեն զաւկին դիմացը կը տեսնէր, անոր սպառնալիքները կը լսէր, և կը մտածէր թէ իրեն վերջին ժամն հասեր է, սիրտը խրախուսանօք կը լեցուէր. Յիսուսի օրինակն և երկնից ժառանգութեան յիշատակն իրեն զօրութիւն կուտային ամէն տանջանաց, հրոյ և սրոյ համբերելու։ Բայց երբոր ինքզինքը մինակ ու ամենէն լքեալ կը գտնէր ու խաւարը քիչ մը իջած կը տեսնէր՝ վիրաւորց ու վշտահար մարմնոյն ցաւերը դեռ աւելի կը զգար. իրեն ինչ խեղճութեան մէջ, ինչ անարգութեան մէջ ըլլալը կ'ըմբռնէր, և խորին տխրութեան մէջ ինկած՝ օրերը կ'անցընէր։

Վէրքերը բժշկուելէն շատ առաջ՝ Լըկրի հրամայեց Թովմասին որ դաշտ ելլէ աշխատելու։ Այն ատեն սկսան իրեն ցաւոց ու վշտաց օրերը. ատոնց վրայ աւելցուր նաև ամէն տեսակ անիրաւութիւն և զրկանք, որոնք մարդուս չարութիւնն ու վատութիւնը կարող է հնարել։ Ո՛վ որ նեղութիւն քաշեր է, գիտէ հարկաւ թէ ինչ աստիճանի դառն է մարմնական ցաւը, թէ և ամէն հոգ ու

խնամք ունեցած ալ ըլլայ։ Թովմաս ալ չէր զարմանար իր ընկերակցաց տխրագին կերպին վրայ. իր խաղաղասէր բնաւորութիւնն և պարզսրտութիւնը չկրցան բոլորովին այս փորձութեանս դէմ գնել։ Միտքը դրեր էր որ պարապութեան ժամանակ՝ Ս. Գիրք կարդայ. բայց եկուր նայէ որ հոս ամենեւին պարապութեան ժամ չկար։ Հնձոց ժամանակ Լըկըրի ամենևին խղճմտանք չէր ըներ հասարակ օրերուն պէս՝ կիրակի օրերն ալ իր գերիները աշխատցընելու։ Եւ ինչո՞ւ պիտի չաշխատցընէր... տօնը աւելի բամբակ կը ժողվէր, և տուած խոստմունքը չէր կորսնցըներ. և թէ որ գերիներէն մէկը կորսնցընէր՝ անոր գինը կը հանէր։ Ի սկզբան Թովմաս իրեն սովորութիւն ըրեր էր՝ երբոր աշխատութենէն ետ կը դառնար՝ կրակին լուսով Ս. Գրքէն մէկ կամ երկու տուն կարդալու. բայց կրած դառն տանջանքներէն վերջը՝ այնպէս յոգնած տուն կը դառնար՝ որ գլուխը կը պտըտէր. և երբոր կարդալ կ'ուզէր՝ աչուըները կը մթըննային. ուստի յոգնած պայրած ընկերակցաց հետ մէկտեղ կ'իյնար կը պառկէր։

Ի՜նչ կարգէ դուրս բան. այն կրօնական խաղաղութիւնը, այն հաստատուն հաւատ-

քը, որոնք ինչուան առ ատեն իրեն նեցուկ եղեր էին, հօդուոյ անհանդստութեանց և յուսահատութեան խաւարին տեղիք տուին։ Անպատճառ կ'անցնէր միտքէն այս կենացս տխուր առաջարկութիւնը, թէ ինչո՞ւ ոմանք այս աստիճանի ընկճուեր են ու նուաստութեան մէջ ընկեր են, ինչո՞ւ չարերը կը յաղթանակեն, ինչո՞ւ Աստուած լուռ կը կենայ։ Տարաթներով խեղճ Թովմաս արտմութեան ու խաւարին դէմ կը պատերազմէր, որոնք իրեն սրտին մէջ պատեր էին։ Միտքը կը բերէր այն նամակը՝ որ Օֆէլիա Քէնդըլքի իրեն բարեկամաց գրեր էր, և եռանդագին պաղատանօք առ Աստուած կը դիմէր որ իրեն ազատութիւն զրկէ։ Օր առուր վրայ կը սպասէր, յուսալով թէ մէկը կու գայ զինքն ազատելու. և երբոր կը տեսնէր ոչ եկող կայ և ոչ գնացող՝ նորէն տխուր խորհուրդներ միտքը կը պատէին. իբրև թէ անօգուտ է ծառայել Աստուծոյ, և թէ Աստուած զինքը բոլորովին երեսէ ձգեր է։ Երբեմն ալ երբոր բուն Լըկրիին տունը կ'երթար՝ գաղտագողի խեղճ Եմմէլինան ու Գէսսին ալ կը տեսնէր, բայց անոնց և ոչ բառ մ'ըսելու ատեն ունէր։ Արդէն մէկու մ'ալ հետը խօսելու ատեն չունէր։

Իրիկուն մը հոգւով և մարմնով յոգնած և յուսահատ՝ կիսարծարծ վառարանին քով նստեր՝ իր աղքատին ընթրիքը կ՚եփէր։ Քանի մը տաշեղ կրակը նետեց ու արծարծեց, և գրպանէն Աստուածաշունչն հանեց սկսաւ կարդալ, որ քիչ մը զօրութիւն զգենու։ Այն հատուածներուն՝ որ այնչափ անգամ սիրտը շարժեր էին՝ մասնաւոր նշաններ դրեր էր. և էին նահապետաց, մարգարէից, տեսանողաց և իմաստնոց խօսքերը, որոնք հին ատենէն ի վեր կը խրախուսեն մարդս արիանալու այս վշտալից և դառն կենացս մէջ։ Այս խօսքերը արդեօք բոլոր իրենց զօրութիւնը կորսնցուցե՞ր էին, թէ գուցէ խեղճ Թովմասին մթագնեալ աչուըներուն և յոգնած զգայութիւնները չէին կրնար անոնց ազդեցութիւնն զգալ...։ Խորին հառաչանք մ՚արձակեց ու նորէն գիրքը գրպանը դրաւ։ Մէյմ՚ալ վայրագ ծիծաղի մը ձայնէն վեր ցատքեց, աչուըները վերցուց, տեսաւ որ Լըկրի դէմը կեցեր է։

— Ուրեմն տեսա՞ր, Թովմաս, կ՚երեւայ թէ ա՛լ կրօնքէդ ձանձրացեր ես, դադրեր է վրադ ազդեցութիւն ընելէն։ Ես գիտէի թէ վերջապէս այդ բոլոր գլխէդ դուրս հանել պիտի տամ ատ գաղափարը։

Այս անգութ ծաղրածութիւնը քաշած անօթութենէն, ցրտէն ու մերկութենէն աւելի ծանր եկաւ Թովմասին. անոր համար պատասխան չտուաւ։

— Դու խենթ ես, կրկնեց Լըկրի, վասն զի երբոր զքեզ գնեցի՝ քու աղէկութիւնդ մտածեր էի։ Ես զքեզ հոս Սամպոյէն ալ, Քուիմպոյէն ալ վեր պիտի դնէի. և աղէկ կեանք մ'ալ կը գտնէիր, ու փոխանակ ամէն օր ծեծ ուտելու, ինծմէ ետեւ դուն կը հրամայէիր հոս, և քու ձեռքովդ կը բաշխէիր ուրիշ սեւերուն ծեծը։ Երբեմն երբեմն գաւաթ մ'ալ թօնչ կու տայի քեզի, որ քիչ մը տաքնաս։ Քեզ տեսնեմ, քիչ մը խելքդ գլուխդ ժողվէ, ու աչքիս առջեւ կրակը նետէ այդ հնոտի ու չնչին գիրքը, որ անտեղութիւններով լի է, ու իմ քեզի ցուցած կրօնքս ընդունէ։

Աստուա՛ծ պահէ, պատասխանեց Թովմաս եռանդեամբ։

— Մինչեւ հիմայ տեսար որ Աստուած քեզի օգնութիւն հասնելու և ոչ իսկ փոյթ ունի. ապա թէ ոչ՝ թող չէր տար որ ձեռքս իյնայիր։ Քու դաւանած կրօնքդ ուրիշ բան չէ՝ բայց եթէ ստութեանց շարք մը։ Ես գիտեմ թէ ինչ բան է։ Ուստի աղէկ կ'ընես,

Թուլմայ, որ դու իմ ըսածներուս մտիկ ընես. ես ալ մարդ մ'եմ, իմ ձեռքէս ալ բան կու գայ։

— Չէ, տէր իմ, պատասխանեց Թուլմաս, չէ. ես միշտ հաւատարիմ պիտի մընամ Աստուծոյ։ Աստուած ինծի օգնութեան գայ չգայ՝ ես իրմէ չեմ բաժնուիր, և ինչուան վերջին շունչս իրեն կ'ապաւինիմ։

— Աշխարհիս վրայ քեզմէ անմիտ մարդ չի կրնար ըլլալ, ըսաւ Լըկրի՝ Թուլմային երեսը թքնելով ու ոտքով կից մը զարնելով։ Հոգ չէ, ես զքեզ գիտեմ ընկճել և խելքդ գլուխդ բերել, կը տեսնես։ Այս ըսաւ Լըկրի ու ձգեց գնաց։

Երբոր մարդուս սիրտը ցաւոց բեռան տակը կը հեծէ, և այլ չի կրնար տանիլ, յուսահատաբար իր բնական և բարոյական բոլոր ուժը ասպարէզ կը կոչէ՝ այս բեռը սրտին վրայէն վար ձգելու, և ամենէն պատն ցաւերը՝ խնդութեան և խրախուսանաց վերապարձին կարապետն են։ Այսպէս եղաւ Թուլմասին ալ։ Իր անգութ տիրոջ անաստուածական ծաղրաբանութիւններն՝ իրեն սիրտը՝ որ արդէն վհատեալ էր՝ աւելի խորունկ խորխորատի մէջ ձգեցին։ Դեռ ձեռուըններին հաւատոյ խարիսխը ամուր բռներ էին, բայց ինքն

անյուսութեան անձկութեան մէջ ինկեր էր։ Կրակին քով նստած՝ վերջին ատրճանի մըհատութեան մէջ ինկեր էր. մէյմ՚ալ յանկարծ զինմացի առարկաներն սկսան աչքին առջեւէն փախչիլ. փշոտ պսակուած, վիրալից ու արիւնաթաթաւ գլուխ մ՚երեւցաւ իրեն։ Թովմաս ահիւ և գողութեամբ այն վսեմ կերպարանքը դիտեց, որուն վրայ գերագոյն համակերպութիւն մը կը փայլէր. Մարդացեալոյն Աստուծոյ այն գթալից կերպարանքը սրտին ինչուան խորը կող հանեցին։ Տակն ու վրայ եղած՝ ձեռուըները տարածեց ու ծնկան վրայ եկաւ։ Այն ատեն կամաց կամաց տեսիլքը փոխուեցաւ, փուշերը լուսոյ ճառագայթներու փոխուեցան, և տեսաւ որ այն անպատմելի պայծառութեամբ զարդարուած կերպարանքը՝ գթալից աչուըներով դէպ իրեն խոնարհեցաւ, ու ականջին ալ ձայն մ՚եկաւ որ կ՚ըսէր. «Ո՛վ որ կը յաղթէ ցաւոց՝ ինծի հետ իմ աթոռս պիտի նստի, վասն զի ես ալ յաղթեցի ցաւոց ու Հօրս աթոռը նստայ»։

Որչափ ատեն այդեօք Թովմաս այսպէս չոքած մնաց. ինքն ալ չէր գիտեր։ Երբոր ինքիրեն եկաւ՝ կրակը մարեր էր, ու հագուստներն ալ գիշերուան ցուրտ ցօղէն թրջեր

չէին. բայց սրտէն ամէն ահ ու դող անհետացեր էին. և ունեցած ներքին ուրախութենէն ոչ անօթութիւն, ոչ ցուրտ և ոչ ալ խեղճութիւն ու տառապանք կը զգար։ Սրտին խորէն բոլոր երկրաւոր յոյսերը դուրս հանեց, ու իր կամքը բոլորանուէր Աստուծոյ մատոյց։ Դարձուց աչուըները դէպ երկինք ու լուռ և յաւիտենական աստղերը դիտեց, որ հրեշտակաց նման անդադար մարդուս վրայ կը հսկեն, և սկսաւ դիւցերուան միայնութիւնն երգի մը յաղթական խօսքերով որոտացընել, զոր իր երջանկութեան օրերը երգեր էր, բայց ոչ այսչափ զգացմամբ.

Դադարեսցէ երկրի թշուառ յանձնուն կայն,
Ու արեգական դադարեսցէ լոյս յերկինս.
Այլ լուսափիւռ կեցցէ Աստուած յաւիտեան,
Եւ եղիցի յանանց վայելս՝ իմ բաժին։

Ցորժամ ընկձի մարմինս մահուան ի հարուած,
Եւ կասեսցին արեանս ընթացք յերակունս,
Վերձարեսցէ՛ն կենացս և զգայս իմ Աստուած,
Եւ կոչեսցէ զիս ի փառս անդր ի բարձունս։

Եւ երգելով յաւիտենից յաւիտեան
Երգեսցուք միշտ զԱստուած ընդէր մշտնջենան.

Որպէս մի օր հոսեսցին դարք յանվախճան
ի ծոց փառացն իւր յանըստուերն ի կայան։

Անոնք որ դերեաց կրօնական աւանդութեանց վրայ տեղեկութիւն ունին, գիտեն ալ թէ այսպիսի զգացմունքներ մէջերնին սովորական է։ Մենք ալ բուն իրենց բերնէն լսեր ենք այսպիսի սրտաշարժ և ըղձակաթ երգեր, որոնցմէ մէկ քանին հոս ալ յիշեցինք։ Հոգերանք կ'ըսեն թէ մարդուս հոգին այնպիսի վիճակ մ'ունի, որուն մէջ գտնուելու որ ըլլայ՝ իրեն վրայ եղած տպաւորութիւններն ու ազդեցութիւններն այն աստիճանի կը զօրեն՝ որ բոլորովին արտաքին զգայութեանց վրայ կը տիրեն և կը բռնադատեն զանոնք զգալի ձեւ մը տալ այն առարկային, որոնք երեւակայութեան մէջ միայն գոյութիւն ունին։

Ո՞վ կրնայ ըսել թէ արդեօք գերագոյն էն՝ մեր մահկանացու բնութեան այս կարողութիւնները որ աստիճանի ի գործ կ'ածէ՝ ընքեալ հոգւոց խրախոյս տալու համար։ Եթէ խեղճ գերին հաւատալու ըլլայ թէ իրեն Յիսուս երեւցաւ, ո՞վ կրնայ ըսել թէ չէ՛ երեւցաւ։ Միթէ Քրիստոս տէրն մեր չէ՞ ըսողը թէ ուրիշ բանի համար չէ եկած՝ բայց եթէ բեկեալ սրտերը բժշկելու և գերեաց թողութիւն տալու։

Երբոր առաւօտեան արշալոյսը գերիներն արթընցուց ու պաշտօն աշխատելու հրաւիրեց, այն թշուառներուն ու ցրտէն սարսռողներուն մէջ մարդ մը կար՝ որ յաղթական կերպով աշխատելու կ'երթար։ Ոտքին կոխած երկրէն աւելի հաստատուն նեցուկ մ'ունէր, և էր իրեն անխախտելի հաւատքը, հաստատուն յոյսը ամենակալն Աստուծոյ և անոր յաւիտենական սիրոյն վրայ։ Ահ. Լոկրի, հիմայ թափէ բոլոր ունեցած ոյժդ ասոր վրայ։ Մահը, թշուառութիւնը, նուաստութիւնը, ամէն տեսակ նեղութիւն՝ իրեն ուրիշ բան չեն ըներ՝ բայց եթէ անմահական պսակին հասնելու երանական վայրկեանը կ'երագեն։

Այն վայրկենէն սկսեալ՝ անխռով խաղաղութիւն մը պատեց իրեն սրտին վրայ, զոր իբրեւ տաճար իրեն Փրկչին ընծայեր էր։ Անցելոյն դառն յիշատակը, յուսոյն ծփանքը, երկիւղն ու փափագը՝ բոլորն ալ աներեւութացեր էին. մարդկեղէն կամքը՝ որ երկար ատենէ ի վեր անդադար տանջանաց և նեղութեանց կը տանէր, բոլորովին Աստուծոյ կամքին մէջ ընկղմեցաւ։ Կենաց ընթացքին մնացած ճամբան այնչափ իրեն կարճ կ'երեւնար, և յաւիտենական երջանկութիւնն իրեն այնչափ մօտ, որ այս աշխարհիս ա-

մինչեւ ղաւն տանջանքներն ալ իրեն աչքին բան չէին երեւար։

Ամէնքն ալ Թուլմասին վրայ եղած այս փոփոխութիւնն անդրադարձան․ ուրախութեանն ու գործունէութեան հետ՝ այնպիսի սրտի հանգստութիւն մ'ալ կը զգար, որ ոչ նախատինք և ոչ անարգանք զինքը չէին կրնար խռովել։

— Թուլմասին ի՞նչ հանդիպեցաւ, ըսաւ Լըկրի Սամպոյին. դեռ քանի մ'օր առաջ բոլորովին վհատեալ կ'երեւար, իսկ հիմայ ուրախութենէն ծղրիդի պէս կը ցատքռտէ։

— Չեմ գիտեր, տէր իմ․ թերեւս փախչիլ կը մտածէ...։

— Շատ կ'ուզէի որ մէյմը փախչէր, պատասխանեց Լըկրի՝ վայրագ ծիծաղ մը փըրցընելով...։ Ի՞նչ կ'ըսես, Սամպոյ, դու ալ չե՞ս ուզեր։

— Ու՛ր էր, ըսաւ սեւադէմ Սամպոն։ Ի՞նչ զուարճալի հանդէս պիտի ըլլայ՝ երբոր տեսնենք որ տիղմերուն մէջ կը տապըլտըկի, մացառներուն կը պլլուի, ու շներուն հետ կը կռուի։ Երբոր Մըլլին բռնեցինք՝ ես խնտալէս կը ճաթէի. կարծեցի թէ ինչուան վրայ հասնիմ զինքը շներուն բերնէն ազատեմ՝ շները զինքը կտոր կտոր ըրած կը

գանեմ. դեռ ինչուան հիմայ անոնց խածուածքին նշանները փառաւորապէս վրան կեցեր են։

— Ապահով կեցիր՝ որ այն առած նշանները մինչեւ գերեզման հետը մէկտեղ պիտի տանի, ըսաւ Լըկրի։ Բայց, Սամպոյ, աչքդ աղէկ բաց, թէ որ այդ սեւը փախչելու միտք ունենայ, ետեւէն իյնաս ու ոտքը կոտրես։

— Այդ բանն ինծի թող, տէր իմ, պատասխանեց Սամպոյ. ես գիտեմ թէ այդ ճագարն ինչպէս բռնելու է։

Այս խօսակցութիւնս ընելու ատեն՝ միանգամայն Լըկրի մօտակայ քաղաքն երթալու պատրաստութիւն կը տեսնէր. ուստի ձի հեծաւ ու ճամբայ ելաւ։ Իրիկուան երբոր դարձաւ՝ խելքին փչեց որ երթայ գերիներուն բնակութիւնը մէյմը աչքէ անցընէ, և տեսնէ թէ ամէն բան կարգի՞ է թէ չէ։

Գեղեցիկ լուսին կար։ Ձինու ծառերուն ստուերը մարգագետնին վրայ զարկեր էր, օդն ալ խաղաղ ու հանդարտ էր։ Լըկրի երբոր գերեաց բնակութեան մօտեցաւ՝ երգելու ձայն մը լսեց, որ այն տեղուանքը սովորական բան չէր, ուստի կանգ առաւ որ մտիկ ընէ։ Հաստ ներդաշնակաւոր ձայն մը կ'երգէր հետեւեալ տողերը։

Ո՛չ, ոչ, ինձ մի՛ մարդիկ իցեն դատաւոր
  Յերկրի այսմիկ ցաւալից.
Ցորչափ յերկինս բախտն իմ գրի շնորհաւոր՝
  Ես զարտասուս սրբեցից։

Ողբայ մարմին, այլ բովանդակ հոգի՛նդ քեզ
  Անարգէ զհուր և զերկաթ.
Մահ լուծանել իշխէ եւեթ ըզտարերս,
  Արդար՝ ծաղրէ զդժոխոց խայթ։

Արդարութեան քում պատկառ կամ, ո՛վ Ա-
  Յորժամ խրատես և ըզլաս. (տուած,
Եւ համապազ քեզ Տեառն խնում փառս տաց
  Յամենայն վիշտ և ի ցաւս։

— Ա՜հ, ըսաւ ինքիրեն Լըկրի, նայէ թէ ինչ գաղափարներու տէր մարդ է։ Ինչպէս ալ այդ անիծած երգերը չեմ սիրեր։ — Դո՞ւ ես, սեւերես, պոռաց՝ ձիով դէպ ի Թովմասին վրայ վազելով ու խարազանը շարժելով. Ինչպէս կը յանդգնիս արթուն կենալ ու երգել, որ մինչեւ հիմայ պառկած պիտի ըլլայիր։ Խփէ կոկորդըդ և շուտ ելիր պառկէ։

— Շատ աղէկ, տէր իմ, պատասխանեց Թովմաս զուարթութեամբ, ու ելաւ ներս մտաւ։

Թովմասին այն ուրախ ու զուարթ կերպէն՝ Լըկրիին վրայ կատաղութիւն մ'եկաւ. ուստի Թովմասին վրայ հասնելով՝ աղէկ մը գլխուն, քթին, բերնին, կողերուն խարազանով զարնել սկսաւ։

— Այ, անպիտան շուն, տեսնենք թէ ասկէ ետեւ ալ զուարթութիւնդ կը բռնէ՞։

Բայց այն հարուածները մահկանացու մարմնոյն վրայ իջան, և առաջուան պէս ալ հոգւոյն վրայ ազդեցութիւն մը չըրին։ Թովմաս բոլորովին հնազանդ էր, սակայն Լըկրի չէր կրնար չտեսնել թէ իր գերւոյն վրայ ունեցած կարողութիւնն ամբողջապէս կորսնցուցեր էր։ Երբոր տեսաւ որ Թովմաս իր խրճիթը մտաւ, և ձիուն գլուխն ալ դարձուց որ ետ դառնայ, մէյմ'ալ խղճի այն արագաթռիչ փայլակներէն մէկն՝ որ յանկարծ ամենէն խաւարեալ ու ամենէն չար սրտերն ալ կը լուսաւորէ, իրեն սրտին մէջ ալ շանթեց։ Իմացաւ որ իր ու իրեն զոհին մէջ Աստուած անցեր էր, անոր համար հայհոյեց ընդդէմ Աստուծոյ։ Այս խոնարհ ու համբերող մարդը, որ ոչ անարգանքներէ և ոչ սպառնալիքներէ, ոչ ծեծէ և ոչ իր վրայ եղած անգթութիւններէն կը խռովէր, Լըկրիին հոգւոյն մէջ ձայն մ'արթընցուց, նման

այն ձայնին, որ իրեն տէրը սատանան՝ այսահարին բերանը դրաւ. «Զի՞ կայ մեր և քո, Յիսուս Նազովրեցի, եկիր տարաժամ տանջել զմեզ»։

Թովմասին սիրտը իր չար կողմն եղած թշուառ գերիներուն վրայ կը գթար ու կը ցաւէր։ Իրեն այնպէս կու գար՝ թէ իր երկրաւոր ցաւերն անցեր էին։ Սիրտը կ'եփէր թէ ինչ կերպով արդեօք կրնար իրեն ընդունած խաղաղութեան և ուրախութեան գանձէն՝ մասն և բաժին հանել իր ընկերակցաց, և անոնց ցաւոցն ու վշտացը թեթևութիւն մը տալ։ Իրաւ քիչ անգամ առիթ կ'ունենար այս բարեգործութիւնս կատարելու, բայց պաշտ երթալու ու գալու ատեն, աշխատութեան ժամանակ՝ իրեն երջանկութիւն կը համարէր՝ թէ որ կարող ըլլար այն յուսաբեկ ու վհատեալ թշուառներուն օգնութիւն մ'ընել։ Սկզբան այն մարդկութենէ ելած արարածներն այս բանս չըմբռնեցին. բայց Թովմաս չձանձրացաւ շաբաթներով, ամիսներով իր ձեռքէն եկած բարիքն ասոնց ընելու, այնչափ որ վերջապէս այն դալկահար սրտերուն զգացողութեան թելերը թրթռացին։

Այս կարգէ դուրս և լուիկ ու համբերող մարդը, որ միշտ պատրաստ էր ուրիշին բե-

տը բառնալու, առանց մէկէ մը օգնութիւն խնդրելու, որ երբոր կերակուր կը բաժնէին՝ ամենէն վերջը կ'երթար իր մասն առնելու ու ամենէն ալ քիչ կ'առնէր, և ան ալ՝ կարօտութիւն ունեցողներուն կը բաժնէր, այս մարդս՝ որ ցուրտ գիշերները սիրով իր խեղճ վերմակիկը հիւանդի մը, ջերմոտի մը կու տար, և աշխատութեան ատեն ալ՝ տկարներուն կողովները կը լեցընէր, վտանգաւ անձին՝ որ իրենը պակաս կշռէր, որ իրենց հասարակաց բռնաւորին անողորմելի անգթութենէն հալածուած՝ երբեք գանգատ մը և կամ անէծք մը չէր ըներ իր հալածչին դէմ, այս մարդս՝ կ'ըսեմ՝ կամաց կամաց անզգալի կերպով ամենուն վրայ ալ կարգէ դուրս ազդեցութիւն մը ստացաւ։ Երբոր հնձոց ժամանակն անցաւ, ու գերիները կիրակի օրեր կրնային հանգչիլ, բազմութեամբ Թումասին չորս կողմը կը ժողվէին. ան ալ Աւետարանէն պատմութիւններ կը պատմէր անոնց։ Ամէնքն ալ կը փափագէին մէկտեղ ժողովելու և այս պատմութիւններս լսելու, աղօթելու և երգելու. բայց Լըկրի չէր թողուր, և քանի անգամ ալ որ վրանին հասաւ՝ անիծիւք և հայհոյանօք ցրուեց զանոնք, այնչափ որ ուրիշ ճար չգտնելով՝ Թումասին պատմածներն ու

յորդորները թերնէ բերան մէկմէկու կը հաղորդէին։ Եւ սակայն ո՛չ կրնայ պատմել մէջերնէն քանի մը խեղճ բարեսիրաներուն անկեղծ ուրախութիւնը, որոնց կեանքն ուրիշ բան չէր՝ բայց եթէ տխուր ճամբայ մը, որուն ծայրը մութ ու անծանօթ էր, երբոր լսեցին թէ բարերար ու մարդասէր Փրկիչ մը կայ եղեր, և երկնաւոր Հայրենիք մը։ Քարոզիչներէն շատերը կը վկայեն թէ այս խեղճ ու տառապեալ խափշիկներն՝ Աւետարանն ուրիշ ազգացմէ աւելի եռանդեամբ ու հպատակութեամբ կ՚ընդունին։ Հլութեան ու բացարձակ հաւատոյ սկզբունքը, որ աւետարանական վարդապետութեանց հիմն է, կարծես թէ ուրիշ ազգացմէ աւելի՝ այս խեղճերուն բնութեան մէջ սնկուած են, որ աւելի մշակուած սիրտ ունեցողներուն իրենց վրայ նայելով կ՚ամըչնան։

Այն խեղճ խառնածին կինը՝ որուն հաւատքը տեսանք որ վրան եկած անգթութեանց ու անիրաւութեան բեռան տակ ջախջախուելու և կործանուելու վրայ էր, Թովմասին երգերն ու աւետարանական պատմութիւնները լսելով՝ սկսաւ ոգի առնուլ։ Գէսսիին անգամ կիսամոլար սիրտը կակղնալ ու հանդարտիլ սկսաւ Թովմասին քաղցր ու զգօնասէր ազդուութեամբ։

Գէսսի իրեն ունեցած անլուր թշուառութիւններէն ու աղէտներէն՝ վրան կատաղութիւն ու յուսահատութիւն եկեր էր. շատ անգամ մտածեր էր վրէժը հատուցանելու և ոխը հանելու իր բռնաւորէն, որուն երկար ատենէ վեր ըրած անլուր անիրաւութիւններն ու անգթութիւնները տեսեր ու կրեր էր։

Գիշեր մը՝ երբոր Թովմասին խրճիթին գերիները քնացեր էին, մէյ մ'ալ յանկարծ արթընցաւ Թովմաս, ու պատուհանի տեղ ծառայող ծակէն՝ Գէսսին գլուխը տեսաւ, որ նշանացի զինքը դուրս կը կանչէր։

Թովմաս մէկէն դուրս ցատքեց։ Կէս գիշերը մէկ կամ երկու ժամ անցեր էր։ Լուսնին անուշ ու խաղաղական լուսով, որուն ճառագայթները Գէսսիին դէմքը լուսաւորեր էին, Թովմաս անոր սեւ խոշոր աչաց մէջ կարգէ դուրս ու կատաղի փայլունութիւն մը տեսաւ, որ սովորաբար անոր ունեցած տխուր և յուսահատ նայուածքէն շատ տարբեր էր։

— Հոս եկուր, աղբար Թովմաս, հոս եկուր, ըսաւ Գէսսի՝ անոր թեւէն բռնելով ու դէպ իրեն քաշելով. քեզի նոր լուր մը պիտի տամ։

— Ի՞նչ բան է, Գէսսի խաթուն, հարցուց Թովմաս անձկանօք։

— Թովմաս, կ'ուզե՞ս ազատութիւնդ ձեռք ձգել։

— Հրամեր ես, խաթուն, երբոր Աստուած ուզէ։

— Աղէկ, բայց այս գիշեր ալ թէ որ ուզես՝ կրնաս ազատութիւնդ ձեռք ձգել, կըրկնեց Գէսսի յանկարծական կարճութեամբ մը։

Թովմաս սկսաւ տարակուսիլ։

— Եկուր երթանք, ըսաւ կամացուկ ձայնով մը ու սեւ աչուըններն անոր երեսը տընկելով։ Եկուր երթանք, անիկայ խոր կը քնանայ, ես անոր օղիին մէջ այնպիսի նիւթ մը խառնեցի որ քունը երկար տանի։ Թէ որ խառնած նիւթէս շատ ունենայի՝ հիմայ քեզի չէի կարօտիր։ Բայց եկուր երթանք, ետեւի դուռը բաց է. հոնտեղ կացին մը կայ՝ զոր ես դրի. իրեն խցին դուռն ալ բաց է. ես քեզի ճամբան կը ցուցընեմ։ Ես ալ կըրնայի գլխուն զարնել, բայց թեւերս տկար են, ուստի դու ալ հետս եկուր։

— Չէ, չէ. բի՛ւր աշխարհք տան ինծի, չեմ գար, խաթուն, ըսաւ Թովմաս ետ ետ քաշուելով, վասն զի Գէսսի ձեռքէն բռնած՝ առաջ կ'ուզէր երթալ։

— Բայց մէյմը սա բոլոր խեղճերը մըտածէ, ըսաւ Գէսսի. զամէնքն ալ կ'ազա-

տենք, ու մենք ալ կ'երթանք ճահիճներուն մէջ տեղ մը կը պահուըտինք. կղզի մը կը գտնենք ու հոն մենք մեզի հանգիստ կ'ապրինք: Ես լսեր եմ որ ուրիշներն ալ ըրեր են: Ո՛ր և իցէ վիճակ ալ ունենանք, հիմակուան ունեցած վիճակներնէս լաւագոյն կ'ըլլայ:

— Չէ, կրկնեց Թովմաս հաստատութեամբ. չարէն ոչ երբեք բարիք կրնայ ելլել: Աւելի յանձն կ'առնում աջ ձեռքս կըտրել՝ քան թէ ուրիշին արիւնը մտնել:

— Ան ատեն ես ինքիրենս կ'ընեմ, ըսաւ Գէսսի ու սկսաւ անկէ հեռանալ:

— Ո՛հ, Գէսսի խաթուն, ըսաւ Թովմաս ետեւէն վազելով, Աստուծոյ սիրոյն համար ըլլայ՝ որ քեզի համար մեռաւ, քու անգին հոգիդ այդպէս սատանային մի՛ ծախեր: Ըրածէդ՝ չարիքէն զատ ուրիշ բան չ'ելլեր: Ուրիշէն վրէժ խնդրելու համար չէ ստեղծած զմեզ Աստուած: Պէտք է համբերենք, և այն ժամուն սպասենք՝ որ մեզի համար ինքն որոշեր է:

— Սպասե՛լ, կրկնեց Գէսսի. ինչուան հիմայ չսպասեցի՞. միթէ այնչափ չսպասեցի՞ մինչեւ որ գլուխս պարձաւ ու սիրտս հալեցաւ: Ի՞նչ նեղութիւններ ու վիշտեր չքաշե-

ցին այդ անպիտան մարդուն ձեռքէն այսչափ հարիւրաւոր խեղճ տառապածներ։ Միթէ քու արիւնդ ալ կաթիլ կաթիլ պիտի չծծէ՞։ Չէ, պէտք է վրէժ խնդրեմ. ա՛լ ժամանակը լեցուեցաւ. պէտք է որ անոր սրտին արիւնը ծծեմ։

Չէ, չէ, չէ, ըսաւ Թուլմաս այլայլած՝ Գէսսիին ձեռքը սեղմելով. չէ, հոգիդ կը սիրես, մի՛ ըներ այդ բանը։ Քրիստոս տէրն մեր ուրիշի արիւնը չթափեց, այլ իր արիւնը թափեց, և մեզի համար թափեց որ իրեն թշնամիներն էինք։ Ինքը մեզի ալ կ'օգնէ իր օրինակին հետեւելու և մեր թշնամիները սիրելու։

— Սիրե՜լ, ըսաւ Գէսսի կատաղի նայուածքով մը. այդպիսի թշնամիները սիրե՜լ...։ Մարմինս և արիւնս այդ բանիդ դէմ կը բողոքեն։

— Իրաւ է, խաթուն, իրաւ է. ինքը մեզի ոյժ կու տայ., և ասով է մեր յաղթութիւնը։ Երբոր կարող ըլլանք զամէնքը սիրել, և ամէն տեղ ու ամենուն համար աղօթել, պատերազմը կը լմըննայ, յաղթութիւնը կը վաստըկինք։ Փառք ի բարձունս Աստուծոյ...։ Եւ խեղճ սեւուկը արտասուալից աչուըները դէպ երկինք վերցուց։

Այս է ահա քու յաղթութիւնդ, ո՜վ Ափրիկէ. ամէն ազգաց մէջէն յետին կոչեցեալդ. փշալ զօրակոխուելու, խարազանուած ծեծուելու, արիւն քրտնելու ու խաչին մահն ունենալու կոչուեցար. անոր համար երբոր Քրիստոս իրեն արքայութեամբը գալու ըլլայ՝ դու ալ իրեն հետ պիտի թագաւորես:

Թովմասի եռանդագին խորին զգացմունքները, իրեն ձայնին քաղցրութիւնն և արցունքներն՝ անուշ ցօղի մը պէս այն խեղճ կնկան զայրացած ու վիրաւոր սրտին վրայ իջան. և կատաղի նայուածքին տեղ՝ անուշութիւն մը դէմքին վրայ փոխանակուեց: Աշուրթները պեխին խոնարհեցուց, և կամաց կամաց Թովմասին ձեռքը թող տուաւ, որ առաջ ամուր բռներ էր:

— Ես քեզի չէ՞ի զրուցեր, ըսաւ, որ չարութեան ոգին ամէն տեղ ետեւէս ինկեր է: Մի՛լ աղբար Թովմաս, չեմ կրնար աղօթք ըսել: Տղաքս ծախուած օրէն ետեւ ամենեւին աղօթք չեմ ըրած: Ըսածդ իրաւ է, ես ալ գիտեմ. բայց երբոր աղօթքի կը նստիմ՝ անիծիւք ու ատելութեամբ կ'ելլեմ. չե՛մ կրնար աղօթք ըսել:

— Խե՛ղճ, կրկնեց Թովմաս՝ գութը շարժած. սատանան ետեւէդ ինկեր է և կ'ուզէ

զքեզ խաբրալէլ, բայց ես քեզի համար ա-
ղօթք կ'ընեմ։ Ո՜հ, Գէսսի խաթուն, մէյմը Ցիսուսի դիմէ. ինքն եկաւ աշխարհք բեկեալ սրտերը բժշկելու և օգտաւորաց արցունքները սրբելու։

Գէսսի լուռ կեցաւ մնաց, աչուըներէն խաշոր խոշոր արցունքներ կը թափթըփէին։

— Գէսսի խաթուն, կրկնեց Թովմաս՝ տարակուսանօք և քիչ մ'ատեն լուռ անոր երեսը նայելէն ետև. թէ որ կարող ըլլայիր ասկէ փախչիլ, թէ որ կարելի ըլլար, կ'ըսեմ, հրամանքիդ խորհուրդ կու տայի որ Էմմէլինեան հետդ առած փախչէիր, այսինքն թէ առանց արիւն թափելու, ապա թէ ոչ՝ այդպիսի բանի ձեռք մի զարներ։

— Դուն ալ մեզի հետ չե՞ս փախչիր, աղբար Թովմաս։

— Չէ, պատասխանեց Թովմաս. թէ որ ուզէի՝ ինչուան հիմայ արդէն փախած էի. բայց կարծեմ թէ Աստուած մանաւանդ զիս այս խեղճերը մխիթարելու համար զրկեր է, ուստի իրենցմէ չեմ կրնար բաժնուիլ, անոնց հետ մէկտեղ ես ալ իմ խաչս կը կրեմ ինչուան վերջը։ Իսկ ձեզի այնպէս չէ. ամէն բան ձեզի հոս մէյմէկ դայթան են մեղանչելու, որոնց դէմ չէք կրնար դնել. ու-

տի լաւ կ՚ընէք թէ որ կարենաք՝ ելէք այս տեղէս փախէք։

— Ես բաց ի գերեզմանէն ուրիշ ապաւէն չեմ գտներ, ըսաւ Գէսար։ Կենդանի մը չկայ, Թռչուն մը չկայ որ իրեն ապաւէն մը չգտնէ. օձն ալ, կոկորդիլոսն ալ իրենց բոյնն ունին, ուր կրնան քնանալ ու հանգչիլ. մենք միայն ապաւէն մը չունինք։ Ճահիճներուն որչափ ալ խորերը մանենք՝ անոնց շներն զմեզ կ՚որսան ու զմեզ կը գտնեն։ Ամէնքն ալ մեզի դէմ ելեր են. անբան կենդանիներն անգամ մեզի թշնամի են։ Ո՞ւր կրնանք երթալ...։

Թովմաս քիչ մը լուռ կեցաւ. ետքէն արտասուալից աչուըներով ըսաւ.

— Անիկայ որ Դանիէլն ազատեց առիւծներուն գուբէն, երեք մանկունքը փրկեց կրակի հնոցէն. Անիկայ որ ծովուն վրայ կը քալէր և քամիներուն կը հրամայէր ու գալերին, Անիկայ միշտ կենդանի է, և հաստատապէս կը հաւատամ որ կրնայ զձեզ ազատել։ Դուք մէյմը փախէք, ես ալ կրցածիս չափ ձեզի համար աղօթք կ՚ընեմ։

Մարդուս մտաց զօրութիւնն ի՛նչ կարգէ դուրս բան է, որ մտածութիւն մը՝ երկայն ատեն իբրեւ անգործադրելի ու անկարելի

դառնըլէն ետեւ, մէյմ՚ ալ յանկարծ նոր գտնուած ադամանդի պէս լուսաւոր ճառագայթներ կ՚արձակէ։

Գէսսի շատ անգամ մտածեր էր իր մըտաքին մէջ թէ արդեօք ի՛նչ կերպով կրնայ փախչիլ. և ամէն հնարք անկարելի գտեր էր. բայց հիմայ յանկարծ միտքը նոր հընարք մ՚ ինկաւ փախչելու, որ ամենեւին դժուարութիւն չունէր և շատ դիւրին ալ էր գործադրելը, անոր համար սիրտն ուրախութեամբ լեցուեցաւ. ուստի

— Աղբար Թովմաս, կը փախչիմ, ըսաւ յանկարծակի։

— Շա՛տ լաւ, պատասխանեց Թովմաս. Աստուած հետդ ըլլայ։

## ԳԼՈՒԽ ԼԹ.

### Դուռ

Լըկրիին տանը ցորեննոցը՝ գրեթէ ուրիշ ամէն ցորեննոցներուն պէս ընդարձակ շէնք մ՚էր, մէջը պարապ, փոշոտած, պատերը սարդի ոստայններով ծածկուած, հնոտի կարասիներով լեցուն։ Առջի հարուստ ընտանեաց բնակութեան ատեն՝ տանը մէջ շատ

փառաւոր կահ կարասիք կային, բայց ա-
նանցմէ շատը հոն թողեր գնացեր էին. Լը-
կրի ալ զանոնք կէս մ'ամբրնակ թաց խուցե-
րու մէջ ձգեր էր, կէս մ'ալ այս ցորենոցին
մէջ, ուր կը փտէին: Ցորենոցին մէջ երկու
երեք խոշոր սնտուկներ կային պատէն կըռ-
թընած, որոնք ատեննալ այս կահ կարասիք-
ները բերելու ծառայեր էին: Նեղ լուսամուտէ
մ'աղօտ ու փոշոտած ապակիներէն նուաղ
լոյս մը ներս զարկեր էր, և այս խոշոր
սնտուկները, փոշեպատ աթոռներն ու սե-
ղանները կը լուսաւորէր. միով բանիւ՝ այն
տեղն այնպիսի տխուր կերպարանք մ'առեր
էր՝ որ նախապաշարեալ մարդ մը՝ չար ոգի-
ներուն բնակարան կը կարծէր, և իրաւցնէ
երեւակայոտ գերեաց մէջ ալ այսպիսի կար-
ծիք ունեցողներ և վախցողներ պակաս չէին:

Քանի մը տարի առաջ սեւ կին մը Լը-
կրիին բարկութեան հանդիպելով՝ այս ցո-
րենոցին մէջ փակուեցաւ: Խեղճը արդեօք
հոն ի՛նչ եղաւ՝ չենք կրնար գրուցել: Գե-
րիներն այս դիպուածիս վրայ մէջերնին շատ
բան խօսեցան. բայց ի՛նչ ալ ըսեն, անշուշտ
օր մը այն խեղճին մարմինն ան բանտէն
հանեցին ու տարին թաղեցին. անկէ ետեւ,
կ'ըսէին, թէ այս տխուր տեղէն ոռնալու

ձայներ, զոռում գոչումներ, սաստիկ արտա-մունքներ և յուսահատութեան աղաղակներ ու հեծութիւններ կը լսուէին։ Անգամ մ'ալ գլխպուածով այս բանս Լըկրիին ականջին հա-սաւ, և այնպէս սաստիկ բարկացաւ՝ որ հայ-հոյելով սպառնացաւ թէ ով որ ասկէ ետև այդպիսի պատմութիւններ պատմէ, ութը օր կապուած՝ ցորենոցին մէջ պահել կու տամ զինքը, որ անձամբ տեսնէ թէ ինչ կ'ըլլայ հոն։ Այս սպառնալիքս ամէն տեսակ մեկ-նութիւն լռեցուց. բայց ինչպէս որ ընտական է՝ գերիներն ամենեւին իրենց կարծիքը չը-փոխեցին։

Կամաց կամաց մարդ մ'ալ ցորենոցին սանդուղին քովէն չէր անցնիր, և ոչ սան-դուղին քովի պզտի սրահէն. ամէն մարդ կը վախէր ուրիշին բան մ'ըսելու իրեն վախին վրայ, այնպէս որ բուն իսկ պատճառն ան-գամ մոռցան։ Մէյմ'ալ յանկարծ Գէսարին միտքն ինկաւ այս բանս. և որովհետև Լը-կրին վրայ ալ աւելորդապաշտական կար-ծիքը մեծ ազդեցութիւն ըրեր էր, ուզեց ա-սով իրեն և իր թշուառութեան ընկերակից աղջկան ազատութիւնը ձեռք ձգել։

Գէսարին պառկելու խուցը ճիշդ այս ցո-րենոցին տակն էր. օր մը՝ առանց Լըկրին

հարցընելու, քանի մը գերի կանչեց, ու մեծ աշխատութեամբ՝ խցին կահ կարասիքը ուրիշ հեռու խուց մը կրել տուաւ։ Երբոր գերիները մեծ աղաղակով ու շփոթութեամբ Գէասիին հրամանները կատարելու հետ էին, մէյմ'ալ Լըկրին վրայ հասաւ։

— Բարով ըլլայ, Գէասի, ըսաւ Լըկրի՝ ձիէն վար իջնելով, ի՞նչ նոր բան կայ, այսօր քամին ո՞ր կողմէն փչեց։

— Բան չկայ, միայն թէ խուցս կ'ուզեմ փոխել, պատասխանեց Գէասի։

— Ի՞նչ բանի համար, խնդրեմ։

— Վասն զի ա՛լ չեմ ուզեր հոս բնակիլ։

— Կրողին բերանն երթաս. բայց պատճառն ի՞նչ է։

— Պատճառն աս է՝ որ կ'ուզեմ քիչ մը հանգիստ քուն ըլլալ։

— Քուն ըլլա՛լ. ո՞վ կ'արգելու....։

— Կընայի քեզի ըսել թէ ու ինծի մտիկ ընելու ըլլայիր, ըսաւ Գէասի պաղ կերպով

— Ըսէ տեսնեմ, պոռաց Լըկրի, ի՞նչ կայ....։

— Ի՞նչ պիտի ըլլայ, բան չկայ. կարծեմ քուկին և ոչ փոյթդ է։ Ամէն իրիկուն կէս գիշերուընէ սկսեալ ինչուան առաւօտ՝ վերը ցորեննոցէն պոռալու կանչելու ձայ-

ներ կը լսուին, կարծես թէ բազմութիւն մարդկան կը ծեծկուին հոն, գետնին վրայ ծանր բաներ կը գլորտըկեն։

— Իրա՞ւ կ'ըսես, ցորենոցը մարդ կը բնակի՞. վրայ բերաւ Լըկրի կեղծ ծիծաղով մը, որպէս զի սրտին վախը ծածկէ. ո՞վ կրնայ ըլլալ, Գէսսի։

Գէսսի սև ու թափանցող աչուըներն այնպէս մէյմը Լըկրիին երեսը դարձուց, որ կարծես թէ Լըկրիին արիւնն երակներուն մէջ պաղեցաւ։

— Հրամեր ես, Սիմոն, ըսաւ Գէսսի, ո՛վ են։ Կ'ուզէի որ դու ինծի ըսէիր. կարծեմ դու ալ չես գիտեր։

Լըկրի հայհոյելով խարազանը վերցուց որ զարնէ, բայց Գէսսի շուտ մը մէկդի քաշուելով՝ դէպ ի դուռը փախաւ, և Լըկրիին դառնալով ըսաւ.

— Թէ որ կ'ուզես՝ այս խուցը պտտէ, ան ատեն ինչ ըլլալը կ'իմանաս։ Լաւ կ'ըլլայ որ մէյ մը դու ալ փորձես։ Եւ դուրս ելլելով դուռը գոցեց ու բանալիքով ալ կղպեց։

Լըկրի սկսաւ պոռալ, կանչել, հայհոյել և սպառնալ թէ դուռը կը կոտրէ. բայց քիչ մը միտքը վրան գալով՝ լաւագոյն դատեց

բան մը չընել, և խռոված՝ քովի խուցն անցաւ։ Գիշերի տեսաւ որ փորձն յաջողեցաւ. ուստի անկէ ետև զարմանալի կերպով սկսաւ մտածածն առաջ տանիլ, և Լըկրիին վրայ ազդած տպաւորութիւններն աւելի սաստկացընել։

Մտածեց որ ցորեննոցին ծակերէն մէկուն մէջէն կոտրած շիշի մը բերան խոթէ, և այնպէս անզաւորեց՝ որ պզտի քամին մ'ալ տխուր և անսովոր ձայներ կը հանէր, իսկ երբոր քամին քիչ մը սաստիկ ըլլար՝ սարսափելի աղաղակներ կը հանէր, այնպէս որ նախապաշարեալ ու աւելորդապաշտ ականջներու յուսահատութեան և երկիւղի աղաղակներ կրնային կարծուիլ։ Այն ահաւոր աղաղակներուն երբեմն գերիներուն ականջին ալ կը հանէին, որով ցորեննոցին մէջի ագիներուն հին առասպելներն նորոգուեցան։ Բոլոր տունին աւելորդապաշտական ահ ու երկիւղն առաւ, և թէպէտ մէկն ալ չէր համարձակիր Լըկրիին դիմաց այս բանիս վրայ խօսք բանալ, բայց իրեն վրայ ալ վախը պատեր էր։

Ամբարիշտ մարդը կարգէ դուրս ալ աւելորդապաշտ կ'ըլլայ։ Քրիստոնեան հաւատովք զինեալ՝ կը հաւատայ թէ Անիկայ

որ բոլորովին կարողութիւն է և իմաստու-
թիւն է՝ ամէն անեղ է, և իր ներկայութեամբ
կը կարգաւորէ և կը լուսաւորէ բոլոր արե-
գերքը. բայց անզգամն՝ որ իր սրտին մէջէն
ըսաւ թէ Աստուած չկայ, իրեն համար հան-
դերձեալ աշխարհքին ուրիշ բան չէ՝ բայց
եթէ ըստ Սաղմոսերգուին՝ խաւար և ըս-
տուերք մահու. այնպիսւոյն համար թէ՝ այս
կեանքս և թէ՝ մահը զարհուրելի արհաւիր-
ներով և անորոշ և անըմբռնելի ցնորքներով
լեցուն են։

Երկրին թմբրած ու մարած բարոյական
սկզբունքները՝ Թուլմաշին հետ ունեցած
յարաբերութիւններով՝ կամաց կամաց սկսեր
էին արթննալ. բայց այս արթնութիւնը
չկրցաւ չարութեան մէջ հաստատուած կամ-
քին յաղթել. և ասով հանդերձ ամէն ան-
գամ որ հոգեոր խօսք կամ երգ կամ ա-
ղօթք մը լսելու ըլլար՝ սոսկում մը և հոգւոյ
խռովութիւն մը կը զգար. և օր աւուր ա-
ւելորդապաշտական մտքին ալ վրան կը
տիրէր։

Նոյնպէս Գէտոյին ալ Երկրի վրայ ունե-
ցած ազդեցութիւնը կարգէ դուրս բան մ՝էր։
Երկրի իրեն տէրն, իր բռնաւորն և պահապանն
էր. բոլորովին անոր ձեռքն էր, և ոչ ալ

յոյս ունէր անգէ մը պաշտպանութիւն և օգնութիւն գտնելու. բայց այս ալ յայտնի է՝ որ ի՛նչ և իցէ անասնաբարոյ մարդ ալ ըլլայ՝ արիասիրտ կնկան մը ազդեցութեան տակ՝ անկարելի է որ բոլորովին ազատ ըլլայ: Երբոր Լըկրի զանիկայ գնեց, ինչպէս ինքն ալ պատմեց, Գէսսի փափկակեաց կին մ՚էր. բայց իր տիրոջ անասնաբարոյ ախտերուն տակ բոլորովին ջախջախուեր էր. եւքը ժամանակը, յուսահատութիւնը, նըւաստ կեանքն՝ իրեն կանացի սիրտն ալ քարացուցեր էին. որոնցմով գիտցաւ տեսակ մը ազդեցութիւն ունենալ իր տիրոջ վրայ, որ երբեմն վրան կը բռնանար, երբեմն ալ անկէ կը վախէր:

Գէսսիին այս ազդեցութիւնը սարսափելի զօրութիւն մը ստացաւ, երբոր սկսաւ վրան կէս կատաղութեան պէս բան մ՚երևալ, և բոլոր ըսած խօսքերն ամենևին մէկմէկու չէին յարմարիր:

Վերը պատմածներնէս երկու երեք օր ետև, Լըկրի իրիկուն մը այն հին մեծ խուցին մէջ կրակին դիմացն անցեր նստեր էր, և վառած փայտերուն անհանդարտ բոցը նուաղ լոյս մը ձգեր էր բոլոր խուցին մէջ: Հողմախառն ու մրրկալից իրիկուն մ՚էր.

որ հին ու կէս փլփլկած տուներուն մէջ տեսակ տեսակ աղաղակներ ու ձայներ կը հանէ։ Պատուհանները կը ճռնչէին, փեղկերը կը զարնուէին, քամին կը սուլէր, կ՚ոռնար, ծխնելուզէն վար կը շնչէր ու բոլոր խուցը ծուխով ու մուխով կը լեցնէր, կարծես թէ ծխնելուզէն վար գունդ մը ոգիներ դուրս կը յարձակէին։ Լըկրի ժամերով հաշիւներն ըրաւ ու լրագիրները կարդաց. իսկ Գէսսի կրակարանին մէկ անկիւնը նստած՝ տխուր տխուր կրակին վրայ կը նայէր։ Լըկրի լրագիրը վար դրաւ ու գրասեղանին վրայէն հին գիրք մը ձեռքն առաւ, զոր առջի իրիկունէ տեսեր էր որ Գէսսի կը կարդար, և սկսաւ թղթատել։ Այս գիրքս երևելի աւազակութիւններու և ուրուականներու պատմութեանց ու գերբնական տեսիլքներու հաւաքմունք մ՚էր, որ հաստ քաշուած ահաւոր պատկերներով զարդարուած ըլլալով՝ կարդացողներուն վրայ կարգէ դուրս տպաւորութիւն կ՚ընէ։

Լըկրի արհամարհանօք ու անտարբեր կերպով մը կը թղթատէր ու կը կարդար, այնչափ որ մէյմ՚ալ յանկարծ հայհոյելով գիրքը գետին զարկաւ։

— Ինչ, Գէսսի, դու ալ ուրուականնե-

բու կը հառաչես, հարցուց Լըկրէ, ունելի-քով կրակարանին մէջի վառած փայտերը կարգի դնելով. ես այսչափ միամիտ չէի կարծեր զքեզ որ այսպիսի աղաղակներէ վախնաս:

— Քեզի ի՞նչ. ես կը հառաչեմ, չեմ հառաչեր, պատասխանեց Գէսսի ցրտութեամբ:

— Ծոյլու վրայ երազակութեան ըրած ա-ռեններ ալ, կրկնեց Լըկրէ, զիս վախցընելու կը ջանայիր. բայց ես այնպիսի զուր խօ-քերուն և ոչ ականջ կը կախէի:

Գէսսի մութին մէջ նստած՝ կրակոտ ա-չուըները Լըկրէին երեսը սեւեր էր, որոնց կարգէ պտուրս փայլատութիւնն անոր վրայ միշտ անախորժ տպաւորութիւն մը կ'ընէր:

— Մէկալ օրուան խուցէդ վրայ լսած աղաղակներուդ պատճառը, կրկնեց Լըկրէ, ուրիշ բան չէ՝ բայց եթէ մեռներն ու քա-մին է: Չե՞ս գիտեր թէ մեռներն ինչ դիւա-կան աղմուկներ կը հանեն. քանի՜ քանի անգամ լսեր եմ որ նաւուն տակը դժոխա-յին աղաղակներ կը հանէին. Իսկ քամին, օ՜, Տէրը փրկէ, ամէն տեսակ աղաղակ կըր-նայ հանել:

Գէսսի գիտէր թէ իր նայուածքին ինչ ան-ախորժ տպաւորութիւն կը պատճառէր Լը-

կրիին վրայ, անոր համար պատասխան չտուաւ, ու անդադար աչուըները տնկած երեսը կը նայէր. և յիրաւի, այս նայուածքին մէջ կարգէ դուրս բան մը կար։

— Նայինք, պատասխան տուր, ըսաւ Լըկըրի. դու ալ իմ կարծիքէս չե՞ս։

— Մէկները՝ պատասխան տուաւ վերջապէս Գէսսի, միթէ կրնա՞ն սանդուղներէն վար իջնել, անցնիլ, բանալիքով կղպուած դուռ մը բանալ, որուն ետևը աթոռ մ'ալ դրուած ըլլայ, և ետքէն կամաց կամաց քալելով շիտակ անկողնոյդ քով գան ու ձեռքերնին այսպէս վրադ դնեն։

Գէսսի բոլոր այս խօսելու ատեն՝ կրակոտ աչուըներովը անդադար Լըկըրիին երեսը կը նայէր. ան ալ աչուըները Գէսսիին վրայ տնկեր էր, բայց կարծես թէ չար ոգիէ բռնուած՝ անշարժ մնացեր էր. և երբոր Գէսսի ըսելն ու ընելը մէկ ըրաւ, ու քարի պէս պաղ ձեռքը անոր ձեռքին վրայ դրաւ, Լըկըրի ետեւ ետեւ քաշուեցաւ, ու սկսաւ հայհոյելով պոռալ.

— Կնի՛կ, ի՞նչ է աս ըսածդ. մարդ չի կրնար այդ բանդ ըրած ըլլալ։

— Հարկաւ, չէ. ես քեզի ըսի՞ թէ մարդ ըրած կրնայ ըլլալ այդ բանդ, պատաս-

խանեց Գէսսի հեգնական կերպով և ցուրտ ծիծաղով մը։

— Նայինք, իրաւցընէ տեսա՞ր. ըսէ տեսնեմ, Գէսսի, մի՛ ծածկեր։

— Այն խուցին մէջ չե՞ս կրնար պառկիլ. ան ատեն ի՛նչ ըլլալը կ'իմանաս։

— Ի՞նչ... այդ աղաղակները ցորեննոցէն կը լսուէին հէ՞...։

— Ո՞ր աղաղակները, ի՞նչ բան։

— Ի՛նչ որ քիչ մ'առաջ կ'ըսէիր։

— Ես քեզի բան չըսի, կրկնեց ցրտութեամբ Գէսսի։

Լըկրի ելաւ՝ խուցին մէջ վեր վար քալել սկսաւ. սաստիկ խռովեր էր։

— Պէտք է որ այս բանս քննեմ իմանամ, կ'ըսէր ինքիրեն. այս գիշեր ամէն բան կը ստուգեմ. ատրճանակներս ալ հետս կ'առնում։

— Շատ լաւ կ'ընես, ըսաւ Գէսսի, գնա ան խուցը պառկէ. ես ալ շատ հետաքրքիր եմ իմանալու. նայէ որ ատրճանակներդ ալ պարպելու չմոռնաս։

Լըկրի ոտուըները գետին կը զարնէր ու կատաղաբար կը հայհոյէր։

— Մի՛ հայհոյեր, ըսաւ Գէսսի, չես գիտեր թէ ձայնդ ով կը լսէ։ Նայէ, նայէ՜... աս կը տեսնե՞ս... ասիկայ ի՞նչ բան է։

— Ո՞ր բանը, հարցուց Լըկրի սարսափած կերպով։

Մէյմ'ալ խուցին մէկ անկիւնէն հոլանտայի հին ժամացոյց մը սկսաւ դանդաղ դանդաղ կէս գիշերուան տասուերկուքը զարնել։

Լըկրի լուռ ու անշարժ մնաց, վրան վախ մը տիրեր էր. իսկ Գէսսի անդադար իր կրակոտ աչուըներն անոր երեսը տնկեր էր, և մէկիկ մէկիկ ժամերը կը համրէր։

— Ահաւասիկ կէս գիշեր է. հիմայ տեսնենք թէ սո՞ւտ է թէ իրաւ է ըսածս։

Ու բանալով դուռը՝ որ սանդուխին գաւիթը կը հանէր, սեմին վրայ կանգ առաւ ու սկսաւ մտիկ ընել։

— Կը լսե՞ս, կրկնեց Գէսսի՝ մատովը ցուցընելով։

— Քամին է, ըսաւ Լըկրի. չե՞ս լսեր ի՛նչ այլանդակ ձայներով կը փչէ։

— Սիմոն, հոս եկուր, ըսաւ Գէսսի. և ձեռքէն բռնած՝ սանդուղին քով տարաւ։ Այս ձայնին ի՛նչ կ'ըսես. կը լսե՞ս...։

Գաւթին մէջ նոյն միջոցին ահռելի աղաղակ մը փրթաւ, որ ցորեննոցէն կու գար։ Լըկրի վախէն սարսափեցաւ, և ծնկուըներն սկսան դողալ։

— Հիմայ է ատրճանակներդ պատրաս-

տեսլու ժամանակն, ըսաւ Գէսսի հեգնօրէն. — բայց Լըկրիի արիւնը երակներուն մէջ պաղեցաւ. — քիչ մ'առաջ այս բանս քննել իմանալ կ'ուզէիր, միտքդ կու գա՞յ... վեր ելիր նայիմ. հիմայ է ատենը. ոգիներն ոտք ելեր են...։

— Ես չեմ երթար, պոռաց Լըկրի հայհոյելով։

— Ինչո՞ւ. չե՞ս գիտեր թէ աշխարհիս վրայ ամենեւին ուրուական չկայ։ — Եւ բարձրաձայն ծիծաղով մը սանդուղէն վեր վազելով՝ — Եկուր, մի՛ վախեր, — պոռաց ետև դառնալով։

— Հիմայ կը հաւատամ թէ փորդ սատանայ կայ, ըսաւ Լըկրի. շո՛ւտ, դիւահար, վար իջիր։ Դարձիր, Գէսսի, հոն մի՛ երթար։

Բայց Գէսսի բարձրաձայն ծիծաղ մը վերուց ու աներևոյթ եղաւ։ Մէկէն լսեց Լըկրի ցորենոցին դռներուն բացուիլը. սարսափելի քամի մը վար փչեց և ձեռքի ճրագը մարեց, և նոյն միջոցին ահռելի ու զարհուրելի ձայներ լսուեցան։

Լըկրի լեղապատառ ներս խուցը փախաւ։ Քանի մը վայրկենէն Գէսսի ալ վրայ հասաւ, գոյնը նետած, հանդարտ ու ցուրտ,

կարծես թէ վրէժխնդիր ոգիի մը կը նմանէր, աչուըները կարգէ դուրս կը փայլէին և երեսը նայողին վրայ վախ մը կը ձգէին։

— Յուսամ թէ հիմայ գոհ ես, ըսաւ Գէսսի՝ պաղ պաղ երեսը նայելով։

— Կրողը տանի զքեզ, Գէսսի, պոռաց Լըկրի։

— Ինչո՞ւ. ի՞նչ ըրի. ելայ դռները գոցեցի։ Բայց, Սիմո՛ն, ի՞նչ բան կայ ուրեմն այդ ցորեննոցին մէջ, հարցուց Գէսսի։

— Քու գիտնալու բանդ չէ, ըսաւ Լըկրի։

— Իրա՛ւ...։ Ի՛նչ ալ ըլլայ՝ ես աւելի գոհ եմ որ ցորեննոցին տակը չեմ պառկիր։

Այն իրիկուան ելլելէք փոթորիկն առաջուց գուշակելով Գէսսի, ցորեկուընէ ցորեննոցին լուսամուտը բաց թողուցեր էր. ուստի երբոր սանդուղին դռները բացաւ՝ քամին ուժով մը սանդուղներէն վար վազեց ու Լըկրիին ձեռքի ճրագը մարեց։ Ասկէ կրնայ ընթերցողը գուշակել թէ Գէսսի ի՛նչ կերպ մտածեր էր Լըկրիին հետ խաղալու։

Ասոր վրայ Լըկրի աւելի կ'ընտրէր ինքզինքն առիւծին բերանը նետել՝ քան թէ այն ահաւոր ցորեննոցը մէյմ'ալ ոտք կոխել։ Իսկ Գէսսի գիշերուան լռութիւնն իրեն օգնական առնելով, երբոր տանը մէջ ամէն-

յոյս ունէր տեղէ մը պաշտպանութիւն և օգնութիւն գտնելու. բայց այս ալ յայտնի է՝ որ ի՛նչ և իցէ անասնաբարոյ մարդ ալ ըլլայ՝ արիասիրտ կնկան մը ազդեցութեան տակ՝ անկարելի է որ բոլորովին ազատ ըլլայ. Երբոր Լըկրի զանիկայ գնեց, ինչպէս ինքն ալ պատմեց, Գէսսի փափկակեաց կին մ'էր. բայց իր տիրոջ անասնաբարոյ ախտերուն տակ բոլորովին ջախջախուեր էր. ետքը ժամանակը, յուսահատութիւնը, նըւաստ կեանքն՝ իրեն կանացի սիրտն ալ քարացուցեր էին. որոնցմով գիտցաւ տեսակ մը ազդեցութիւն ունենալ իր տիրոջ վրայ, որ երբեմն վրան կը բռնանար, երբեմն ալ անկէ կը վախէր։

Գէսսիին այս ազդեցութիւնը սարսափելի զօրութիւն մը ստացաւ, երբոր սկսաւ վրան կէս կատաղութեան պէս բան մ'երևալ, և բոլոր ըսած խօսքերն ամենևին մէկմէկու չէին յարմարիր։

Վերը պատմածներնէս երկու երեք օր ետև, Լըկրի իրիկուն մը այն հին մեծ խուցին մէջ կրակին դիմացն անցեր նստեր էր, և վառած փայտերուն անհանդարտ բոցը նուաղ լոյս մը ձգեր էր բոլոր խուցին մէջ։ Հողմախառն ու մրրկալից իրիկուն մ'էր.

որ հին ու կէս փլփլկած տուներուն մէջ տեսակ տեսակ աղաղակներ ու ձայներ կը հանէ։ Պատուհանները կը ճռնչէին, փեղկերը կը զարնուէին, քամին կը սուլէր, կ'ոռնար, ծխնելուզէն վար կը շնչէր ու բոլոր խուցը ծուխով ու մուխով կը լեցնէր, կարծես թէ ծխնելուզէն վար գունդ մը ոգիներ դուրս կը յարձակէին։ Լրկրի ժամերով հաշիւներն ըրաւ ու լրագիրները կարդաց. իսկ Գէսսի կրակարանին մէկ անկիւնը նստած՝ տխուր տխուր կրակին վրայ կը նայէր։ Լրկրի լրագիրը վար դրաւ ու գրասեղանին վրայէն հին գիրք մը ձեռքն առաւ, զոր առջի իրիկուընէ տեսեր էր որ Գէսսի կը կարդար, և սկսաւ թղթատել։ Այս գիրքս երևելի աւազակութիւններու և ուրուականներու պատմութեանց ու գերբնական տեսիլքներու հաւաքմունք մ'էր, որ հաստ քաշուած ահաւոր պատկերներով զարդարուած ըլլալով՝ կարդացողներուն վրայ կարգէ դուրս տպաւորութիւն կ'ընէ։

Լրկրի արհամարհանօք ու անտարբեր կերպով մը կը թղթատէր ու կը կարդար, այնչափ որ մէյմ'ալ յանկարծ հայհոյելով գիրքը գետին զարկաւ։

— Ի՞նչ, Գէսսի, դու ալ ուրուականնե-

րու կը հաւատա՞ս, հարցուց Լըկրի, ունելի-քով կրակարանին մէջէն վառած փայտերը կարգի դնելով. ես այնչափ միամիտ չէի կարծեր զքեզ որ այսպիսի աղանդականներէ վախնաս։

— Բնա՛ւ ի՞նչ. ես կը հաւատամ, չեմ հաւատար, պատասխանեց Գէսսի ցրտութեամբ։

— Ծովու վրայ երկրպագութիւն ըրած ատեններս ալ, կրկնեց Լըկրի, զիս վախցընելու կը ջանային. բայց ես այնպիսի զուր խօսքերուն և ոչ ականջ կը կախէի։

Գէսսի մութին մէջ նստած՝ կրակոտ աչուըները Լըկրիին երեսը անկեր էր, որոնց կարծէք պէտք փայլանութիւնն անոր վրայ մեծ անախորժ տպաւորութիւն մը կ՚ընէր։

— Մէկալ օրուան խուցին վրայ լսած աղանդականներուդ պատճառը, կրկնեց Լըկրի, ուրիշ բան չէ՝ բայց եթէ մեկներն ու քամին է։ Չե՞ս գիտեր թէ մեկներն ինչ դիւական աղմուկներ կը հանեն. քանի՛ քանի անգամ լսեր եմ որ նաւուն տակը դժոխային աղաղակներ կը հանէին. իսկ քամին, ո՛, Տէրը փրկէ, ամէն տեսակ աղաղակ կըր-նայ հանել։

Գէսսի գիտէր թէ իր նայուածքն ինչ անախորժ տպաւորութիւն կը պատճառէր Լը-

կրիին վրայ, անոր համար պատասխան չտուաւ, ու անդադար աչուըները տնկած երեսը կը նայէր. և յիրաւի, այս նայուածքիս մէջ կարգէ դուրս բան մը կար։

— Նայինք, պատասխան տուր, ըսաւ Լըկրի. դու ալ իմ կարծիքէս չե՞ս։

— Մկները՝ պատասխան տուաւ վերջապէս Գէսսի, միթէ կրնա՞ն սանդուղներէն վար իջնել, անցնիլ, բանալիքով կղպուած դուռ մը բանալ, որուն ետևը աթոռ մ'ալ դրուած ըլլայ, և ետքէն կամաց կամաց քալելով շիտակ անկողնոյդ քով գան ու ձեռքերնին այսպէս վրադ դնեն։

Գէսսի բոլոր այս խօսելու ատեն՝ կրակոտ աչուըներովը անդադար Լըկրիին երեսը կը նայէր. ան ալ աչուըները Գէսսիին վրայ տնկեր էր, բայց կարծես թէ չար ոգիէ բռնուած՝ անշարժ մնացեր էր. և երբոր Գէսսի ըսելն ու ընելը մէկ ըրաւ, ու քարի պէս պաղ ձեռքը անոր ձեռքին վրայ դրաւ, Լըկրի ետեւ ետեւ քաշուեցաւ, ու սկսաւ հայհոյելով պոռալ.

— Կնի՜կ, ի՞նչ է աս ըսածդ. մարդ չի կրնար այդ բանդ ըրած ըլլալ։

— Հարկաւ, չէ. ես քեզի ըսի՞ թէ մարդ ըրած կրնայ ըլլալ այդ բանդ, պատաս-

խանեց Գէսսի հեգնական կերպով և ցուրտ ծիծաղով մը։

— Նայէ՛նք, իրաւցընէ տեսա՞ր. ըսէ տեսնեմ, Գէսսի, մի՛ ծածկեր։

— Այն խուցին մէջ չե՞ս կրնար պառկիլ. ան ատեն ի՛նչ ըլլալը կ'իմանաս։

— Ի՞նչ… այդ աղաղակները ցորեննոցէն կը լսուէին հէ՞…։

— Ո՞ր աղաղակները, ի՞նչ բան։

— Ի՛նչ որ քիչ մ'առաջ կ'ըսէիր։

— Ես քեզի բան չըսի, կրկնեց ցրտութեամբ Գէսսի։

Լրիկի ելաւ՝ խուցին մէջ վեր վար քալել սկսաւ. սաստիկ խռովեր էր։

— Պէտք է որ այս բանս քննեմ իմանամ, կ'ըսէր ինքիրեն. այս գիշեր ամէն բան կը ստուգեմ. ատրճանակներս ալ հետս կ'առնում։

— Շատ լաւ կ'ընես, ըսաւ Գէսսի, գնա ան խուցը պառկէ. ես ալ շատ հետաքրքիր եմ իմանալու. նայէ որ ատրճանակներդ ալ պարպելու չմոռնաս։

Լրիկի ոտուըները գետին կը զարնէր ու կատաղաբար կը հայհոյէր։

— Մի՛ հայհոյեր, ըսաւ Գէսսի, չես գիտեր թէ ձայնդ ո՛վ կը լսէ։ Նայէ, նայէ՛… սա կը տեսնե՞ս… անիկայ ի՞նչ բան է։

— Ո՞ր բանը, հարցուց Լըկրի սարսա-
փած կերպով։

Մէյմ՛ալ խուցին մէկ անկիւնէն հօլան-
տայի հին ժամացոյց մը սկսաւ զանգաղ զան-
գաղ կէս գիշերուան տասներկուքը զարնել։

Լըկրի լուռ ու անշարժ մնաց, վրան վախ
մը տիրեր էր. իսկ Գէսսի անդադար իր
կրակոտ աչուըներն անոր երեսը տնկեր էր,
և մէկիկ մէկիկ ժամերը կը համրէր։

— Ահաւասիկ կէս գիշեր է. հիմայ տես-
նենք թէ սո՞ւտ է թէ իրաւ է ըսածս։

Ու բանալով դուռը՝ որ սանդուխին գա-
ւիթը կը հանէր, սեմին վրայ կանգ առաւ
ու սկսաւ մտիկ ընել։

— Կը լսե՞ս, կրկնեց Գէսսի՝ մատովը ցու-
ցընելով։

— Քամին է, ըսաւ Լըկրի. չե՞ս լսեր
ի՜նչ այլանդակ ձայներով կը փչէ։

— Սխմոն, հոս եկուր, ըսաւ Գէսսի. և
ձեռքէն բռնած՝ սանդուղին քով տարաւ։
Այս ձայնին ի՜նչ կ'ըսես. կը լսե՞ս...։

Գաւիթին մէջ նոյն միջոցին ահռելի աղա-
ղակ մը փրթաւ, որ ցորեննոցէն կու գար։
Լըկրի վախէն սարսափեցաւ, և ծնկուըները
սկսան դողալ։

— Հիմայ է ատրճանակներդ պատրաս-

տելու ժամանակն, ըսաւ Գէսսի հեզնօրէն. — բայց Լըկրիի արիւնը երակներուն մէջ պաղեցաւ. — քիչ մ՚առաջ այս բանս քննել իմանալ կ՚ուզէիր, միտքդ կու գա՞յ... վեր ելիր նայիմ. հիմայ է ատենը. ոգիներն ոտք ելեր են...։

— Ես չեմ երթար, պոռաց Լըկրի հայհոյելով։

— Ինչո՞ւ. չե՞ս գիտեր թէ աշխարհիս վրայ ամենեւին ուրուական չկայ։ — Եւ բարձրաձայն ծիծաղով մը սանդուղէն վեր վազելով — Եկուր, մի՛ վախեր, — պոռաց ետև դառնալով։

— Հիմայ կը հաւատամ թէ փորդ սատանայ կայ, ըսաւ Լըկրի. շո՛ւտ, գլխահար, վար իջիր։ Դարձիր, Գէսսի, հոն մի՛ երթար։

Բայց Գէսսի բարձրաձայն ծիծաղ մը վերուց ու աներևոյթ եղաւ։ Մէկէն լսեց Լըկրի ցորեննոցին դռներուն բացուիլը. սարսափելի քամի մը վար փչեց և ձեռքի ճրագը մարեց, և նոյն միջոցին ահռելի ու զարհուրելի ձայներ լսուեցան։

Լըկրի լեղապատառ ներս խուցը փախաւ։ Քանի մը վայրկենէն Գէսսի ալ վրայ հասաւ, գոյնը նետած, հանդարտ ու ցուրտ,

կարծես թէ վրէժխնդիր ոգիի մը կը նմանէր, աչուըները կարգէ դուրս կը փայլէին և երեսը նայողին վրայ վախ մը կը ձգէին։

— Յուսամ թէ հիմայ գոհ ես, ըսաւ Գէսսի՝ պաղ պաղ երեսը նայելով։

— Կրողը տանի զքեզ, Գէսսի, պոռաց Լըկրի։

— Ինչո՞ւ. ի՞նչ ըրի. ելայ դռները գոցեցի։ Բայց, Սիմո՛ն, ի՞նչ բան կայ ուրեմն այդ ցորեննոցին մէջ, հարցուց Գէսսի։

— Քու գիտնալու բանդ չէ, ըսաւ Լըկրի։

— Իրա՜ւ...։ Ի՛նչ ալ ըլլայ՝ ես աւելի գոհ եմ որ ցորեննոցին տակը չեմ պառկիր։

Այն իրիկուան ելլելիք փոթորիկն առաջուց գուշակելով Գէսսի, ցորեկուընէ ցորեննոցին լուսամուտը բաց թողուցեր էր. ուստի երբոր սանդուղին դռները բացաւ՝ քամին ուժով մը սանդուղներէն վար վազեց ու Լըկրիին ձեռքի ճրագը մարեց։ Ասկէ կրնայ ընթերցողը գուշակել թէ Գէսսի ի՛նչ կերպ մտածեր էր Լըկրիին հետ խաղալու։

Ասոր վրայ Լըկրի աւելի կ՚ընտրէր ինքզինքն առիւծին բերանը նետել՝ քան թէ այն ահաւոր ցորեննոցը մէյմ՚ալ ոտք կոխել։ Իսկ Գէսսի գիշերուան լռութիւնն իրեն օգնական առնելով, երբոր տանը մէջ ամէն-

քը խոր քուն կը մտնէին՝ ինքը քիչ քիչ պաշար կը լեցրնէր այս ցորեննոցին մէջ, այնչափ որ խել մը ժամանակ բաւէ. նոյնպէս ալ իրեն ու Եմմէլինային հագուստեղէններն ալ կտոր կտոր հոս կը կրէր. և երբոր այս ամէն պատրաստութիւններս լմնցան, յարմար առթի մը կը սպասէր միտքը դրածները կատարելու։

Օր մը Լըկրիին զուարթ վայրկեանը գտնելով՝ շողոմական կերպերով Լըկրին համոզեց, ու հետը մէկտեղ մօտակայ քաղաքը գնաց, որ ճիշդ Կարմիր գետին վրայ կ'իյնայ։ Բոլոր յիշողութիւնը թափեց ճամբուն ամէն մէկ պզտի դարձուածքն ալ միտքը պահելու, և մտքովը սկսաւ չափել ու չափչըփել թէ որչափ ատեն պէտք է այն ճամբան կտրելու։

Հիմայ որ ամէն բան կազմ ու պատրաստ է, տեսնենք թէ Գէսսի ինչպէս սկսաւ իր թատերախաղը։

Երեկոյեան դէմ էր, Լըկրի մօտիկ կալուածներէն մէկուն այցելութեան գնացեր էր։ Քանի մ'օրուընէ վեր էր որ Գէսսի իր սովորականէն դուրս սիրով ու անուշութեամբ կը վարուէր Լըկրիին հետ, ուստի առերեւութաբար իրարու հետ շատ աղէկ կ'երթային։

Այս վայրկենին Եմմէլինային խուցն էր Գէս-
սի, ուր երկու պզտի կապոցներ պատրաս-
տելու հետ էին։

— Բաւական է. չափաւոր խոշոր են այս
կապոցներն, ըսաւ Գէսսի Եմմէլինային. ու-
րեմն շուտ գլխարկդ առ երթանք. հիմայ է
յարմար ժամանակը։

— Բայց դեռ զմեզ կրնան տեսնել, ը-
սաւ Եմմէլինա։

— Իմ միտքս ալ ան է՝ որ տեսնեն,
ըսաւ Գէսսի անտարբերաբար. չե՞ս գիտեր
որ տեսնեն չտեսնեն՝ ետեւնէս պիտի իյնան։
Նայէ թէ ի՛նչ պիտի ընենք. հիմայ սա ե-
տեւի դռնէն դուրս պիտի ելլենք ու դէպ ի
գերեաց բնակութեան կողմը կ'երթանք։ Սամ-
պսն ու Փուխմպսն հարկաւ զմեզ պիտի տես-
նեն, ու ետեւնէս պիտի վազեն. մենք ալ
ճահիճներուն մէջ կը փախչինք. ան ատեն
անոնք ինչուան որ բոլոր գերիները ոտք
չհանեն ու շները չարձակեն՝ ետեւնէս չեն
իյնար։ Բայց անոնք ինչուան պատրաստուին,
ինչուան ետեւնէս սկսին վազել՝ մենք սանը
ետեւի առուակին մէջէն քալելով՝ մինչեւ
ետեւի դրան առջեւը կ'ելլենք. ասով շները
կը խաբուին, վասն զի ջրին մէջէն հետքեր-
նիս չեն կրնար գտնել։ Եւ երբոր բոլոր

*տունը տակն ու վրայ եղած՝ ամէնքն ալ մեր ետեւէն պիտի վազեն՝ մենք տան ետեւի դռնէն ներս կը մտնենք և ցորենոցը կ'ելլենք, ուր այն խոշոր սնտուկներէն մէկուն մէջ մեզի համար աղէկ անկողին մը պատրաստեր եմ։ Հարկ պիտի ըլլայ որ հոն խել մը ժամանակ մնանք, որովհետև Լըկրի զմեզ գտնելու համար՝ երկինք ու երկիր իրարու պիտի անցընէ։ Ուրիշ կալուածատէրներէն քանի մը պահապաններ իրեն օգնութեան պիտի կանչէ, և զմեզ որսալու պիտի ելլէ, և բոլոր ճահիճները տակն ու վրայ պիտի ընէ։ Լըկրի կը պարծի թէ ձեռքէն մարդ մ'ալ չէ կրցած փախչիլ. ուստի կրցածին չափ զմեզ որսալու թող ելլէ։*

*— Ո՛հ, Գէսսի. այս ի՛նչպէս ամէն բան կարգի դրեր ես, ըսաւ Եմմէլինա. այսպիսի բան միայն դու կրնաս ընել։*

*Բայց Գէսսիին վրայ ոչ ուրախութիւն կար և ոչ ալ պարծենկոտութեան նշան մը. այլ յուսահատ հաստատամտութիւն մը կը տեսնուէր։*

*— Հա՛, երթանք, ըսաւ Եմմէլինային ձեռքէն բռնելով։*

*Այս երկու փախստականները լռիկ մնջիկ տունէն դուրս ելան, և շուտ մը դէպ ի*

գերեաց ընակութեան կողմն սկսան երթալ։ Գիշերն ալ կոխելու վրայ էր։ Լուսնին եղջերիկն որ արեւմտեան հորիզոնին վրայէն բարձրացեր էր, իր արծաթափայլ ճառագայթներով՝ գիշերուան մթութիւնը կտրեր էր։ Ինչպէս որ Գէսսի գուշակեր էր՝ երբոր ճահիճներուն մօտեցեր էին, ետեւնէն ձայն մը լսեցին որ՝ Կեցի՛ք, կեցի՛ք կը պոռար։ Բայց Սամպսոն չէր պոռացողը, այլ նոյն ինք Լըկրին էր, որ կատաղաբար հայհոյելով ետեւնէն ինկեր էր։ Եմմէլինա այս ձայնը լսածին պէս սկսաւ դողալ։

— Ո՜հ, Գէսսի, հիմայ կը մարիմ, ըսաւ՝ անոր ձեռքէն բռնելով։

— Թէ որ մարելու ըլլաս՝ կը սպաննեմ զքեզ, ըսաւ Գէսսի՝ ծոցէն երկսայրի պզտի դանակ մը հանելով։

Այս սպառնալիքս իր վախճանին հասաւ. Եմմէլինա փոխանակ մարելու՝ Գէսսիին հետ մէկտեղ ճահիճներուն մէջ դժուարագնալի ու մութ լաբիւրինթոսի պէս տեղ մը մտան, ուր Լըկրի միայնակ չէր կրնար ետեւնէն հասնիլ։

— Շատ աղէկ, պոռաց Լըկրի գազանաբար, Թշուառականներն իրենք իրենցմէ խորխորատն ինկան. ա՛լ չեն կրնար փախ-

չէլ. տեսնե՛նք, իրենց շատ պիտի նստի այս բանս։ Ձեզ տեսնեմ, ծօ՛ տղաք, Սամպոյ, Քուխմպոյ, շուտ շարժեցէք, կանչեց Լըկըր՝ դէպ ի գերեաց բնակութեան կողմն երթալով. — այս միջոցիս ալ գերիներն այր և կին աշխատութենէ կը դառնային. — Տահիճներուն մէջ երկու փախստական կան, ով որ բռնէ զանոնք՝ հինգ տոլլար վարձք ունի։ Շներն արձակեցէք, Վադըր, Կատաղին և մէկալ շներն արձակեցէք։

Այս հրամանիս վրայ ամէնքն իրար անցան։ Գերիներէն շատերն առաջ նետուեցան, ոմանք ստակի սիրոյն համար, ոմանք ալ այն ցած նուաստութեամբ՝ որ գերութեան ողբալի հետեւանքներէն մէկն է։ Ամէն դի կը վազէին. ոմանք ջահեր ձեռքերնին առած, ոմանք շներն ասդին անդին կը վազցընէին, որոնց վայրենի հաչելու ձայնն այս շփոթութեանս արժանաւոր զարդ մ՚էր։

— Տէր իմ, թէ որ չկարենանք զանոնք բռնել, վրանին հրացան պարպե՛նք, հարցուց Սամպոյ տիրոջը, որ իրեն հրացան մը կու տար։

— Թէ որ կ՚ուզէք Գէսսիին վրայ կրնաք պարպել, պատասխանեց Լըկըր, ա՛լ բաւական է, կրողին բերանն երթայ. բայց

աղջկան վրայ չըլլայ թէ կրակ ընէք։ — Հիմայ, ծօ տղաք, ձե՛զ տեսնեմ, վազեցէք. ո՛վ որ զանոնք բռնէ ինծի բերէ՝ իրեն հինգ տոլլար. և ամէնուդ ալ մէյմէկ գաւաթ օղի-պիտի տամ, հա՛։

Բոլոր գերեաց ամբոխը ջահերով, աղաղակներով, կենդանեաց ոռնալներով դէպ ի ճահիճները վազեցին. ետևնէն ալ բոլոր տան մէջի մարդիկը գնացին։ Այնպէս որ տան մէջ մարդ չկար՝ երբոր Գէսսի ու Եմմէլինա ետեւի դռնէն ներս մտան։

Նոյն միջոցին զիրենք հալածողներուն ձայնէն ու աղաղակէն օդը կը թնդար, և մեծ սրահէն անցնելու ատենին՝ Գէսսի և Եմմէլինա տեսան որ ճահիճները բոլոր մարդիկներով ու ջահերով ծածկուեր են։

— Նայէ, նայէ, ըսաւ Եմմէլինա՝ մատովը Գէսսիին ցուցընելով. որսի ելեր են։ Նայէ ջահերով ինչպէս ասդին անդին կը վազվզեն, շները կը հաչեն։ Ո՛հ, թէ որ հոն ըլլայինք՝ ինչուան հիմայ շներն զմեզ պատռտեր էին։ Բայց, հոգիս սիրես, երթանք շուտ պահուըտինք։

— Փութալու բան չկայ, պատասխանեց Գէսսի հանդարտութեամբ. հիմայ ամէնքն ալ ոտքի վրայ են։ Այս իրիկուան զուար-

ճուլթիւննիս ալ այս է. երբոր պէտք ըլլայ՝ շուտ մը կրնանք պահուըտիլ։ Հիմայ կեցիր, ըսաւ՝ Լըկրիին հագուստին գրպանէն թանալի մը հանելով, որ Լըկրի այն շփոթութեան ժամանակ հոն մոռցեր էր. մեզի ճամբու համար դրամ ալ հարկաւոր է։

Սատկին պարանը բացաւ, ու կապոց մը թղթէ դրամներ դուրս հանեց ու շուտ շուտ համրեց։

— Ո՜հ, այդ բանդ մի՛ ըներ, ըսաւ Եմմէլինա։

— Ինչո՞ւ պիտի չընեմ, ըսաւ Գէսսի. ինչ, անօթութենէ ճահիճներուն մէջ մեռնի՞լ կ'ուզես, թէ ազատ երկիրներն հասնելու համար ամէն հարկաւոր բան ունենալ։ Առանց դրամի բան չըլլար։

Եւ այս լսելու ատեն՝ Գէսսի թղթէ դրամները ծոցը կը դնէր։

— Բայց ատ ըրածդ գողութիւն է, ըսաւ Եմմէլինա քթին տակէն։

— Գողութի՜ւն, կրկնեց Գէսսի՝ արհամարհական ծիծաղով մը. անոնք որ իրենց նմաններն հոգւով և մարմնով կը գողնան, թէ որ երես ունին՝ թող գան զիս մեղադրեն։ Այս թղթերէս ամէն մէկը խեղճ ու յուսահատ արարածոց անօթութենէն և ճակտին

քրտինքէն չէ՞ գողցեր։ Ա՛հ, ո՜ւր էր թէ ինքը գար ու այս ըրած գողութեանս համար զիս մեղադրէր։ Բայց հիմայ եկուր ցորեննոցն ելլենք, հոն ժամանակնիս անցընելու համար ճրագ ալ տարեր եմ. քանի մը գիրք ալ։ Եւ ապահով եղիր որ զմեզ փնտռելու հոն մարդ չի գար։ Թէ որ մէկու մ'ալ մտքէն անցնի հոն գալու, ես ուրուական ձեւանալով՝ զինքը կը փախցընեմ։

Երբոր ցորեննոց մտան՝ Եմմէլինա խոշոր սնտուկ մը տեսաւ քովընտի պառկած, բերանը դէպ ի պատը դարձած։ Գէսսի պըզտի կանթեղ մը վառեց ու աղջկան հետ մէկտեղ՝ սնտուկին մէջ մտաւ. երկու անկողին կար մէջը, բարձ և քօղ ալ սնտուկ մը լեցուն մոմ, ուտելիք և երկայն ճամբորդութեան մը համար հարկաւոր հագուստներ, զորոնք Գէսսի պզտի պզտի դիւրատար կապոցներ ըրեր էր։

— Հիմայ նայինք, ըսաւ Գէսսի կանթեղը ճանկէ մը կախելով՝ զոր սնտուկին մէկ կողմն հաստատեր էր. առ ժամանակ մը հոս պիտի բնակինք. Ինչպէս ես, կը հաւնի՞ս։

— Բայց ապահով գիտե՞ս թէ զմեզ փընտռելու հոս չեն գար, հարցուց Եմմէլինա։

— Շատ կ'ուզէի որ Սիմոն Լըկրի մէյմը

Հոս գար, պատասխանեց Գէսսի. բայց ես ստոյգ գիտեմ որ անիկայ կրցածին չափ ասկէ հեռու կը քալէ։ Իսկ միւսներն աւելի կ'ընտրեն մեռնիլ քան թէ հոս գալ։

Եմմէլինային սիրտը քիչ մը հանգչելով՝ գլուխը բարձին վրայ դրաւ։

— Բայց սա ի՞նչ ըսել կ'ուզէիր, Գէսսի, երբոր զիս սպաննել սպառնացար, հարցուց աղջիկը։

— Կ'ուզէի մարմրիլդ անցընել, ինչպէս ալ որ յաջողեցայ։ Հիմայ աղէկ նայէ, Եմմէլինա, գլխուդ ինչ ալ որ գայ՝ պէտք չէ մարիս. մարելու ամենևին կարօտութիւն չունինք։ Թէ որ այս կերպով զքեզ չվախցընէի, թերևս ինչուան հիմայ այն թշուառականին ձեռքն ինկեր էինք։

Այս խօսքին՝ Եմմէլինային վրայ սոսկում մ'եկաւ։

Քիչ մ'ատեն երկուքն ալ լռեցին։ Գէսսի ձեռքը գաղղիերէն գիրք մ'առաւ, իսկ Եմմէլինա յոգնած պառկած կը մրափէր ու կը քնանար։ Մէյմ'ալ յանկարծ պոռալու ու կանչուըռտելու ձայներէն, ձիերու ոտնաձայնէն և շներու հաչելէն՝ վեր ցատքեց խեղճ աղջիկը։

Մի՛ վախեր ամենևին, ըսաւ Գէսսի հան-

պարտութեամբ. որսէն ետ դարձան։ Սա ծակէն վար նայէ, զամէնքն ալ չե՞ս ճանչնար։ Սիմոնն այս գիշեր կ'երևայ թէ ետևնէս իյնալու միտք չունի։ Նայէ, նայէ, ձին ինչպէս ոտքէն ինչուան գլուխը ցեխի մէջ թաթխուեր է. շներն ալ յոգնածութենէն ականջնին կախ թողեր են։ Վա՜յ, պարոն, ո՛րչափ կ'ուզես որսի ելիր, փնտռած որսդ ձեռքէդ ելա՜ւ։

— Ո՜հ, Գէսսի, հոգիդ սիրես՝ մի՛ խօսիր, ըսաւ Եմմէլինա. յանկարծ ձայնդ կը լսեն։

— Ա՛լ աղէկ, թէ որ ձայն ալ լսեն՝ աւելի հեռու կը փախչին։ Ամենևին մի՛ վախնար, ըսի քեզի. ուզածնուս չափ աղաղակ կրնանք հանել, ասով դեռ աւելի կը վախեն այս ցորեննոցէն։

Ի՛նչ և իցէ՝ վերջապէս կէս գիշերը վրայ հասաւ, և բոլոր տանը խոր լռութիւն մը պատեց. և Լըկրի՝ որսորդութեանն անյաջող երթալուն վրայ կատղած՝ անկողին մտաւ, և միտքը դրաւ որ երկրորդ օրը այս բանիս սաստիկ վրէժխնդրութիւն մ'ընէ։

# ԳԼՈՒԽ Խ.

## Նահատակ մը.

*Հայր, թող զոցա. զի ոչ գիտեն զինչ գործեն։*

Ամենէն երկայն ճամբորդութիւնն իրեն վերջն ունի. ամենէն խոր խաւար գիշերը տեղի կու տայ արշալուսոյն։ Անողոքելի ժամանակն՝ անպապար անզգամին օրը՝ յաւիտենական գիշերի մը կը փոխէ, և արդարոյն գիշերն՝ անվախճան աւուր մը կը փոխարկէ։ Մենք մեր խոնարհ բարեկամին հաւէն գնացինք ծառայութեան հովտին մէջ պանդխտելու ատեն, զոր առաջ բարօրութեան ու ներողամտութեան ծաղկած դաշտին մէջ տեսեր էինք։ Ետքէն ներկայ էինք այն անգութ բաժանման՝ որ սիրտը կտոր կտոր ըրաւ, ու իր սիրելիներէն զինքն հեռացուց. իրեն հետ մէկտեղ երջանկութեան կղզեկի մը մէջ կանգ առինք, ուր ազնուական ձեռուըներ՝ իր շղթաները ծաղիկներու տակ կը ծածկէին. վերջը հետն այնպիսի տեղ մը եկանք, ուր երկրաւոր ակնկալութեանց

վերջին ճառագայթներն ալ խոր խաւար գիշերի մը մէջ պատեցան, և տեսանք թէ ինչպէս մէյմ'ալ յանկարծ այն խոր խաւարներուն մէջէն՝ անծանօթ մնացած երկինքն իրեն յայտնուեցաւ, առաջինէն աւելի պայծառ ու լուսաւոր աստղերով։

Առաւօտեան աստղը լեռներէն վեր ելեր բարձրացեր էր. զովարար զեփիւռներն աւետիս կու տային թէ օրուան դռները քիչ ատենէն պիտի բացուին։

Գէսսիին ու Էմմէլինային փախուստը վերջին աստիճանի Լըկրիին վայրագ բռնութիւնը զրգռեր էին, և ինչպէս որ դիւրին է գուշակել՝ բոլոր կատաղութիւնը խեղճ Թովմասին անպատսպար գլխուն վրայ թափեց։ Երբոր Լըկրի այս լուրը գերիներուն տարաւ, Թովմասին երեսը ուրախութեան լոյս ծագեց, և մէկէն ձեռուըները դէպ երկինք վերցուց. այս բանս անգութ տիրոջ աչքէն չփախաւ։ Տեսնելով որ Թովմաս ուրիշ գերեաց հետ որսորդութեան չէ ելած, ուզեց զինքն ստիպել այս բանիս. բայց փորձով գիտնալով անոր անողոքելի բնաւորութիւնն և այսպիսի անգութ գործի մը չհնազանդիլը, չուզեց հետը վիճաբանութեան նստելով ժամանակ կորսընցընել։

Ուստի Թովմաս ուրիշ քանի մը գերի-ներու հետ մէկտեղ գերեաց բնակութիւնը մնաց, և սոնց աղօթք ընել սորվեցուցած ըլլալով՝ հետերնին սկսաւ աղօթք ընել ու Աստուծոյ աղաչել որ փախստականներուն օգնութեան հասնի։

Երբոր Լըկրի անպտուղ ու այլայլած ետ դարձաւ, երկար ատենէ ի վեր Թովմասին դէմ սրտին մէջ ունեցած ատելութիւնն՝ յանկարծ կատաղի բարկութեան փոխուե-ցաւ։ Արդէն զանիկայ գնած օրէն տեսաւ որ իր ամէն կամքը չի կատարեր, և պնդու-թեամբ սրտի իրեն դէմ կը դնէ. և կարծես թէ Թովմասին վրայ ոգի մը կար, որ թէ-պէտ լուռ՝ սակայն դժոխքին կրակին պէս Լըկրին կ'այրէր կը մրկէր։

— Կ'ատեմ ես զանիկայ, կանչեց ինք-իրեն կատաղութեամբ նոյն գիշերը՝ անկող-նոյն վրայ նստելով. կ'ատե՜մ ես զանիկայ։ Բայց ի՞նչ. անիկայ իմ ապրանքս չէ՞. ինչ որ ուզեմ չե՞մ կրնար ընել անոր. ո՞վ զիս կ'արգելու....։ Եւ Լըկրի պողպոջելով բուռը սեղմեց և վեր վար շարժեց, իբր թէ ձեռ-քը բան մը բռնած ըլլար և ուզէր ջախ-ջախել։

Բայց Թովմաս հաւատարիմ ու ողխանի

ծառայ մ'էր, և Թէպէտ Լըկրի զանիկայ ուրիշ յատկութեանցն համար սաստիկ կ'ատէր՝ սակայն իր շահը մտածելով ինքզինքը կը բռնէր։

Երկրորդ առտուն միտքը դրաւ որ դեռ անոր բան մը չըսէ, և բոլոր դրացիներն իրենց շներով ու հրացաններով օգնութեան կանչէ, և բոլոր դաշտը պաշարել տայ ու ըստ կանոնի որսորդութիւնն սկսի։ Թէ որ բանն յաջողելու ըլլար՝ միտքը դրեր էր բարկութիւնը զսպելու. ապա թէ ոչ՝ Թովմասն առջևը պիտի բերել տար, և այն ատենը ...։ Այս մտածելով ակռաները կը կճրտէր ու արիւնը եփ կ'ելլէր ...։ Կամ գերին պիտի զսպէր և կամ...։ Եւ ներսէն անգութ խորհուրդ մը միտքը դրաւ։

Կ'ըսեն թէ տիրոջը շահը գերւոյն համար բաւական ապահովութիւն մ'է. բայց այն մարդը որ կոյր կատաղութեան ատեն՝ իրեն սրտին վրէժխնդրութիւնն յագեցընելու համար հոգին սատանային կը ծախէ՝ ինչպէս կ'ուզես որ ուրիշի մը մարմնոյն աւելի հոգ տանի։

— Նայէ, նայէ, ըսաւ Գէսսի՝ երկրորդ օրը գլուխը լուսամուտէն դուրս հանելով, որսորդութիւնն սկսելու վրայ է։

Երեք չորս ձիաւոր տանն առջև վեր վար կ'երթային կու գային, և քանի մ'օտար չներ տանալով հաչելով կ'ուզէին սևերուն ձեռքէն փախչիլ, որ զիրենք բռներ էին։

Այս մարդիկներէն երկուքը մօտի երկրատէրներուն վերակեցուներէն էին, իսկ մէկալները քովի քաղաքին պանդոկին մէջ Լըկրիին ունեցած բարեկամներէն, որոնք զուարճութեան համար եկեր էին այս որսորդութեան մասնակից ըլլալու։ Ծիտակը խօսելով՝ անկարելի է ասոր նման ուրիշ վայրագ ընկերութիւն մ'երեւակայել։ Լըկրի առատութեամբ ամենուն օղի կը բաժնէր, թէ իր ընկերներուն և թէ՛ մօտակայ երկիրներէն եկած սևերուն, որոնց համար այսպիսի ծառայութիւն մ'ընելը մեծ հանդէս մը կատարել կը համարուէր։

Գէսսի ականջը լուսամուտին դրած, և որովհետև քամին տանը կողմանէ կը փչէր, անոնց խօսակցութեան մեծ մասը լսեց։ Մէյմ'ալ արհամարհական ծիծաղ մը ծագեցաւ իր ծանր ու խիստ դիմաց վրայ, վասն զի լսեց որ մէջերնին կ'որոշէին թէ ո՛վ որ կողմը պիտի երթայ. տեսաւ որ չներուն ճարպիկութեանը վրայ կը վիճէին, և իրարու կ'առաջարկէին թէ ինչ կերպով հրա-

ցանկին պիտի պարպէին, ու թէ որ փախըստականները ձեռք ձգելու ըլլային՝ ինչպէս հետեւրնին պիտի վարուէին։

Գէսսի լուսամուտէն ետ քաշուեցաւ, ու ձեռուըներն իրարու բերելով՝ աչուըները դէպ երկինք վերցուց։

— Ո՛վ Աստուած ամենակալ, ըսաւ, ամենքնիս ալ մեղաւոր ենք, բայց մենք ուրիշներէն աւելի ի՞նչ ըրեր ենք՝ որ մեզի հետ այսպէս կը վարուին։

Ձայնն ու դէմքը կարգէ դուրս խռովեր էին։

— Թէ որ դու չըլլայիր, խեղճ աղջիկ, ըսաւ Եմմէլինային, ես հիմայ դիմացնին կ'ելլէի ու շնորհակալ կ'ըլլայի անոր որ զիս սպաննել կ'ուզէ։ Վասն զի ի՞նչ բանի կու գայ ազատութիւն ձեռք ձգելս. կրնա՞յ ինծի արդեօք զաւկըներս տալ նորէն, կամ թէ զիս առաջին վիճակիս հասցընել։

Եմմէլինա իրեն մանկական պարզմտութեամբ՝ Գէսսիին տխուր կերպէն կը սարսափէր. կարծես թէ բոլորովին շփոթեր էր, անոր համար և ոչ ալ համարձակեցաւ պատասխան տալու. ուստի միայն քաղցր ու սիրելի կերպով մ'անոր ձեռքը բռնեց։

— Բաւական է, ըսաւ Գէսսի՝ ձեռքը քաշելով, կը բռնադատուիմ սիրել զքեզ.

բայց գիտցած եղիր որ ես միտքս դրեր եմ որ այս աշխարհիս վրայ ա՛լ մէկը չսիրեմ։

— Խեղճ Գէսսի, ըսաւ Եմմէլինա, այդպիսի մտածութիւնները մաքէդ հեռացուր։ Թէ որ Աստուած ազատութիւն պարգեւէ, գուցէ աղջիկդ ալ շնորհէ քեզի. ի՛նչ ալ ըլլայ, ես ալ քու աղջիկդ կ'ըլլամ, որովհետեւ ստոյգ գիտեմ թէ ա՛լ իմ խեղճ մայրս պիտի չտեսնեմ. դու զիս սիրես չսիրես, Գէսսի, ես զքեզ պիտի սիրեմ։

Այս սիրալիր ու մանկական անուշ խօսքերէն Գէսսիին սիրտը շարժելով, ելաւ Եմմէլինային քով նստաւ, ու թեւն անոր ուսին դրած՝ թուխ ու մետաքսի պէս մազերը կը շոյէր։ Եմմէլինա զարմացաւ անոր աչուըներուն գեղեցկութեան վրայ, որոնց փայլունութիւնը նոյն միջոցին արցունքներուն աւելի անուշցուցեր էին։

— Ա՛հ, Եմմէլինա, ըսաւ Գէսսի, զաւակացս սիրոյն համար ի՛նչ քաղց, ի՛նչ ծարաւ, ի՛նչ վշտեր քաշեր եմ ես. աչուըներս անդադար լալէն խաւարեցան. չես գիտեր թէ ո՛րչափ կը փափագիմ զանոնք տեսնելու։ Հո՛ս, հո՛ս, կուրծքին զարնելով ըսաւ, բոլորովին ցաւ ու վիշտ տիրեր է, ամենեւին անապատ դարձեր է։ Թէ որ Աստուած զա-

ւակներս նորէն ինծի պարգևէր, ո՜հ, ան ատեն միայն կրնայի աղօթք ընել։

— Ցոյց անոր վրայ գիր, Գէսսի, ըսաւ Եմմէլինա. մեր Հայրն ինքն է։

— Իրեն ձեռքը վրանիս ծանրացեր է, ըսաւ Գէսսի. և մեզի դէմ բարկացած՝ զմեզ բոլորովին երեսէ ձգեր է։

— Ոչ, Գէսսի, չէ. ինքը կը գթայ մեր վրայ. միայն թէ յոյսերնիս անոր վրայ դնենք, ըսաւ Եմմէլինա։ Ես միշտ յոյսս վրան պահեր եմ։

Որսորդութիւնն երկայն տևեց. և ամենայն տաքութեամբ ու մանրախոյզ քննութեամբ առաջ գնաց. բայց անպտուղ ելաւ։ Գէսսի լուսամուտէն հեգնական ծիծաղով մը տեսաւ որ Լըկրի յոգնած պապլրած և տրտում տխուր՝ ձիէն վար իջաւ։

— Հիմայ, Քուիմպոյ, ըսաւ Լըկրին, մեծ խցին նստարաններուն մէկուն վրայ փռուելով, գնա Թովմասը գտիր, ու շուտ հետդ առ զինքը դիմացս բեր։ Այն թշուառականը պէտք է որ ամէն բան տեղն ի տեղը գիտնայ. կամ ան է որ այս գաղտնիքս անոր սև հին կաշիէն կը հանեմ, կամ թէ չէ՝ ես գիտեմ ընելիքս։

Սամպսոյ և Քուիմպոյ թէպէտ սրտանց մէկզմէկ չարաչար կ'ատէին, սակայն երկուքն ալ ոխերիմ թշնամի էին Թովմասին դէմ։ Լրկրի իրենց ըսեր էր որ Թովմասը գնելու վախճանն էր զանիկայ ընդհանուր վերակեցու գնել՝ երբոր ինքը անէն դուրս կ'ըլլար. անոր համար Թովմասին դէմ սաստիկ նախանձ ու ատելութիւն ունէին, որ հետզհետէ իրենց վատ ու ցած բնաւորութեան մէջ սոգորուելով՝ վերջին աստիճանի հասաւ, ևս առաւել երբոր տեսան ալ որ Թովմաս իրենց տիրոջն աչքէն ինկաւ։ Անոր համար Քուիմպոյ ուրախութեամբ վազեց Լրկրիին հրամանը ժամ մ'առաջ կատարելու։

Թովմաս երբոր այս հրամանս առաւ՝ սիրտը դառն նախազգացումներով լեցուեցաւ, վասն զի ծանօթ էին իրեն թէ՛ փախստականաց միտքը և թէ՛ անոնց ապաստանարանը։ Կը ճանչնար նաև Լրկրիին անողոքելի բնաւորութիւնն և անոր բռնաւորական կարողութիւնը։ Բայց Աստուծոյ ապաւինելով՝ յանձն առաւ աւելի մահուան դիմագրաւ երթալու՝ քան թէ այն անպատսպար խեղճ կնիկները մատնելու։

Ուստի կողովն առաւ՝ ուրիշ գերեաց կո-

ղօֆներուն կարգը գրաւ, և աչուընները պէպ տը Աստուած վերցընելով, — Քու ձեռքդ կը յանձնեմ հոգիս, ըսաւ. դու զիս գնեցիր, ո՛վ Աստուած ճշմարտութեան։ Եւ վերջէն առանց ամենևին ընդդիմութիւն մը ցուցընելու՝ ինքզինքը Քուիմպոյին ձեռքը թողուց։

— Այնպէս է, այնպէս, կ'ըսէր սրիկայն՝ զանիկայ քաշկըռտելով արրոջը տանելու ատեն. հիմայ կարգը քեզի եկաւ. տէրերնիս քեզի պէս բարկացեր է։ Այս անգամ ա՛լ անոր ձեռքէն չես կրնար ազատիլ, գիտցած ըլլաս։ Հիմայ կը տեսնես թէ ինչ ըսել է գերեաց փախստեանն օգնել ու անոնց խորհրդակից ըլլալ։

Այս գազանային սպառնալեաց խօսքերէն և ոչ մէկը Թոմմասին ականջին հնչեց. դեռ աւելի զօրաւոր ձայն մ'իրեն կ'ըսէր. «Մի՛ վախեր անոնցմէ՝ որոնք մարմինն սպաննելէ զատ ուրիշ բան չեն կրնար ընել»։ Այս խօսքերէս Թոմմասին բոլոր ջղերն ու ոսկորները թրթռացին, կարծես թէ Աստուծոյ մասը պպաւ անոնց, և որուն մէջ հազարաւոր հոգւոյ զօրութիւն զգեցաւ։ Քանի որ առաջ կ'երթար՝ ծառերը, թուփերը, գերութեան խեղճ հիւղերը և նուաստութեան

տեսարանը հետզհետէ աչքին դիմացէն կը փախչէին, ինչպէս որ շոգեկառքով ճամբորդի մը աչքէն բնութեան տեսարանները շուտ շուտ աներևոյթ կ'ըլլան։ Միրաը կը նայէր, հեռուէն իր երկնաւոր հայրենիքը կը տեսնէր, և իրեն այնպէս կու գար թէ ազատութեան ժամն իսկ շատ հեռու չէ։

— Վերջապէս, Թովմաս, ըսաւ Լըկրի՝ կատաղութեամբ անոր վրայ յարձակելով, վզէն բռնելով ու բարկութենէն ակռաները սեղմած խօսելով, գիտես որ որոշեցի զքեզ սպաննելու։

— Ատոր չեմ զարմանար, պատասխանեց Թովմաս հանդարտութեամբ։

— Ես — հաստատուն — միտքս — դրեր — եմ — զքեզ — սպաննելու, Թովմաս, կրկնեց Լըկրի հանդարտ ու ահաւոր ձայնով, թէ որ չզուրցես ինծի թէ ան կնիկներն ո՛ւր փախան։

Թովմաս լուռ կեցաւ։

— Իմացա՞ր, ըսաւ Լըկրի, կատաղաբար կից մը զարնելով և առիւծի մը պէս մռընչելով. պատասխա՛ն տուր տեսնեմ։

— Ես ըսելու բան մը չունիմ, տէր իմ, պատասխանեց Թովմաս ծանր ու հանդարտ կերպով։

— Կը յանդգնի՞ս ինծի ըսելու, խոֆած ծեր քրիստոնեայ, թէ ամենևին անոնց վըրայ բան չես գիտեր, ըսաւ Լըկրի։

Թովմաս նորէն պատասխան չտուաւ։

— Ըսէ նայիմ, պոռաց Լըկրի որոտաձայն ու կատաղաբար զարնելով անոր. անոնց վրայ բան մը չե՞ս գիտեր։

— Հրամեր ես, տէր իմ, գիտեմ. բայց բան չեմ կրնար ըսել. պատրաստ եմ մեռնելու։

Լըկրի նեղսրտութենէն հառաչեց, և բարկութիւնը զսպելով Թովմասին ձեռքէն բռնեց, երեսն անոր երեսին մօտեցուց, և ահաւոր ձայնով մ'ըսաւ անոր.

— Աղէկ միտքդ պահէ, Թովմաս. գուցէ ըսես թէ ուրիշ անգամ քեզի խնայեցի՝ այս անգա՛մ ալ խնայեմ ու ըսածս չըկատարեմ. բայց այս անգամ ըսածս ըսած է, ա՛լ միտքս դրածն ետ չեմ առներ. ես ամէն բան կարգի դրեր եմ։ Ինչուան հիմայ միշտ իմ կամացս դէմ դրիր. այս անգամուս կա՛մ ան է որ զքեզ պիտի զսպեմ, կա՛մ թէ չէ՝ զքեզ պիտի սպաննեմ. կա՛մ մէկը կա՛մ մէկալը... կաթիլ կաթիլ արիւնդ պիտի համրեմ, ինչուան որ խոնարհիս։

Թովմաս տիրոջ երեսը նայեցաւ ու պատասխան տուաւ.

— Տէր իմ, թէ որ հրամանքդ հիւանդ ըլլայիր և կամ նեղութեան մը մէջ ինկած և կամ մահուան դուռն հասած, և ես կարենայի զքեզ ազատել, որով բոլոր կեանքս կու տայի. թէ որ պէտք ըլլար անգին հոգիդ փրկելու համար բոլոր արիւնս թափել, ես պատրաստ եմ. ինչպէս Փրկիչն իր արիւնն ինծի համար թափեց, ես ալ իմ արիւնս հրամանքիդ համար կը թափեմ։ Ո՛վ տէր իմ, այս սարսափելի մեղքովս հոգիդ մի՛ ծանրաբեռներ. այս բանս աւելի հրամանքիդ չարիք կը հասցընէ քան թէ ինծի։ Ո՛րչափ չարիք կ'ուզես հասցուր ինծի, ուրիշ բան չես ըներ՝ բայց եթէ իմ թշուառութիւններս կը կարճեցընես. բայց թէ որ չզգուշաս, հրամանքիդ թշուառութիւնները վերջ պիտի չունենան։

Այս քրիստոնէավայել սրտաշարժ խօսքերն՝ ահեղագոչ մրրկի մ'ատեն լսուած երկնային ներդաշնակութեան մը նման՝ Լոկրիին բարկութիւնը առ ժամանակ մը զսպեցին. դարձաւ խոլոր մոլոր Թովմասին կը նայէր. և այնպիսի խոր լռութիւն մը պատեր էր՝ որ հին ժամացուցին ճօճանակին ձայնը միայն կը լսուէր, որուն անխօսուն ցուցիչներն այս քարացեալ սրտին շնորհուած

*գթութեան և դարձի վերջին վայրկեանները կը չափէին։*

*Բայց այս վայրկեաններն երկայն չտևեցին. տարակոյսն ու վարանքը վայրկեան մը քշեցին. չարութեան ոգին ետ՛նպատիկ սաստկութեամբ վրայ հասաւ, և Լրկրի բարկութենէն փրփրած՝ որսին վրայ յարձակեցաւ, ու զինքը գետին պառկեցուց։*

. . . . . . .

*Արեան և անգթութեան տեսարանները մեր ականջն ու սիրտը կը վիրաւորեն։ Այն բանն որ մարդուս սիրտը կ՚անգթանայ ընելու, նոյնը մարդուս սիրտը չի տանիր լսելու։ Ինչ որ մեր եղբայրներն ըստ մարդկութեան, մեր եղբայրներն ի Քրիստոս կը կրեն, մենք և ոչ անոնց պատմութիւնը կրնանք լսել, և ոչ խսկ սիրտ կ՚ընենք մտածելու. այնչափ սրտերնիս չի դիմանար։ Եւ սակայն, ո՛ երկիրդ իմ հայրենի, այս անգթութիւններն քու օրինացդ պաշտպանութեան տակ կը կատարուին։ Ով Քրիստոս, քու հաստատցեալ ժողովուրդդ այս բաներս կը տեսնէ և լուռ կը կենայ...։*

*Բայց ժամանակ մ՚եկաւ՝ երբոր Աստուած մարդացաւ, և իր քաշած չարչարանքներովը տանջանքներու և նախատանաց ու պատժոյ*

գործիքը՝ փառաց ու պատուոյ և անմահական կենաց նշանի մը փոխեց։ Եւ ուր որ իր հոգին կայ, հոն ոչ նեղութիւնք, ոչ արիւն, ոչ նախատինք՝ չեն կրնար քրիստոնէի մը յետին պատերազմաց փառքը նսեմացընել։

Արդեօք մինա՞կ էր այս արիասիրտ ու սիրալիր անձը, այն երկայն գիշերուան մէջ հին խցին մէկ անկիւնը, որ այնչափ նախատանաց և տանջանաց համբերեց...։

Ոչ, քովը մէկը կար, զոր ինքը միայն կրնար տեսնել, և Որդւոյն Աստուծոյ կը նմանէր։

Փորձիչն ալ մէկալ կողմը կեցեր էր, և կատաղութենէն ու բռնաւորական կամքէն կուրցած՝ անդադար կը բռնադատէր զինքը որ տանջանքէն փախչելու համար անմեղութիւնը մատնէ։ Բայց այն արիական ու հաւատարիմ սիրտն՝ անխախտելի մնաց Քրիստոսի յաւիտենական ժայռին վրայ։ Իրեն աստուածային Վարդապետին նման՝ գիտէր թէ զուրիշները փրկելու համար՝ չէր կրնար ինքզինքը փրկել, և այն սաստիկ տանջանաց մէջէն ալ բերնէն ուրիշ բան չէր ելլեր, բայց եթէ աղօթք և առ Աստուած ապաւինութիւն։

— Տէր իմ, գրեթէ մեռաւ, ըսաւ Սամ-պոյ, առանց ուզելու՝ խեղճ Թումասին համբերութենէն սիրտը շարժած:

— Զարկէ՛ք մինչև որ խոնարհի, առէք սա անպիտանին, առէք մի՛ խնայէք, մըրմռաց քթին տակէն Լըկրի: Ինչուան որ ինծի չյայտնէ՝ արեան վերջին կաթիլն ալ պիտի թափեմ:

Թումաս աչուըները բացաւ ու տիրոջ երեսը նայեցաւ.

— Խեղճ ողորմելի մարդ, ըսաւ, ասկէ աւելի բան չես կրնար ինծի ընել: Բոլոր սրտանց քեզի կը ներեմ...: Ու այս ըսելով՝ բոլորովին ինքզինքը կորսնցուց:

— Իրաւցընէ, կարծեմ հիմայ մեռաւ բոլորովին, ըսաւ Լըկրի՝ մօտենալով որ աղէկ մը դիտէ: Այո՛ հա՛, մեռեր է: Ի՛նչ և իցէ, գոնէ բերանը գոց է. այս ալ մխիթարութիւն մ'է:

Այո՛, Լըկրի. բայց ո՛վ կրնայ լռեցընել քու հոգւոյդ ձայնը. այդ հոգւոյդ՝ որուն համար ո՛չ դարձ չկայ, ո՛չ չի կրնար աղօթել, ո՛չ չի կրնար յուսալ, և որուն համար արդէն սկսեր է բորբոքիլ այն հուրը որ յաւիտեան պիտի չշիջանի:

Բայց Թումասի դեռ վերջին շունչը չէր

տուած. իրեն հրաշալի խօսքերն, իր եռանդագին աղօթքներն այն երկու անբաժանելուն սիրտը շարժեցին, որոնք իրենց տիրոջ անգթութեան գործիք եղեր էին. երբոր Լըկրի հեռացաւ անկէ՝ զինքն առին տարին, և իրենց ազատութեամբ կրցածնին ըրին որ զանիկայ արթընցընեն, իբր թէ կեանքն անոր համար բարիք մ'ըլլար։

— Շիտակը սարսափելի յանցանք մ'է ըրածնիս, ըսաւ Սամպօյ. յուսամ թէ այս բանիս պատասխան մեր տէրը պիտի տայ, չէ թէ մենք։

Թօմմասին վէրքերը լուացին. և աւըրւած թամբակէ անկողին մը պատրաստեցին ու զինքը վրան պառկեցուցին. ետքէն անոնցմէ մէկը տուն վազեց ու Լըկրիէն գաւաթ մ'օղի ուզեց, պատճառելով թէ շատ յոգներ է և ոյժ առնելու կարօտութիւն ունի. և առածին պէս՝ բերաւ Թօմմասին բերանը պարպեց։

— Ահ, Թօմմաս, ըսաւ Քուիմպօյ, քեզի դէմ սաստիկ անգութ գտնուեցանք։

— Բոլոր սրտանց կը ներեմ ձեզի, ըսաւ Թօմմաս նուաղեալ ձայնով մը։

— Ո՛վ Թօմմաս, ըսէ մեզի, Յիսուսն ո՞վ է, ըսաւ Սամպօյ. այն Յիսուսը՝ որ բոլոր այս գիշեր քովդ էր, ո՞վ է անիկայ։

Այս խօսքերս մահուան դուռն հասած Թովմասը կենդանացուցին։ Քանի մը զօրաւոր խօսքեր արտաբերեց մարդացեալ Աստուծոյ վրայ. պատմեց անոնց Քրիստոսի վարքը, անոր մահը, անոր ամէն տեղ ներկայ ըլլալը, և ըսաւ թէ բոլոր աշխարհք փրկելու կարողութիւն ունի։

Այս երկու վայրենիներս սկսան լալ։

— Ի՞նչու այս բանս առաջ ալ չէինք լըսած, ըսաւ Սամպոյ. բայց ես կը հաւատամ. չեմ կրնար չհաւատալ։ Տէ՛ր Յիսուս, ողորմէ ինծի։

— Խե՛ղճ մարդիկ, ըսաւ Թովմաս. շատ սիրով կը քաշէի ես այս նեղութիւններս՝ թէ որ կարենայի զձեզ Քրիստոսի շահիլ։ Ո՛վ Տէր, ընդունէ քեզի այս երկու հոգիներս ալ, խնդիրքս մի՛ անտես ըներ։

Եւ այս աղաչանքս ընդունելի եղաւ։

# ԳԼՈՒԽ ԽԱ.

## Օննիկ Շէլպի.

Երկու օր ետև՝ երիտասարդ մը նստած թեթև կառքի մը մէջ՝ Ջինու ծառերով պատած ճամբէն անցաւ, և շտապաւ սանձերը ձիերուն վզին վրայ ձգելէն ետև՝ նստարանէն վար ցատքեց ու այն կալուածին տէրն հարցուց:

Օննիկ Շէլպին էր այս երիտասարդն: — Բայց այս երիտասարդիս Լըկրիին երկիրները գալուն պատճառն իմանալու համար՝ պէտք է որ քիչ մ'ետ դառնանք:

Գիտենք որ Օֆէլիա նամակ մը գրեց Շէլպի խաթունին. դժբախտաբար այս նամակն՝ իր տեղն հասնելէն առաջ՝ մէկ երկու ամիս թղթատուն մը մնաց: Այս միջոցիս խեղճ գերին Կարմիր գետոյն ճահիճներուն մէջ յափշտակուելով՝ աներևոյթ եղեր էր:

Երբոր նամակն հասաւ՝ Շէլպի խաթունը մեծ հետաքրքրութեամբ կարդաց, բայց ստիպուած ըլլալով իր էրկան անկողնոյն

քով տքնիլ, որ սաստիկ ջերմէ կը տանջուէր, չէր կրնար անմիջապէս Թումասին օգնութիւն մ'ընելու ։ Ծննիկն ալ մեծցեր էր, և մեծ ջանքով ու յօժարութեամբ մօրը կ'օգնէր, ու հօրը խառնափնդոր գործողութիւնները կարգի կը դնէր։ Ասով հանդերձ, որովհետև Օֆէլիա իր նամակին մէջ Սէն-Փլէրին փաստաբանին հասցէն ալ նշանակեր էր, ուստի Շէլպի խաթունն այս շփոթութեանց մէջ ալ չմոռցաւ նոյն փաստաբանին գրելու և Թումասին վրայ տեղեկութիւն ուղելու։ Բայց քանի մ'օրէն ետև պարոն Շէլպին մեռաւ, որով խաթունն այնպիսի շփոթ գործողութեանց մէջ ինկաւ, որ անկարելի եղաւ ուրիշ բանի ուշ դնելը։

Շէլպի իրեն կնկանը ճարտարութեան վրայ վստահ ըլլալով, բոլոր իր ստացուածոց մատակարարութիւնն անոր ձեռքն յանձներ էր. ան ալ իրեն բնական աչքաբացութեամբ՝ մէկէն սկսաւ էրկանը խառնափնդոր գործողութիւնները կարգի դնել. և ինքն ու Ծննիկը բոլորովին իրենց առնելիքներն ու պարտքերը կարգաւորելու զբաղած ըլլալով՝ խել մ'ատեն ուրիշ բանի ետևէ չեղան. բոլոր հաշիւները մաքրեցին սրբեցին, քանի մ'երկիր ծախեցին ու անոնց գնով պարոն Շէլ-

պլին ձգած պարտքերը վճարեցին, վասն զի խաթունը կ'ուզէր որ ամենևին ոչ առնելիք միայ և ոչ տալիք։

Նոյն միջոցին Սէն-Քլէրի փաստաբանէն իրենց նամակին պատասխանն առին, որ կ'ըսէր թէ ամենևին չէր գիտեր Թովմասին ինչ ըլլալը. զանիկայ աճուրդի հանած ու ծախած օրէն վերջը՝ վրան բան չէր լսած։

Այս պատասխանիս ոչ Օննիկի և ոչ մայրը գոհ եղան։ Հինգ վեց ամիս ետև՝ գետին վարի կողմերը Օննիկ գործողութիւն մ'ունենալով՝ միտքը դրաւ որ ինչուան Նոր Օռլէան երթայ, յուսալով որ անձամբ քըննելով գուցէ խեղճ Թովմասը կարենայ գտնել։

Քանի մը շաբաթ անպտուղ աշխատելէն ետև՝ դիպուածով մարդ մը դիմացն ելաւ, ուսկից ամէն բան տեղն ի տեղն իմացաւ։ Շուտ մը Կարմիր գետոյն շոգենաւը մտաւ Օննիկ, քսակն ալ աղէկ պաշարով լեցուն, գնաց իր հին բարեկամը գտնելու և նորէն գնելու։

Լըկրիին տանը դիմաց հասնելով՝ շուտ մը զինքը ներս մեծ խուցն հրամցուցին։

Լըկրի կոպիտ հիւրընկալութեամբ մը օտարականին ընդունեցաւ։

— Իմացայ որ, ըսաւ երիտասարդն, Հրա-

մանքէ Նոր-Օռլէանէն Թուլմաս անունով գերի մը գներ ես։ Ամենով անիկայ իմ հօրս էր. անոր համար հիմայ եկեր եմ որ զինքը գնեմ։

Լըկրին այս խօսքերէս շփոթեցաւ, ու զայրացած ձայնով մը պոռաց.

— Հրամեր ես, այդ անունով գերի մը գնեցի. կրողին բերանին երթայ. շատ գէշ բան ըրի։ Երբեք այդպիսի պնդապլուխ անբան մը, այդպիսի լիրբ շուն մը տեսած չունիմ։ Բոլոր գերիներս կը գրգռէ շարունակ որ փախչին, և հիմայ ալ երկու կնիկ փախուց, որոնց ամէն մէկն ութ հարիւր, հազար տոլլար կ'արժէ։ Այս բանս ինքն ալ խոստովանեցաւ իր բերնով, և երբոր զինքը ծեծեցի որ ո՛ւր ըլլալնին ինծի իմացընէ, յանդգնեցաւ ինծի ըսելու թէ ո՛ւր ըլլալնին գիտէ, բայց չ'ուզեր ըսել. յամառութիւնն այն աստիճանի հասաւ որ ստիպուեցայ այնչափ ծեծ քաշել իրեն՝ որ ինչուան հիմայ գերիներէս մէկն ալ այնչափ ծեծ չէր կերած։ Հիմայ կարծեմ թէ մեռնելու վրայ է, բայց չեմ գիտեր թէ արդեօք կը մեռնի՞։

— Ո՞ւր է, կ'ուզեմ տեսնել զինքը, պոռաց Օմնիկ շտապաւ։ Երեսը կրակ պար-

ձեր էր, աչուըներէն կայծակ կը ցատքեցը-նէր. Թէպէտև ջանաց ինքզինքը բռնելու։

— Հոս վարն է, ըսաւ մէկէն սեւուկ մը՝ որ Օննիկին ձիերուն սանձէն բռներ էր։

Լրկրի սեւուկին կից մը զարկաւ, բայց Օննիկ առանց բան մ՚ըսելու անոր ցուցած տեղը վազեց։

Այն պժգախտ գիշերուան վրայ՝ երկու եր-կայն օրեր էին՝ որ Թովմաս հոն կը տա-պըլտըկէր։ Ամենևին ցաւ չունէր, վասն զի բոլոր բնական զգայութիւնն սպառեր ու ոչըն-չացեր էր. տեսակ մը հանդարտութեան մէջ, խորին թմբրութեան մէջ ընկղմեր էր, և իր զօրաւոր մարմնոյն հոգւոյն հետ ունեցած կապերը կամաց կամաց քակուելու վրայ էին։ Գիշերները խեղճ գերիներէն շատերը գաղտուկ Թովմասին քով կու գային, և ի-րենց տրուած կտոր մը հանգստեան ժամե-րէն կը գողնային ու կու գային իրենց սէրն ու գութը անոր ցուցընելու, ինչպէս որ ինքն ալ միշտ անոնց ցուցեր էր։ Աւա՜ղ, գթու-թեան այս աշակերտները տալու շատ բան մը չունէին, միայն գաւաթ մը ցուրտ ջուր. բայց ան ալ լռութեամբ սրտի կու տային։

Այն նահատակին անզգայ երեսաց վրայ արտասուաց կաթիլներ ալ կը թափէին, ո-

րոնք այն խեղճ հեթանոսաց սրտէն կը բղխէին. մահուան անկողնոյն քովը կեցած՝ կը հեծէին, և եռանդագին աղօթքներ կը մատուցանէին այն փրկչին՝ որուն քաղցր անունը Թովմաս իրենց սորվեցուցեր էր, այն Յիսուսին՝ որուն անունը միայն գիտէին. բայց եռանդուն ու պարզ սրտի մ'աղաչանքն անոր դիմացը պարապ չ'ելլեր։

Նոյն իսկ Գէսսի, որ վտանգաւ անձին իր ապաստանարանէն դուրս ելեր էր, իմացեր էր թէ ինչպէս Թովմաս իրեն ու Եմմելինային համար ինքզինքը զոհեր է. և վտանգն աչք առնելով Գէսսի երկրորդ գիշերը Թովմասին քով գնաց. և այն բարեսիրտ մարդուն յետին խօսքերէն յաղթուած, իրեն սրտին վրայէ երկար նեղութիններէն կիզուած սառերն սկսան հալիլ, և սկսաւ լալ ու աղօթք ընել։

Երբոր Ճնիկ այն խեղճ բնակարանը մտաւ՝ սիրտը բռնուեցաւ, ու սկսաւ գլուխը դառնալ։

— Տէ՛ր Աստուած, այս ինչ բան է տեսածս, այս ինչ բան է որ կը տեսնեմ, կանչեց Ճնիկ՝ հիւանդին քով ծնկան գալով. Աղբա՛ր Թովմաս, իմ խեղճ հին բարեկամս։

Հիւանդին ականջը բոլորովին խուլ չէր

անտարակոյս այս ծանօթ ձայնս լսելու, վասն զի կամացուկ մը գլուխը շարժեց, ժպտեցաւ ու իր սովորական երգերէն քանի մը խօսք քթին տակէն արտաբերեց։

Օննիկ իր հին բարեկամին վրայ ծռած՝ աչուըներէն արցունք կը թափէր։

— Սիրելի Աղբար Թովմաս, կանչեց, արթընցիր, մէկ երկու խօսք ըսէ ինծի։ Մէյմը ինծի նայէ, ես այն պզտի Օննիկն եմ, քու սիրելի Օննիկդ. ինչ, միթէ զիս չե՞ս ճանչնար։

— Իմ պզտի Օննի՛կս, ըսաւ Թովմաս՝ մարած ձայնով մ'աչուըները բանալով։... Իմ պզտի Օննի՛կս...։ Բայց միշտ ինքզինքը կորսնցուցած կ'երեւար։

Բայց կամաց կամաց միաքը վրան եկաւ. տարաամ աչուընհրն ամփոփուեցան ու սկսան փայլիլ. դէմքն ուրախութեամբ պայծառացաւ, սառած ձեռուընհրն իրար բերաւ ու աչուընհրն արցունքով լեցուեցան։

— Օրհնեա՜լ է Աստուած. ահա այս բանիս միայն կը փափագէի։ Զիս բոլորովին չեն մոռցած. հոգիս զօրութիւն կը զգենու, ծեր սիրտս կը կենդանանայ։ Հիմայ գոհ սրտով կը մեռնիմ։ Օրհնեա՜ անձն իմ ըզՏէր։

— Չէ, չես մեռնիր, ա՛լ չես կրնար մեռնիլ, տղէկ գիտնաս, կանչեց Օննիկ սիրտն ելած։ Ես եկայ որ զքեզ հեռու տանիմ։

—Ո՛հ, սիրելի Օննիկ, շատ ուշ եկար. Աստուած գնեց զիս և իր արքայութիւնը պիտի տանի զիս, ուր ես ալ կը փափագիմ երթալու։ Երկինքը Քէնըլըքիէն լաւագոյն է։

— Չէ, չես մեռնիր. սիրտս մի՛ կոտրեր. քանի որ կը տեսնեմ որ այս ողորմելի որջին մէջ պառկեր ես, չեմ կրնար դիմանալ ... խե՛ղճ, խե՛ղճ Թովմաս։

— Ինծի խեղճ մի՛ ըսեր, կրկնեց Թովմաս վսեմութեամբ մը։ Առենով խեղճ մարդ մ՚էի, բայց հիմայ չեմ, խեղճութիւնս լմընցաւ։ Արքայութեան դուռն հասեր եմ, և քիչ մ՚առենէն յաւիտենական փառքը պիտի մտնեմ։ Ա՛հ, սիրելի Օննիկ, արքայութիւնը մօտեցեր է. յաղթութիւնը կատարեցի, զոր նոյն ինքն Քրիստոս տէրն մեր տուաւ ինծի. օրհնենք իրեն անունը։

Այս ընդհատ ընդհատ խօսքերս այնպիսի հաստատուն համոզմամբ ըսաւ Թովմաս՝ որ Օննիկ ինքզինքն ամփոփեց ու լուռ կեցաւ։

Թովմաս անոր ձեռքը սեղմելով ըսաւ.

— Չըլլայ թէ Քըլոյէին իմացընես զիս

այս վիճակիս մէջ տեսնելդ, խեղճը շատ կը վշտանայ։ Միայն ըսէ իրեն որ զիս յաւիտենական փառաց դուռը դտար, և թէ ալ չէի կրնար բնաւ մէկու մը համար այս աշխարհիս վրայ մնալ։ Ըսէ իրեն թէ Աստուած ամէն տեղ և ամէն ատեն միշտ քովս էր, և ամէն բան ինծի դիւրացուց ու թեթեւցուց։ — Հապա տղաքս, պզտի աղջիկս, ո՜հ քանի որ զիրենք կը մտածէի՝ սրտէս արիւն կ'անցնէր։ Ըսէ անոնց ամենուն ալ որ իմ ետեւէս գան. ինծի հետեւին։ Շատ սիրով բարեւ ըրէ տիրոջս, իմ բարեսիրտ խաթունիս, և բոլոր տան մէջ եղողներուն։ Կարենայի՜ր գիտնալ թէ ո՛րչափ կը սիրեմ զանոնք. ես Աստուծոյ ամէն արարածները ալ կը սիրեմ. բոլոր սիրտս սէր է. ո՜հ, սիրելի Օննիկ գիտես ի՜նչ մեծ բան է քրիստոնեայ ըլլալը։

Նոյն միջոցին Լըկրի վեր վար պըլլալով՝ Թովմասին պառկած որջին դրանը մօտեցաւ, մէյմը ներս նայեցաւ ու կեղծեալ անտարբերութեամբ մ'առաւ քալեց։

— Քեզի՛ պէս դժոխային սատանայ, պոռաց Օննիկ, գոնէ այս մխիթարութիւնը կայ որ այս օրերս դու ալ քու բաժինդ պիտի առնուս։

— Չէ, չէ, այդպիսի բաներ մի՛ զրուցեր ըսաւ Թովմաս անոր ձեռքը սեղմելով. այն ալ խեղճ ողորմելի արարած մ՚է. մեղք է այդպէս բան մտածելը։ Թէ որ ուզէր միայն զղջալ՝ Աստուած իրեն կը ներէր. բայց կը վախեմ թէ ամենեւին պիտի չզըղջայ։

— Ես ալ ան կը փափագիմ որ չզըղջայ, ըսաւ Օննիկ. զինքը երկինքը չեմ ուզեր տեսնել։

— Կ՚աղաչեմ, պարոն Օննիկ, զիս մի՛ վշտացըներ. մէյմ՚ ալ այդպիսի մտածութիւններ մտքէդ մի՛ անցըներ։ Ան չարիքն որ ինքն ինծի ըրաւ՝ իրական չարիք մը չէ. մանաւանդ թէ արքայութեան դուռն առջեւս բացաւ։

Բայց այն անցողական ոյժը՝ զոր հոգեվարն իր տիրոջը որդին տեսնելով զգացեր էր՝ բոլորովին մարեցաւ, ինքզինքը կորսընցուց. աչուըները գոցուեցան և դէմքը խորհրդաւոր ու վսեմ կերպարանք մ՚առաւ, որ հանդերձեալ կենաց մօտենալուն նշանն է։

Շնչառութիւնն սկսաւ ծանրանալ ու դըժուարիլ, ու լայն կուրծքը կամաց կամաց կ՚ելլէր ու կ՚իջնէր։ Բայց կերպարանքին

վրայ պայծառ յաղթանակին նշանը տպաւորուեր էր։

— Մի... կրնայ... զմեզ... ի սիրոյն... Քրիստոսի... բաժնել, ըսաւ քթին տակէն տկար ձայնով մը՝ որ մահուան դէմ ուժաթափ կը կռուէր։

Եւ ծիծաղերես ննջեց զքունն յաւիտենական։

Ծննիկ կեցած տեղն անշարժ մնաց՝ կրօնական յարգութեամբ մը զգածուած։ Իրեն համար այն որջը սրբազան տեղ մ'էր. և երբոր ելաւ որ ննջեցելոյն աչուըները գոցէ՝ մէկ մտածութեամբ միայն սիրտը լեցուեր էր, զոր իր հին բարեկամը պարզութեամբ մ'իրեն ըսեր էր. —Ի՜նչ մեծ բան է քրիստոնեայ ըլլալը։

Յանեւը դառնալով՝ տեսաւ որ Լըկրի դառնացած կերպով մը հոն կեցեր է։ Բայց մահուան այս սրտաշարժ տեսարանը երիտասարդին բնական տաքութիւնը չափաւորեր էր, որով այն մարդուն դէմ գծկամակութիւն միայն զգաց, և նայեցաւ որ կըրցածին չափ քիչ խօսքով անոր հետ բանը լմնցընէ։

Ուստի իր թափանցող աչուըներն անոր վրայ անկելով՝ ըսաւ.

— Դու ո՛րչափ որ կրցար՝ ուզած վաստակդ այս մարդէս հանեցիր, դիակին համար ի՞նչ կ'ուզես։ Կը փափագիմ զինքն ասկէ տանիլ ու պատուով թաղել։

— Ես մեռած սեւերը չեմ ծախեր, ըսաւ Լըկրի անտարբերաբար. քեզի ըլլայ, ուր կ'ուզես և ինչպէս որ կ'ուզես տար թաղէ։

— Ծօ՛ տղաք, ըսաւ մէկէն Օնիկ իշխանական կերպով մը՝ երկու երեք սեւերու որ հոն կեցեր էին, ձեռք տուէք ինծի որ սա մարմինը կառքս տանիմ. ձեզմէ մէկն ալ ինծի բահ մը ճարէ։

Գիրիներէն մէկը վազեց բահ մը գտնելու. մէկալ երկուքն ալ Օնիկին օգնեցին մեռելին մարմինը կառքը տանելու։

Օնիկ ամենևին ուշ չըրաւ Լըկրիին՝ որ հոն կեցեր էր. թէպէտ և ան ալ արուած հրամաններուն ընդդիմութիւն մը չըրաւ, և հոն կեցած՝ կեղծեալ անտարբերութեամբ մը կը սուլէր, և մինչև կառքը հեռերնին գնաց։

Օնիկ կառքին նստարանն հանեց, ու վերարկուն փռելով՝ մարմինը մէջը պլլեց։ Ետքէն Լըկրիին դարձաւ ու ինքզինքը քոնելով մը ըսաւ.

— Այս քու անլուր անգթութեանդ վը-րայ ես դեռ քեզի բան մը չըսի, վասն զի հիմայ ոչ ժամանակն է և ոչ տեղը։ Բայց, պարոն, այս անպարտ արեանս վրէժխնդրութիւն պիտի ըլլայ. ես պիտի բողոքեմ այս սպանութեանս համար. և ճամբուս վրայ առաջին դատաւորին որ հանդիպիմ՝ զքեզ իրեն պիտի ամբաստանեմ։

— Հա՜, հա՜, հա՜, գնա ի՞նչ կ'ուզես ըրէ, ըսաւ Լըկրի արհամարհանօք՝ մատուըները կոտրտելով։ Շատ զուարճալի բան մը կ'ըլ-լայ. ի՞նչ ապացոյց ունիս. վկադ ո՞վ է։

Ծնիկ աղէկ ըմբռնեց այս արհամարհա-նացս էութիւնը. կալուածներուն մէջ մէկ ճերմակ չկար, և հարաւային կողմի դա-տաստաններուն մէջ սևերուն վկայութիւնը բանի մ'ալ չի գար։ Իրեն այնպէս կ'երևար թէ նոյն միջոցին երկինք պիտի բացուի ու իրեն բողոքանաց արդարութեան պիտի վկայէ, սակայն երկինքն ալ լռեց։

— Ի՞նչ ալ ըլլայ, վրայ բերաւ Լըկրի, մեռած սևի մը համար այսչափ շփոթութիւն հանել չէր արժեր։

Այս խօսքերս կարծես թէ վառօդին կը-րակ տուին. համբերութիւնը Քէնդըքեցի ե-րիտասարդներուն տրուած առաքինութիւն չէ։

Օննիկ այս խօսքիս կրակ կտրեցաւ, և Լըկըրին քթին բերնին ուժով մը զարնելն ու անիկայ գետին փռելը մէկ ըրաւ։

Մարդիկ կան՝ որոնք ան ատեն վրադ համարումն կ'առնուն՝ երբոր քեզմէ ապտակ ուտեն. զարկ գետին պառկեցուր, մէկէն կը սկսին զքեզ յարգել։ Այսպիսեաց մէկն ալ Լըկըրին էր. որ գետնէն ելլելով ու վրայի հագուստներուն փոշիները թօթուելով, ուշադրութեամբ Օննիկին ետևէն կը նայէր, և բերանը չբացաւ՝ ինչուան որ կառքն աչքէն աներևութացաւ։

Կալուածներէն դուրս Օննիկ քանի մը ծառերով պարսպարուած աւազէ բլրակ մը տեսաւ, Թովմասին գերեզմանն հոն փորել տուաւ։

— Վերարկուն հանե՞նք, հարցուցին սեւերն՝ երբոր գերեզմանը պատրաստուեցաւ։

— Չէ, չէ. անով թաղեցէք զինքը։ Ափսո՜ս, ասկէ աւելի բան չեմ կրնար տալ քեզի, խե՜ղճ Թովմաս։

Մարմինը գերեզման դրին, ու վրան հողով ծածկեցին. և երբոր բոլոր փոսը լեցուեցաւ, վրան կանանչ խոտ ալ շարեցին։

— Բաներնիս լմնցաւ, ա՛լ կրնաք երթալ, ըսաւ Օննիկ՝ սևերուն ձեռքերնին մէյմէկ արծաթի դրամ դնելով։

Բայց անոնք տարակուսած կեցեր իրեն կը նայէին։

— Թէ որ, պարոն, բարեք մ'ընէիր և զմեզ գնէիր՝ ի՞նչ կ'ըլլար, ըսաւ անոնցմէ մէկը։

— Ամենայն հաւատարմութեամբ հրամանքիդ կը ծառայենք, ըսաւ ուրիշ մը։ Հոս մեծ նեղութեան մէջ ենք, պարոն, շնորհք մ'ըրէ զմեզ գնէ։

— Չեմ կրնար, չեմ կրնար, պատասխանեց Օննիկ՝ ցաւօք սրտի զանոնք արձակելով. անկարելի է։

Խեղճ մարդիկը տրտում տխուր ելան գնացին։

Ան ատեն Օննիկ խեղճ Թովմասին գերեզմանին առջեւ ծունր դրաւ.

— Աստուած յաւիտենական, կանչեց, զքեզ վկայ կը կոչեմ, որ այս վայրկեանէս սկսեալ պիտի ջանամ և կրցածս պիտի ընեմ որ այս անիծեալ գերութիւնն իմ հայրենիքէս վերցընեմ։

Մահարձան մ'ալ չկայ՝ որ այն ծերունի Թովմասին գերեզմանին տեղը ցուցընէ. բայց մահարձանն ի՞նչ բանի կու գայ. մի՞թէ իրեն փրկիչը փառօք եկած օրը չի՞ կրնար գտնել զինքն ու անմահութիւն զգեցընել և ընտրելոց կարգը դասաւորել։

Մի՛ լայք վրան. այսպիսի մահ մը պէտք չէ որ մարդուս լացը շարժէ։ Աստուծոյ մեծագոյն փառքը՝ չէ թէ իր ամենակարողութեամբ միայն կը փայլի, այլ նաև իր առ մարդիկ ունեցած սիրովն ու քաշած չարչարանքներովը։ Երանելի են անոնք որ իրեն նմանելու կը ջանան, և խաչերնին առած՝ համբերութեամբ ետևէն կ'երթան։ Ատոնց համար է Աւետարանին մէջ գրուածը. Երանի սգաւորաց, զի նոքա մխիթարեսցին։

## ԳԼՈՒԽ ԽԲ.

Որբուականի մը ճշմարիտ պատմութիւնը.

Նոյն ժամանակները և քանի մը կարգէ դուրս պարագաներէ շարժեալ՝ Լըկրիին գերիներուն մէջ ուրուականի խել մը պատմութիւններ կը քալէին։

Իրարու ականջէն վար կը պատմէին թէ կէս գիշերուան ատենները. ցորենոցին սանդուղներէն վար ու նաև բոլոր տանը մէջ ոտնաձայն կը լսուէր։ Ջուր տեղը գաւթին դուռը բանալիով կը կղպէին. ուրուականը կա՛մ ան էր՝ որ քովն ուրիշ բանալի ունէր, և կա՛մ թէ հին անյիշատակ ժամանակներէ

ի վեր ուրուականաց տրուած արտօնութեամբ՝ կղպանքին ծակէն անցնելով՝ ամենայն ազատութեամբ բոլոր տանը մէջ պտըտելու կ՚ելլէր։

Սակայն ամէնքը միաբան չէին թէ ինչ կերպարանքով կ՚երևար այս ուրուականը. և պատճառն ալ այն է, որ ինչպէս սևերուն սովորութիւնն է (և գուցէ ճերմակներուն մէջ ալ այս սովորութիւնս ունեցողներ գտնուին), երբոր ուրուականն երևնար՝ աչուրնին կը գոցէին, գլուխնին վերմակին տակը կը խօթէին։ Ուստի ամէն մարդ գիտէ թէ երբոր աչուըներն իրեն պաշտօնը չեն կատարեր, ընդհակառակն երևակայութեան աչուըները նոր գործունէութիւն մը կ՚ունենան և աւելի կը սուրնան․ անոր համար այլևայլ կերպարանք կու տային ուրուականին իրարմէ շատ տարբեր, սակայն ամէնքն ալ կը միաբանէին ըսելու թէ ճերմակ պատանքի մէջ պլլուած էր։

Խեղճ գերիները ոչ հին պատմութիւն կարդացեր էին, և ոչ ալ Շէյքսբիրի ըսածը գիտէին, որ «Այն ցաւոց օրերը, կ՚ըսէ, մեռելներն իրենց պատանքին մէջ պլլուած՝ Հռովմայ փողոցները կը պտըտէին»։

Սևերուն և այս երևելի հեղինակներուն

այս բանիս վրայ միաբանելնին հոգեխօսութեան[1] մեծ պարագայ մ'է, զոր ընդհանրապէս քնաշրջիկներուն և մասնաւորապէս հարցուկներու կը յանձնենք։

Ի՛նչ և իցէ, ստոյգն այն է՝ որ իրաւցընէ գեշերուան մթութեան մէջ՝ երկայնահասակ ուրուական մը Լըկրիին տանը չորս դին կը պտըտէր, դռներէն կ'անցնէր, խուցէ խուց կը մտնէր, մէյմը կ'երևար, մէյմը կ'աներևութանար, և այն անբնակ սրահը կ'երթար կը կորսուէր՝ ուր որ էր ցորենոցի սանդուղը. առաւօտը կ'ելլէին կը նայէին որ բոլոր դռները գոց են ու բանալիներով կղպուած։

Անկարելի բան էր՝ որ այս գաղտուկ խօսակցութիւններս Լըկրիին ականջն ալ չըհասնէին, և ո՛րչափ ալ զգուշանային որ անիկայ այս բաներս չլսէ, այնչափ անոր ե-

1. Հոգեխօսութիւնն Ամերիկա 1847ին սկսաւ, ու հիմայ Եւրոպա ալ շատ տարածուած է. ու վրան շատ գրուածներ ալ ելան. ինչուան նաև Հոգեխօսական օրագիրներ, հոգւոց հարցուկներու (Medium) հետ ըրած խօսակցութիւնները կամ Հոգեկան յայտնութիւնները հասարակաց հաղորդելու համար։ Հեղինակին հեգնական կերպը կը ցուցնէ ըստ բաւականին թէ ինչ համարմունք ունի ինքն Հոգեխօսութեան վրայ, զոր իրաւամբ Դիւահարցութիւն կրնայինք կոչել, որովհետև կախարդութեան ամէն երևոյթները կը ցուցնէ։

ընակայութիւնը կը տաքնար։ Սկսաւ սոխորականէն աւելի օղի խմել, յոխորտալ ու ցորեկները սոսկալի հայհոյել. բայց գիշերները գէշ գէշ երազներ կը տեսնէր, և իր տաքցած ըղեղով՝ աչքին այլևայլ բաներ կ'երևային, որոնց վախէն գլուխը բարձէն չէր կրնար վերցընել։

Թովմասին Թաղման իրիկունը՝ Լըկրի մօտի քաղաքը կերուխումի գնացեր էր. և հանդէսը լմըննալէն ետև յոգնած դադրած ուշ ատեն տուն դարձաւ, դուռը կրկին կղպեց ու բանալին գրպանը դրաւ և այնպէս անկողին մտաւ։

Ցիրաւի, շատ բան պէտք է որ մարդս կարենայ սիրտը հանդարտ բռնել. և որչափ ալ որ աշխատի խղճմտանաց ձայնը լռեցընել, անիկայ անգութ ու անողորմ հիւր մ'է, և անզգամին սրտին մէջ ամենևին չի հանգչիր։ Ո՜վ անմիտ, բանալիներով կը կղպես դուռդ ուրուականաց դէմ, չե՞ս գիտեր թէ ծոցդ այնպիսի ուրուական մը կը կրես, որուն հետ չես համարձակիր մինակ մնալ, և խառնիճաղանճ աղաղակներէն աւելի զօրաւոր ձայն մը կը հնչէ ներսի դիէդ՝ վերջին դատաստանի փողոյն նման։

Բայց Լըկրի դրան ետևը ախոռ մ'ալ

գրաւ. և զարթուցիչ ժամահարն ալ անկող-նոյն վրայ՝ գլխուն վերևը կախեց, ու ատըր-ճանակներն ալ քովը առաւ. ետքէն պատու-հանները քննեց նայեցաւ թէ արդեօք աղէկ գոցուած էին, և հայհոյելով անկողինին ինկաւ։

— Հիմայ թէ որ կ՚ուզեն, կանչեց, թող գան սատանաներն ու իր արբանեակները։

Լըկրի շուտ մը քնացաւ, վասն զի յո-գնած էր, և խոր քնացաւ. բայց երազին մէջ ահաւոր ստուեր մը տեսաւ, ու վրան վախ մը պատեց։ Առաջ կարծեց թէ մօրը պատանքը կը տեսնէ. սակայն Գէսսին էր որ այս պատանքը վրան առեր էր, և կը բա-նար ու կը գոցէր։ Խառնաձայն աղաղակ մը, հեծութիւն մը կը լսէր. և սակայն կը զգար թէ դեռ կը քնանար, և կը ջանար որ արթըննայ։ Ուստի կէս մ՚արթընցաւ. բայց հիմայ աւելի յայտնի կը տեսնէր որ խուցը կը մտնէին, դուռը կը բացուէր կը գոցուէր. իսկ ինքն անկողնոյն մէջ անշարժ մնաց։ Վերջապէս ելաւ նստաւ ու սոսկաց. վասն զի դուռը բաց էր, ձեռք մը ներս կ՚երկըն-նար. ու կանթեղն ալ մարեցաւ։

Լուսինն ալ ամպի մը մէջէն աղօտ ու նուաղ լոյս մը ձգեր էր։ Լըկրի սպիտակ բան մը տեսաւ որ աչքին առջևէն անցաւ,

որուն վրայ պատանքի թեթեւ շրշիւնն անգամ լսեց։ Ստուերը դէպ իրեն կախուեցաւ, ու խորհրդաւոր եւ տխուր ձայնով մը երեք անգամ կրկնեց. «Եկուր... եկուր... եկուր...»։

Երբոր ինքն անկողնոյն մէջ անշարժ քար դարձեր էր, ու վրան պաղ քրտինք մը իջած՝ կը նայէր, ստուերին աներեւոյթ եղաւ։ Բայց ե՞րբ, ի՞նչպէս եւ ուսկի՞ց անցեր էր ստուերը։ Լըկրի ցատքեց ելաւ անկողնէն ու դէպ ի դուռը վազեց, հրեց, տեսաւ որ ամուր կղպուած էր. սարսափէն մարեցաւ գետինն ինկաւ։

Ա՛լ անկէ ետեւ Լըկրի բոլորովին ինքզինքը խմելու տուաւ. ոչ վայելչութիւն եւ ոչ զգուշութիւն նայեցաւ. կրցածին չափ յուսահատաբար կը խմէր։

Քիչ ատենէն ձայն ելաւ բոլոր երկրին մէջ թէ Լըկրի հիւանդ է եւ մեռնելու մօտեցեր է։ Իր անկարգ վարքովը այն սարսափելի հիւանդութեան տիրացեր էր, որ այս աշխարհէս հանդերձեալ կենաց կարապետն էր։ Մէկն ալ չէր համարձակիր այս մահացու հիւանդին խուցն ոտք կոխելու. անդադար կը պոռար կը կանչէր, եւ վրան կատաղութիւն եկած ժամանակ՝ խիղճն այն-

պիսի երազներով կը տանջուէր, որ քովէն եղողները կը զարհուրէին։ Մահուան անկողնոյն մէջէն կը տեսնէր դիմացը կեցած այն անողորմ ու անողոքելի ստուերն, որ անդադար կը կրկնէր. «Եկուր... եկուր... եկուր...»։

Զարմանալի զուգադիպութեամբ մը՝ նոյն առաւօտը՝ որ Լըկրի աղջի գիշերն այն ահաւոր տեսիլքը տեսեր էր, տանը դրսի դուռը բաց էր, և գերիներէն ոմանք կ՚ըսէին թէ երկու ճերմակ ուրուականներ տեսան, որոնք գիշերուան խոր խաւարին ատեն՝ տանը դիմացի ճամբէն անցնելով՝ դռնէն դուրս ելան։

Արևն ելլելու վրայ էր։ Գէսսի և Եմմէլինա քաղքէն քիչ մը հեռու՝ ծառերու շուքին տակը կը հանգչէին։

Գէսսին քրէօլ սպանիացի կանանց պէս բոլորովին սև հագուեր էր. գլխարկին վըրայէն խիտ ու բանած եզերքներով քող մը ձգեր էր որ դէմքը չճանչցուի։ Ինչպէս որ այս երկու փախստականները մէջերնին խօսք դրեր էին՝ Գէսսի քրէօլ խաթուն մը ձևացեր էր, Եմմէլինան ալ իրեն աղախինը։

Գէսսի պզտիկուց ազնուական ընկերութեանց մէջ մեծցած ըլլալով՝ բնականապէս

անոնց լեզուն, անոնց կերպն ու վարմունքն աղէկ առեր էր. ասկէ զատ՝ մրայի ոսկեղէն ու ակնեղէն քանի մը զարդարանքներն ու մաքուր հագուստներն ամէն տարակոյս կը փարատէին։

Վերջին անգամն որ Գէսսի Լըկրիին հետ քաղաք իջաւ, դիտեր էր որ քաղքին դրան մօտ սնտուկ ծախող մը կայ. ուստի գնաց անկէ ճամբու գեղեցիկ սնտուկ մը կնեց, և խանութպանէն մարդ մ'ուզեց որ սնտուկը շալկած տանէն բերէ։

Այս կերպով տակը ձգած՝ սնտուկը բռնող ծառան և Եմմէլինան՝ որ ճամբու պարկն ու քանի մը մանր բաներ ձեռքը բռներ էր, ազնուական խաթունի մը պէս՝ մաքուր պանդոկ մը մտաւ։

Պանդոկին մէջ առաջին դիմացն ելլողն Օնիկ Չէլպին եղաւ, որ հոն շոգենաւուն ելլելուն կը սպասէր։

Գէսսի ցորեննոցին լուսամուտէն այս երիտասարդը տեսեր էր, որ Թոլմասին մարմինն առած կը տանէր. և ասոր Լըկրիին տուած վերջին բարևին՝ սիրուն ուրախութեամբ լեցուեր էր. բաց ասկէ, ուրուականի կերպարանքով ըրած գիշերային արշաւանքներուն ժամանակ՝ պերինէրէն ասոր

ով ըլլալն և Թովմասին հետ ինչ վերաբերութիւն ունենալն իմացեր էր։ Եւ տեսնելով որ ան երիտասարդն ալ իրեն պէս շոգենաւուն կը սպասէր՝ շատ ուրախացաւ։

Գէսսիին հագուստէն ու շարժմունքներէն և ձեռքի ճոխ քսակէն՝ պանդոկին մէջ մէկն ալ վրան պզտի կասկած մը չունեցաւ։ Սովորաբար մարդիկ երբոր կը տեսնեն որ մէկն աղէկ կը վճարէ, շատ դժուար է որ վրան կասկածի երթան։ Այս բանս Գէսսի աղէկ գիտնալով՝ առաջուցմէ հարկաւոր դրամը ճարեր էր՝ Լըկրիին գզրոցը պարպելով։

Երեկոյեան դէմ՝ երբոր շոգենաւն հասաւ, Օննիկ Շէլպի՝ Քէնդըրքեցւոց բնիկ ազնիւ քաղաքավարութեամբ՝ Գէսսիին ձեռք տուաւ նաւն ելլելու. և ամէն կերպով ջանաց որ անոր աղէկ խուց մը տան։

Գէսսի հիւանդ ձևանալով՝ Կարմիր գետին վրայի բոլոր ճամբորդութեան ժամանակ խցիկէն դուրս չելաւ. աղախինն ալ ամէն հոգ, ամէն խնամք կը ցուցընէր վրան։

Երբոր Միսիսիբի մտան՝ Օննիկ իմանալով որ այն օտարական խաթունն ալ իրեն պէս գետէն վեր պիտի ելլէ՝ ըսաւ որ եթէ կ'ուզէ՝ իրեն համար ալ խցիկ մը բռնէ այն շոգենաւուն մէջ, ուր որ ինքը միտք ունէր

անցնելու, և ամէն կերպով պատրաստ է ձեռքէն եկած օգնութիւնն ընելու, և առողջութեանն ալ հոգ տանելու։

Ուստի այս կերպով մտան մեր ճանապարհորդները Ջինչինեադի անունով փառաւոր շոգենաւը, որ գետէն վեր պիտի ելլէր։

Գէսսիին առողջութիւնն ալ երթալով տեղն եկաւ. սկսաւ խցիկէն դուրս ելլել, հասարակաց սեղանը նստիլ։ Նաւուն մէջ ամէնքը սկսան այս կնկան վրայ խօսիլ, և ըսել թէ ատենով շատ գեղեցիկ եղած պիտի ըլլար։

Օննիկ առաջին անգամ որ այս օտարական խաթունիս կերպարանքը տեսեր էր, մտքին մէջ անորոշ նմանութիւն մը կը փնտռէր վրան ու չէր կրնար գտնել։ Ուստի առանց ուզելու՝ անդադար երեսը կը նայէր ու անոր ամէն շարժմունքները կը դիտէր։ Գէսսի ալ սեղանի վրայ և խցիկին դրանը առջև նստած ատենը՝ կը տեսնէր որ այն երիտասարդն անդադար իրեն կը նայի. որով սկսաւ քիչ մ'անհանգիստ ըլլալ ու վախնալ որ չըլլայ թէ Օննիկ վրան կասկած մ'առնու. ուստի մտքէն որոշեց որ բոլոր իր պատմութիւնը տեղն ի տեղը Թոմմասին բարեկամին պատմէ, և ինքզինքն անոր ազնուասրտութեանն յանձնէ։

Օննիկ պատրաստ էր կարենից ըլլալու ամէն կերպով որուն որ ըլլայ, բաւական է թէ մէկը Լըիրինի հալուածներէն փախած ըլլար. այն անիծեալ երկրէն, զոր չէր կըրնար միտքը բերել և բերան առնուլ ու բարկութեամբ չլեցուիլ: Ուստի բոլոր սրտանց Գէսսիին ամէն մանրմութիւն ցըցուց, և արիաբար ամէն հեռևանք արհամարհելով, որ իրեն հասակին և հայրենեացը մեծ պատիւ կ'ընէ, խոստացաւ այս փախստականներուն վրայ հսկելու և կրցածին չափ զանոնք պաշտպանելու:

Գէսսիին քովի խցիկին ալ զաղղիացի խաթուն մը բռներ էր. որուն անունն էր Թու, հեռն ալ տասներկու տարուան պզտի գեղեցիկ աղջիկ մ'ունէր:

Թու խաթունն իմանալով որ Օննիկը Քէնդըքեցի է, փափագեցաւ հետը ծանօթանալու. և իր պզտի աղջկան շնորհալի կերպերը մտքի պրածը շուտով յաջողեցին. վասն զի այս պզտի աղջիկը շոգենաւուն տասնըհինգ օրուան ձանձրանալի ճանապարհորդութեան մէջ Օննիկին ժամանակ անցընելու նիւթ մ'էր:

Շատ անգամ Օննիկ աթոռն առած՝ Թու խաթունին խցիկին դրան քով կ'երթար կը

նստէր և երիայն բարակ հետը կը խօսէր։ Գէսսի ալ երբոր իր խցիկին վրան քով նըս֊տած կ'ըլլար, ասոնց ամէն խօսակցութիւնը կը լսէր։

Գաղղիացի խաթունը մանր մունր հարց֊մունքներ կ'ընէր Ծննիկին Քէնդըրքիի վրայ, ուր շատ տարիներով առաջ բնակեր եմ կ'ըսէր։ Ծննիկ շատ զարմացաւ երբոր լսեց որ այն խաթունն իրենց տանը մօտ կը բնակի եղեր, և զարմանքն աւելի շատցաւ՝ երբոր լսեց Քենտըրքիի և բնակիչացը վրայ անոր ունեցած տեղեկութիւնները։

— Ձեզի մօտ կը ճանչնամ, հարցուց օր մը Թու խաթունը, Հարրիս անունով մարդ մը։

— Այդ անունով ծեր մը կայ, պատաս֊խանեց Ծննիկ, որ մեր տնէն, շատ հեռու չէ. բայց մենք իրեն հետ շատ վերաբերու֊թիւն չենք ունեցած։

— Կարծեմ քովը շատ պերի ունենալու է, կրկնեց Թու խաթունը սիրտը եղած, որ զուր տեղը ծածկել կը ջանար։

— Հրամեր ես, խաթուն, ըսաւ Ծննիկ զարմանալով մը։

— Իրեն գերիներուն մէջ Գէորգ անու֊նով խառնածին մը լսե՞ր ես։

— Ի՜նչ ըսել է. Գէորգ Հարրիս. աղէկ կը ճանչնամ, վասն զի մօրս սենեկապան աղջիկան մը հետ կարգուեցաւ։ Բայց անիկայ փախաւ, հիմայ Գանատա է։

— Գանատա փախե՞ր է, կրկնեց ուրախութեամբ Գազզիացի խաթունը։ Օրհնեա՜լ ըլլայ Աստուած։

Օննիկ զարմացած երեսը կը նայէր, և երբ հարցընելու վրայ էր, Թու խաթունը ձեռուըներով երեսը գոցեց ու սկսաւ լալ։

— Անիկայ եղբա՜յրս է, ըսաւ։

— Հրամանքիդ եղբա՞յրն է անիկայ, խաթուն, կրկնեց Օննիկ։

— Հրամեր ես, ըսաւ կինը՝ գլուխը վեր վերցընելով ու արցունքները սրբելով. հրամեր ես, պարոն Շէլպի, Գէորգ Հարրիս իմ եղբայրս է։

— Իրա՞ւ կ'ըսես, խաթուն, պատասխանեց Օննիկ՝ աթոռը ետ ետ քշելով՝ որ աւելի լաւ դիտէ Թու խաթունը։

— Եղբայրս, կրկնեց, դեռ տղայ էր երբոր ես ծախուեցայ։ Զիս գնողը բարեսիրտ ու ազնուամիտ մարդ մ'էր, և հետը մէկտեղ Անգլիեան կղզիները տարաւ ու հոն զիս ազատեց և հետս ալ կարգուեցաւ։ Քիչ ատեն է որ ինքը մեռաւ, ես ալ հիմայ Քէն-

դըքի կ՚երթամ որ եղբայրս գտնեմ ու ազատեմ։

— Ես իր բերնէն լսեր եմ, ըսաւ Օննիկ, որ Եմիլիա անունով քոյր մ՚ունի եղեր, պոր Հարաւային կողմերը ծախեր են։

— Այնպէս է, աՀաւասիկ ես այն եմ, ըսաւ Թուխ խաթունը։ Բայց ինքն ինչպէս է, վրան բան մը գիտե՞ս։

— Գեղեցիկ երիտասարդ մ՚է, խաթուն, և դժբաղդութեան ծանր լծոյն տակն անգամ ամէնքը վրան մեծ Համարում ունէին իր մտքին արժանութեանն ու բարի վարքին Համար։ Ես ամէն բան տեղն ի տեղը գիտեմ, խաթուն, վասն զի մեր ընտանեաց մէջ կարգուեցաւ։

— Իսկ առած կի՞նը, Հարցուց անձկանօք Թուխ խաթունը։

— Գանձ մ՚է. գեղեցիկ, բարեկամիտ, սիրելի և բարեպաշտ օրիորդ մ՚է. մայրս զինքը իր տղուն պէս կրթեց։ Աղէկ կարդալ, գրել, հաւ կարել, բան բանիլ գիտէր. անուշ ալ ձայն ունէր ու կ՚երգէր։

— Ձեր տո՞ւնը ծներ էր անիկայ։

— Ոչ, Հայրս Նոր-Օռլէան ճամբորդութիւն ըրած ատենը գներ էր զինքը՝ որ մօրս ընծայ մ՚ընէ. ան ատեն Հազիւ ութը տա-

նը. տարուան հար։ Հայրս ամենևին բան մը չէր ըսած թէ քանիի գներ էր. բայց մօտ ատեններս քանի մը հին թղթեր խառնելով՝ այն աղջկան գնուելուն դաշնագիրն ալ գտանք. շատ սուղի նստեր էր հօրս. անտարակոյս անոր հարգէ դուրս գեղեցկութեան համար պիտի ըլլայ։

Օննիկ կռնակը Գէասիին դարձուցած նստած ըլլալով՝ անոր դէմքին այլայլութիւնը և սաստիկ մտադրութեամբ իրեն ըսածներուն մտիկ ընելը չէր կրցած տեսնել։

Բայց այս խօսքիս վրայ Գէասին՝ Օննիկին թևէն բռնեց, և գոյնը նետած ու այլայլած կերպով մը հարցուց։

— Գիտե՞ս արդեօք թէ հայրդ այդ աղջիկն ուսկի՞ց գներ էր։

— Կարծեմ ծախողներուն գլխաւորը Սիմոն անունով մէկն է եղեր. գոնէ ես դաշնագրութեան թղթոյն վրայ այդ անունը տեսայ։

— Ո՜հ, տէր Աստուած իմ, հառաչեց Գէասի ու ինկաւ մարեցաւ։

Օննիկ ու Թու խաթունը զարմացած՝ բայց դեռ առանց ըմբռնելու այս մարելուն պատճառը, տեղերնէն ցատքեցին Գէասիին օգնելու։ Օննիկ ջրի շիշ մը ու երկու գաւաթ

կոտրեց, որ այսպիսի շփոթութեանց մէջ անհրաժեշտ բան մ'է. բոլոր հոն գտնուող խաթունները ալ լսելով որ մէկը մարեր է՝ անոր խցին դրան առջև ժողովեցան, և զանիկայ սթափելու կարելի եղած ամէն միջոցներն ի գործ դրին։

Գէսսի երբոր ինքիրեն եկաւ, երեսը պատին դարձուց ու աղու պէս սկսաւ լալ ու հեկեկալ։ Գուցէ դուք ալ, ո՛ ընթերցող խաթուններ, որ մայր եղեր էք, կարող էք մակաբերել թէ այս խեղճ կնիկն ինչ կը մըտածէր... դուք միայն կրնաք գուշակել։ Անշուշտ հիմայ հասկըցաւ որ Աստուած իրեն վրայ գթացեր էր, և թէ աղջիկը պիտի տեսնէ նորէն, ինչպէս ալ իրօք քանի մ'ամիս ետև տեսաւ ալ...։



## ԳԼՈՒԽ ԽԳ.

### Արգասիք

Մեր պատմութիւնն իր վերջն հասնելու վրայ է։ Օննիկ Շէլպի այս սրտաշարժ տեսարանիս վրայ սաստիկ զգածուած, աճապարեց որ Ելիզային գտնելուն դաշնագիրը Գէսսիին ձեռքն հասցընէ։ Վրայի թուականն և ստորագրողներուն անունները իր գիտցածներուն հետ բոլորովին համաձայն էին, ու ալ Ելիզան իր աղջիկն ըլլալուն վրայ տարակոյս չկար. բանը հիմայ զինքը Գանատա գտնելն էր։

Թու խաթունը և Գէսսի՝ իրենց բախտին այսպիսի կարգէ դուրս նմանութեամբ մէկ եղած՝ ելան մէկէն այս ազատութեան երկիրը գնացին։ Սկսան Գանատայի այն կողմերն այց ելլել, ուր որ սովորաբար փախըստական գերիները կ'ապաւինին, և Ամհէրստպէրկի քարոզիչը գտան, որ Գէորգն ու Ելիզան այս ասպնջական սահմաններն հասածնուն պէս՝ իր տունը ընդուներ էր, և անկէ իմացան որ այն պզտիկ ընտանիքն հիմայ Մոնրէալ կը բնակի։

Հինգ տարի անցեր էր որ Գէորգ ու Ելիզա ազատութիւն գտեր էին։ Գէորգ վարպետ մեքենագործի մը գործարանը մտեր էր աշխատելու, ուր աղէկ կը վաստկէր, և իր ընտանիքն հանգիստ կը պահէր. աղջիկ մ՚ալ ունեցեր էր, որ մօրն անուամբ Ելիզա կը կոչուէր։

Հենրիկն ալ մեծցեր էր ու դպրոց կ՚երթար, և օր աւուր մեծ յառաջադիմութիւն կը ցուցընէր ուսմանց մէջ։

Ամհերստպէրկի քարոզիչը՝ Թու խամթունին ու Գէասիին սրտաշարժ պատմութիւնը լսելով՝ չկրցաւ այս երկու կանանց աղաչանքին դէմ դնել, ու ելաւ հետերնին Մոնրէալ գնաց։

Մօտենանք հիմայ տանց հետ մէկտեղ՝ Մոնրէալին արուարձաններուն մէկուն մէջ՝ գեղեցիկ պզտի տուն մը։ Մութը կոխեր էր. կրակարանին բոցավառ կրակը զուարթ լոյս մը սփռեր էր, և թէյի սեղանին վրայ ճերմակ մաքուր փռոց մը սփռուած էր ընթրելու համար։

Խցին մէկ անկիւնն ալ ուրիշ գրասեղան մը կար՝ վրան կանաչ փռոց մը փռած, գրադարան մը դրած, ու կաղամար, գրիչ, խել մը թուղթ և ուրիշ հարկաւոր բաներ շա-

րած. ընտիր գրքերու պզտի հաւաքում մը կար հոն։ Հոս էր Գէորգին ուսման զբաղելու տեղը։

Բան սորվելու փափագը՝ որով գերութեան այն ծանր ու անտանելի վիճակին մէջ գողունի կարդալ գրել ուսեր էր, աւելի վառած էր՝ պարապութեան ժամերն իրեն մտքին մշակութեան նուիրելու։

Նոյն միջոցին գրասեղանին դիմացը նըստած՝ գրքէ մը բան կ'օրինակէր. զոր նոր կարդացեր լմնցուցեր էր։

— Ելիր, Գէորգ, ըսաւ Ելիզա. այսօր բոլոր օրը գուրան էիր։ Հիմայ ձեռքի գիրքըդ ձգէ, ու մինչև որ ես թէյը պատրաստեմ՝ եկուր քիչ մը խօսինք։

Պզտի Ելիզան ալ կարծես թէ մօրը միտքն հասկնալով, գլորտիկելով հօրը մօտեցաւ և կը ջանար անոր ծնկան վրայ ելլելու։

— Ահ, սա պզտի մուկը նայէ, ըսաւ Գէորգ՝ տղուն ու մօրը փափագանացը զիջանելով, ինչպէս որ ամէն հայր նոյնպիսի պարագայի մէջ կ'ընէ։

— Ապրի՛ս, ըսաւ Ելիզա՝ հացը կտրելով։

Ելիզա քիչ մը վրայ գրեր գիրցեր էր. առաջին մանկական կերպարանքը չունէր. մազերն ալ վայելուչ շուկեր էր, և այնչափ

գոհ էր իր վիճակին վրայ՝ որ ամուսին մը կամ մայր մը անկէ աւելի չէր կրնար փափաքիլ։

— Հենրի՛կ, հարցուց Գէորգ՝ ձեռքը տըղուն գլխուն վրայ դնելով, այսօր Թուաբանութեան դասդ ի՞նչպէս կատարեցիր։

Հենրիկ իր երկայն մազերը կորսնցուցեր էր, բայց դեռ մնացեր էին աչուըներուն աղուորութիւնը, գեղեցիկ ընքուիները, և այն լայն ճակատը, որ աշխուժով մը կը վառի՝ երբոր տղան պատասխան մը տալ կ'ուզէ։

— Ամբողջ կատարեցի մինակ, հայրիկ. և մարդ մ'ալ ինծի չօգնեց։

Ապրի՛ս, տղաս, ըսաւ Գէորգ. նայէ որ միշտ դու քեզմէ ջանք ընես ու աշխատիս։ Դուն հիմայ ամէն միջոց ունիս բան սորվելու ինչ որ քու հայրդ չէ՛ ունեցած։

Մէյմ'ալ նայիս դուռը զարկին։ Եղիզա վազեց բանալու։ — Ո՜, բարի եկար, հրամանքդ ալ հոս կու գաս եղեր, ըսելուն չըմնաց, վազեց Գէորգ ու Ամհէրստպէրկի քարոզիչը սիրով ընդունեցաւ։ Եղիզա այն երկու խաթուններուն մէյմէկ աթոռ տուաւ, և հրամցուց որ նստին։

Հոս ճշմարտութեան սիրոյն համար այս

ալ ըսենք, որ բարեսիրտ քարոզիչը մաքէն պատրաստեր էր որ պզտի յառաջաբանութեամբ մը բանին էութիւնն անոնց իմացընէ, և ճամբան այն երկու խաթուններն յորդորեր էր՝ որ իր մաքի դրած կարգադրութենէն դուրս բան մը չընեն։ Հիմայ ասկէ իմացէք թէ ի՛նչ տհաճելի բան եղաւ այն խեղճ մարդուն հետևեալ պարագան։

Նշան տուաւ այն երկու խաթուններուն որ նստին, և ինքն ալ թաշկինակը հանեց բերանը սրբելով կը պատրաստուէր կարգաւորեալ կերպով յառաջաբանն սկսելու. մէյմ՚ալ յանկարծ Թ՚ու խաթունն ամէն կարգադրութիւն ոտքի տակ առնելով, նըստած տեղէն ցատքեց ու յանկարծ Գէորգին վիզը պըլլուեցաւ կանչելով.

— Ո՛վ Գէորգ, զիս չե՞ս ճանչնար. ես քու Եմիլիա քոյրդ եմ։

Գէսսի ինքզինքը թողած՝ հանդարտ նստեր էր. և ինքն՝ իրեն մասն աղէկ կը ձևացընէր, թէ որ նոյն միջոցին պզտիկ Ելիզան աչքին չզարնէր։ Հասակը, դէմքը, գծագրութիւնը, դանդրաւոր մազերը, վերջապէս պզտի աղջկան ամէն շարժմունքներն՝ իր աղջկան պզտիկութիւնը միտքը ձգեցին, և մինչդեռ ինքը այս զգացմանց ալէկոծութեան մէջն

էր, պզտիկ աղջիկը զարմացած երեսը կը նայէր։ Գէսաի ա՛լ չկրցաւ զիմանալ, ցատքեց տղան գիրկն առաւ ու սրտին վրայ սեղմեց, և սիրտն եկած սկսաւ հեկեկալով ըսել.

— Ո՛հ, իմ սիրունիկ զաւակս, ես քու մայրդ եմ։

Այս պարագաներուն անկարելի եղաւ առաջուցմէ հաստատուած կարգադրութիւնն ի գործ դնելու։ Այսու ամենայնիւ պատուական քարոզիչն ամէն ջանք ըրաւ, ու զիրենք քիչ մը լռեցուց ու հանդարտեցուց, և իր պատրաստած յառաջաբանական ճառը խօսեցաւ անոնց, որով այնչափ զգացուեցան՝ որ ամէնքն ալ սկսան լալ ու հառաչել։

Ետքը ամէնքն ալ ծունկ չոքեցան, և պատուական քարոզիչը վրանին աղօթք մ'ըրաւ. վասն զի սրտի այնպիսի սաստիկ հեծութիւններ ու հառաչանքներ կան՝ որ մարդս ուրիշ կերպով չի կրնար մխիթարուիլ՝ բայց եթէ զանոնք առ սիրայ Աստուածը վերառաքելով։ — Երբոր ոտք ելան, այս ընտանեաց անդամներն՝ որ այսպիսի հրաշալի կերպով մէկզմէկ գտեր էին՝ իրարու հետ պագտուեցան, սրտերնին բոլորովին Աստուծոյ սիրով և անոր վրայ վստահութեամբ

վարուած էր, որ զիրենք այնչափ վտանգներէ ազատելով՝ հրաշալի կերպով այսպէս բերաւ մէկտեղ ժողվեց։

Գանատա փախչող գերեաց մէջ բնակող քարոզչի մ՚օրագրութեան մէջ այնպիսի զարմանալի պատմութիւններ կը պատմուի՝ որ կարդացողը կարծէ թէ առասպել է։ Այն հիւրընկալ ափունքը, նման յաւիտենական ափանց, շատ անգամ վկայ են բազմաթիւ տառապելոց ուրախութեան, որոնք երկայն տարիներ մէկմէկու կորուսած ողբալէն ետև՝ հոն զիրար կը գտնեն։ Այն ինչ անպատմելի բան է այս փախստական գերեաց զգացած ուրախութիւնն՝ երբոր նորեկ փախստական մը կը տեսնեն. վասն զի ամէնքն ալ յոյս կ՚ունենան նոր նոր տեղեկութիւններ անկէ առնելու, մէկն իր մօրը վրայ. մէկալն իր քրոջ վրայ, ուրիշ մ՚իր տղուն վրայ, զորոնք գերութեան դառն ստուերը դեռ աչքերնէն ծածկեր է։

Ասոնց մէջ այնպիսի դիւցազնական գործեր կը պատմուին՝ որ ո՜ւր կը մնան վիպասանութիւններն։ Ասոնցմէ շատերն իրենց ազատութիւնը ձեռք ձգելէն ետև, իրենք զիրենք կամովին նեղութեանց ու մահուան վտանգներու ենթարկելով, և հազար ու մէկ

գժուարութեանց յաղթելով՝ կ՚երթան գերու-
թեան ձեռքէն կը յափշտակեն իրենց մայրն,
իրենց կինն, իրենց քոյրը։

Քարոզիչ մը մեզի կը պատմէր թէ փախըս-
տական երիտասարդ մը՝ որ երկու անգամ
ձեռք ինկեր էր ու սարսափելի տանջանքներ
կրեր էր, նորէն ձգեր փախեր է եղեր. այս
կարիճ երիտասարդս բարեկամներուս մէկուն
կը գրէ թէ երկրորդ փորձ մ՚ալ ընելու կը
պատրաստուի, որպէս զի իր քոյրն ալ ա-
զատէ։ — Այս մարդս ի՞նչ պէտք է կոչել.
յանցաւո՞ր թէ մանաւանդ դիւցազն։ Տեսնենք,
սիրելի ընթերցող, թէ որ քու քոյրդ ըլլար՝
դու ի՞նչ կ՚ընէիր։ Ուստի հիմայ թէ որ սիրտ
կ՚ընես՝ մեղադրէ այս կարիճ երիտասարդը։

Բայց մենք նորէն մեր բարեկամներուն
դառնանք, որոնք յանկարծական ուրախու-
թիւններնէն զգացած այլայլութենէն ետև՝
աչուընին կը սրբէին։ Սեղանին չորս բոլորը
շարուեր նստեր էին, և ուրախ զուարթ կը
խօսակցէին։ Գէսսի ալ պզտի Ելիզան գիրկն
էր առած, և երբեմն երբեմն այնպէս կուրծ-
քին վրայ կը սեղմէր, որ տղան զարմա-
նալով երեսը կը նայէր. իսկ ընդհակառակն
Գէսսի բերանն ամուր կը գոցէր՝ որ պզտի
աղջիկը ձեռքի շաքարեղէններէն մէջը չխօ-

թէ, և կ'ըսէր թէ ինքը շաքարեղէնէ աղէկ բան ունի։

Երկու երեք օրէն ետև այնպիսի փոփոխութիւն մ'եղեր էր Գէսսիին վրայ որ անկարելի էր զինքը ճանչնալ. այն յուսահատ ու լքեալ կերպարանաց վրայ քաղցրութիւն մը փոխանակեր էր. կարծես թէ ընտանեկան սիրոյն ամէն զգացմունքները միանգամայն սրտին մէջ նորոգուեր էին, և երկայն ատեն ճնշուած մայրենի գութն ու սէրը նոր կերպով մը արծարծեցան։ Իրաւ, պզտի Եղիզային վրայ աւելի սէր կը զգար՝ քան թէ բուն իր աղջկան վրայ, վասն զի այն աղեկին վրայ նայելով՝ իր աղջըկան մանկութիւնը միտքը կու գար, և ան ատենի ունեցած սիրոյն յիշատակները կը վերանորոգուէին։ Բայց պզտի աղջիկը ծաղկեայ կապ մ'էր մօրն ու աղջկան մէջ, և անով մէկզմէկ ճանչցան ու զիրար սիրեցին։ Եղիզային հաստատուն ու բանաւոր բարեպաշտութիւնն՝ մօրը հիւանդագին ու ընկճեալ հոգւոյն գեղեցիկ առաջնորդ մ'եղաւ. և Գէսսի բոլոր սրտանց ինքզինքն այս փրկաւէտ ազդեցութեանց տակ ձգելով՝ բարեպաշտ և եռանդուն քրիստոնեայ մ'եղաւ։

Թու խաթունն իմացուց եղբօրը թէ ինքն

ինչ վիճակի տէր է։ Էրկանը մահուամբ՝ գեղեցիկ ժառանգութիւն մ'ընկեր էր իրեն, զոր անշահասիրութեամբ՝ այս նոր ընտանեաց վայելման նուիրեց, և երբոր հարցուց եղբօրը թէ ինչ բան կրնայ ընել անոր,

— Ամէն բանէ առաջ ինծի կրթուելու միջոց մը տուր, Եմիլիա, պատասխանեց Գէորգ. պզտիկուց ի վեր միշտ այս եղած է սրտիս փափագը. անկէ ետև Աստուած ես կը հոգամ։

Գէորգին միտքը գրած նպատակին աղէկ հասնելու համար, մէջերնին որոշեցին որ քանի մը տարի Գաղղիա երթան անցընեն. որով բոլոր այս ընտանիքը նաւ մտան Գաղղիա երթալու նպատակաւ. Եմմէլինան ալ հետերնին առին։

Նաւուն մէջ՝ նաւապետին երկրորդը՝ Եմմէլինային գեղեցկութիւնը տեսնելով և անոր մաքուր սիրուն ու ամօթխածութիւնը սիրելով՝ վրան աչք ձգեց, ու երբոր նաւահանգիստ հասան՝ հետը պսակուեցաւ։

Գէորգ չորս տարիի չափ Փարիզու համալսարանն յաճախեց, և իր յարատև ջանքով միտքը շատ զարգացաւ։

Գաղղիոյ քաղաքական շփոթութեանց պատճառաւ վերջը նորէն այս ընտանիքս Ամերիկա դարձան։

Իսկ Գէորգին գաղափարաց ու զգացմանց վրայ տեղեկութիւն մ'առնելու համար, որ ա՛լ անկէ եւս կրթեալ մարդ մ'եղեր էր. Հեռաւեալ նամակը մեզի լաւ կը բացատրէ, զոր իր բարեկամներէն մէկուն գրեր էր։

### Սիրելի Բարեկամ

Դեռ տարակուսի մէջ եմ թէ արդեօք ինչ ճամբայ պիտի բռնեմ։ Ինչպէս որ դու ալ կ'ըսես, իրաւ, իմ ու իմիններուս վրայ սևութեան քիչ նշան կայ, այնպէս որ դիւրաւ կրնանք այս երկրիս ճերմակներուն կարգն անցնիլ, և անտարակոյս կ'ըլնէի ալ թէ որ հարկ մ'ըլլար, բայց շիտակն ըսելով ճերմակ համարուելու ամենևին փափագ չունիմ։

Մօրս ցեղն աւելի կը սիրեմ՝ քան թէ հօրս ցեղը. ես հօրս աչքին գեղեցիկ շան մը կամ թէ շատ շատ կարիճ ձիու մը չափ կրնայի արժել, անկէ աւելի յարգ չէր կրնար ունեցած ըլլալ. իսկ խեղճ ու թշուառ մօրս որդին էի. և թէպէտ այն անգութ վաճառման օրէն եւս՝ մէյմ'ալ չտեսայ ես զինքը, բայց գիտեմ որ անիկայ զիս ինչուան վերջին շունչը սիրեր է. գիտեմ կ'ըսեմ՝ վասն զի

սիրտս կը վկայէ։ Ո՛հ, երբոր անոր բոլոր քաշածները կը մտածեմ, երբոր իմ քաշած նեղութիւններս միտքս կը բերեմ, և իմ գիւղացիական կնոջս վիշտերն ու տառապանքները կը յիշեմ, և քրոջս Նոր-Օրլէանի մէջ վաճառուիլը կը մտածեմ, Աստուած զիս պահէ ատելութեան հոգիէն, բայց մէկն ալ չզարմանայ թէ որ բերնէս լսելու ըլլայ թէ Ամերիկացի մը համարուելու փափագ մը չունենալէս զատ, և ոչ իսկ կ'ուզեմ Ամերիկացւոց մէջ խառնուիլ։

Ես կ'ուզեմ այս ափրիկեցի հարըստահարեալ ու ընկճեալ ցեղէն համարուիլ. և ափրիկայ է իմ մօրս ցեղը, այս է իմ փընտռած բաժինս ու ժառանգութիւնս. և թէ որ փափագելու բան մ'ալ ուզէի ունենալ, այս է՝ որ կը ցանկայի աւելի սև ըլլալ քան ինչ որ եմ։

Սրտիս մի միայնակ փափագն է՝ ափրիկեան ազգայնութիւն մը տեսնել. կը ցանկամ սևերէ կազմուած ազգ մը տեսնել, որ իրեն յատուկ գոյութիւնն ունենայ, ինքնագլուխ և ինքնիշխան։ Այնպիսի ազգ ո՛ւր կրնամ գտնել։ Հայիթիի կղզւոյն մէջ չեմ գտներ ուզածս. վասն զի հոն նորածին ժողովրդեան մը հարկաւոր աշխոյժը չկայ։

վտակ մը իւր աղբիւրէն բարձր չի կրնար ելլել։ Հայտիի բնակչաց ցեղն աւրուած ու թոյլ ցեղ մ՚էր, ուստի քանի մը դար պէտք է իրեն՝ ձեռքին տակն եղած ցեղին քաղաքակրթութեան ծայրն ելլելու։

Հապա ո՞ւր դարձընեմ աչուըներս։

Ափրիկէի ծովեզերքներուն վրայ Հասարակապետութիւն մը կը տեսնեմ, այնպիսի Հասարակապետութիւն մը՝ որ ընտիր մարդիկներէ կազմուած է, որոնք իրենք բնական կարճութեամբ ու հաստատուն կամքով՝ շատ բանի մէջ իրենք իրենց գերութեան վիճակէն ելան բարձրացան։ Եւ անանօրինելի տկարութեան մը առաջին շրջանը կարել անցնելէն ետև, հիմայ այս Հասարակապետութիւնն երկրիս երեսը ազգ մ՚եղաւ, այնպիսի ազգ մը՝ զոր Գաղղիա ու Անգլիա ալ ճանչցան։ Ահա ես հոն կ՚ուզեմ երթալ. հոն կը գտնեմ ես իմ ազգս։

Ես աղէկ գիտեմ որ հիմայ ամէնքնիդ ալ ինծի դէմ պիտի ելլէք. բայց նախ քան զիս մեղադրելու՝ այս ալ մտիկ ըրէք։ Երբոր ես Գաղղիա էի՝ իմ Ամերիկա եղած ցեղիս պատմութիւնը մեծ հետաքրքրութեամբ քննեցի, և գերեհանից ու գաղթականութեան կողմնակցաց վէճերը մանրամանաբար դի-

տեցի, և իբրև հեռաւոր հանդիսատես մը՝ այնպիսի տպաւորութիւն մ'ըրին վրաս, որ գուցէ եթէ մէջն ըլլայի՝ այնչափ տպաւորութիւն չէին ըներ։

Ես գիտեմ որ Լիպերիայի[1] վրայ շատ շատ բան խօսեր ու մտածեր են. և թէ զմեզ հարստահարողներն անիկայ ձեռքերնին զէնք մ'առին մեզի դէմ։ Տարակոյս չկայ թէ զանիկայ պատրուակ առնելով՝ մեր ազատութիւնն ուշացուցին. բայց իմ դիմացս խնդիրն այս է. միթէ չկա՞յ Աստուած մը՝ որուն խորհուրդներն մարդուս խորհուրդներէն շատ վեր են. և միթէ չի՞ կրնար ըլլալ որ Աստուած՝ այն մարդկային խորհուրդները ձեռք առնելով՝ մեզի օգուտ հանէ ու նոր ազգ մը հաստատէ։

Հիմայ ազգ մը ծնանելու համար մէկ օր ալ բաւական է. աչքը բացած չբացած՝ ինքզինքը հասարակապետական ու քաղաքականացեալ կենաց մեծամեծ սկզբանց տէր կը գտնէ. իրեն նոր գիւտ գտնելու ամենեւին հարկ չկայ, այլ եղածները գործա-

1. Լիպերիա Ափրիկէի մէջ Ամերիկայէն փախած սևերու գաղթականութեամբ ձևացեալ պզտի Հասարակապետութիւն մ'է, Նիկրիտիոյ ծովեզերքը, որոնք մեծ խնամքով Ամերիկայէն ազատած գերիները կ'ընդունէին ու անոնց կ'օգնէին։

գրելու։—Ուրեմն ամենայն զօրութեամբ մէկ-մէկու հետ միանանք, և նայինք թէ ինչ կրնանք ընել այս նոր ասպարիզիս մէջ, և թէ այս երևելի Ափրիկէին ընդարձակ ցամաքին վրայ ձեռքերնէս ինչ կու գայ, որ մեզի ու մեր որդւոց գիմացը բաւէ։ Մեր ազգն այն ափունքներուն վրայ քաղաքականութիւն ու քրիստոնէութիւն պիտի տանի. զօրաւոր Հասարակապետութիւններ պիտի հաստատէ հոնտեղ, որ արևադարձներու բուսոց պէս շուտ մ'աճելով՝ ապագայ պարերուն մեծ պատիւ պիտի ընեն։

Գուցէ պիտի ըսես թէ ինչո՞ւ եղբարքդ գերութեան լծոյն տակ կը թողուս։—Այդ բանը քեզմէ չեմ կարծեր։ Թէ որ ես կենացս մէջ ժամ մը, կամ վայրկեան մ'ալ միայն մոռնամ զանոնք. Աստուած ալ զիս մոռնայ։ Բայց ես հոս անոնց ինչ կրնամ ընել։ Կրնա՞մ ես անոնց շղթաները խորտակել. առանձին մարդ մը՝ ես այն իշխանութիւնը չունիմ։ Բայց մէյմը թող զիս որ երթամ այն ազգին հետ միանամ, որ քիչ ատենէն ազգաց խորհրդարանին մէջ ինքն ալ ձայնը պիտի բարձրացընէ, ան ատեն կրնանք բան մը խօսիլ։ Ամբողջ ազգ մը անհատ մարդէ մ'աւելի կրնայ իր ցեղին ի-

իրաւունքները պահանջել, իրեն կարծիքն ը-
սել և իր անդամոց պաշտպանութիւնը խընդ-
րել։

Թէ որ բոլոր Եւրոպա ազատ ազգերու մեծ դաշնակցութիւն մը ձևանայ, ինչպէս որ հաստատուն յոյս ունիմ որ կ'ըլլայ, թէ որ օր մը ծառայական վիճակէն և ուրիշ ամէն ընկերական անիրաւ ու հարստահարիչ անհաւասարութիւնները վերցուին աշխարհիս վրայէն, թէ որ ուրիշ ամէն ազգերն ալ Գաղղիոյ ու Անգղիոյ պէս՝ մեր անկախութիւնը ճանչնան ու հաւանին, ան ատեն մենք ալ ազգաց այս մեծ դաշնակցութեան կը դիմենք, և մեր ընկճեալ ու թշուառ ցեղին իրաւունքներն անոր առջև կը դնենք։ Անկարելի բան է որ Ամերիկայ պէս ազատ և քաղաքականութեամբ զարգացեալ աշխարհ մը չուզենայ ջնջել իր մէջէն այսպիսի կեղտ մը, որ զինքն ուրիշ ազգաց առջև անպատիւ կ'ընէ, և որ թէ՛ իրեն և թէ՛ իր գերիներուն համար վնասակար բան է։

Բայց ինծի պիտի ըսես թէ մեր ցեղն ամենևին նոյն իրաւունքն ունի Ամերիկեան Հասարակապետութեան հետ միանալու, ինչ իրաւունք որ ունին Իռլանտացիք, Գերմանացիք և Շուէտները։ Այո՛, անանկ է. ան

անուանի է. ան ատեն պէտք էր որ ազատ ըլլայինք միանալու, և մեր անձնական կարողութեանը համեմատ պաշտօններու հասնէինք, առանց ցեղին և կամ մորթին գունին նայելու. և անոնք որ մեզի այս իրաւունքը կը զլանան՝ կ'ուրանան նաև իրենց մարդկային հաւասարութեան վրայ ունեցած սկզբունքնին։ Մանաւանդ պէտք էինք իրաւունք ունենալ այս բանս հոս ընելու. և մենք ամէն մարդու հաւասարակաց իրաւունքն ունենալէն զատ, ունինք նաև երկար ատեն ընկճուած ազգի մ'իրաւունքներն՝ եղած չարեաց հատուցմունք մը պահանջելու։ Բայց ես ատոնցմէ մէկն ալ չեմ ուզեր. ինծի հայրենիք մը, ազգ մը կ'ուզեմ։ Ինծի կ'երեւայ թէ ափրիկեցի ցեղը մասնաւոր յատկութիւններ ունի, որոնք քաղաքականութեամբ ու քրիստոնէութեամբ կրնան զարգանալ. և թէպէտ այս յատկութիւնները Անկլօ—Սաքսոն ցեղին յատկութիւններէն տարբեր են, գուցէ ժամանակաւ բարոյապէս կարենան շատ աւելի գերազանցել զանոնք։

Աշխարհիս բախտը կռիւներու և շփոթութեանց ատեն առ ժամանակ մի Անկլօ—Սաքսոն ցեղին ձեռքն էր անցեր։ Իր անընկճելի և ուժով բնաւորութեամբ՝ այս պաշտօնիս շատ

յարմար էր։ Բայց իբրև քրիստոնեայ կը տեսնեմ որ առջևնիս նոր կեանք մը բացուելու վրայ է, և կարծեմ թէ մեզմէ շատ ալ հեռու չէ։ Ազգաց հիմակուան շարժմունքները ու խլրտմունքները՝ երկանց ցաւերուն կը նմանին, ուսկից խաղաղութիւն և ընդհանուր եղբայրակցութիւն պիտի ծնանին։

Ես հաստատապէս կը յուսամ որ Ափրիկէի զարգացումը բոլորովին քրիստոնէական զարգացում պիտի ըլլայ. և եթէ այս ցեղը հրամայելու և տիրելու բնաւորութիւն չունի, գոնէ կրօնամիտ, ազնուասիրտ ու ներող է։ Անիրաւութեան և բռնութեան բովուն մէջ փորձուած, պէտք է սիրուն անխզելի կապանօք կապէ այն վսեմ վարդապետութեան հետ՝ որ սէր ու ներումն կը քարոզէ, անով միայն կրնայ յաղթել, և ինքը միայն կրնայ բոլոր Ափրիկէի մէջ այս վարդապետութիւնս տարածել։

Կը խոստովանիմ որ ես այս ազնուական ճգանց հասնելու բաւական կարողութիւն չունիմ. երակներուս մէջ քալող արեան կէսը Սաքսոնիացւոց տաք ու կրակոտ արիւնն է։ Բայց քովս Աւետարանի ճարտար քարոզիչ մ'ունիմ, որ է ազնուասիրտ կինս։ Երբոր ես կը մոլորիմ, անիկայ իր

քաղցրութեամբ զիս շիտակ ճամբուն վրայ կը հանէ, և կը յիշեցընէ ինծի թէ մեր ցեղն ի՛նչ քրիստոնէական պաշտօնի կոչուեր է։ Իբրև քրիստոնեայ Հայրենասէր և իբրև քարոզ քրիստոնէական կրօնից՝ Հայրենիքս կը գտնամ, իմ սիրուն Հայրենիքս, փառաւորն Ափրիկէ։

Գլուխդ բռնկեր է՝ պիտի ըսէք ինծի և թէ ի՛նչ բանի ձեռք կը զարնես՝ չես գիտեր։ Բայց ես ամէն բան մտածեր ու կարգի դրեր եմ։ Ես Լիպերիա կ՚անցնիմ, ոչ թէ մտածածին Եղիշեան դաշտ մը գտնելու հոն, այլ աշխատութեան դաշտ մը. ուր կ՚ուզեմ երկու ձեռքովս աշխատիլ, ամենայն եռանդեամբ աշխատիլ և ամէն տեսակ դժուարութեանց և արգելքներու յաղթել, և մինչև ցմահ աշխատիլ։ Ահաւասիկ իմ նպատակս, և կը յուսամ թէ ինծի դէմ մեծ ընդդիմութիւն մը չեմ գտներ։

Այս որոշմունքս հրամանքիդ ինչպէս ալ երևայ, կը խնդրեմ որ զիս բարեկամութենէդ չզրկես, և գիտցած ըլլաս որ ի՛նչ բանի ալ ձեռք զարնելու ըլլամ՝ միշտ իմ ազգիս սիրոյն համար պիտի ընեմ։

ԳԷՈՐԳ ՀԱՐՐԻՍ

Քանի մը շաբաթէն ետև՝ Գէորգ իր կինն, երկու տղաքը, քոյր ու զոքանչն հետն առած՝ դէպի Ամերիկէ ճամբայ ելաւ։ Թէ որ չսխալինք՝ քիչ ատենէն վրան շատերը պիտի խօսին։

Իսկ մեր պատմութեան մէկալ անձանց վրայ նոր բան մը չունինք ըսելու. բայց միայն մէկ երկու խօսք Օֆէլիային ու Դորսին կ'ընծայենք, և վերջին բարև մ'ալ Օննիկ Շէլպիին կու տանք առանձին գլխով մը։

Մեծ զարմացմամբ յարգոյ Որոշիչ Ժողովոյն, զոր Նոր-Անգղիացին մեր հարքը կը կոչէ, Օֆէլիա Դորսին հետն առած՝ Ուերմընդ բերաւ։ Առջի բերան այն հարց իրենց կարգաւորեալ տնտեսութեան մէջ այս յաւելուածը կարգէ դուրս և անհարկաւոր դատուեցաւ. բայց Օֆէլիա այնպիսի մեծ ջանքով առ աշակերտուհին ունեցած պարտքերը կատարեց՝ որ քիչ ատենէն Դորսի բոլոր անեցոց ու մերձաւորաց աչքը մտաւ ու անոնց սիրելի եղաւ. երբոր չափահաս եղաւ՝ իր յօժար կամօք մկրտուեցաւ ու քրիստոնեայ եղաւ։ Անկէց ետև այնչափ բարակամտութիւն, եռանդն, գործունէութիւն ու փափաք ցըցուց բարիք ընելու՝ որ մինչև յանձն առին ու ղրկեցին Ափրիկէի մէկ կողմը իբրև

աղջկանց դաստիարակ ղրկեցին. և կը լսենք որ իր բնիկ գործունէութիւնն ու եռանդը կը բանեցընէ իր երկրին ազգը կրթելու։

Անտարակոյս շատ մայրեր պիտի ախորժին լսելու որ Թու խաթունին ջանքով ու հնարքով՝ վերջապէս Գէսսիին որդին ալ գտնուեցաւ։ Այս աշխոյժ պատանին մօրմէն քանի մը տարի առաջ փախեր էր, և հայրասահարելոց հիւսիսակողման բարեկամաց քով ապաւէն ու կրթութիւն գտաւ։ Քիչ ատենէն ինքն ալ Աֆրիկէ կ'անցնի մայրը գտնելու։

## ԳԼՈՒԽ ԽԴ

### Ազատարար

Օննիկ Շէլպի պարզ նամակ մը գրեր էր մօրը, որուն մէջ կ'իմացընէր թէ հաւանականաբար ո՛ր օր կը հասնի։ Սիրտ չէր ըրած իր հին բարեկամին մահուան վրայ խօսք բանալու. Թէպէտ շատ անգամ փորձեր էր գրելու, բայց սրտին ցաւէն՝ գրածն առաջ չէր կրցած տանիլ, և արցունքներով թրջըւած թուղթը պատռելով՝ դուրս էր ցատքեր, որպէս զի այն տխուր յիշատակը մտքէն փարատի։

Օննիկին հանելու օրը բոլոր տունն ոտքի վրայ էր։

Եղանակն աշնան վերջերն ըլլալով՝ Ճէլպի խաթունն իր գեղեցիկ զարդարուն խուցը՝ կրակին դիմացն անցած կը տաքնար։ Երեկոյեան սեղանը դրին, արծաթեղէններն ու ապակեղէնները կը փայլէին վրան. և մեր հին բարեկամուհի Թլոյէն ալ հոն կեցած՝ կարգի դնելու հետ էր։

Հնդկաստանի կերպասէ նորաձև հագուստ մը հագած, և ճերմակ մաքուր գոգնոց մը մէջքը կապած, ու օսլաղօծ (գօլալը) բեհեզ մ'ալ գլուխը պլլած, սև ու փայլուն երեսին վրայ զուարթութիւն մը կ'երևար, և ամէն ջանք կ'ընէր հոն աշխատութիւն մը գտնելու, որպէս զի խաթունին հետ խօսելու երկայն առիթ ունենայ։

— Լաւ, աղէկ է. ինքն այսպէս չ'ուզեր, ըսաւ. իր սիրած տեղը դրի զինքը. կրակին մօտ կ'ուզէ ինքը. պարոն Օննիկ միշտ տաք տեղ նստիլ կը սիրէ։ Նայէ, նայէ. Սըլլի ինչու այն գեղեցիկ թէյամանը դուրս չէ հանած, զոր Պ. Օննիկ հրամանքիդ համար գնեց այս Ծննդեան։ Երթամ բերեմ։ Խաթուն, նամակ առի՞ր պարոն Օննիկէն, հարցուց Թլոյէ անձկանօք։

— Հրամեր ես առի, Քլոյէ. պատասխանեց Շէլպի խաթունը. բայց մէջը բան չկար. միայն այս կ'ըսէր թէ հաւանականաբար այս իրիկուն կը հասնի։

— Իմ ծերուկիս վրայօք բան մը չի՞ գրեր, կրկնեց Քլոյէ՝ թէյի գաւաթները կարգաւորելով։

— Չէ, բան մ'ալ չի գրեր, Քլոյէ. միայն այսչափ կ'ըսէ թէ ինքն անձամբ պիտի գայ պատմէ։

— Այո՛, այո՛, ես պարոն Ճոնիկին աղէկ կը ճանչնամ, իրեն սովորութիւնն է գրով բան չ'ուզեր ըսել, կ'ուզէ ամէն բան բերնով պատմել։ Եւ իրաւցընէ, խաթուն, իմ խելքս չի հասնիր, ճերմակներն ի՞նչպէս ատչափ բան կը գրեն. վասն զի գրելը ծանր, աշխատալի բան մ'է։

Շէլպի խաթունը ժպտեցաւ։

— Ինծի այնպէս կու գայ, վրայ բերաւ Քլոյէ, որ ծերուկս տղաքը պիտի չըկարենայ ճանչնալ. հապա Բոլլին, նայէ հիմա ի՞նչպէս մեծցեր, գեղեցիկ ու ազնիւ աղջիկ մ'է եղեր։ — Զինքը խոհակերոցը թողուցի որ կրակին վրայի կարկանդակներուն ուշ դնէ. ճիշդ նոյն կարկանդակը շինեցի զոր ծերուկս կը սիրէր. այն օրն ալ

րաւունքները պահանջել, իրեն կարծիքն ըսել և իր անդամոց պաշտպանութիւնը խընդրել:

Թէ որ բոլոր Եւրոպա ազատ ազգերու մեծ դաշնակցութիւն մը ձևանայ, ինչպէս որ հաստատուն յոյս ունիմ որ կ՚ըլլայ, թէ որ օր մը ծառայական վիճակն և ուրիշ ամէն ընկերական անիրաւ ու հարստահարիչ անհաւասարութիւնները վերցուին աշխարհիս վրայէն, թէ որ ուրիշ ամէն ազգերն ալ Գաղղիոյ ու Անգղիոյ պէս՝ մեր անկախութիւնը ճանչնան ու հաւանին, ան ատեն մենք ալ ազգաց այս մեծ դաշնակցութեան կը դիմենք, և մեր ընկճեալ ու թշուառ ցեղին իրաւունքներն անոր առջև կը դնենք: Անկարելի բան է որ Ամերիկոյ պէս ազատ և քաղաքականութեամբ զարգացեալ աշխարհ մը չուզենայ ջնջել իր մէջէն այդպիսի կեղտ մը, որ զինքն ուրիշ ազգաց առջև անպատիւ կ՚ընէ, և որ թէ՛ իրեն և թէ՛ իր գերիներուն համար վնասակար բան է:

Բայց ինծի պիտի ըսես թէ մեր ցեղն ամենևին նոյն իրաւունքն ունի Ամերիկեան Հասարակապետութեան հետ միանալու, ինչ իրաւունք որ ունին Իռլանտացիք, Գերմանացիք և Շուէտները: Այո՛, անանկ է. ան

անուանկ է. ան ատեն պէտք էր որ ազատ ըլլայինք մեռնելու, և մեր անձնական կորըսնութեանն համեմատ պաշտօնները համնէինք, առանց ցեղին և կամ մորթին գունին նայելու. և անոնք որ մեզի այս իրաւունքը կը զլանան՝ կ'ուրանան նաև իրենց մարդկային հաւասարութեան վրայ ունեցած սկզբունքնին: Մանաւանդ պէտք էինք իրաւունք ունենալ այս բանս հոս ըսելու. և մենք ամէն մարդու հաւասարակաց իրաւունքն ունենալէն զատ, ունինք նաև երկար ատեն ընկճուած ազգի մ'իրաւունքներն՝ եղած չարեաց հատուցմունք մը պահանջելու: Բայց ես ասոնցմէ մէկն ալ չեմ ուզեր. ինծի հայրենիք մը, ազգ մը կ'ուզեմ: Ինծի կ'երևայ թէ ափրիկեցի ցեղը մասնաւոր յատկութիւններ ունի, որոնք քաղաքականութեամբ ու քրիստոնէութեամբ կրնան զարգանալ. և թէպէտ այս յատկութիւններն Անկլօ—Սաքսոն ցեղին յատկութիւններէն տարբեր են, գուցէ ժամանակաւ բարոյապէս կարենան շատ աւելի գերազանցել զանոնք:

Աշխարհիս բախտը կռիւներու և շփոթութեանց ատեն առ ժամանակ մի Անկլօ—Սաքսոն ցեղին ձեռքն էր անցեր: Իր անընկճելի և ուժով բնաւորութեամբ՝ այս պաշտօնիս շատ

յարմար էր։ Բայց երբ քրիստոնեայ կը տեսնեմ որ առջեւնիս նոր կեանք մը բացուելու վրայ է, և կարծեմ թէ մեզմէ շատ ալ հեռու չէ։ Ազգաց հիմնական շարժմունքներն ու խլրտմունքներն՝ երկանց ցաւերուն կը նմանին, ուսկից խաղաղութիւն և ընդհանուր եղբայրակցութիւն պիտի ծնանին։

Ես հաստատապէս կը յուսամ որ Ափրիկէի զարգացումը բոլորովին քրիստոնէական զարգացումն պիտի ըլլայ. և եթէ այս ցեղը հրամայելու և տիրելու բնաւորութիւն չունի, գոնէ կորովամիտ, ազնուասիրտ ու ներող է։ Անիրաւութեան և բռնութեան բովուն մէջ փորձուած, պէտք է սիրոյն անխզելի կապանօք կապէ այն վսեմ վարդապետութեան հետ՝ որ սէր ու ներումն կը քարոզէ, անով միայն կրնայ յաղթել, և ինքը միայն կրնայ բոլոր Ափրիկէի մէջ այս վարդապետութիւնը տարածել։

Կը խոստովանիմ որ ես այս ազնուական ճգանց հանելու բաւական կարողութիւն չունիմ. երակներուս մէջ քալող արեան կէսը Սաքսոնիացւոց տաք ու կրակոտ արիւնն է։ Բայց քովս Աւետարանի ճարտար քարոզիչ մ'ունիմ, որ է ազնուասիրտ կինս։ Երբոր ես կը մոլորիմ, անիկայ իր

քաղցրութեամբ զիս շիտակ ճամբուն վրայ կը հանէ, և կը յիշեցընէ ինծի թէ մեր ցեղն ինչ քրիստոնէական պաշտօնի կոչուեր է։ Իբրև քրիստոնեայ հայրենասէր և իբրև քարոզ քրիստոնէական կրօնից՝ հայրենիքս կը դառնամ, իմ սիրուն հայրենիքս, փառաւորն Ափրիկէ։

Գլուխդ բռնկեր է՝ պիտի ըսէք ինծի և թէ ինչ բանի ձեռք կը զարնես՝ չես գիտեր։ Բայց ես ամէն բան մտածեր ու կարգի դրեր եմ։ Ես Լիպերիա կ'անցնիմ, ոչ թէ մտացածին Եղիւսեան դաշտ մը գտնելու հոն, այլ աշխատութեան դաշտ մը. ուր կ'ուզեմ երկու ձեռքովս աշխատիլ, ամենայն եռանդեամբ աշխատիլ և ամէն տեսակ դժուարութեանց և արգելքներու յաղթել, և մինչև ցմահ աշխատիլ։ Ահաւասիկ իմ նպատակս, և կը յուսամ թէ ինծի դէմ մեծ ընդդիմութիւն մը չեմ գտներ։

Այս որոշմունքս հրամանքիդ ինչպէս ալ երևայ, կը խնդրեմ որ զիս բարեկամութենէդ չզրկես, և գիտցած ըլլաս որ ինչ բանի ալ ձեռք զարնելու ըլլամ՝ միշտ իմ ազգիս սիրոյն համար պիտի ընեմ։

ԳԷՈՐԳ ՀԱՐՐԻՍ

Քանի մը շաբաթէն ետև՝ Գէորգ իր կինն, երկու տղաքը, քոյր ու զոքանչը հետն առած՝ դէպի Ափրիկէ ճամբայ ելաւ։ Թէ որ չսխալինք՝ քիչ ատենէն վրան շատերը պիտի խօսին։

Իսկ մեր պատմութեան մէկալ անձանց վրայ նոր բան մը չունինք ըսելու. բայց միայն մէկ երկու խօսք Օֆէլիային ու Դուբսիին կ'ընծայենք, և վերջին բարև մ'ալ Օննիկ Շէլպիին կու տանք առանձին գլխով մը։

Մեծ զարմացմամբ յարգոյ Որոշիչ Ժողովոյն, զոր Նոր–Անգղիացին մեր հարքը կը կոչէ, Օֆէլիա Դուբսին հետն առած՝ Ուերմընտ բերաւ։ Առջի բերան այն հարց իրենց կարգաւորեալ տնտեսութեան մէջ այս յաւելուածը կարգէ դուրս և անհարկաւոր դատուեցաւ. բայց Օֆէլիա այնպիսի մեծ ջանքով առ աշակերտուհին ունեցած պարտքերը կատարեց՝ որ քիչ ատենէն Դուբսի բոլոր տնեցուց ու մերձաւորաց աչքը մտաւ ու անոնց սիրելի եղաւ. երբոր չափահաս եղաւ՝ իր յօժար կամօք մկրտուեցաւ ու քրիստոնեայ եղաւ։ Անկէց ետև այնչափ բարեկամութիւն, եռանդն, գործունէութիւն ու փափաք ցըցուց բարիք ընելու՝ որ մինչև յանձն առին ու զինքն Ափրիկէի մէկ կողմը իբրև

աղջկանց դաստիարակ ղրկեցին. և կը լսենք որ իր բնիկ գործունէութիւնն ու եռանդը կը բանեցընէ իր երկրին ազգը կրթելու։

Անտարակոյս շատ մայրեր պիտի ախորժին լսելու որ Թու խաթունին ջանքով ու հնարքով՝ վերջապէս Գէօսիին որդին ալ գտնուեցաւ։ Այս աշխոյժ պատանին մօրմէն քանի մը տարի առաջ փախեր էր, և հայրը-ստահարելոց հիւսիսակողման բարեկամաց քով ապաւէն ու կրթութիւն գտաւ։ Քիչ առենէն ինքն ալ Ափրիկէ կ'անցնի մայրը գտնելու։

## ԳԼՈՒԽ ԽԴ

### *Ազատարար*

Օննիկ Շէլպի պարզ նամակ մը գրեր էր մօրը, որուն մէջ կ'իմացընէր թէ հաւանականաբար ո՛ր օր կը հասնի։ Սիրտ չէր ըրած իր հին բարեկամին մահուան վրայ խօսք բանալու. թէպէտ շատ անգամ փորձեր էր գրելու, բայց սրտին ցաւէն՝ գրածն առաջ չէր կրցած տանիլ, և արցունքներով թրջըւած թուղթը պատռտելով՝ դուրս էր ցատքեր, որպէս զի այն տխուր յիշատակը մտքէն փարատի։

Օննիկին հասնելու օրը բոլոր տունն ոտքի վրայ էր։

Եղանակն աշնան վերջերն ըլլալով՝ Շէլպի խաթունն իր գեղեցիկ զարդարուն խուցը՝ կրակին դիմացն անցած կը տաքնար։ Երեկոյեան սեղանը դրին, արծաթեղէններն ու ապակեղէնները կը փայլփլէին վրան. և մեր հին բարեկամուհի Քլոյէն ալ հոն կեցած՝ կարգի դնելու հետ էր։

Հնդկաստանի կերպասէ նորաձև հագուստ մը հագած, և ճերմակ մաքուր գոգնոց մը մէջքը կապած, ու օսլազօծ (գօլալը) բեհեզ մ'ալ գլուխը պլլած, սև ու փայլուն երեսին վրայ զուարթութիւն մը կ'երևար, և ամէն ջանք կ'ընէր հին աշխատութիւն մը գտնելու, որպէս զի խաթունին հետ խօսելու երկայն ատեն ունենայ։

— Լաւ, աղէկ է. ինքն այսպէս չ'ո՞ւզեր, ըսաւ. իր սիրած տեղը դրի զինքը. կրակին մօտ կ'ուզէ ինքը. պարոն Օննիկ միշտ տաք տեղ նստիլ կը սիրէ։ Նայէ, նայէ. Սըլլի ի՞նչու այն գեղեցիկ թէյամանը դուրս չէ հանած, զոր Պ. Օննիկ հրամանքիդ համար գնեց այս Ծննդեան։ Երթամ բերեմ։ Խաթուն, նամակ առի՞ր պարոն Օննիկէն, հարցուց Քլոյէ անձկանօք։

— Հրամեր ես առի, Քլոյէ. պատասխանեց Շէլպի խաթունը. բայց մէջը բան չկար. միայն այս կ՚ըսէր թէ հաւանականաբար այս իրիկուն կը հասնի:

— Իմ ծերուկիս վրայօք բան մը չի՞ գրեր, կրկնեց Քլոյէ՝ թէյի գաւաթները կարգաւորելով:

— Չէ, բան մ՚ալ չի գրեր, Քլոյէ. միայն այսչափ կ՚ըսէ թէ ինքն անձամբ պիտի գայ պատմէ:

— Այո՛, այո՛, ես պարոն Ճոնիկն աղէկ կը ճանչնամ, իրեն սովորութիւնն է գրով բան չ՚ուզեր ըսել, կ՚ուզէ ամէն բան բերնով պատմել: Եւ իրաւցընէ, խաթուն, իմ խելքս չի հասնիր, ճերմակներն ինչպէս ասչափ բան կը գրեն. վասն զի գրելը ծանր, աշխատալի բան մ՚է:

Շէլպի խաթունը ժպտեցաւ:

— Ինծի այնպէս կու գայ, վրայ բերաւ Քլոյէ, որ ծերուկս տղաքը պիտի չըկարենայ ճանչնալ. հապա Բօլլին, նայէ հիմա ինչպէս մեծցեր, գեղեցիկ ու ազնիւ աղջիկ մ՚է եղեր: — Զինքը խոհակերոցը թողուցի որ կրակին վրայի կարկանդակներուն ուշ դնէ. ճիշդ նոյն կարկանդակը շինեցի զոր ծերուկս կը սիրէր. այն օրն ալ

որ զինքը տարին՝ նոյն առաւօտն ալ նոյն կարկանդակը եփեր էր։ — Բարեբա՛ր Աստուած, ի՛նչ տագնապ էր այն օրուան քաշածս։

Այս խօսքիս պատասխան չտուաւ Ծէլպի խաթուն, ու խորունկ հառաչանք մ'արձակեց. որպէսոյն թուղթը առնելէն ետեւ սիրտը հանգիստ չէր, կը վախէր որ չըլլայ թէ անոր լակոնաբանութեան տակ դժբախտութիւն մը ծածկուած ըլլայ։

— Խաթո՛ւն, այն տոմսակները քանի՞ են, հարցուց Քլոյէ անձկութեամբ սրտի։

— Չորս են։

— Ուզեցի գիտնալ՝ որ ծերուկիս ցուցընեմ այն տոմսակները, զորոնք կարկանդակավաճառն ինծի տալու ատեն ըսաւ թէ, Քլոյէ՛, կ'ուզէի որ դեռ քիչ մը ժամանակ ալ քովս կենայիր։ Իսկ ես, շնորհակալ եմ, պարոն, ըսի, ես ալ կը փափաքէի կենալ. բայց ծերուկս քանի մ'օրէն պիտի գայ, խաթունին ալ առանց ինծի չի կրնար կենալ։ Ահա այսպէս պատասխան տուի անոր. շիտակը շատ ազնիւ մարդ մ'էր այն Ճոն պարոնը։

Քլոյէ շատ աղաչեր էր որ իրեն վարձք առած դրամատոմսերին ամբողջ պահուին, որ-

պէս զի ոտքէն երկանը ցուցընէ իբրև նշան իր ճարտարութեան. և Տէլպի խաժուժն ալ զինքը գող ընելու համար՝ ամենայն խնամքով պահեր էր զանոնք։

— Անտարակոյս, կրկնեց Քլոյէ, երկիս չկարենայ պիտի Բոլլին ճանչնալ։ Հինգ տարի է քան՛ որ զինքն առին մեզմէ տարին. ան ատեն դեռ Բոլլին պզտիկ էր, հազիւ թէ ոտք ելլեր էր։ Դեռ մտքէս չ'ելլեր, այն ի՛նչ վախ կը քաշէր ծերուկը՝ երբոր կը տեսնէր որ Բոլլին քալեմ կ'ըսէր ու գետին կը գլտորէր։

Մէյմ'ալ յանկարծ կառքի մը ձայն լըսուեցաւ։

— Պ. Օննի՛կն, Պ. Օննի՛կն է, կանչեց Քլոյէ պատուհան վազելով։

Տէլպի խաժուժն ալ մէկէն դուռը վազեց ու որդւոյն հետ պագպուեցաւ։ Բայց Քլոյէ զուր անդ մութին մէջ ուրիշ եկաւոր մ'ալ կը փնտռէր։

— Խե՛ղճ Քլոյէ, ըսաւ Օննիկ սիրան ելած՝ անոր սև ու բրտացեալ ձեռուըններէն բռնելով, հաւատա՛ որ բոլոր ունեցածս կու տայի թէ որ կարենայի զինքն ալ հետս բերել. բայց անիկայ լաւագոյն աշխարհք մը գնաց։

Այս խօսքիս Շէլպի խաթունը ցաւագին ճիչ մը փրցուց. բայց Քլոյէ ձայն չհանեց։

Մէկէն ներս մտան ուր որ սեղանն էր դրուած։ Եւ այն տամսակներն որոնց համար այնչափ կը պարծէր Քլոյէ, սեղանին վրայ փռուած կեցեր էին։

Քլոյէ ժողվեց զանոնք ու դողդոջուն ձեռքով մը խաթունին տուաւ ըսելով.

— Վա՜յ գլխուս, ա՛լ զասոնք չեմ ուզեր տեսնել, և ոչ ալ վրանին խօսիլ։ Ի՛նչ որ կը կասկածէի՝ եղաւ։ Այն անիծեալ կալուածներուն մէջ խեղճ ծերուկս ծախուեցաւ ու սպաննուեցաւ։

Այս ըսաւ Քլոյէ ու շիտակ դէպի դուռը գնաց. բայց Շէլպի խաթունն ետևէն վազեց ու քաղցրութեամբ ձեռքէն բռնելով՝ բերաւ քովը բազմոցին վրայ նստեցուց։

— Ո՛հ, իմ խե՛ղճ Քլոյէս, ըսաւ։

Իսկ Քլոյէ գլուխն իր խաթունին ուսին վրայ կռթընցընելով՝ սկսաւ լալ ու հեկեկալ։

— Ո՛հ, խաթուն, ներէ ինծի. սի՛րտս բեկաւ։

— Գիտեմ, գիտեմ, պատասխանեց Շէլպի խաթունն՝ աչուըներէն առատ արցունք թափելով. սիրտդ բեկեր է, և իմ ձեռքէս

բան չի գար․ բայց Յիսուսին յանձնէ, ինքն է որ բեկեալ սրտերը կը բժշկէ, և վշտացեալները կը մխիթարէ։

Քիչ մ՚ատեն լռութիւն պատեց ու ամէնքն ալ կու լային։ Վերջէն Օննիկ խեղճ կնկան քով նստելով ու ձեռուըները բռնելով՝ մէկիկ մէկիկ պատմեց սրտաշարժ պարզութեամբ մը էրկանը մահուան յաղթանակը, և կրկնեց՝ անոր սիրոյ վերջին խօսքերը։

Ամիս մը վերջը Շէլպիի տան բոլոր գերիները մեծ սրահը ժողուեր էին՝ որպէս զի իրենց դեռահասակ տիրոջը մէկ յայտարարութիւնը մտիկ ընեն։

Մէյմ՚ալ Օննիկ հոն երևցաւ ձեռքը փունջ մը թուղթ, և մեծ զարմանք ամենուն պատճառելով՝ անոնց իւրաքանչիւրին ազատութեան դաշնագիրը կարդաց ու ձեռուընին տուաւ։ Ամէնքն ալ սկսան լալ, կոծել և հառաչել։

Այսու ամենայնիւ անոնցմէ շատերն իրեն չորս կողմն առին և սկսան աղաչել որ զիրենք չարձակէ, ու կը խնդրէին որ իրենց ազատութեան թուղթն ետ առնու։

— Ասկէց աւելի ազատութիւն չենք ուզեր․ ինչ որ հիմայ կր վայելենք, կ՚ըսէին․

մենք հոս միշտ մեր ամէն պիտոյքն ունինք։ Ձենք ուզեր մենք այս տունը, այս տէրը, այս խաթունը թողուլ երթալ։

— Ո՛վ իմ սիրելի բարեկամներս, ըսաւ Օննիկ՝ վայրկեան մը լռեցնելով զանոնք, հարկ չէ որ դուք զիս թողուք երթաք, կալուածները մշակելու միշտ մարդ պէտք է. առաջուան պէս դարձեալ կրնաք կենալ։ Միայն թէ դուք, արք և կանայք, ազատ էք. մէջերնիս գին կը հաստատենք, և ես ձեր աշխատութեան վարձքը կը հատուցանեմ. և ձեր օգուտն այն կ'ըլլայ որ եթէ ես պարտքի տակ իյնամ կամ մեռնիմ, որ անկարելի բաներ չեն, դուք ազատ կ'ըլլաք, ծախուելու վախ չէք ունենար։ Ես իմ կողմանէս կ'ուզեմ զձեզ քովս պահել և ձեզի սովրեցընել թէ դուք այս ձեր իրաւունքներն ինչպէս կրնաք գործածել, ինչ որ անշուշտ մէկն ալ չէք գաներ որ ձեզի սովրեցընէ։ Կը յուսամ թէ աղէկ կը վարուիք հետս, ու ձեզի տուած դասերս հլութեամբ մտիկ կ'ընէք, և ես ալ իմ կողմանէս՝ Աստուծոյ շնորհքով՝ իմ պարտքերուս հաւատարիմ կ'ըլլամ և ամէն կերպով ձեր պարտքերը ձեզի կը սովրեցընեմ։ Արդ, բարեկամք իմ, աչուընիդ երկինք վերուցէք, և Աստուծոյ շնոր-

հակալ եղէք, որ՝ ազատութեան այս պար-գևը տուաւ ձեզի։

Մէջերնէն ծերունի կոյր գերի մը՝ որ սե-ւերուն նահապետն էր, առաջ անցաւ, և դողդոջուն ձեռուըները երկինք վերցընելով ըսաւ.

— Աստուծոյ շնորհակալ ըլլանք։

Մէկէն ամէնքն ալ ծնկան վրայ եկան։ Գոհաբանական երգ մը՝ երբեք այսպէս գը-ւարթ ու սրտաշարժ կերպով երկինք չէ ե-լած. Թէպէտ և երաժշտութեան եղանակներ, զանգակներու ձայներ և Թնդանօթներու ո-րոտմունք չկային հոս, այլ իրենց պարզ սրտին խորունկ հառաչանքներն անոնց տե-ղը փոխանակեր էին։

Ազօթքնին լմըննալուն պէս՝ ոտքի վրայ ելան, մէջերնէն մէկը երգ մը սկսաւ, զոր ամէնքն ալ կրկնեցին։

Աւասիկ սա՛ գեղազըւարթ,
Ահա քեզ օր փրկութեան.
Եկ, ո՛վ փրկեալըդ մեղապարտ,
Երկնից դըռունք քեզ բացան։

— Խօսք մ'ալ ունիմ ըսելիք. կրկնեց Օննիկ՝ շնորհակալութեան ձայները լռեցը-

նելով. մեր ազնիւ հին բարեկամն Աղբար Թովմասը կը յիշէ՞ք։

Հոս համառօտ մը Թովմասին մահը պատմեց, անոր վերջին բառերը տուաւ անոնց։

— Հոն իրեն գերեզմանին վրայ, սիրելի բարեկամք իմ, կրկնեց Օննիկ, երդուընցայ առաջի Աստուծոյ՝ որ քանի որ կարողութիւն ունիմ՝ բոլոր գերիները ազատեմ ու ա՛լ մէկ գերի մ'ալ չունենամ, որպէս զի չըլլայ թէ անոնցմէ մէկն ալ իր ընտանիքէն ու բարեկամներէ բաժնուելուն վտանգին մէջ իյնայ, և խեղճ Թովմասին պէս հեռաւոր երկիրներու մէջ թշուառաբար մեռնի։ Ուստի երբ ձեր ազատութեան վրայ կ'ուրախանաք, յիշեցէք որ այն ծեր Թովմասն է ձեր ազատութեան պատճառը, և անոր տեղ՝ դուք ալ երախտապէտ եղէք անոր կնոջն ու զաւակացը։ Քանի որ

## ԱՂԲԱՐ ԹՈՎՄԱՍԻՆ ՏՆԱԿԻՆ

վրայ կը նայիք՝ մտքերնիդ բերէք ձեր ազատութեան պատճառը, և անոր յիշատակը թող խրախուսէ զձեզ պարկեշտ և հաւատարիմ քրիստոնեայ ըլլալու։

# ԳԼՈՒԽ ԽԵ.

## Վերջաբան

Միացեալ Նահանգաց այլեայլ կողմերէն շատերն ինծի գրով հարցուցին թէ արդեօք այս պատմածներս իրա՞ւ են։ Հիմայ կ'ուզեմ հոս այս ամէն հարցմունքներուն պատասխան մը տալ։

Պատմութեանս մէջի այլեայլ պարագաներն՝ մեծ մասամբ վաւերական են, որոնցմէ շատերը հեղինակն իր աչքով տեսեր է կամ թէ իր սրտակից բարեկամներն իրեն պատմեր են։ Այս այլեայլ տեսարաններուն մէջ տրուած նկարագիրները մեր բարեկամներն ու մենք անձամբ դիտեր ենք, և մեր դերասաններուն բերանը դրուած խօսքերը բառ առ բառ ականջովնիս լսեր ենք և կամ մեր բարեկամները մեզի պատմեր են։

Ելիզայի պատկերը և իրեն բնաւորութեան նկարագիրը՝ գաղափարուած է ճշմարտութենէ։ Աղբար Թովմասին անկեղծ հաւատարմութեան շատ օրինակներ գիտենք։ Ամենէն ցաւալի և առասպելախառն երևցած տեսա-

բաններէն մէկ քանին և ամենէն սարսափելի պարագաներն՝ իրենց ճշմարիտ օրինակն ունին։ Ամենուն ծանօթ է Օհիոյ գետին սառոյցներուն վրայէն փախչող մօր մը պատմութիւնն ալ (Գլուխ ԺԹ). հեղինակին եղբայրն իր աչքովը տեսեր է, որ Նոր–Օռլէանի մէջ երևելի վաճառատան մը պանձապետն է. ինքն է որ Լըկրի հողատէրին նկարագիրն ալ մեզի տուաւ, որուն կալուածներուն այցելութեան գնացեր էր։ Նայէ այս մարդուն վրան ինչ կը գրէ. «Իրեն կռուփն ինծի շօշափել տուաւ, որ դարբնի սալի կը նմանէր և իրկաթագործաց մրճոյն պէս պինդ էր, և ըսաւ թէ սևերը ծեծելով փապարացեր է։ Երբոր անոր կալուածներէն դուրս ելայ՝ քիչ մ'ազատ շունչ կ'առնէի կու տայի. կարծես թէ ահագազանի մ'որջէն ինքզինքս ազատեցի»։

Իսկ Թօմասին ցաւագին մահուան նման դժբախտաբար շատ օրինակներ կան, և մեզմէ շատերը կրնան այս բաներուս վկայել։ Թէ որ մէկը մէյմը մտածէ թէ հարաւակողման դատաներուն մէջ իրաւաբանութեան սկզբունք մ'է՝ որ սև մը չի կրնար դատաստանի մէջ ճերմակի մը դէմ վկայութիւն տալ, ան ատեն դիւրաւ կրնայ ըմբռնել թէ

այնպիսի դիպուած ամէն տեղ և ամէն ատեն կրնայ պատահիլ, երբոր տիրուհի մը սրտին մէջ կիրքերն յաղթեն իրեն շահասիրութեան, ու գիմացն այնպիսի գերի մ'ելլէ՝ որ այնչափ արիութիւն ու սկզբունք ունենայ որ կարենայ անոր դէմ ընել: Գերւոյ կեանքն ուրիշ պաշտպանութիւն չունի՝ բայց եթէ տիրոջը բնաւորութիւնը: Երբեմն երբեմն հասարակաց ականջն այնպիսի պատմութիւններ կը հասնին՝ որ լսողը կը սոսկայ ու մազերը կը տնկուին. բայց այս պատմութեանցս տրուած մեկնութիւնները գուցէ աւելի սոսկալի են: «Իրաւ, կ'ըսեն, երբեմն երբեմն այսպիսի դիպուածներ պակաս չեն, բայց ասոնք բացառութիւններ են»: Թէ որ Անգղիոյ օրէնքներն այնպէս թոյլ տային արուեստաւորի մը՝ որ իր աշակերտը երբեմն երբեմն մինչև ի մահ տանջէր՝ առանց պատասխանի կանչուելու, արդեօք այսչափ անկարեկիր կ'ըլլայի՞ն: Արդեօք նոյնպէս կ'ըսէի՞ն՝ թէ «այսպիսի դիպուածներ հազիւ երբեք կը պատահին. ասոնք բացառութիւններ են»:

Կը յիշեն ամէնքն ալ Մարգարիտ (Լա Բէօլը) անունով նաւուն բռնուիլը. որով ա՛լ տարակոյս չի մնար խառնածին գեղեցիկ օրիորդներու վաճառքի հանուելուն: Հօ՛րմէն

անունով աղնիւ փաստաբանին այս պատճառաւ խօսած ճառին հետևեալ խօսքերը մէջ բերենք. «Այն եօթանասունըվեց անձանց մէջ, որոնք 1848ին Մարգարիտ անունով նաւով Գոլոմպիայէն փախչիլ ուզեցին, շատ մ'ալ գեղեցիկ ու կրթեալ աղջիկներ կային, որոնք իրենց վայելուչ կերպերնուն ու վարմունքներնուն համար՝ գերեվաճառաց աչքին գին չունէին։ Ասոնցմէ մէկն ալ էր Եղիսաբէթ Ռասէլ։ Ասիկայ գերեվաճառի մը ճիրանին տակն ընկաւ և Նոր-Օռլէան ծախուելու պահուեցաւ։ Ո՛վ որ զանիկայ տեսաւ, ամէնքն ալ կարեկից եղան անոր թշուառութեան։ Ինչուան ութ հարիւր տոլլար տուին որ զանիկայ գնեն. ոմանք բոլոր քովերնին ունեցած ստակն ալ տուին. բայց գերեվաճառն անոնցմէ բնաւ մէկուն չզիջաւ։ Խեղճ աղջիկը Նոր-Օռլէան ղրկուեցաւ, բայց Աստուած վրան գթալով՝ կէս ճամբան մահ պարգևեց անոր։ Ասոր հետ Էտմըսըն մականունով աղջիկներ ալ կային. երբոր ասոնք ալ նոյն վաճառանոցը ղրկուելու վրայ էին, երէց քոյրը գնաց իրեն տիրոջն ոտքն ընկաւ աղաչեց՝ որ Աստուծոյ սիրոյն համար վրանին գթայ։ Բայց անիկայ ծիծաղելով պատասխան տուաւ թէ ձեզի աղուոր հա-

գուսաններ ու գեղեցիկ կահ կարասիք կու տան։ Իսկ աղջիկն ըսաւ թէ այո՛ ատո՛նք գուցէ այս աշխարհիս վրայ աղէկ բաներ են, բայց անդիի աշխարհն ի՞նչ բանի կու գան։ Ասոնք Նոր-Օռլէան տարուեցան. բայց վերջէն ծանր ծանր գնով գնուեցան ու իրենց Հայրենիքը ղրկուեցան»։ Ասկէ յայտնի չի՞ երեւնար թէ Եմմէլինային ու Գէսսիի պատ-մութիւնը շինծու բաներ չեն։

Ճշմարտութեան սիրոյն համար պէտք է այս ալ ըսենք՝ որ Սէն-Քլէրի ազնուասըր-տութեանն ու առատաձեռնութեան օրինակ-ներն ալ պակաս չեն, ինչպէս հետեւեալ պատմութիւնն ալ կը ցուցընէ։

Քանի մը տարի առաջ Հարաւաբնակ ազ-նուական երիտասարդ մը Ջինչիննատիի գնա-ցեր էր, հետն ալ իր մէկ սիրելի գերին։ Ասիկայ առիթն յարմար դատելով, վասն զի ազատ երկիր մը կը գտնուէր, ուզեց ազա-տութիւնը ձեռք ձգել, և Քուաքէրի մը քով ապաւինեցաւ, որ ուրիշ անգամներ ալ առիթ ունեցեր էր այսպիսիներն իր տունն ընդու-նելու։ Տէրը սաստիկ բարկացաւ. ինքը միշտ իր գերւոյն հետ շատ սիրով վարուեր էր, և վրան այնչափ գութ ու վստահութիւն ու-նէր՝ որ չէր կրնար կարծել թէ անիկայ ին-

քըն իմէ այս բանս ըրած ըլլայ, այլ կը կարծէր թէ ուրիշները զինքը զլխէ հանած ըլլան։ Ուստի բարկութեամբ լցուած՝ գնաց Քուպէրը գտաւ. բայց անոր համարձակ ու ազնիւ կերպը տեսնելով՝ բարկութիւնը մարեցաւ։ Խոստացաւ իր գերւոյն ազատութիւն տալ, թէ որ անիկայ դիմացը գայ ու իրեն ըսէ թէ կը փափագի ազատութիւն ձեռք ձգել։ Գերին տիրոջն առջև ելաւ, և երիտասարդն հարցուց Նաթանին՝ թէ վրաս գանգատելու պատճառ ունի՞ս։

— Չէ, պարոն, պատասխանեց Նաթան. Հրամանքդ ինչուան հիմայ միշտ ինծի հետ աղէկ վարուեր ես։

— Ուրեմն ինչու կ'ուզես հիմայ ինծմէ հեռանալ։

— Պարոն, հրամանքդ կրնաս մեռնիլ, ան ատեն ո՞վ պիտի ըլլայ իմ տէրս . . . ։ Անոր համար հիմակուընէ կ'ուզեմ ազատ ըլլալ։

Ազնուական երիտասարդը քիչ մ'ատեն մտածելէն ետև.

— Նաթան, թէ որ ես ալ քու տեղդ ըլլայի, ըսաւ, ամենևին քեզի նման կը մտածէի։ Ազատ ես։

Տուա մը ազատութեան դաշնագիրը չի-

նեց, և քուաքէրլին ձեռքն ալ բաւական դրամ յանձնեց որ Նաթանիին պէտք եղած ծախքերն ընէ, և գերւոյն ալ սիրալիր նամակ մը գրեց աղէկ աղէկ խորհուրդներ տալով անոր. այս նամակը գրքիս հեղինակն ալ կարդացեր է։

Ասով հեղինակը կը յուսայ որ արդարութեան հարկ մը վճարած ըլլայ Հիւսիսակողման կալուածատեարց շատերուն ազնուականութեան, մեծասրտութեանն ու մարդասիրութեան։ Այսպիսի օրինակներ տեսնելով՝ մարդկութեան վրայէն բոլորովին յուսահատ չենք կտրած. և արդեօք երկիր մը կա՞յ որ հոն այսպիսի յատկութիւններն հասարակաց ըլլան։

Շատ մը տարի՝ հեղինակը գերութեան վերաբերեալ խնդիրներէն ինքզինք հեռու բռներ էր, համարելով որ անիկայ ցաւալի նիւթ մ'է, և միտքն ալ դրեր էր որ քաղաքականութիւն լոյսն օր աւուր աճելով՝ այս բանիս ալ վախճան մը կու տայ։ Բայց մեծ զարմացմամբ ու սարսափմամբ կարդալով 1850ին օրէնսդրութիւնը, որով քրիստոնեայ ու մարդասէր ժողովուրդ մը, իբրև բարւոք քաղաքացի, կը պարտաւորէր փախստական գերիները մատնելու, և տեսնելով որ Հիւ-

սխային ազատ Նահանգներուն բարբարոյ, ազնիւ ու մարդասէր անձինք ալ՝ տարակուսանօք մէկմէկու կը հարցընէին թէ ճշմարիտ քրիստոնէի մը պարտուց ինչուան որ կէտին հետ կը միաբանի այս նոր օրէնքս, մանքէն ըսաւ՝ թէ այդ անձինքը, այդ քրիստոնեաները չեն գիտեր թէ գերութիւնն ինչ է. ապա թէ ոչ՝ ամենևին այդպիսի տարակոյսներ չէին հաներ։ Այն տանենէն փափաքեցաւ որ գերութեան այս սարսափելի վիճակին վրայէն վարագոյրը վերցընէ, ու անոր սրտաշարժ ու ցաւագին տեսարանները թմալըր հանէ։ Ուստի ջանք ըրաւ որ հաւատարմութեամբ գերութեան վիճակը ճիշդ նկարագրէ, և անոր աղէկ ու գէշ կիրքերն ալ ցուցընէ։ Առաջին մասին մէջ գուցէ յաջողեցաւ, իսկ մէկալ մասին նկատմամբ ո՛չ կրնայ տեղն իտեղը պատմել ինչ որ այս խաւարչտին ու մահալից հովախս մէջ կ'ըլլայ։

Ջեկի կը պարձընէ հեղինակին իր խօսքերը, ո՛վ մեծասիրտ և ազնուական բնակիչք Հարաւակողման, որ ձեր առաքինութեամբ, ձեր ազնուութեամբ, ձեր բարուց անարատութեամբ՝ ձեր աչաց տակ կատարուած անգթութեան ամէնօրեայ օրինակներուն ազդե-

ցութեան դէմ դրինք։ Ձեր խղճով և ձեր մըտերմական խոստակցութիւններով չէ՞ք վկայեր՝ որ գերութեան չարիքն ու թշուառութիւնն աւելի մեծ են քան զոր նկարագրեցինք. այնչափ մեծ՝ որ ուզէինք ալ՝ չէինք կրնար նկարագրել։ Իրա՞ւ է, թէ սուտ։ Արդեօք մարդս կրնա՞յ բացարձակ ու առանց պատասխանատուութեան իշխանութիւն մ'ունենալ։ Եւ ձեր իրաւաբանութիւնը՝ գերւոյ մը վկայութիւնը մերժելով՝ տէրերը մէյմէկ բռնաւոր չի՞ դարձըներ, որոնք մէկու մ'ալ պատասխանատուութիւն չունին։ Ասկէ յայտնի չ'ե՞րևար որ եթէ այս տեսութիւններս գործադրուելու ըլլան՝ ի՞նչ չար հետեւանքներ պիտի ելլեն։ Եթէ ձեր մէջի կարծիքն ալ՝ ինչպէս կը հաւատանք, համաձայն է հեղինակիս ունեցած կարծեացը, ո՛վ արք պատուոյ, արդարասէ՛ր անձինք, ուրիշ տեսակ հասարակաց կարծիք մ'ալ չկա՞յ կ'ըսէք այն անզգամներուն մէջ, այն մարդադէմ գազաններուն մէջ։ Եւ միթէ այդ անզգամներն ալ չե՞ն կրնար օրինաց ուժով, արդարասէր և բարեսիրտ մարդկանց հաւասար՝ գերիներ ստանալ։ Կը գըտնուի՞ արդեօք աշխարհիս վրայ անկիւն մը, ուր արդար և գթասիրտ և ազնուամիտ անձինք աւելի գտնուին քան անզգամներ. . . ։

Սևերուն առուտուրը՝ Ամերիկացիներուն օրինաց ուժով՝ հիմայ ծովու ասպատակու-թիւն համարուած է. բայց ամերիկեան օ-րէնքները կանոնաւորեալ սևերու առուտուր մը կը պաշտպանեն, այն է՝ Ափրիկէի ծով-եզերաց սևերու յաճախեալ առուտուրը։ Եւ ո՞վ կրնայ այս առուտուրիս ամէն պժգալի պարագաներն և այնչափ այրած սրտերը համրել։

Ուրեմն հեղինակը, այս գրքիս մէջ, վեր-խիլերանց անդրադարձութիւն մը միայն կըր-ցաւ ընել տալ. տժգոյն նկար մը ներկայա-ցուց այնչափ վշտաց, որով դեռ հազարա-ւոր սրտեր կը կտըրատին, հազարաւոր ընտա-նիքներ կը խռովին, և այս զգայուն և հարըս-տահարեալ ցեղը վերջին յուսահատութեան մէջ կը ձգեն։ Մեզմէ ոմանք տեսան մայ-րեր զորոնք այս պժգալի առուտուրս՝ բըռ-նադատեց իրենց տղաքն սպաննելէն վերջ՝ իրենց ալ մահուան փափագելու, մահուը-նէն դառնագոյն թշուառութիւններէն ազա-տելու համար։ Անկարելի բան է նկարագրել և մտքէն ալ անցընել այս ողորմ տեսա-րանները՝ որ մեր երկնից տակ, Ամերիկոյ օրինաց հովանաւորութեան տակ՝ ամէն օր կը նորոգուին։

Այդ, ըսէք ուրեմն ինծի, արք և կանայք Ամերիկոյ, կրնա՞ք դուք այս խնդրոյս վրայ անտարբեր կենալ։ Դուք երկրատէրք Հիւսիսակողման, դուք ազնուասիրտ նաւապետք և նաւաստիք, կրնա՞ք այս օրինադրութիւնս պաշտպանել և գործադրել....։ Եւ դուք, ամերիկացի մայրեր, որ ձեր աղայոց խանձարրոց քով կը սորվիք սիրել բոլոր մարդկութիւնը և կարեկցիլ վշտացելոց, յանուն ձեր մայրական սիրոյն, յանուն ձեր մայրական խնդութեանց, յանուն ձեր սիրելի և գթալից խնամոց՝ որ ձեր մատղաշ տղոց վրայ կը ցուցընէք, յանուն ձեր տղոց ապագայ վիճակնուն համար կրած հոգերնուդ, կ՚աղաչեմ ձեզի, գութ ունեցէք այն մայրերուն վրայ՝ որոնք ձեզի պէս սիրտ ունին, բայց բնաւ իշխանութիւն և իրաւունք չունին պաշտպանել և խնամել իրենց արգանդին պտուղը։

Պիտի ըսեն թերևս գերեստացութեան օրէնքը ջնջող Նահանգաց բնակիչքը, որ իրենք յանցանք չունին, ու ձեռքերնէն ալ բան չի գար։ Աստուած տար որ այնպէս ըլլար....։ Ազատ Նահանգաց բնակիչքը պաշտպանեցին այս օրէնքս, օգնեցին և մասնակից եղան այս օրէնքս գործադրողաց.

անոնք աւելի յանցաւոր և մեղադրելի են՝ քան թէ Հարաւային կողմի բնակիչքը։ Թէ որ ազատ Նահանգներու մայրերն իրենց զգացմունքն ունենային, ազատ Նահանգներու աղոց վրայ առակ չէր ըլլար այս խօսքս՝ որ անոնք ամենէն գառն ու խիստ գերեստացներն են։ Հարաւային կողմերը որչափ գերիներ կան հիմայ՝ որոնք ատենօք Հիւսիսային կողմի վաճառականացն էին, ու անոնցմէ Հարաւայիններուն ծախուեցան։ Ո՞վ կրնայ ուրեմն համարձակիլ ըսելու որ այս եղեռնագործութեան պատասխանատուութիւնը բոլորովին հարաւակողման բնակչաց վրայ է։

Հիւսիսային կողմի մարդիկ՝ իրենց հարաւաբնակ հայրենակիցները մեղադրելու և բոլոր յանցաւորութիւնն անոնց վրայ ձգելու տեղ՝ պէտք է որ նախ իրենք իրենց աչքին տակ հանդիպածներուն վրայ անդրադառնան, ու նախ այն չարեաց դարման մ՚ընեն։

Բայց պիտի ըսէ մէկը թէ սոսկական մարդ մ՚ի՞նչ կրնայ ընել...։ Այս հարցմանս պատասխանն՝ ամենուն իր խղճմտանքն է. բան մը կայ որ ամէն մարդ ալ կարող է ընելու. կրնայ՝ ինչպէս որ պէտք է՝ բարեպաշտութիւն և ուրիշի վրայ գութ ունենայ։ Թէ

այր եղեր է և թէ կին, երբոր ուղղութեամբ և արդարութեամբ կ'իմանայ և կ'ըմբռնէ մարդկային ընկերութեան օգուտները, ան է մարդկային ցեղի ճշմարիտ բարերարը։

. . . . . . .

Այս տողերս գրողը երկար տարիներ գերեստացութիւն ընդունող Նահանգներուն սահմանները բնակած է. շատ առիթ ունեցած է գերութենէ փախչողները դիտելու։ Անոնցմէ ոմանք իրեն տունն ալ առեր է ծառայութեան համար. և Գանատա փախչող գերիներու քարոզիչներէն ալ վկայութիւն առած է՝ այս սևերուն կարգէ դուրս բարակամտութեան և յաջողութեան։ Ազատած գերիին առաջին փափաքը կրթուելու միջոց մը գտնելն է, և իր բոլոր ջանքով հանէ կ'ըլլայ որ գտնէ իր աղաքը կրթութենէ զուրկ չմնան...։

Եւ որովհետև այս հարստահարեալ ցեղս այսչափ ջանքով ու փութով ամէն ձախորդութեանց և դժուարութեանց կը յաղթանակէ, դեռ ի՞նչ չէր կրնար ընել՝ եթէ հաւատացեալքն ի Քրիստոս՝ ըստ հոգւոյ Քրիստոսի մտածէին ու գործէին։

Հիմայ մենք այնպիսի դարու մէջ ենք՝ որ բոլոր ժողովուրդները շարժման մէջ են. ներ-

քլին և գաղանի ոյժ մ'է որ վեր կը հրէ զաշխարհք ու երկիրս կը դողայ։ Ապահո՛վ է արդեօք Ամերիկան ալ։ Ամէն ազգ որ կը լռէ և աչք կը գոցէ իր մէջ հանդիպած այսպիսի մեծ անիրաւութեան, իր հետը կը կրէ այսպիսի սոսկալի շարժման սկզբունքները։ Ո՞րն է ուրեմն այս ուժը՝ որով ազատութեան և հաւասարութեան համար ամէն ազգերու բերնէն անպատմելի հառաչանքներ կ'ելլեն։

Ո՛ քրիստոնեայք կը հասկընա՞ք արդեօք ժամանակաց այս նշաններս....։ Այս գաղանի ուժը միթէ չի՞ գար ի Հոգւոյ Անոր՝ որուն թագաւորութիւնը պիտի գայ, և որուն կամքն երկնքի և երկրի մէջ պիտի կատարուի։

Բայց ո՜վ կրնայ Անոր եկած օրը դիմանալ։ Վասն զի այն օրն՝ իբրև հուր պիտի բորբոքի, և պիտի երևայ ինքը դատելու զանոնք՝ որ աղքատին վարձքը կը զլանան, այրիներն և որբերը կը հարստահարեն և օտարներն իրենց իրաւունքէն կը զրկեն։ Ինչ զարհուրելի բան է այս խօսքերս այնպիսի ազգի մը համար, որ իր մէջ այսպիսի յայտնի անիրաւութիւն մը կը կրէ...։ Ամերիկայի Միացեալ — Նահանգք այնպիսի անիրաւութիւն և անգթութիւն պաշտպանել-

*նուն համար ազատ պիտի չըլլան, բայց եթէ զղջալով, և արդարութեան և ողորմածութեան ետևէ ըլլալով։*

*Ինչպէս որ անտարակուսելի բան է թէ քար մը՝ երբ Ովկիանոսի մէջ ձգուելու ըլլայ՝ պէտք է որ մինչև յատակն իջնէ, ասկէ աւելի ստոյգ և անտարակուսելի է այն սրբազան օրինաց ոյժը՝ որով անիրաւութիւնն և անգթութիւնն ազգի մը վրայ Աստուծոյ բարկութիւնը կը գրգռեն։*

ՎԵՐՋ

# ՑԱՆԿ

## ՀԱՏՈՐ ԱՌԱՋԻՆ

Էջ

## ՀԱՏՈՐ ԵՐԿՐՈՐԴ